


Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություններ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասիրությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրությունների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները՝*

*Պաշտոնական կայք՝*[http://www.armin.am](http://www.armin.am)

*Էլ. փոստ՝*[info@armin.am](mailto:info@armin.am)

# ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԽԵՄԱՏԻԿ ՔԱՐՏԵԶ

ԿԱԶՄԵՑ Թ. Խ. ՀԱԿՈԲՅԱՆ
ՔԱՐՏԵԶԱԳԻՐ Ս. Օ. ՎԱՐԴԱՆՅԱՆ



ՀԱԿՈԲՅԱՆ Թ. Խ.

# Պատմական Հայաստանի քաղաքները

ԵՐԵՎԱՆ
«ՀԱՅԱՍՏԱՆ» 1987

ԳՄԴ 63.3(2Հ)41
Հ 177

Գրախոս՝ պատմական գիտությունների դոկտոր
Ա. Ս. ՀԱՄԲԱՐՅԱՆ

Խմբագիր՝ պատմական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր Վ. Ա. ԴԻԼՈՅԱՆ

**Հակոբյան Թ. Խ.**

Հ 177 *Պատմական Հայաստանի քաղաքները/ Խմբագիր՝ Դիլոյան Վ. Ա.— Եր.։ Հայաստան, 1987.— 256 էջ, 8 թերթ նկ.։*

*Աշխատությունը բաղկացած է երկու գլխից։ Առաջին գլխում համառոտակի շարադրված է Հայաստանի քաղաքների ծագման և զարգացման պրոցեսը հնագույն ժամանակներից մինչև XX դարի առաջին քառորդի վերջը։ Երկրորդ գլուխն ընդգրկում է Արևմտյան Հայաստանի և Պարսկահայաստանի 72 քաղաքների պատմաաշխարհագրական ուրվագծերը, որոնցում բնութագրված են նրանց բնական պայմանները, քաղաքական պատմության կարևոր պահերը, տնտեսական ու մշակութային կյանքը, վարչական վիճակը, պատմական և մշակութային հուշարձանները, հայ բնակչության ճակատագիրը և այլն։ Գիրքը նկարազարդ է և ունի սխեմատիկ քարտեզ։*

*Այն նախատեսված է ընթերցող լայն շրջանների, ինչպես նաև պատմաբանների, աշխարհագետների և հայագետների համար։*

$Հ \frac{0505040000}{701(01)\ 87}$ — 64—86

ԳՄԴ 63.3(2Հ)41

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## Երկու խոսք

*Քաղաքների (և ընդհանրապես բոլոր կարգի բնակավայրերի) պատմության և աշխարհագրության ուսումնասիրությունը մեր ժամանակների հույժ կարևոր հարցերից է։ Այդ բնագավառում միութենական հանրապետություններում (հատկապես՝ ՌՍՖՍՀ-ում և Ուկրաինական ՍՍՀ-ում) կատարվել են խոշոր աշխատանքներ և շարունակվում են նորանոր ուսումնասիրություններ։ Զգալի են նաև մեր հանրապետության պատմաբանների ու աշխարհագետների աշխատանքները, որոնք հիմնականում վերաբերում են մայրաքաղաք Երևանին, Լենինականին, հանրապետության մյուս քաղաքներին, Պատմական Հայաստանի մայրաքաղաքներ Տիգրանակերտին, Դվինին, Անիին և այլն։*

*Ներկա աշխատությունն ամփոփիչ բնույթի է, բաղկացած երկու մասից։ Առաջին մասում ուրվագծված է Հայաստանի քաղաքների ծագումն ու զարգացումը պատմության բոլոր ժամանակաշրջաններում՝ հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը ներառյալ, և Արևմտյան Հայաստանի ու Պարսկահայաստանի հին ու նոր քաղաքների պատմաաշխարհագրական բնութագրումներն առանձին-առանձին։ Երկրորդ մասում նույն կերպ ներկայացվելու են Արևելյան Հայաստանի հին ու նոր ժամանակների քաղաքները՝ Արմավիր, Արտաշատ, Երվանդաշատ, Դվին, Երևան, Լոռի, Եղեգիս, Ալեքսանդրապոլ և այլն։*

*Աշխատության հենքի ու բովանդակած նյութի համար օգտագործվել են պատմագիրների ու ժամանակագիրների երկերը, գիտական գրականությունը, հին ու նոր բազում քարտեզներ, ճանապարհորդական հուշագրություններ, ժողովրդական ավանդություններ, հնագիտական պեղումների արդյունքներ, վիճա-*

կագրական տեղեկատուներ ու արխիվային փաստաթղթերի ժողովածուներ։

Գրքի մեծագույն հատվածն ընդգրկող պատմաաշխարհագրական ակնարկներում տեղեկություններ են հաղորդվում տվյալ քաղաքի կրած անունների, աշխարհագրական դիրքի ու պայմանների, պատմական անցած ուղու կարևոր պահերի, բնակչության, տնտեսության, կառուցվածքի ու կոմունալ պայմանների, հին ու նոր հուշարձանների, մշակույթի վերաբերյալ։

Արևմտյան Հայաստանի քաղաքները բնութագրված են մինչև առաջին համաշխարհային պատերազմը ունեցած դրությամբ։ Գիրքը նկարազարդ է և ունի համապատասխան քարտեզ։ Այն կարող է օգտակար լինել պատմաբանների, աշխարհագետների, տնտեսագետների, բանասերների, ուսուցիչների, ուսանողների, ինչպես և ընթերցող լայն շրջանների համար։ Գրքից օգտվելն ավելի դյուրացնելու միտումով քաղաքները ներկայացված են այբբենական կարգով։

# I. ՔԱՂԱՔՆԵՐԻ ԾԱԳՈՒՄՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՀՆԱԳՈՒՅՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ XX ԴԱՐԻ ՍԿԶԲՆԵՐԸ

Համառոտ տեսություն

*Դժվար է ասել, թե հայ ժողովրդի բնօրրանում՝ Հայկական լեռնաշխարհում, երբ են առաջացել առաջին քաղաքները։ Համենայն դեպս հայտնի է, որ դեռևս III—II հազարամյակներում (մ. թ. ա.) այստեղ ձևավորված ցեղային միությունների տարածքում՝ Միտանիում, Հայասա-Ազզիում, Նաիրյան երկրներում և դրանց հաջորդած մյուս ցեղային-պետական միավորումներում արդեն գոյություն ունեին տասնյակ բերդեր ու բերդաքաղաքներ, որոնք ցրված էին երկրի տարբեր կողմերում և ունեին հիմնականում ռազմական ու վարչական նշանակություն։*

*Մեծ թվով բերդեր, ավանաբերդեր ու բերդաքաղաքներ էին առաջացել ստրկատիրական հասարակարգի ձևավորման հետ միասին, որի արդյունքն էր Ուրարտական ընդարձակ պետության կազմավորումը։ Ուրարտական պետության ժամանակներում (IX—VI դդ. մ.թ.ա.) հիմնադրվել էին պետության մայրաքաղաք Տուշպան (Վան), Մելիտեն (Մալաթիա), Ախուրիանին (Սարիղամիշի կողմերում), որի անունը պահպանվել է Ախուրյան գետի անվան մեջ, Աշտուխինին (Կարսի շրջանում, Աստրախանե վայրում կամ նրա մոտակայքում), Մանազկերտն ու Արճեշը, որոնցից առաջինի հիմնադիրը համարում են ուրարտական Մենուա թագավորին և անունն էլ կապում նրա անվան հետ, իսկ երկրորդի հիմնադրումն ու անվան ծագումը կապում են Արգիշտի թագավորի անվան հետ։ Միջնադարյան Վաղարշակերտ (Ալաշկերտ) կոչվող քաղաքի տեղում ուրարտական ժամանակաշրջանում գտնվում էր Անաշա քաղաքը։ Նույն կարգի մի բերդաքաղաք էլ գտնվում էր Վաղարշավանի (Հասանկալա) տեղում, որի ուրարտական բերդի մնացորդները հայտնի դարձան մաս-*

նակի պեղումների շնորհիվ։ Մեծ քանակությամբ բերդեր ու բերդաքաղաքներ են հայտնաբերված Ուրարտական պետության ոչ միայն հարավային (Ասորեստանի կողմում) և հարավարևելյան (Վանա և Ուրմիա լճերի միջև ընկած լեռնային երկրները) կողմերում, այլև հյուսիսային մասերում՝ Արաքսի միջին հոսանքի շրջանում։ Հնագիտական և պատմական ուսումնասիրությունների շնորհիվ Սովետական Հայաստանի տարածքում հայտնաբերված են ու հետազոտված ուրարտական շրջանի մի քանի բերդաքաղաքների (և բերդերի) ավերակներ։ Այսպես, Սևանա լճի հարավարևմտյան մասում հայտնաբերված մի մեծ բերդավանի ավերակները համարվում են Տիլիխու բերդաքաղաքի մնացորդները, Կամո քաղաքի մոտ, ժայռի վրայի հին բերդի ավերակները նույնացնում են «Խալդ աստծո քաղաքի» հետ, նույն Սևանա լճի հարավային ափին, այժմյան Մարտունու շրջանի Ծովինար գյուղի մոտ հայտնաբերված են ուրարտական մի ուրիշ բերդավանի ավերակներ, որն իր կանգուն ժամանակներում կոչվել է «Թեյշեբ աստծո քաղաք»։ Երկու բերդաքաղաքներ են եղել նաև Երևանի տարածքում։ Դրանցից մեկը գտնվում էր Կարմիր բլուրում և կոչվում էր Թեյշեբաինի, իսկ մյուսը Արինբերդի տեղում էր՝ Երևանի հարավարևելյան մասում և կրում էր Էրեբունի անունը, որից էլ ծագել է մեր մայրաքաղաք Երևանի անունը։ Ուրարտական ժամանակաշրջանում Արարատյան դաշտում ամենից հռչակվածը սակայն Արգիշտիխինիլի («Արգիշտիի քաղաք») քաղաքն էր, որը համարվում էր պետության հյուսիսային բարեբեր երկրների գլխավոր կենտրոնը և Ուրարտուի երկրորդ մայրաքաղաքը։ Այն կառուցել էր Արգիշտի 1-ինը (մ. թ. ա. 786—760) և համապատասխանում է Երվանդյանների թագավորության (V—II դդ. մ. թ. ա.) ու ավելի ուշ շրջանի հայկական Արմավիր քաղաքին։

Հայաստանի ուրարտական ժամանակաշրջանի քաղաքները ունեին իրենց պարսպապատ բերդերը։ Դրանք հիմնականում տեղադրված էին բլուրների վրա և վտանգավոր պահերին գիշերներն իրար հետ կապվում էին խարույկներով։ Իբրև բերդաքաղաքներ դրանցում զետեղվում էին հատուկ կայազորներ։ Քաղաքների մյուս առանձնահատուկ կողմն այն էր, որ դրանք վարչատարածքային միավորների կենտրոններ էին, և այնտեղ էր գտնվում տվյալ շրջանի վարչական ապարատը, այստեղ էր կենտրոնացվում բնակչությունից հավաքված բնամթերային հարկը։

Քաղաքներում ու նրանց բերդերում կային ժայռափոր կեռավածքներ, ստորճաններ, ստորերկրյա մուտքեր, որոնք այնքան բնորոշ էին ուրարտական, հնագույն հայկական ճարտարապետության համար։ Քաղաքի բնակչությունն ուներ սոցիալական խայտաբղետ կազմ։ Այն բաղկացած էր ստրկատերերից, արհեստավորներից ու առևտրականներից, գերի ստրուկներից, զինվորականներից։

Տնտեսական կյանքի զարգացման հետ միասին, հելլենիզմի դարաշրջանում մեծ վերելք են ապրում նաև քաղաքները։ III—I դարերում (մ. թ. ա.) զարգացման նոր շրջան են ապրում Հայաստանի հին քաղաքները՝ Վանը, Արմավիրը, Մալաթիան, Մանազկերտը, Արճեշը և մյուսները։ Առաջանում են մի ամբողջ շարք նոր քաղաքներ՝ Երվանդաշատ, Բագարան, Բագավան, Զարիշատ, Զարեհավան, Կարկաթիոկերտ, Արշամաշատ, Արտաշատ, Տիգրանակերտ և այլն։ Դրանք արդեն հելլենիստական տիպի քաղաքներ էին, որոնց բնակչության ամենահիմնական զբաղմունքը արհեստներն ու առևտուրն էր։ Հռոմեական պատմագիր Ապպիանոսի վկայությամբ, Տիգրան 2-րդը (95—55 թթ. մ. թ. ա.) իր արշավանքների ժամանակ հելլենիստական 12 քաղաքներից 300 հազար բնակիչ գաղթեցրեց և բնակեցրեց Հայաստանի քաղաքներում, հատկապես՝ 70-ական թթ. հիմնադրած իր մայրաքաղաք Տիգրանակերտում։ Նրա գաղթեցրած բնակչությունը բաղկացած էր գլխավորապես հույներից, ասորիներից և հրեաներից։ Նույն դարի 40-ական թվականներին՝ Արտավազդ 2-րդի օրոք, երբ հայ-պարթևական միացյալ զորքերը գրավեցին Ասորիքը, այնուհետև Փյունիկիան և Կիլիկիան, բազմահազար հրեաներ գաղթեցին և բնակություն հաստատեցին արևելյան երկրներում՝ այդ թվում և Հայաստանում։ V դարի հայ մատենագիր Փավստոս Բուզանդը վկայում է, որ IV դարում հրեական հազարավոր ընտանիքներ կային Երվանդաշատ, Արտաշատ, Զարեհավան և այլ քաղաքներում։ Քաղաքների էին վերածվում նշանավոր դիրք ունեցող բերդերն ու ճանապարհային կայանները, որոնք երկրի տնտեսական զարգացմանը զուգընթաց ստանում էին կարևոր նշանակություն։ Առանձնապես կարևոր դեր էին խաղում այն քաղաքները, որոնք գտնվում էին քարավանային տարանցիկ առևտրի ճանապարհների վրա։ Իսկ հելլենիզմի դարաշրջանում Հայաստանի գլխավոր ճանապարհների հիմնական հանգույցն ու ելման կետը Արտաշատ մայրաքաղաքն էր։ Այստե-

ղից էին դուրս գալիս այնքան կարևոր նշանակություն ստացած՝ Արտաշատ—Սատաղ և Արտաշատ—Տիգրանակերտ ճանապարհները։ Հայաստանից այդ ճանապարհներով էին արտահանվում հացահատիկ, ձի, ոչխար, միս, ձուկ, չորացած մրգեր, գինի, բուրդ, բամբակ, ներկեր, մետաղներ, արհեստավորական զանազան արտադրանքներ՝ զորքեր, այլազան գործվածքներ, պերճանքի առարկաներ և այլն։

Ֆեոդալիզմի դարաշրջանում Հայաստանի հելլենիստական քաղաքները աստիճանաբար հետադիմում են։ Դրանց մի մասը վերածվում է ֆեոդալական քաղաքների և շարունակում իր գոյությունը (Տիգրանակերտ, Զարիշատ, Զարեհավան, Բագարան և այլն), իսկ մյուս մասը աստիճանաբար նվազելով V—VI դարերից դադարում է գոյություն ունենալ (Արտաշատ, Արմավիր, Երվանդաշատ)։ I—V դարերում Հայաստանում առաջացել են ֆեոդալական մի շարք քաղաքներ (Արզն, Բաղեշ, Խլաթ, Կարին, Ոստան, Աղամակերտ, Սպեր, Նախճավան, Մուշ և այլն), որոնցից կարևորները Վաղարշապատը, Դվինը և Արշակավանն էին։ Առաջինը ձևավորվել էր նախկին Վարդգեսավանի տեղում (II դարում, մ. թ.), երկրորդը հիմնադրվել էր IV դարի 30-ական թվականներին Արշակունի Խոսրով Կոտակ թագավորի ձեռքով, իսկ Արշակավանը հիմնադրել է Արշակ 2-րդը նույն դարի 50-ական թվականներին՝ նպատակ ունենալով իր կառուցած այդ նոր մայրաքաղաքը դարձնել հուսալի հենարան կենտրոնախույս նախարարներին սանձահարելու և կենտրոնական իշխանությունն ուժեղացնելու դժվարին գործում։ Նոր առաջացած ֆեոդալական քաղաքները, մանավանդ փոքրերը, իրենց բնույթով քիչ էին տարբերվում մեծ գյուղերից։ Նրանց բնակչության զբաղմունքի մեջ երկրագործությունը, այգեգործությունը, բանջարաբուծությունը, անասնապահությունն իրենց խաղացած դերով ոչնչով չէին զիջում բուն քաղաքային զբաղմունքներին՝ արհեստներին և առևտրին։ Պատկերը մի փոքր այլ էր խոշոր քաղաքներում՝ Վաղարշապատում, Դվինում, Վանում և նույն կարգի մյուս քաղաքներում, որոնք առաջին հերթին առևտրի և արհեստագործության մեծ կենտրոններ էին և որոնցում գյուղատնտեսությունը համեմատաբար սահմանափակ ծավալ ու կշիռ ուներ։

Հայաստանի քաղաքները V—VII դարերում առանձին զարգացում չեն ունեցել։ Սասանյանների և բյուզանդական տիրապե-

տության այդ շրջանում քաղաքային կյանքի առաջադիմության համար բարենպաստ պայմաններ չկային։ Ավելին, նախորդ ժամանակների համեմատությամբ շատ քաղաքներ անշքանում էին։

Քաղաքների համընդհանուր անկումը, սակայն, տեղի է ունեցել արաբական տիրապետության շրջանում՝ VII—IX դարերում, կապված երկրի տնտեսական կյանքի ընդհանուր հետադիմության հետ։ VII—VIII դարերի արաբական զավթողական ու պատժիչ արշավանքների հետևանքով ավերվում են Հայաստանի մի շարք քաղաքներ։ Դրանց մի մասը այնուհետև, մինչև IX—X դարերը, կորցրեց իր տնտեսական նշանակությունը (Վաղարշապատ, Զարիշատ, Կարին, Արճեշ և այլն), իսկ որոշ քաղաքներ էլ ընդմիշտ դադարեցին գոյություն ունենալ (օրինակ՝ Արտաշատը)։ Նախորդ ժամանակաշրջանի քաղաքներից շատերը վեր են ածվում բերդաքաղաքների ու բերդերի, որոնցում զետեղվում են արաբական կայազորներ (Մուֆարղին, Նաշավա՝ Նախճավան, Բերկրի, Կարին և այլն)։ Երկրի մայրաքաղաք Դվինը ևս մեծապես տուժեց։ Արաբական զավթիչները 640 թ. իրենց արշավանքի ժամանակ գրավելով Դվինը, մասնակիորեն ավերում են այն։ Բայց չնայած դրան, Հայաստանի քաղաքների շարքում VII—IXդդ. Դվինը իր նշանակությամբ գրավում էր առաջնակարգ տեղ։ Նա Հայաստանի մեծ մասից և Վրաստանից ու Աղվանքից կազմված Էրմենիա փոխարքայության կենտրոնն էր, և արաբական ոստիկանները (էմիրները) որոշ չափով հոգ էին տանում իրենց աթոռանիստը բարեկարգելու մասին։ Այստեղ էին կենտրոնացած արաբական զորքերի զգալի մասը, վարչական պաշտոնյաներ, ազնվականներ, տարբեր ազգի հարուստ վաճառականներ։ Տնտեսական տեսակետից արաբական տիրապետության սկզբնական շրջանում Դվինի նշանակությունը մեծ չէր, բայց VIII դ. վերջերից և, մանավանդ, IX դ. սկզբներից այն համեմատաբար արագորեն բարձրանում և դառնում է արհեստագործության ու առևտրի խոշորագույն կենտրոն։

Հայաստանում քաղաքային կյանքն աննախադեպ վերելք է ապրում քաղաքական անկախության շրջանում՝ IX—XI դարերում։ Աշխուժանում են հին քաղաքները՝ Դվինը, Վանը, Նախճավանը, Բաղեշը (Բիթլիս), Հերը (Խոյ), Բագարանը և այլն, առաջ են գալիս նոր քաղաքներ՝ Անի, Կարս, Արծն, Խլաթ, Մուշ, Լոռի, Կապան, Երազգավորս։ Քաղաքային կյանքի բուռն զարգացումը բացատրվում է ոչ միայն քաղաքական անկախությամբ, Արևելքի

ու Արևմուտքի երկրների նկատմամբ Բագրատունյաց թագավորության տարանցիկ դիրքով, այլև տևական խաղաղությամբ։ IX—XI դարերում Հյուսիսային և Կենտրոնական Հայաստանը զերծ էր արաբա-բյուզանդական երկարատև ու արյունահեղ պատերազմներից, գտնվում էր դրանց ոլորտից դուրս և նրա արտադրողական ուժերը զարգանում էին միջնադարի համար անսովոր թափով։

IX—XI դարերի Հայաստանի քաղաքներն ըստ ծագման կարելի է բաժանել երկու խմբի. ա) հին, նախաֆեոդալական ժամանակներում առաջացած քաղաքներ, որոնք մի կերպ պահպանել էին իրենց գոյությունը և նորից էին աշխուժացել։ Այդ քաղաքների բնույթը, ինչպես ասվեց, ֆեոդալիզմի օրոք (III—IV դդ. սկսած) աստիճանաբար փոխվել էր, նրանք դարձել էին ֆեոդալական քաղաքներ (Վան, Արճեշ, Մանազկերտ, Մուֆարղին, Վաղարշակերտ, Բագարան, Արղն, Նախճավան և այլն), բ) ֆեոդալիզմի ժամանակաշրջանում ծագած քաղաքներ, որոնց մի զգալի մասը առաջացել էր IX—XI դարերում։ Այդ խմբի մեջ էին մտնում Դվինը, Կարինը, Անին, Կարսը, Արծնը, Լոռին, Կապանը, Մուշը, Բաղեշը, Բերկրին, Խլաթը և այլն։

Այս քաղաքները, բոլորն էլ ֆեոդալական լինելով հանդերձ, այնուամենայնիվ, ունեին որոշ առանձնահատկություններ։ Կային այնպիսի քաղաքներ, որոնք գտնվում էին այս կամ այն ֆեոդալի կալվածքում, լիովին ենթարկվում էին նրա իրավասությանը և գրեթե ամբողջապես կապված էին գյուղատնտեսության հետ։ Դրանք հիմնականում փոքր քաղաքներ կամ գյուղաքաղաքներ էին, և նրանց տնտեսական կապերը իրենց շրջապատից հեռու չէին գնում։ Այդ կարգի քաղաքներից էին Վասպուրականի թագավորությունում՝ Արտամետը, Ոստանը, Դատվանը, Հադամակերտը, Բերկրին, Սյունիքի թագավորությունում՝ Շաղատը, Եղեգիսը, Կապանը, Անի-Շիրակի թագավորությունում՝ Երևանը, Սուրմառին, Երազգավորսը։ Այլ բնույթ ունեին խոշոր քաղաքները՝ Անին, Դվինը, Կարսը, Վանը, Կարինը, Նախճավանը և այլն։ Սրանց կապը գյուղատնտեսության հետ համեմատաբար թույլ էր. գյուղատնտեսական զբաղմունքները քաղաքի ընդհանուր տնտեսական կյանքի վրա նշանակալի ազդեցություն չունեին։ Դրանք հիմնականում արհեստագործության և առևտրի խոշոր կենտրոններ էին։ Կային այսպես կոչված «ազատ» քաղաքներ, որոնք պարսպապատ չէին, գտնվում էին ոչ թե ֆեոդա-

լական կալվածքներում, այլ ազատ հողերում։ Այդ կարգի քաղաքներից էին Արծնը և Սևանա լճի հարավային ափին՝ Դվին—Պարտավ ճանապարհի վրա գտնվող Ազատ քաղաքը, որոնց բնակչությունը գրեթե բացառապես զբաղվում էր առևտրով ու արհեստներով։ Բացառյալ այս վերջինների, IX—XI դարերի Հայաստանի խոշոր քաղաքները, նույն ժամանակների Առաջավոր Ասիայի մյուս քաղաքների նման, բաղկացած էին երեք մասից՝ միջնաբերդից, բուն քաղաքից («շահաստանից») և արվարձաններից։ Միջնաբերդը սովորաբար գտնվում էր քաղաքի կենտրոնական մասում կամ այն մասում, որը պաշտպանական տեսակետից ավելի ապահով էր և իշխում էր ամբողջ քաղաքի վրա։ Քաղաքների միջնաբերդերը, սովորաբար ավելի շուտ էին կառուցվել և, մինչև նրանց շուրջը քաղաք ծավալվելը, դրանք բերդեր էին (այդպիսին էին օրինակ՝ Անիի, Կարսի, Դվինի, Կարինի և մյուս քաղաքների միջնաբերդերը)։ Միջնաբերդերը շրջափակվում էին աշտարակավոր պարիսպներով։

Միջնաբերդի շուրջը տարածվում էր բուն քաղաքը՝ «շահաստանը», որն իր գրաված տարածքով մի քանի անգամ նրան գերազանցում էր։ Այստեղ էին գտնվում շուկա-հրապարակներ, խանութներ ու կրպակներ («կուղպակ»), արհեստանոցներ, որոնք ըստ արհեստի տեսակի զբաղեցնում էին քաղաքի մի փողոցը կամ փողոցի, շուկայի մի շարքը։ «Շահաստանը» նույնպես պարսպապատված էր, բայց կային և այնպիսի քաղաքներ, որոնց այդ մասը զուրկ էր պարսպից՝ բաց էր (օրինակ՝ Արծնը)։

Քաղաքի արվարձանները փռված էին «շահաստանից» դուրս։ Նրանք զբաղեցնում էին հսկայական տարածք, որովհետև քաղաքի այս մասի բնակչությունը հիմնականում զբաղվում էր գյուղատնտեսությամբ՝ այգեգործությամբ, բանջարաբուծությամբ, երկրագործությամբ և անասնապահությամբ։

Քաղաքը կառավարում էր տվյալ քաղաքի տեր ֆեոդալի կողմից նշանակվող կառավարիչը, որը կոչվում էր «շահապ», «քաղաքի վերակացու» կամ «ամիրա»։ Մայրաքաղաքների կառավարիչները նշանակվում էին թագավորի կողմից և անմիջականորեն ենթարկվում էին նրան։ Քաղաքներում կային նաև ֆեոդալների կողմից նշանակված հատուկ պաշտոնյաներ, որոնք կոչվում էին «մութասիբ» կամ «մութսիբ»։ Սրանք հսկում էին շուկաներում չափ ու կշռի, վաճառվող ապրանքների գների վրա։ Հարկահավաք պաշտոնյաները կոչվում էին «բաժրար», «ծնե-

նավոր» կամ «կափիլ»։ Խոշոր քաղաքներում (օրինակ՝ Անիում) X դարի վերջերից գործում էր քաղաքային ինքնավարություն, որի գլուխ կանգնած էր բավական լայն իրավունքներով օժտված ավագների խորհուրդը՝ «երիցանիին»։ Վերջինիս իրավունքներն ավելի ընդլայնվեցին XII—XIII դարերում։ Նրանց պարտականությունների մեջ առանձնահատուկ տեղ էր գրավում քաղաքի պաշտպանությունը, պաշտպանական պարիսպների ու բուրգերի կառուցումը և վերանորոգումը, հարձակումների ժամանակ ինքնապաշտպանության կազմակերպումը և այլն։

Քաղաքի բնակչությունն ուներ սոցիալական խայտաբղետ կազմ։ Այստեղ ապրում էին և՛ աշխարհիկ ու հոգևոր ավատատերեր, և՛ առևտրականներ ու արհեստավորներ, և՛ գյուղացիներ ու ընչազուրկ զանգվածներ։ Սակայն քաղաքային բնակչության հիմնական մասը կազմում էին արհեստավորներն ու առևտրականները, այսինքն՝ քաղաքային դասը։ Հայաստանի այդ շրջանի քաղաքների բնակչությունը ազգային տեսակետից բավական միատարր էր. դրանց հիմնական զանգվածը կազմում էին հայերը։

IX—XI դարերում Հայաստանի խոշոր քաղաքներից (Անի, Դվին, Արծն, Կարս) յուրաքանչյուրի բնակչության թիվը հասնում էր մինչև 100 հազար մարդու։ Մյուս քաղաքների բնակչության թիվը նույն ժամանակներում տատանվում էր 10—25—40 հազար մարդու սահմաններում։

Բյուզանդական կարճատև տիրապետության ընթացքում (1045—1064թթ.) Հայաստանում քաղաքային կյանքը էական փոփոխություններ չի կրել, եթե չհաշվենք Անիի և մի քանի այլ քաղաքների մասնակի ավերումները կայսրության կողմից դրանց գրավման ժամանակ։ Սակայն այդ մի քանի տասնյակ տարիների ընթացքում ընդհանուր առմամբ վերացվել էին դրանց հետքերը։

Միանգամայն այլ էր պատկերը սելջուկյան արշավանքների և երկրում նրանց ծանր լծի հաստատման շրջանում՝ XI—XII դարերում։ Նախորդ ժամանակաշրջանի Հայաստանի ծաղկած քաղաքներից շատերը սելջուկյան արշավանքների հետևանքով կողոպտվում և ավերվում են։ 1049թ. սելջուկները գրավեցին, կողոպտեցին և հիմնահատակ կործանեցին երկրի խոշորագույն քաղաքներից մեկը՝ Արծնը։ Սելջուկյան սուլթան Ալփ-Արսլանի արշավանքի ժամանակ (1064—1065թթ.) ավերման ենթարկվեց

Անին, իսկ հետագայում երկար ժամանակ, ընդհուպ մինչև XII դարի վերջը (1199 թվականը) այն դարձել էր պայքարի թատերաբեմ և մի շարք անգամ ենթարկվել հարձակման ու անցել ձեռքից ձեռք, յուրաքանչյուր անգամ ենթարկվելով մասնակի ավերման։ Նույնպիսի քաղաքական դրություն են ունեցել նաև երկրի այլ քաղաքներ, որոնց թվում և Դվինը։ Սելջուկյան արշավանքների ընթացքում խիստ տուժեցին Արճեշ ու Մանազկերտ քաղաքները։ Դրանցից առաջինը հրի ու սրի մատնվեց Տուղրիլի արշավանքի ժամանակ (1054թ.), իսկ երկրորդը՝ Մանազկերտը, ավերվեց ու կողոպտվեց սելջուկների և բյուզանդական զորքերի միջև տեղի ունեցած 1071թ. ճակատամարտի ժամանակ։ 1103թ. սելջուկները հիմնահատակ ավերեցին Սյունիքի թագավորության մայրաքաղաք Կապանը, որն այլևս չվերականգնվեց։ Անուղղակի հիշատակություններից պարզ է դառնում, որ նշվածներով չէր սահմանափակվում սելջուկների կողմից Հայաստանում ավերված քաղաքների ցանկը։ Նրանց տիրապետության շրջանում խիստ հարված էին ստացել նաև Վանը, Բերկրին, Մուշը և բազմաթիվ այլ քաղաքներ։ Սելջուկյան արշավանքների հետևանքով ոչ միայն ոչնչացան քաղաքային բազմահազար բնակիչներ, այլև հենց այդ ժամանակներից սկսվեց բնակչության զանգվածային արտագաղթ (մանավանդ՝ Անիից), որ այնքան մեծ հարված հասցրեց հատկապես քաղաքներին։

XII դարի երկրորդ կեսից մինչև XIII դարի 30—40-ական թվականները Վրաստանի օգնությամբ, Զաքարյան հայ իշխանների անմիջական գլխավորությամբ Հյուսիսարևելյան Հայաստանը ազատագրվում է սելջուկ-թուրքերի լծից և նորից բռնում զարգացման ուղի։ Հայաստանի այդ խոշոր հատվածի քաղաքներից կարևոր էին Անին, Դվինը, Կարսը։ Քաղաքներում զարգանում էր առևտրավաշխառուական կապիտալը, որի խոշոր ներկայացուցիչներն իրենց ցանցն էին գցում նույնիսկ իշխաններին, պարոններին։ XIII դարի առևտրավաշխառուական կապիտալի խոշոր ներկայացուցիչներից էին անեցի Տիգրան Հոնենցը և Ավետենց Սահմադինը, մանազկերտցի Ումեկը և ուրիշներ։ Սրանք իրենց ձեռքում կենտրոնացրել էին հողային հսկայական տարածություններ և մեծ հարստություններ՝ զբաղվելով առևտրով, վաշխառությամբ, կապալառությամբ։

Քաղաքների կառավարիչները (քաղաքապետները) կոչվում էին ամիրաներ և նշանակվում էին այն ֆեոդալի, իշխանի կող-

*մից, որի իշխանության սահմաններում գտնվում էր տվյալ քաղաքը։ Խոշոր քաղաքների՝ Անիի, Դվինի և Կարսի կառավարիչները կոչվում էին «ամիրայից ամիրա»։ Ընդ որում, Անիի ամիրայից ամիրան նշանակվում էր Զաքարյանների կողմից, որովհետև այն համարվում էր վերջիններիս աթոռանիստ քաղաքը։ Անիում շարունակում էր գործել ներքին ինքնավարական մարմինը՝ «երիցանին», որի իրավունքները նախորդ ժամանակների համեմատությամբ ավելի ընդլայնվել էին։*

*Ապրանքադրամական հարաբերությունների զարգացման և ներքին շուկայի ընդլայնման շնորհիվ ավելի է խորանում գյուղատնտեսությունից արհեստների բաժանման պրոցեսը։ XII—XIII դդ. արհեստները գերազանցապես զարգանում էին քաղաքներում։ Իշխաններն ու պարոնները, բարձրաստիճան հոգևորականները, առևտրավաշխառուական դասի ներկայացուցիչները՝ այսպես կոչված մեծատունները, քաղաքներում և վանքերում ունեին «գործատներ» (արհեստանոցներ), որտեղ աշխատում էին թե՛ կախյալ և թե՛ ազատ արհեստավորները։*

*Գյուղատնտեսության հետ սերտ կապված էին մնում մի քանի արհեստներ՝ դարբնությունը, հյուսնությունը, մանածագործությունը և այլն։ Մնացած արհեստները անջատվում էին գյուղատնտեսությունից և կենտրոնանում քաղաքներում։ Գնալով աշխատանքի բաժանումն արհեստի ներսում ավելի էր խորանում։ Դրա հիման վրա էլ արհեստավորական գործիքների որոշ տեսակներ կրում են զգալի փոփոխություններ, համապատասխանեցվում են տվյալ արհեստի աշխատանքային պայմաններին։ Հիշատակությունների համաձայն, XIII դարի սկզբին Անիի արհեստների թիվը հասնում էր մոտ 40-ի։ Մյուս քաղաքներում (Դվինում, Կարսում և այլուր) նույնպես արհեստները բազմատեսակ էին։ Նախորդ ժամանակաշրջանի նման այս շրջանում ևս Հայաստանի քաղաքային արհեստների մեջ կարևոր տեղ էին գրավում մետաղագործությունը (զինագործությունը, դարբնությունը, պղնձագործությունը, արծաթագործությունը, ոսկերչությունը), մանածագործությունը, գորգագործությունը, ներկարարությունը, կավագործությունն իր ենթաճյուղերով, քարկոփությունը, որմնադրությունը, հյուսնությունը, կաշեգործությունը, բամբակագործությունը, տակառագործությունը, սննդի հետ կապված մի շարք արհեստներ։*

*Յուրաքանչյուր արհեստագործական արտադրություն հետզ-*

հետո համախմբվում է հատուկ արհեստակցական ընկերության մեջ։ Արհեստավորական ընկերություններ կային նաև նախորդ ժամանակաշրջանում, բայց նրանք այն ժամանակ դեռ գտնվում էին սաղմնային վիճակում և ձևավորված ընկերություններ դարձան միայն XII—XIII դարերում։

Հյուսիսարևելյան Հայաստանում XII—XIII դդ. զարգանում են ներքին շուկան և ապրանքադրամական հարաբերությունները։ Քաղաքներում, վանքերի մոտ, ճանապարհային կայաններում կային բազմաթիվ խանութներ ու կրպակներ, որոնք առևտուր էին անում տեղական ապրանքներով։ Արհեստավորների նման առևտրականները ևս ունեին իրենց կազմակերպությունները։

Հյուսիսարևելյան Հայաստանի XII—XIII դդ. արտաքին առևտուրը, հիմնականում լինելով IX—XI դդ. Հայաստանի արտաքին առևտրի զարգացման մի նոր աստիճանը՝ սելջուկյան տիրապետությունից հետո, իր ուղղությամբ նախորդից զգալի չափով տարբերվում էր։ IX—XI դդ. Հայաստանն առևտուր էր անում հիմնականում Սև ծովի հարավային ափերի նավահանգստային քաղաքների, Պարսկաստանի, Միջագետքի, Ասորիքի և հարևան Վրաստանի ու Աղվանքի հետ։ XII—XIII դդ. Միջագետքի, Ասորիքի, Փոքր Ասիայի հետ կատարվող առևտուրը մղվում է հետին պլան։ Այդ երկրներում հաստատված սելջուկյան էմիրությունները իրենց հարատև կռիվներով խափանում էին տարանցիկ առևտրի զարգացումը։ Ճանապարհներն այդ երկրներում անապահով էին և վտանգավոր։ Մելիքշահ սուլթանի բարեփոխումները, որոնք որոշ չափով նպաստում էին առևտրի զարգացմանը, նրա աշխարհակալ պետության անկմամբ ի դերև անցան։

Առաջավոր Ասիայի ամեն մի էմիրություն կամ ֆեոդալական այլ միավորում ուներ իր ներքին չափն ու կշիռը, մաքսային սահմանները, երբեմն նույնիսկ իր սեփական դրամական միավորները։ Դրանք մեծապես արգելակում էին Ասորիքի, Միջագետքի, Պարսկաստանի վրայով Արևելքի ու Արևմուտքի միջև կատարվող առևտուրը։ Դրանց հետևանքով Անդրկովկասի երկրների առևտրատնտեսական կապերը տեղափոխվում են ավելի հյուսիս։ Սերտ կապեր են ստեղծվում Սև ծովի արևելյան ափերի, վրացական նավահանգիստների, Գալիցիայի, Լեհաստանի և ռուսական երկրների հետ։ Եվ պատահական չէ, որ XII—XIII դդ. Հայաստանի խոշոր քաղաքների մեծ մասը գտնվում էր հյուսիսարևել-

յան Հայաստանում, որն այդ առևտրի նկատմամբ ուներ ավելի հարմար դիրք։ Հայաստանից ռուսական երկրներ էին արտահանում արհեստավորական զանազան արտադրանքներ, մետաքսե գործվածքներ, գորգեր, ներկեր և այլ ապրանքներ։ Իսկ ռուսական երկրներից Հայաստան էին ներմուծվում թանկագին մորթիներ (հատկապես՝ սամույր) և այլ ապրանքներ։

Մոնղոլական արշավանքների ընթացքում անբուժելի հարված ստացան Հայաստանի նախորդ շրջանում արհեստագործության և առևտրի կենտրոններ դարձած քաղաքները։ Մոնղոլները Հայաստանի քաղաքները գրավեցին և ավերեցին հետևյալ հաջորդականությամբ՝ 1236թ. Անին, Կարսը, Դվինը, Լոռին, այսինքն՝ Հյուսիս-արևելյան Հայաստանի քաղաքները, իսկ 1242—1245 թթ.՝ Էրզրումը, Երզնկան, Խլաթը, Արճեշը, Մանազկերտը, Վանը, Մուշը և այլն։

XIII դ. 50-ական թվականներից, երբ հիմնականում ավարտվում են մոնղոլական արշավանքները, Հայաստանի տնտեսական կյանքը և դրա հետ միասին նրա ավերված քաղաքները սկսում են մասնակիորեն վերականգնվել։ Մոնղոլական մեծ խաները, առևտրից ստացվող եկամուտները հաշվի առնելով, խրախուսում էին արտաքին ու տարանցիկ առևտուրը։ Սակայն մոնղոլական խիանների տիրապետության շրջանում Հայաստանի վրայով կատարվող առևտուրը զգալի չափով նպաստում էր միայն այն քաղաքների աշխուժացմանը, որոնք ընկած էին այդ ժամանակներում մեծ նշանակություն ստացած քարավանային առևտրի ճանապարհների վրա։ Դրանց թվին էին պատկանում Վանը, Արճեշը, Մանազկերտը, Մուշը, Մուֆարղինը, Էրզրումը, Երզնկան։ Մարկո Պոլոյի ասելով, այդ ժամանակ Հայաստանի ամենանշանավոր քաղաքը Երզնկան էր, որտեղ, նրա արտահայտությամբ, «արտադրել են աշխարհի լավագույն բեհեզները»՝ բամբակյա գործվածքները։ Նա Երզնկայից բացի հիշատակում է նաև Էրզրումի, Արճեշի և Մարդինի մասին։ Վենետիկցի մեծ ճանապարհորդը գրում է, որ Մուշ և Մարդին քաղաքների շրջակայքում «արտադրվում է մեծ քանակությամբ բամբակ, որից պատրաստում են մեծ մասամբ բեհեզ և այլ կտորեղեն, ժողովուրդը արհեստավոր և առևտրական է և ամենքը ենթարկվում են թաթար թագավորին» («Путешествия Марко Поло», СПб, 1902)։ Տնտեսական կյանքի աշխուժացումը զգալի էր նաև Վան ու Մանազկերտ քաղաքներում։ Սակայն այդ նույնը չի կարելի ասել նախորդ շրջանում

այնքան կարևոր նշանակություն ստացած Հյուսիսարևելյան Հայաստանի քաղաքների՝ Դվինի, Անիի, Կարսի և մյուսների մասին, որոնք Հայաստանով անցնող հյուսիսային տարանցիկ ճանապարհի նշանակության անկման հետ միասին աստիճանաբար հետադիմում էին, կորցնելով իրենց անցյալ փառքը։

Մոնղոլական տիրապետության շրջանում վաճառականները (ինչպես և հոգևորականները)՝ արտոնված լինելով իլխանների կողմից և մասնակցելով տարանցիկ առևտրին ու երկրի ներսում կատարելով կապալառուական խոշոր գործարքներ և վարչական ապարատում գրավելով կարևոր պաշտոններ, իրենց ձեռքում կուտակել էին հսկայական հարստություններ ու հողային տարածություններ։ Այդ ժամանակաշրջանի խոշոր վաճառական-կապալառուներից էին Ումեկի տունը, Սահմադինը, Քարիմադինը և ուրիշներ։

XIII դարում կատարվել են նաև հիշատակության արժանի շինարարական աշխատանքներ։ Այդ ժամանակ են կառուցվել Գեղարդավանքի ժայռափոր մեծ տաճարը, Հաղպատի զանգակատունը, խորանաշատը, միջնադարյան Հայաստանի նշանավոր համալսարան Գլաձորը և այլ կոթողներ։

Սակայն իլխանների տիրապետության ժամանակաշրջանում որոշ քաղաքների և առանձին շրջանների տնտեսական աշխուժացումը, որ հետևանք էր նախորդ շրջանի բուռն առաջադիմության պոտենցիայի և մասամբ էլ տարանցիկ առևտրի աշխուժացմանը, երկարատև չեղավ և չէր էլ կարող լինել։ Մոնղոլական կողոպտիչ հարկահանությունը և պատժիչ արշավանքները երկիրը հասցրին ծայրահեղ դրության, նրա տնտեսական միջոցներն արագությամբ սպառվեցին։ Աշխատավոր բնակչությունը մոնղոլական ծանր լծից ազատվելու համար XIV դարի սկզբից զանգվածորեն դիմում էր արտագաղթի, երկիրը զրկվում էր երկրագործ և արհեստավոր բնակիչներից։ Նրանց փոխարեն Հայաստան էին ներխուժում արևելյան քոչվորական այլևայլ ցեղեր, որոնց զբաղմունքը հիմնականում կազմում էր խաշնարածությունը։ Այդ նույն դարում իլխանության տրոհման հետևանքով տարանցիկ առևտուրը ստանում է մեծ հարված. կիլիկյան Այասի նավահանգստից մինչև Թավրիզ առևտրականները ստիպված էին լինում մի քանի տասնյակ տեղ մաքս վճարել։ Տրապիզոնի վրայով կատարվող առևտուրը գրեթե դադարում է նշանակալի որևէ դեր խաղալուց։

XIV դարում ստոիճանաբար ղատարկվում էին մանավանդ Հյուսիսարևելյան Հայաստանի քաղաքները։ Անին վերածվել էր սովորական բնակավայրի, Դվինը՝ դադարել էր գոյություն ունենալուց։ Իսկ Հայաստանի հարավի և արևմուտքի քաղաքները՝ Վանը, Էրզրումը, Արճեշը, Մանազկերտը, Մուշը, Մուֆարղինը, Երզնկան կապված էին իր գոյությունը դեռևս պահպանող Կիլիկիայի հայկական թագավորության առևտրական կենտրոնների (Սիս, Տարսոն, Ադանա, Մամեստիա, Անարզաբա, Մարաշ, Կոռիկոս և այլն) ինչպես և վերջիններիս միջոցով՝ Արևմուտքի հետ։ Կիլիկիայի հայկական թագավորությունը մամլուքների կողմից գրավվելուց հետո (1375 թ.) դրանք ևս զրկվեցին տարանցիկ առևտրի կապերից։

Լենկթեմուրի, կարակոյունլու և ակկոյունլու թուրքմենական ցեղերի տիրապետության շրջանում (XIV—XV դդ.) Հայաստանի քաղաքները ենթարկվում են նոր, ավելի ահավոր կողոպուտի, ավերումների և գերեվարությունների։ Բայց և այնպես, տարանցիկ առևտրի հետ կապված՝ իրենց գոյությունը մի կերպ պահպանում էին Էրզրումը, Երզնկան, Կարսը, Մուշը, Վանը, Խոյը և այլն։ Կարակոյունլուների ժամանակ, Երևանը, դառնալով վարչական կենտրոն (1440 թվականից), սկսում է բարձրանալ։ Նրա առաջադիմությանը, վարչական կենտրոն լինելուց բացի, նպաստում էին նաև աշխարհագրական հարմար դիրքն ու առևտրական կապերը։ Այդ ժամանակներում են առաջանում Ջուղա փոքրիկ քաղաքը և Ագուլիս ու Գավառ (այժմ՝ Կամո) առևտրական ավանները։

Թուրք-պարսկական տիրապետության շրջանում՝ XVI—XVIII դարերում, քաղաքային կյանքի զարգացման համար չկային ո՛չ սոցիալ-տնտեսական և ո՛չ էլ քաղաքական նպաստավոր պայմաններ։ Միջնադարյան հետամնացության մեջ խարխափող սուլթանական Թուրքիայում և սեֆյան Պարսկաստանում առևտուրն ու արհեստագործությունն ունեին համեստ չափեր ու ծավալ և մեծ հեռանկարներ չէին կարող բաց անել քաղաքների զարգացման համար, իսկ պարբերաբար կրկնվող թուրք-պարսկական պատերազմների և ներքին կռիվների հետևանքով ավերվում էին շատ քաղաքներ։

XVI—XVIII դարերի Հայաստանի քաղաքներից համեմատաբար նշանավոր էին՝ Երևանը, Էրզրումը, Վանը, Երզնկան, Կարսը, Բայազետը, Խլաթը, Բիթլիսը, Մուշը, Արճեշը, ինչպես

նաև՝ Սեբաստիան, Մալաթիան, Դիարբեքիրը։ Սակայն, բացառությամբ Երևանի, Էրզրումի, Վանի և Երզնկայի, դրանցից յուրաքանչյուրի բնակչության թիվը տասը հազար մարդուց չէր անցնում։ Այսպես, օրինակ, Արևելյան Հայաստանի ամենանշանավոր քաղաքը՝ Երևանը, XIX դ. առաջին քառորդում հազիվ ունեցել է մոտ 12 հազար բնակիչ (2400 ընտանիք), իսկ Արևմտյան Հայաստանի Խլաթ, Մուշ և Արճեշ քաղաքների բնակչության թիվը ավելի փոքր է եղել։ Քրդական բեյերի միջև մղվող կռիվների հետևանքով Մանազկերտ քաղաքը դուրս էր եկել շարքից։ Հայաստանի այս հնագույն քաղաքը, որը նախորդ ժամանակներում չնայած բազմիցս ենթարկվել էր ավերման, այնուամենայնիվ, մինչև թուրք-պարսկական տիրապետության շրջանը չէր կորցրել իր նշանակությունը։ XVI դարում նա ուներ մոտ 6000 տուն, իսկ XIX դարի սկզբին՝ ընդամենը 107 տուն։

Հայերից հետո Արևելյան Հայաստանի քաղաքների բնակչության մեջ զգալի տոկոս էին կազմում թաթարներն ու պարսիկները, իսկ Արևմտյան Հայաստանի քաղաքներում՝ թուրքերն ու քրդերը։

Քաղաքները սովորաբար ունեին ամուր պարիսպներով պատած միջնաբերդեր։ Իրենց ամուր բերդերով հռչակված էին Էրզրումը, Կարսը, Երևանը և, մասամբ, Բայազետը։

Քաղաքները բաժանված էին առանձին թաղամասերի, որոնցից յուրաքանչյուրն իրենից ներկայացնում էր վարչական ու տնտեսական միավոր։ Քաղաքապետները կոչվում էին քալանթարներ և նշանակվում էին խանի (Արևելյան Հայաստանում) կամ փաշայի (Արևմտյան Հայաստանում) կողմից, իսկ թաղամասերի կառավարիչները կոչվում էին քեդխուդա կամ մելիք։ Հայկական թաղամասերի կառավարիչները սովորաբար նշանակվում էին հայերից և կոչվում էին մելիքներ։

Քաղաքներում բնակվում էին սոցիալական տարբեր խմբերին պատկանող բնակիչներ։ Բնակչության ճնշող մասը կազմում էին արհեստավորները, առևտրականները և աղքատ ու ընչազուրկ բնակիչները, որոնք ծառայում էին կամ տներում, կամ զանազան հաստատություններում որպես սևագործ բանվորներ և բեռնակիրներ։

Քաղաքային բնակչությունը առևտրից, արհեստագործությունից և այլ զբաղմունքներից բացի զգալի չափով կապված էր նաև գյուղատնտեսական աշխատանքների հետ։ Քաղաքներում (օրի-

նակ, Երևանում, Վանում, Թիֆլիսում և այլուր) կային բազմաթիվ այգիներ, բանջարանոցներ և, նույնիսկ, հացահատիկային ցանքսեր։ Դրա, ինչպես և տների մեծ մասի միհարկանի լինելու պատճառով՝ քաղաքները գրավում էին ընդարձակ տարածություններ։

Քաղաքներն անբարեկարգ էին, մեծ մասը կառուցապատված առանց որոշակի հատակագծի։ Փողոցները նեղ էին, ոլորապտույտ ու ցեխոտ։ Փողոցներն ու հրապարակները չէին լուսավորվում։ Շատերը չունեին խմելու համար պիտանի ջուր։ Փոշու առատության, նեխած ու ճահճային ջրերի առկայության, բուժօգնության և սանիտարական տարրական պայմանների բացակայության պատճառով անպակաս էին մահասփյուռ հիվանդությունները։

1828 թ. պարսկական լծից ազատագրվելու և Ռուսաստանին միանալու շնորհիվ, Արևելյան Հայաստանում համեմատաբար նպաստավոր պայմաններ ստեղծվեցին տնտեսության զարգացման համար։ Ստեղծվեցին խաղաղ պայմաններ, հաստատվեցին կարգ ու կանոն, օրենք, և ժողովուրդը կարող էր առանց ահ ու սարսափի զբաղվել իր տնտեսությամբ։ Նախորդ շրջանի նման, երկրի տնտեսական կյանքում առաջին տեղը գրավում էր գյուղատնտեսությունը, իսկ երկրորդ տեղը՝ արհեստագործությունը։ Միայն Հայկական մարզում, որ կազմվել էր 1828 թ. նախկին Երևանի ու Նախիջևանի խանությունների տարածքներից և կազմում էր Հայաստանի միայն մոտ $^{1}/_{8}$ մասը, 1830-ական թվականներին կային շուրջ 10 հազար արհեստավորներ։ Արհեստների աչքի ընկնող կենտրոններ էին Երևանը, Ալեքսանդրապոլը, Ախալցխան, Կարսը, Նախիջևանը, Շուշին, Էրզրումը, Վանը, Երզնկան, Բիթլիսը, Սեբաստիան, Մալաթիան, Մուշը, Շատախը։ Հայաստանում այդ շրջանում արհեստների թիվը հասնում էր մոտ 120-ի։ Արհեստավորական տեխնիկան պարզունակ էր, սակայն որոշ արհեստներ իրենց արտադրանքի որակով հասել էին բարձր մակարդակի և մեծ համբավ ունեին նույնիսկ երկրից դուրս։ Ինչպես և նախկինում, արհեստավորները համախմբված էին Արևելյան Հայաստանում՝ համքարություններում, իսկ Արևմտյան Հայաստանում՝ էսնաֆություններում։ Բազմաթիվ արհեստների մեջ ամենից տարածված էին՝ դարբնությունը, պղնձագործությունը, վարսավիրությունը, կավագործությունը, քարտաշությունն ու որմնադրությունը, հյուսնությունն ու ատաղձագործությունը, ջուլհակությունն ու մանածագործությունը, ներկարա-

բուծությունը, մետաքսագործությունը կաշեգործությունը, գորգագործությունը, ոսկերչությունն ու արծաթագործությունը, զինագործությունը, պայտարությունը և այլն։

Արևելյան Հայաստանում արհեստները աշխուժացման շրջան էին ապրում XIX դարի 50—60-ական թվականներին, սակայն 70-ական թվականներից, ռուսական ֆաբրիկային արտադրության ազդեցության տակ, նրանք աստիճանաբար քայքայվում և անկում են ապրում։ 90-ական թվականներից Արևմտյան Հայաստանում ևս արհեստները քայքայվում են։ Սակայն այստեղ այդ պրոցեսը տեղի էր ունենում ոչ թե մեքենայական արդյունաբերության ճնշման (Թուրքիան հետամնաց երկիր էր), այլ սուլթանների հայաջինջ քաղաքականության հետևանքով. Արևմտյան Հայաստանի բազմահազար արհեստավորներ 1895—96 և 1915—16 թվականներին զոհ գնացին թուրքական յաթաղանին, իսկ մի կերպ ողջ մնացածները բռնեցին արտագաղթի ճանապարհը։

XIX դարի առաջին կեսին, արդի իմաստով, Հայաստանում արդյունաբերական ձեռնարկություններ չկային և ժամանակի վիճակագրության հիշատակած «գործարաններն» ու «ֆաբրիկաները» օճառի, կաշվի, ներկարարական, գինեգործական, օղու, աղյուսի, կավագործական և այլ ձեռնարկությունները, սոսկ տնայնագործական էին, ամբողջապես հենված ձեռքի աշխատանքի վրա։ Այդ կարգի ձեռնարկություններ կային Երևանում, Ալեքսանդրապոլում, Էրզրումում, Վանում, Երզնկայում և այլ քաղաքներում։ Շատ թե քիչ արդյունաբերական բնույթ ուներ միայն աղի հանույթը, ինչպես նաև պղնձի, արծաթի հանույթն ու նախնական մշակումը, որ կատարվում էին Կողբի, Նախճավանի, Կաղզվանի աղահանքերում, Գյումուշխանեի արծաթի հանքավայրերում (պատմական Փոքր Հայքում), Ալավերդու, Ախթալայի, Շամլուղի, Կավարտի, Ղաթարի, Հալիձորի, Ագարակի պղնձահանքերում և այլուր։

1890-ական թվականներից Արևելյան Հայաստանի արդյունաբերությունն սկսում է բավական արագ զարգանալ։ Արդյունաբերության հին ճյուղերը ենթարկվում են որոշ կատարելագործման, առաջանում են նոր ճյուղեր։ Երկրի կյանքում նշանակալի դեր են սկսում խաղալ մասնավորապես Երևանում հիմնված գինու-կոնյակի-օղու գործարանները։ Դրանց արտադրանքը, մանավանդ կոնյակը, հանրահայտ էր ոչ միայն Հայաստանում, Անդրկովկասում և Ռուսաստանում, այլև արտա-

սահմանյան բազմաթիվ երկրներում։ Արդյունաբերության զարգացմանը մեծապես նպաստում է Թիֆլիս—Ալեքսանդրապոլ և Ալեքսանդրապոլ—Կարս երկաթուղիների կառուցումը։

Բայց և այնպես, առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին Արևելյան Հայաստանը հետամնաց գյուղատնտեսական երկիր էր, իսկ եղած արդյունաբերությունն էլ անկման հասավ պատերազմի և դաշնակցության տիրապետության տարիներին։ Էլ ավելի աննշան էր Արևմտյան Հայաստանի արդյունաբերությունը, որն ուղղակի կործանվեց 1915 թ. երիտթուրքերի կազմակերպած ցեղասպանության հետևանքով։

Հայաստանի տնտեսության մյուս ճյուղը, որը արհեստագործության նման նույնպես հիմնականում քաղաքային զբաղմունք էր, ներքին ու արտաքին առևտուրն էր։ Հայ վաճառականները առևտուր էին անում և՛ երկրի ներսում, և՛ դրսում։ Ներքին առևտուրը, ընդհանրապես մանրածախ էր և թույլ էր զարգացած։ Հայ վաճառականներն իրենց խոշոր կապիտալները ներդնում էին գրեթե բացառապես արտաքին առևտրի մեջ։ Արևմտյան և Արևելյան Հայաստանի հայ վաճառականներն իրենց ձեռքն էին վերցրել Անդրկովկասի վրայով Ռուսաստանի և Պարսկաստանի, Ռուսաստանի և Թուրքիայի, ինչպես նաև Պարսկաստանի ու Թուրքիայի միջև կատարվող առևտուրը։ Նրա՞ք պարսկական, թուրքական, հայկական և անդրկովկասյան ապրանքները վաճառքի էին հանում Ռուսաստանում և Արևմտյան Եվրոպայում, իսկ վերջիններիս ապրանքները՝ Անդրկովկասի և Արևելքի երկրներում։ Տարանցիկ առևտրի նկատմամբ Ռուսաստանն Անդրկովկասում ընդհանուր առմամբ կիրառում էր խրախուսող քաղաքականություն։ Այստեղ խճուղային ճանապարհների և երկաթուղիների կառուցումը մեծ խթան եղավ առևտրի զարգացման համար։ Առևտրի առաջընթացին նպաստում էին նաև խաղաղ պայմանները, տնտեսության ընդհանուր զարգացումը, կապիտալիզմի հաղթանակը երկրում։ Մինչդեռ Արևմտյան Հայաստանում՝ ամբողջ XIX դարում և XX դ. առաջին տասնամյակներում առևտուրը շարունակում էր մնալ միջնադարյան մակարդակի վրա՝ կրելով քարավանային առևտրի բնույթ։

Այս ժամանակների Հայաստանի քաղաքները խոշոր ու մարդաշատ չէին։ Դրանք դեռևս սերտորեն կապված էին գյուղատնտեսական զբաղմունքների հետ և արհեստներն ու ներքին

առևտուրը ունեին գերազանցապես միայն տեղական նշանակություն։ Բավական է ասել, որ Երևանի նահանգում կար միայն 5 ոչ խոշոր քաղաք (Երևան, Ալեքսանդրապոլ, Նախիջևան, Օրդուբադ, Նոր Բայազետ)։ Նույնքան քաղաքներ ուներ և Կարսի մարզը (Կարս, Սարիղամիշ, Կաղզվան, Արդահան, Օլթի)։ Մեծ թիվ չէին կազմում նաև Անդրկովկասի մյուս նահանգների՝ Ելիզավետպոլի ու Թիֆլիսի նահանգների հայկական կամ հայաշատ քաղաքները (Շուշի, Գորիս, Ախալքալաք, Ախալցխա)։ Իսկ Արևմտյան Հայաստանի մի քանի տասնյակ քաղաքներից (որոնց մեծ մասը կարելի է համարել գյուղաքաղաք) շատ թե քիչ նշանավոր էին Էրզրումը, Երզնկան, Կամախը, Սեբաստիան, Մալաթիան, Խարբերդը, Մուշը, Խլաթը, Բիթլիսը, Շատախը, Վանը, Բայազետը և այլն։ Այս վերջինները, ինչպես ասվեց, ամբողջ Արևմտյան Հայաստանի հետ միասին հայաթափվեցին։ Թուրքական յաթաղանին 1915—1916թթ. զոհ գնացած մեկուկես միլիոն հայերի զգալի մասը կազմում էր քաղաքային բնակչությունը։ Մեծ զոհեր տվեց նաև բռնի տեղահանված հայությունը. տեղահանված 600 հազար հայերից իրենց կյանքը փրկել և ռուսական զորքերի օգնությամբ Արևելյան Հայաստան ու Կովկաս են գաղթել միայն 350 հազարը։

# II. ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՊԱՐՍԿԱՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔՆԵՐԸ

**Պատմաաշխարհագրական համառոտ ակնարկներ**

## ԱԴԱՄԱԿԵՐՏ

*Կոչվում է նաև Հաղամակերտ։ Թուրքերն անվանում են Բաշկալե (Բաշկալա), իսկ սեպագիր արձանագրություններում հիշատակվում է* Adamma *ձևով։ Անունը ստուգաբանվում է երբայերեն «Ադամ», հայերեն «կերտ»։ Հիշատակվում է իբրև ավան, գյուղաքաղաք և քաղաք։*

*Գտնվում է Վանա լճից 78—80 կմ հարավ-արևելք, Տիգրիսի ձախակողմյան վտակ Մեծ Զավ (կամ Զաբ) գետի վերին հոսանքում, ընդարձակ սարավանդի արևմտյան մասում, ծովի մակարդակից 2250 մ բարձրության վրա։ Կլիման բարենպաստ է, հողն արգավանդ։ Ջրառատ է։ Նրա միջով է հոսում Մեծ Զավը։*

*Հնում Մեծ Հայքի Վասպուրական աշխարհի Մեծ Աղբակ գավառի կենտրոնն էր, Արծրունիների ոստանը։ Նոր ժամանակներում՝ Վանի նահանգի Հեքյարի գավառի կենտրոնը։*

*Գոյություն ունի հնագույն ժամանակներից։ Հիշատակվում է սեպագիր արձանագրություններում։ Ադամակերտի մասին վկայություն ունեն նաև Մովսես Խորենացին, Ղազար Փարպեցին, Թովմա Արծրունին և այլ պատմագիրներ։ Միջին դարերում Ադամակերտն ավելի շեն, մարդաշատ և նշանավոր կենտրոն է եղել, քան հետագայում։ XIX դարում և XX դ. սկզբներին այն փաստորեն սովորական գյուղական բնակավայրերից ոչնչով չէր տարբերվում, ո՛չ մարդաշատությամբ, ո՛չ բարեկարգման աստիճանով և ո՛չ էլ տնտեսությամբ ու մշակութային կյանքով։ XIX դարի 70-ական թվականների սկզբին ուներ ընդամենը 100 տուն բնակիչ, որից 40-ը հայկական, իսկ 55-ը քրդական, թուրքական և հրեական։ 1885-ին ուներ 100 տուն մահմեդական և 150 տուն հրեա բնակչություն։ 1909թ. քաղաքի տների թիվը*

մոտ 500 էր։ Ապրում էին հայեր, մահմեդականներ (քրդեր ու թուրքեր) և հրեաներ։ Գրեթե նույնքան էր նրա տների թիվը նաև առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին։ 1915 թվականին Ադամակերտի հայ բնակչությունը համանուն գավառի ողջ հայության հետ միասին՝ թվով 10 հազար մարդ, օգտվելով բարեպատեհ առիթից (այդ թվականին ռուսական զորքերը գրավել էին Ադամակերտը), գաղթել են Կովկաս՝ փրկվելով կոտորածից։

Ադամակերտի հայերը հիմնականում զբաղվում էին երկրագործությամբ և վաճառականությամբ, թուրքերն ու հրեաները՝ մանր առևտրով, իսկ քրդերը՝ խաշնարածությամբ։ Հին ժամանակներից ի վեր Ադամակերտով էր անցնում Թավրիզ—Վան—Բաղեշ (Բիթլիս) ճանապարհը, որն իր նշանակությունը մասնակիորեն պահպանել էր նաև նոր ժամանակներում։ Չնայած իր փոքրությանը՝ Ադամակերտը XIX դարում և XX դարի առաջին քառորդում առևտրի նշանակալի կենտրոն էր։ Քաղաքի խանութների և կրպակների թիվը հասնում էր 100-ի։

Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ Ադամակերտում և համանուն գավառում տեղի են ունեցել մարտեր, որոնցում կարևոր դեր է խաղացել զորավար Անդրանիկը։

Ադամակերտում եղել է համանուն վանքը, որի պատմությունը մեզ համար մնում է անծանոթ։ Թովմա Արծրունու վկայությամբ, այդ վանքում է հանգչում Վահան Մամիկոնյանի քեռու՝ Աղան Արծրունու (V դ.) աճյունը։ Քաղաքը նոր ժամանակներում ուներ մի փայտաշեն եկեղեցի։

Ադամակերտն ուներ իր բերդը, որի պաշտպանական պարիսպներն ու մյուս կառուցվածքները ավերել ու քարուքանդ են արել օսմանյան Իսմայիլ փաշայի զորքերը այն քրդերից գրավելու ժամանակ։

Ադամակերտի համար մշակութային առումով կարևոր նշանակություն է ունեցել ս. Բարդուղիմեոսի վանքը, որը գտնվում է 21—22 կմ հեռավորության վրա և մեծ դեր է խաղացել միջնադարյան Հայաստանի մտավոր կյանքում ընդհանրապես։ XIX դ. երկրորդ կեսին և XX դարի սկզբներին Ադամակերտի հայությունն ուներ մի դպրոց, որը գրագիտություն էր տալիս մանուկներին։

## ԱԼԱՇԿԵՐՏ

Ալաշկերտը տարբեր ժամանակներում հիշատակվում է իբրև ավան, գյուղաքաղաք, բերդաքաղաք, քաղաք։ Այն համապատասխանում է ուրարտական սեպագիր արձանագրություններում հիշատակված Անաշա կամ Ալաշա քաղաքին, որ հետագայում հայտնի է դարձել Վաղարշակերտ, իսկ ապա՝ Ալաշկերտ անունով։

Արևմտյան Հայաստանի հազարավոր անունների նման Ալաշկերտի անունը ևս թուրքական տիրապետության շրջանում «թուրքացվել» է։ XV դարից թուրքերն այն կոչել են Թոփրախկալա (Հողե բերդ)։ Նրանք այդ անունն են տվել նաև ուրարտական ժամանակներից ժառանգված Վանի միջնաբերդին և Վաղարշավան քաղաքին (որ հետո կոչվեց Հասանկալա)։ Մասամբ այդ է պատճառը, որ որոշ ուսումնասիրողներ Վաղարշավան-Հասանկալան շփոթել են Ալաշկերտ-Թոփրախկալայի հետ։

Ալաշկերտը գտնվում է համանուն դաշտում, նրա հյուսիսային ծայրաշրջանում, Սուկավետ լեռնագագաթի ստորոտին, Արածանիի աջակողմյան վտակ Շարիան գետի վտակներից մեկի հովտում։ Ծովի մակերևույթից բարձրությունն ավելի քան 1700մ է։ Կլիման զով է, նման Շիրակի դաշտի կլիմային։ Շրջակայքում փռված են սևահողային արգավանդ ընդարձակ դաշտեր։ Քաղաքին հարակցող վայրերն աղբյուրաշատ են, իսկ բուն Ալաշկերտը սակավաջուր է։ Հնում շրջակայքի աղբյուրներից կավե խողովակներով խմելու ջուր էին բերել քաղաք և այդ հնագարյան ջրմուղի մնացորդները նշմարվում էին մինչև մեր դարի սկիզբը։

Ալաշկերտը Հայաստանի հնագույն բնակավայրերից է։ Այն գոյություն ուներ դեռևս ուրարտական ժամանակներից՝ VIII դարից (մ. թ. ա.)։ Ըստ հայկական աղբյուրների Ալաշկերտը հիմնադրվել է II դարի վերջում (մ. թ.) Վաղարշ թագավորի ձեռքով և նրա անունով էլ կոչվել է Վաղարշակերտ։ Համանուն շրջանի հետ միասին Վաղարշակերտ-Ալաշկերտը մինչև 439 թվականը պատկանում էր Լուսավորչի տան կաթողիկոսներին, որոնց վերջին ներկայացուցիչ Սահակ Պարթևի մահից հետո, նրանց պատկանող մյուս տիրույթների հետ միասին, Վաղարշակերտը նույնպես անցնում է Մամիկոնյանների ձեռքը։ VII դարում այն գրավում են արաբները, IX—XI դարերում մտնում էր Բագրա-

տունիների թագավորության մեջ, XI—XII դարերում այստեղ իշխում էին սելջուկ թուրքերը, XIII դարի սկզբներին օտարի տիրապետությունից ազատագրվում է Զաքարյան իշխանների կողմից, սակայն նույն XIII դարում գրավում են մոնղոլները, XIV—XV դդ. ընկնում է թուրքմենական ցեղերի, իսկ դրանից հետո՝ օսմանյան թուրքերի տիրապետության տակ։ Նոր ժամանակներում Ալաշկերտը ռուսների կողմից մի քանի անգամ (1828, 1877—78, 1914թթ.) ազատագրվում է թուրքական լծից, բայց շատ կարճատև ժամանակով և նորից է անցնում Թուրքիայի տիրապետության տակ։

Ուրարտական սեպագիր արձանագրությունների հաղորդած տեղեկություններից և հնագիտական նյութերից երևում է, որ Ալաշկերտը VIII—VII դարերում (մ. թ. ա.) եղել է բերդաքաղաք և ուրարտական կայազորի տեղադրավայր։ Հետագայում Մեծ Հայքի Այրարատյան աշխարհի Բագրևանդ ընդարձակ գավառի կենտրոնն էր և վերջինիս հետ միասին մինչև 439 թվականը, ինչպես ասվեց, պատկանում էր Լուսավորչի տան կաթողիկոսներին, իսկ դրանից հետո նախ անցնում է Մամիկոնյան նախարարական տանը, իսկ VIII դարի վերջերից, կամ IX դարից՝ Բագրատունիներին։ Ալաշկերտը զգալի դեր է խաղացել նաև իբրև հոգևոր կենտրոն։ VII դարից ի վեր, երբ Ներսես Տայեցի Շինող կաթողիկոսն այստեղ կառուցեց ս. Աստվածածին կաթողիկե եկեղեցին՝ այն դարձել էր Բագրևանդի ու Արշարունիքի եպիսկոպոսանիստը։ Թուրքական տիրապետության շրջանում Ալաշկերտը դարձյալ վարչական առումով ուներ որոշակի նշանակություն. այն Էրզրումի գավառի Ալաշկերտի գավառակի (կազա) կենտրոնն էր, որ երբեմն մտել է նաև Բայազետի գավառի մեջ, իսկ 1877—1878 թվականներին, երբ ժամանակավորապես Ռուսաստանին էր միացված Էրզրումի նահանգը և վերջինիս տարածքից կազմվել էր համանուն մարզը, Ալաշկերտը նույնանուն օկրուգի կենտրոնն էր։

Հին և միջնադարյան Վաղարշակերտ-Ալաշկերտի բնակչության թվի վերաբերյալ մեզ տեղեկություններ չեն հասել։ Ըստ երևույթին այդ ժամանակներում Ալաշկերտն էլ Հայաստանի միջնադարյան մյուս գյուղաքաղաքների նման ունեցել է առավելն մինչև 10 հազար բնակիչ։ Նոր ժամանակներում այն երբեք այդքան բնակիչ չի ունեցել։ Ըստ հիշատակությունների,

XVIII դարի վերջերին Ալաշկերտն ունեցել է 1300 տուն կամ 6500—7000 բնակիչ (մեկ ծուխը հաշվելով շուրջ 5 բնակիչ)։ 1877—1878 թվականներին նա ուներ 1869 բնակիչ, որի մոտավորապես կեսը հայեր էին, իսկ մյուս կեսը՝ քրդեր ու թուրքեր[1]։ XX դարի սկզբին նրա բնակչության թիվը շուրջ երկու հազար մարդու էր հասնում, իսկ մեր դարի 60-ական թվականներին մոտ 4000 մարդու, գրեթե բացառապես քրդեր ու թուրքեր։

Արևմտյան Հայաստանի մյուս բնակավայրերի նման թուրքական կառավարողների գործադրած բռնությունների, հարստահարության և բացահայտ ցեղասպանության հետևանքով Ալաշկերտը զրկվել է հայ բնակչությունից։ Նրանց մի մասին այնուամենայնիվ հաջողվել է գաղթել ու բնակություն հաստատել ներկայիս ՀՍՍՀ-ի տարածքում։ Այսպես, 1829 և 1878 թվականներին Ալաշկերտից բավական թվով հայեր գալիս ու բնակվում են այժմյան Մարտունու և Հոկտեմբերյանի շրջաններում։ Մարտունու շրջանում, որ այն ժամանակներում մտնում էր Նոր Բայազետի գավառի մեջ, նրանց զբաղեցրած տարածքը հայտնի դարձավ Նոր Ալաշկերտ անունով։ Մյուս համեմատաբար մեծ գաղթը տեղի է ունեցել առաջին համաշխարհային պատերազմի տարիներին՝ 1914—1915 թվականներին։ Սակայն Արևելյան Հայաստան գաղթած բնակչությունը Ալաշկերտի հայ բնակչության միայն մի մասն էր կազմում, նրա մնացած մասը 1895 և 1915 թվականներին բնաջնջվեց թուրքական ցեղասպանների կողմից։

Առաջին համաշխարհային պատերազմի ընթացքում ցարական կառավարությունը ջանքեր է գործադրում Ալաշկերտի հովտում 50 հազար կազակներ վերաբնակեցնելու համար՝ այդ նպատակով այստեղ կառուցելով գյուղեր ու ճամբարներ, բայց 1917 թվականի դեպքերը կասեցնում են Նիկոլայ II-ի մտադրությունները։

Ալաշկերտի բնակչության տնտեսությունը ոչնչով չէր տարբերվում Արևմտյան Հայաստանի մյուս տասնյակ գյուղաքաղաքների տնտեսության ճյուղերից։ Այստեղ նույնպես բնակչության հիմնական զբաղմունքը երկրագործությունը անասնապահությունը, արհեստներն ու առևտուրն էր։ Երկրագործության համար Ալաշ-

---

[1] Ս. Հայկունի, Բագրևանդ։ Ջրաբաշխ գավառ, մասն Ա, Վաղարշապատ, 1894թ, էջ 16 և 52։

կերտի բնակլիմայական պայմանները բացառիկ են. Նրա շուրջը տարածվում են սևահողային ընդարձակ հարթություններ, որոնք իրենց բերրիությամբ ոչնչով չեն զիջում հնագույն ժամանակներից երկրագործության կարևոր շրջան դարձած Շիրակի դաշտին։ Արհեստներից Ալաշկերտում հայտնի էին պղնձագործությունը, թիթեղագործությունը, դարբնությունը, կոշկակարությունը, կավագործությունը, ներկարարությունը, համետագործությունը, զինագործությունը, դերձակությունը և այլն։ Սակայն քաղաքի արհեստագործության նշանակությունը սահմանափակվում էր համանուն գավառի շրջանակներով, արհեստավորների ու արհեստանոցների թիվը փոքր էր և նրանք հազիվ բավարարում էին տեղական բնակչության կարիքները։ Ալաշկերտը գտնվում էր Արածանի և նրա աջակողմյան վտակ Շառիանի հովտով ձգվող առևտրական քարավանային ճանապարհի վրա ու մասնակցում էր միջազգային առևտրին։ Նոր ժամանակներում այստեղով էր անցնում Էրզրում—Մակու ճանապարհը։ Քաղաքն ուներ երկու շուկա, որոնցից մեկը հինն էր, որ գտնվում էր բերդի ստորոտին և ավանդության համաձայն ունեցել է 1500 կրպակ ու խանութ։ Վաղեմի այս շուկայի ավերակների վայրում տարբեր ժամանակներում հայտնաբերվել են մեծ քանակությամբ արծաթյա դրամներ։ Իսկ մյուսը նոր շուկան էր, XIX դարում և XX դ. սկզբներին ունենալով 100 խանութ ու կրպակ, որոնցից 20-ը կտորեղենի և նույնքան էլ մրգավաճառի։ Քաղաքում գործում էին ճաշարաններ, չորս գինետուն, սրճարաններ և այլն։

Ալաշկերտի շենքերի մեծագույն մասը պարզապես գյուղական խրճիթներ էին, իսկական հյուղեր։ Սրբատաշ քարից կառուցված էին միայն մի քանի շենքեր, որոնք ոչնչով չէին փոխում գյուղաքաղաքի ընդհանուր խղճուկ տեսքը։ XX դարի սկզբներին քաղաքն ուներ մի շարք շեն ու ավերված թաղեր՝ Բեյջան, Սորանցոց, Դարաղաշի, Գետի, Միրանի և այլն։

Ալաշկերտի հնություններից և պատմական հուշարձաններից են բերդը, եկեղեցիների ավերակները, ուրարտական սեպագիր մի քանի արձանագրություններ։ Նրա բերդը, որ հիմնադրվել էր տակավին ուրարտական ժամանակներում, գտնվում էր բուն քաղաքից 2—2,5 կմ հեռավորության վրա, Սուկավետ լեռնագագաթի մոտ, մի սրածայր լեռան վրա։ Այն կառուցված է եղել կրաքարով և սովորական ցեխի շաղախով։ Ավանդության ասն-

լով, որպեսզի բերդի պարիսպը չքանդվի, նրա կառուցման ժամանակ իբր շարվածքի մեջը դրել են մի ողջ աղջկա և երբ հետագայում, այնուամենայնիվ, պարիսպը քանդվել է, իբր շատերը տեսել են աղջկա գլխի տեղն ու պահպանված մազերը: Այդ բերդը նախ մեծապես տուժել էր 1828 թ. ռուսական զորքերի գրոհի հետևանքով և ապա միանգամից փլվել: XIX դարի վերջերին դեռևս նշմարվում էին բերդի ջրատար խողովակների, գետնուղիների հետքերը, պարիսպների ավերակները, զանազան նշանակության շենքերի փլվածքները:

XIX դարի վերջերին և XX դ. սկզբներին տակավին պահպանվել էին նաև VII դարում կառուցված և մի քանի դար եպիսկոպոսանիստ դարձած՝ գմբեթավոր ս. Աստվածածին եկեղեցու, ինչպես նաև ս. Կիրակոս վանքի ավերակները: Ալաշկերտը նոր ժամանակներում ուներ նաև մի կիսավեր փայտածածկ եկեղեցի, որ մի քանի անգամ քանդվել էր թուրքական և քրդական խուժանի կողմից, իսկ 1889թ.՝ հրդեհվել: Քաղաքի ս. Խանում կոչված աղբյուրի մոտ կար ընդարձակ հին հայկական գերեզմանոց, որտեղ պահպանվել էին նաև մի ոչ պակաս հին եկեղեցու հիմնապատերը:

Ալաշկերտում 1880-ական թվականներին գործում էր մի հայկական վարժարան, իսկ նույն դարի վերջերին և XX դարի սկզբներին այստեղ կային երկու հայկական և մեկ թուրքական կրթարաններ:

## ԱԿՆ

Հիշատակվում է նաև Մարընտուհիկ անունով և Ակին տարբերակով: Թուրքերն աղավաղելով կոչել են Էգին, իսկ այժմ՝ վերանվանել Քեմալիե: Հավանաբար Ակն է կոչվել քաղաքի միջով հոսող Ակնաղբյուրի անվան հետ կապված: Կիսավանդական պատմության համաձայն, Անիի ողբալի կործանումից հետո նրա բնակիչների մի մասը եկել է այստեղ և հանդիպելով սառնորակ ու քաղցրահամ աղբյուրի՝ դրա մոտ էլ հիմնել է նոր քաղաքը, այն կոչելով Ակն: Այլ պատմության համաձայն այս քաղաքը հիմնադրել են ոչ թե անեցիները, այլ Վասպուրականի. Արծրունիները, որոնք իրենց թագավորությունը 1021—1022 թվական-

ների Բյուզանդիային հանձնելով՝ Սեբաստիայի հետ միասին իբրև փոխհատուցում ստացել էին նաև Ակնի շրջանը։

Ակնի մասին տեղեկություններ են հաղորդում շատ աղբյուրներ։ Դրանցից ոմանք երբեմն այն համարել են գյուղաքաղաք, իսկ մյուսները՝ քաղաք, որ ավելի ճիշտ է։

Ակնը գտնվում է Արևմտյան Եփրատի (Կարա-սու) ափին, Տավրոսյան և Անտիտավրոսյան լեռնաշղթաների միջև, Երզնկայից Խարբերդ տանող ճանապարհին։ Բարձրությունը ծովի մակարդակից ավելի քան 1000 մետր է։ Քաղաքը տեղադրված է գեղատեսիլ զառիթափ լեռնալանջի վրա, ամֆիթատրոնի ձևով։ Նրա ստորին մասը՝ Եփրատի ափին տարածվող թաղերի և գետի երկու ափերով ձգվող լեռնաճյուղերի բարձրադիր լանջերին եղած քաղաքամասերի բարձրությունների տարբերությունները նույնպես հասնում է 1000 մետրի։ Ցածրում, գետի ափին, հաջողությամբ աճում է խաղողը, մինչդեռ լեռնագագաթներին հաճախ նույնիսկ գարին չի հասունանում։ Քաղաքն ունի հորդառատ բազմաթիվ աղբյուրներ և աննման օդ։ Քաղաքի մեջ մի քարաժայռի տակից բխում է սառնորակ, բարեհամ աղբյուր, որ հայտնի է Ակն կամ Ակնծով անունով։ Գետակ կազմող այդ աղբյուրը միանալով Խնկաձոր կոչված առվին՝ խլացուցիչ շառաչով գահավիժելով զառիթափ լեռնալանջով՝ թափվում է Եփրատի մեջ։ Քաղաքի թաղերի միջև և շրջակայքում տարածվում են բազմաթիվ այգիներ ու պարտեզներ։ Այդ բոլորը մի առանձին հմայք են տալիս Ակնին, այն դարձնելով պատմական Հայաստանի ամենագեղատեսիլ քաղաքներից մեկը։ Քաղաքի շրջակայքում կան պղնձի երևակումներ և բովեր, որոնք մշակվել են հին ժամանակներից։

Հնում Ակնը մտնում էր Փոքր Հայքի Երկրորդ Հայք (ըստ Հուստինիանոսի վարչական վերափոխման՝ Երրորդ Հայք նահանգի) պրովինցիայի մեջ։ Նոր ժամանակներում մտել է երբեմն Էրզրումի, երբեմն՝ Խարբերդի, երբեմն էլ՝ Սեբաստիայի նահանգի (վիլայեթի) մեջ, լինելով Ակնի գավառակի (գավառի) կենտրոնը։ Ակնի եկեղեցական թեմն ունեցել է հայտնի առաջնորդներ, որոնցից նշանավոր է հատկապես հայկական մշակույթի երախտավոր Գարեգին Սրվանձտյանը։

XIX դարի սկզբին քաղաքն ունեցել է շուրջ 10000 բնակիչ, որից մոտ 5500-ը՝ հայեր, 1880 թվականի տվյալներով ունեցել է 5442 հայ և 4286 թուրք ու հույն բնակիչ, XIX դարի վերջերին

Նրա բնակչությունը հասնում էր 20 հազար մարդու, որի կեսը հայեր էին, իսկ մյուս կեսը՝ թուրքեր ու մասամբ հույներ[2]: Ակնեցիները պանդխտել են Պոլիս: Պանդուխտների քաղաք էր Ակնը և պանդխտությունը նրա գլխավոր աղետներից մեկն էր: Ակնեցիք ունեին իրենց բարբառը: 1896թ. փետրվարի 3-ին թուրք հրոսակները հարձակվում են Ակն քաղաքի, իսկ քրդերը՝ նրա շրջակայքի հայկական գյուղերի (Լիճք, Բինկյան, Ձմարա, Կասմա, Ապուշեխ, Կամարակապ և այլն) վրա՝ կոտորելով բնակիչներին և կողոպտելով ու հրդեհելով տները: Միայն զոհվածների թիվը հասել էր 3000 մարդու: Հետագա երկու տասնամյակների ընթացքում քաղաքը նորից վերաշինվել է: Սակայն Արևմտյան Հայաստանի մյուս տասնյակ քաղաքների և հարյուրավոր գյուղերի հետ միասին Ակնը նույնպես ենթարկվում է 1915 թվականի մեծ աղետին: Առաջին համաշխարհային պատերազմից հետո 400-ի հասնող տարագրված ակնեցի հայեր նորից են վերահաստատվում իրենց հայրենի քաղաքում, սակայն թուրքական նոր բռնությունների հետևանքով դրանց զգալի մասը լքում է Ակնը և դիմում արտագաղթի: 1929 թվականի տվյալներով Ակնում մնացել էր միայն 41 հայ բնակիչ: Նրա հայ բնակչության մեծ մասը գրագետ էր:

Ակնը վարելահող գրեթե չուներ: Նրա հայ բնակչությունը վարպետ արհեստավորներ ու առևտրականներ էին: Գրեթե բոլոր քաղաքացիներն ունեին իրենց պարտեզներն ու փոքրիկ այգիները: Կարևոր զբաղմունք էր նաև շերամապահությունը: Արհեստներից տարածված էին դերձակությունը, ջուլհակությունը, կոշկակարությունը, դարբնությունը, երկաթագործությունը, մանածագործությունը և այլն: XIX դարի վերջերում Ակնում հաշվվում էին մինչև 300 խանութներ, կրպակներ, արհեստանոցներ ու պանդոկներ: Քաղաքն ուներ ներքին աշխույժ առևտուր: Նրա արտահանած ապրանքներից կարևոր էին բամբակյա ու մետաքսյա գործվածքները, կաշվե ու մորթե մուշտակները և այլ ապրանքներ, որոնք հիմնականում վաճառվում էին Խարբերդում, Սեբաստիայում, Երզնկայում և այլ քաղաքներում:

Ի հակադրություն վաղեմի փառքի, ներկայումս մի անշուք գավառական քաղաք է, որ ինչպես ասվեց, թուրքերը պաշտոնապես կոչում են Քեմալիե:

---

2 Ս. Մ. Սոցիկյան, Արևմտահայ աշխարհ, Նյու Յորք, 1947, էջ 50—57:

Մեզ հետաքրքրող ժամանակներում՝ XIX դարում և XX դարի առաջին քառորդում, Ակնը ձգվում էր 4—5 կմ երկարությամբ, բաժանված լինելով երկու թաղի՝ Վերին և Ներքին։ Վերին թաղում էր գտնվում Բերդի աղբյուրը (Ժամու աղբյուրը)։ Քաղաքի այս թաղի հայությունը երկար ժամանակ դիմադրում էր թուրքերի հարձակումներին, սակայն 1896 թվականի կոտորածների ժամանակ գրեթե ամբողջովին բնաջնջվեց և բոլոր շենքերը հրկիզվեցին թուրքական զորքի ձեռքով, միայն մնացին ս. Աստվածածին եկեղեցու չորս պատերը. Թուրքերը հայոց այդ եկեղեցու փլատակների տեղում կառուցեցին իրենց զորանոցը։ Ներքին կամ Վարի թաղն ավելի ջրառատ էր և այգիներով ու պարտեզներով հարուստ։ Այս թաղում էր գտնվում 1874—76 թթ. կառուցված ս. Գևորգ եկեղեցին։ Քաղաքի արևմտյան կողմը պարսպապատ էր, իսկ արևելյան կողմը բնականից անմատչելի է. այս մասում Եփրատի ապառաժոտ ու անդնդախոր ձորն է։ Ակնը մաքուր քաղաք էր, բարեկարգ, սալահատակված փողոցներով։ Տները մեծ մասամբ երկհարկ և եռահարկ էին, քարաշեն։ XIX դարի սկզբներին ուներ մինչև 2200 տուն, որոնք շինված էին առվի երկու ափերին, զառիվայր լեռան լանջին՝ աստիճաններով։ 1300—1321թթ. Անիից այստեղ տեղափոխված հայերը հիմնադրել էին իրենց թաղամասը ս. Հակոբ եկեղեցիով։

Ակնը հայտնի էր իր ճարտարապետական մի շարք կառույցներով՝ վանքերով, եկեղեցիներով, կամուրջներով, շրջակայքի հնություններով։ XI դարում Ակնում կառուցել են Նարեկա վանքը (Ոշտունիքի համանուն վանքի անունով), իսկ ավելի ուշ՝ ս. Նշան վանքը (Վարագի ս. Նշան վանքի անունով)։ Հիշատակությունների համաձայն Ակնում եղել է Անի անունով մի բերդ։ Ուշադրության արժանի է քաղաքում բարձրացող լեռան կատարի հսկայական ժայռը, որը շղթաներով շրջափակել էին, ստորոտում գտնվող մզկիթը նրա հնարավոր փլուզումից վնասազերծելու համար։

XIX դարի վերջերին ուներ երկու գործող եկեղեցի՝ ս. Աստվածածին (կամ Մայր տաճար) և ս. Գևորգ անուններով, որոնցից առաջինը գտնվում էր Վերին թաղում, իսկ երկրորդը՝ Վարի։ Հնում քաղաքում գոյություն ուներ նաև ս. Հովհաննես Ոսկեբերան հայրապետի անունով եկեղեցի, որ հրկիզվել էր 1655 թվականին։ Քաղաքն ուներ մի շարք մզկիթներ։ Դրանցից ճարտարապետական առումով հետաքրքրություն էր ներկայացնում

միայն մեկը, որ հնում հայկական եկեղեցի էր՝ ս. Հակոբ անունով և թուրքերի կողմից վերածվել էր մզկիթի։

Քաղաքի բուն տարածքում Եփրատ գետի վրա կար երկու կամուրջ։ Այդ կամուրջներից մեկը քարակերտ էր, որի մի հիմքը բնական ապառաժն է, իսկ մյուսը՝ քարաշեն։ Երկրորդ կամուրջը փայտաշեն էր։ Դրանցից առաջինը կոչվել է Շրզուի կամուրջ կամ Նոր կամուրջ, իսկ երկրորդը՝ Հին կամուրջ։

Ակնի շրջակայքում կան մի շարք գյուղեր, քարաշեն մատուռներ-ուխտատեղեր՝ ս. Հակոբ, ս. Փրկիչ, Նարեկա, ս. Կոզմոս, ս. Դամինոս, ս. Թալալու և այլն։ Ակնի արվարձաններից են՝ Ինջի-դուզին, Տափուռը, Արեգին, Բերդաթաղը։

Ակնը նշանակալի դեր է խաղացել հայ մշակույթի զարգացման մեջ։ Նախ և առաջ հայտնի էր իր ժողովրդական երգերով, անտունիներով, տաղերով։ Ժողովրդական շատ երգիչներ է տվել Ակնը։ Նա հայոց մշակույթի պատմության մեջ իրավամբ համարվում է երկրորդ Գողթն, գուսանների նշանավոր կենտրոն, որտեղ նույնպես դարեր շարունակ պահպանվել էին ու բերնեբերան հաղորդվում էին հեթանոսական զանազան երգեր։ Գողթնի նման Ակնում նույնպես հեթանոսական կենցաղի մնացորդները պահպանվում էին մինչև մեր օրերը։

Ակնը գրչության կենտրոն էր։ Մեզ են հասել այստեղ գրված ձեռագրեր, հիշատակարաններ։ XIX դարում և XX դարի սկզբներին այստեղ գործում էին երկսեռ երկու վարժարան՝ Նարեկյան և Ներսիսյան, ինչպես և չորս մասնավոր դպրոցներ, որոնք բոլորը միասին 1872—73թթ. ունեին 360 աշակերտ։ Եկեղեցիներին կից XIX դարի երկրորդ կեսում գործում էին երկու «դպրատուն»։ Այստեղ կազմակերպվել էին ազգային չորս ընկերություններ՝ Ազգասիրական, Ուսումնասիրական, Արամյան և Նարեկյան։ ԱՄՆ գաղթած ակնեցիները 1945 թ. հիմնել են Ակնա Հայրենակցական միությունը։ Իսկ դրանից շատ առաջ, 1898 թ. նրանք Բոստոնում կազմակերպել էին Ակնա Ուսումնասիրաց ընկերությունը։ 1870 թվականից քաղաքում լույս են տեսել «Ծաղիկ», «Եփրատ», «Մտրակ» թերթերը։

Ակնը տվել է հայ մշակույթի ականավոր շատ գործիչներ՝ Ա. Արփիարյան, Մ. Մեծարենց, Գ. Զոհրապ, Սիամանթո, Ա. Չոպանյան, Մինաս Չերազ, Ն. Գալանտերյան (կոմպոզիտոր), Երեմիա Չելեպի Քյոմուրճյան, Արտավազդ արքեպիսկոպոս Սյուրմեյյան, Լևոն Գասպարյան (բժիշկ) և ուրիշներ։ Մասնագետ-

ներից շատերը ավնեցի են համարում նաև միջնադարյան հայ մեծ բանաստեղծ Նահապետ Քուչակին։ Մոտ 200 տարի Ակնը ամիրայական նշանավոր գերդաստաններ է տվել Պոլսին, Զմյուռնիային և վաճառաշահ այլ քաղաքներին։

## ԱՄԱՍԻԱ

Երբեմն կոչել են Ռումի Բաղդատ (=հույների Բաղդատ), բայց այն տարածում չի ստացել և քաղաքը ավելի քան 2500 տարի է, ինչ պահպանել է Ամասիա անունը։ Ոմանք ենթադրաբար նույնացնում են խեթական Կարախանա բնակավայրի հետ։ Հիմնադրման օրից ցայժմ Ամասիան համարվել է քաղաք։

Գտնվում է Սև ծովը թափվող Իրիս (այժմ Եշիլ-իրմակ) գետի վրա, որը քաղաքը բաժանում է երկու մասի։ Բարձրությունը ծովի մակերևույթից 366 մ է։ Ունի հանքային ջրեր և հորդաբուխ աղբյուրներ։ Շրջակայքում անցյալում կային արծաթի հանքեր, որոնց պաշարներն այժմ սպառված են։ Հարուստ է այգիներով, հատկապես՝ թթաստաններով։

Հնում մտնում էր Փոքր Հայքի Առաջին Հայք պրովինցիայի, իսկ Հուստինիանոս կայսեր (527—565) վարչական վերափոխությունից հետո՝ Երկրորդ Հայքի մեջ։ Այժմ Ամասիա գավառի (սանջակ) և գավառակի (կազա) կենտրոնն է, որոնք պատկանում են Սեբաստիայի (Սվազի) նահանգին։

Երկարաձիգ ու հարուստ պատմություն ունի Ամասիան։ Պատմագիրները նրա հիմնադրումը վերագրում են Ալեքսանդր Մակեդոնացու ժամանակներին (IV դ. մ. թ. ա.)։ Նրանք հաղորդում են, որ քաղաքը կառուցվել է Ալ. Մակեդոնացու հրամանով՝ նրա հորեղբայր Ամասիայի կողմից, իսկ հետագայում ընդարձակել ու վերակառուցել էր Միհրդատ Պոնտացին (I դ. մ. թ. ա.), դարձնելով իր մայրաքաղաքը։ Այդ ժամանակներում Ամասիան Փոքր Հայքի ամենանշանավոր քաղաքներից էր և բանուկ ճանապարհներով կապված էր Եվդոկիայի, Սեբաստիայի ու Խարբերդի հետ։ Ստրաբոնը գրում է, որ իր հայրենի քաղաք Ամասիան ամուր քաղաք էր, շրջափակված ամրակուռ պարիսպների մեջ, իսկ Հովհ. Դրասխանակերտցին վկայում է, որ քաղաքը գրավում էր հսկայական տարածություն՝ «տիեզերասահման քաղաք» էր։ Այստեղ կառուցել էին արքունի պալատներ, կերտել Վա-

նի ուրարտական կառույցների նման ձևակերտեր, ստեղծել վիմափոր դամբարաններ։ Ամասիան, որ իր ընդհանուր համայնապատկերով նման էր մի հսկայական ամֆիթատրոնի, հին աշխարհի ամենագեղեցիկ քաղաքներից մեկն էր, Կոստանդին Միրանածինի հիշատակած Հայկական բանակաթեմի 7 նշանավոր քաղաքներից մեկը։ Հետագա ժամանակներում նույնպես Ամասիան խոշոր ու ծաղկուն քաղաք էր։ Արաբական հեղինակ Իբն-Բաթուտան գրում է, որ Ամասիան «մեծ ու գեղեցիկ քաղաք է. ունի գետեր, պարտեզներ, ծառեր և շատ պտուղներ։ Գետերի վրա կան անիվներ, պարտեզները ջրելու և խմելու համար։ Ունի լայն փողոցներ ու շուկաներ»։ Իբրև ծաղկուն քաղաք, Ամասիան իր վրա էր գրավել շատ նվաճողների ուշադրությունը։ Այն գրավել են հռոմեացիները, բյուզանդացիները, սելջուկները, մոնղոլները։ Լենկթեմուրը 7 ամիս շարունակ պաշարել է այդ քաղաքը, բայց չի հաջողել այն գրավել։ Ամասիան թուրքերի կողմից նվաճվել է Բայազետ Ա սուլթանի օրոք, 1392 թվականին։ Հենց այդ ժամանակներից էլ սկսում է վայրէջք ապրել վաղեմի շեն ու ծաղկուն քաղաքը, XVIII—XIX դարերում վերածվելով սովորական գավառական անշուք կենտրոնի։ Այն կարող է պարծենալ միայն իր անցյալի փառքով և հուշարձանների ու հնությունների մնացորդներով, որոնց մասին հիշատակություններ ունեն եվրոպական ճանապարհորդները՝ Տավերնիեն, Տուռնեֆորը, Մորիերը, Համիլտոնը և ուրիշներ։ Ամասիայում է կնքվել սուլթանական Թուրքիայի և շահական Իրանի միջև 1555թ. հաշտությունը, որով Հայաստանն առաջին անգամ բաժանվել է այդ երկու գիշատիչ պետությունների միջև։

XIX դարի 70-ական թթ. քաղաքն ուներ ավելի քան 16 հազար հայ, թուրք և հույն բնակիչ[3]: XX դարի սկզբին նրա բնակչության թիվը հասնում էր մոտ 30 հազար մարդու, որի ավելի քան 35 % կազմում էին հայերը։ Այստեղի հայերը նույնպես երկու անգամ՝ 1895—96 և 1915 թթ. ենթարկվեցին բնաջնջման ու տեղահանման։ 1895—96թթ. կոտորածների ժամանակ զոհ գնացին ավելի քան 1000 հայեր, իսկ մնացածը մեծ եղեռնի ժամանակ տեղահան եղան և ցրիվ եկան տարբեր կողմեր։ Ըստ 1929 թ. վիճակագրական տվյալների, Ամասիայում կային միայն 400 հայ բնակիչ, իսկ 1971-ին՝ 300։ Ըստ թուրքական գաղտնի հրամանների,

---

[3] «Արաքս», Պետերբուրգ, 1890, գիրք 2, էջ 17։

1915 թ. Ամասիայի գավառից տեղահանել են 22871 հայ, ծածկագրով կարգադրելով նրանց բոլորին ոչնչացնել ճանապարհին։

Նոր ժամանակներում Ամասիայի բնակչության զբաղմունքները կազմում էին արհեստները, տնայնագործությունն ու մանուֆակտուրային արտադրությունը, առևտուրը, երկրագործությունն ու այգեգործությունը։ Հայերն այստեղ ունեին երկաթագործական, ատաղձագործական, կոշկակարական, կարի, մանածագործական, թիթեղագործական 95 արհեստանոց-խանութներ։ Քաղաքի արտադրական ձեռնարկություններից էին [illegible] ալրաղացները, որոնք կառուցել էին հայերը եվրոպական ձևով, մետաքսի մեծ մանարանը, որը 1865թ. կառուցել էր XIX դարի հայ հայտնի դեմքերից մեկի՝ Հակոբ Ամասյանի որդի Սարգիս Ամասյանը, մանուֆակտուրային մի քանի ձեռնարկություններ։ Քաղաքի տնտեսության համար կարևոր ճյուղեր էին նաև այգեգործությունն ու երկրագործությունը։

Ամասիան բավական բարեկարգ սայլուղիով կապված էր Եվդոկիայի և Սամսոնի հետ։ Վերջինս համարվում էր Ամասիայի ծովային դուռը։ Դրանց և հարևան գյուղաքաղաքների ու շրջանների հետ Ամասիան ուներ աշխույժ առևտուր։ Նրա արտահանած ապրանքների մեջ կարևոր տեղ էին գրավում գործվածքները, չորացրած բամիան, խաղողը, խնձորը, գինին, ալյուրն ու հացահատիկը, բուրդը, կաշին, հաշիշը, ճեհրի կոչված դեղին ներկը և այլն։ XIX դարի վերջերին քաղաքի միայն գործվածքեղենի կրպակների թիվը հասնում էր 290-ի։ Քաղաքն ուներ ընդարձակ շուկա, որտեղ կենտրոնացած էր խանութների և արհեստանոցների մեծագույն մասը։ Ամասիան նաև տարանցիկ առևտրի կետ էր։

Թեպետ Ամասիան շատ է տուժել 1734 և 1825 թթ. տեղի ունեցած ավերիչ երկրաշարժերից, այնուամենայնիվ, այստեղ տարբեր վիճակում պահպանվել են հին և միջնադարյան հուշարձաններ, տարբեր կառույցների ավերակներ, զանազան հնություններ։ Հնադարյան բերդի ավերակները գտնվում են քաղաքի դիմաց վեր խոյացող մերկ, անձրևներից լվացված 200մ բարձրությամբ ժայռի վրա, որի «կատարը պսակված է հսկայական գոյակի խարխլված պարիսպներով»՝ հին արքունական պալատի ավերակներով, իսկ բերդի ոտքերի տակ փռված էր երբեմնի հռչակված բուն քաղաքը։ Բերդի պատերին կան շատ մակագրություններ և արձանագրություններ։ Ենթադրվում է, որ

Միհրդատ 6-րդը այստեղ էր պահում իր գանձերը։ Պատմաճարտարապետական առումով հատկապես հիշատակության արժանի են հնադարյան ժայռակերտ քարայր-դամբարանները, որոնք գտնվում են բերդակիր լեռան լանջին և վերաբերում են հելլենիստական ժամանակներին։ Դրանցից ամենաշքեղները Միհրդատի վիմափոր դամբարաններն են (թուրքերի կողմից Այնալը-մաղարա կոչված քարայրները), որոնք թվով 3 հատ են, մեծությամբ սենյակի չափ, իրարից անջատված միջանցքներով և իրար հետ կապված քարեղեն սանդուղքներով։ Իրենց հնությամբ ու ճարտարապետությամբ քաղաքի հայտնի կառույցներից էին հայկական 4 եկեղեցիները՝ ս. Աստվածածինը, որ համարվում էր քաղաքի մայր եկեղեցին, ս. Նիկողայոսը՝ կառուցված 1218 թ., ս. Հակոբը՝ կառուցված 1255 թ. և ս. Գևորգը։ Քաղաքում և նրա շրջակայքում կային մի քանի ուխտավայրեր և երկու վանք։ Մզկիթներից հայտնին սուլթան Բայազետի ջամին էր՝ երկու մինարեով, մարմարյա սյուներով, արաբական նշաններով ու քանդակներով մի շենք, որ ընդգծված էր քաղաքի ընդհանուր համայնապատկերում։ Իբրև գավառի (իսկ այժմ՝ վիլայեթի) կենտրոն, Ամասիայում կառուցվել են վարչական զանազան շենքեր, որոնք իրենց մեծությամբ ու հարմարանքներով տարբերվում էին սովորական բնակելի տներից։ Ամասիայում, Իրիս (Եշիլիրմաք) գետի վրա կառուցված էին 5 կամուրջ, որոնք իրար հետ էին միացնում քաղաքի երկու մասերը և որոնց վրայով անցնում էին դեպի Եվդոկիա ու Սեբաստիա տանող ճանապարհները։ Այդ կամուրջներից մեկի հիմքն ուներ ավելի քան 2000 տարվա հնություն։

Ամասիան հայկական մշակույթի նշանակալի կենտրոն էր։ Այստեղ XIX դարի երկրորդ կեսին և XX դարի սկզբներին գործում էին հայկական 7 դպրոցներ, որոնցից 3-ը եկեղեցիներին կից էին, 5 մանկապարտեզ, Ազգային հիվանդանոց, կանանց կար ու ձևի ուսումնարան, «Իրիս» թատերական ընկերությունը, մշակութային և կրթական բազմաթիվ ընկերություններ՝ Պարթևական, Ներսիսյան, Կանանց կրթասիրաց և այլն, որոնք նպաստում էին քաղաքի մշակութային կյանքի առաջադիմությանը։ Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին տեղահանված ամասիացիները օտար երկրներում տարբեր ժամանակներում ու տարբեր քաղաքներում՝ Նյու Յորքում, Բոստոնում, Ֆիլադելֆիայում, Մարսելում, Փարիզում և այլուր կազմակերպել

էին հայրենակցական միություններ, որոնք նպատակ ունեին օգնել իրենց կարիքավոր, հիվանդ, անաշխատունակ և որբ հայրենակիցներին։

Ամասիան ուներ իր հայկական պարբերական մամուլը։ Այստեղ առաջին համաշխարհային պատերազմին նախորդած տարիներին լույս էին տեսնում «Ապառաժ» շաբաթաթերթն ու ամսագիրը և «Ամասիա» հանդեսը։ Այն հայ գրչության կենտրոններից էր։ Պահպանվել են Ամասիայում գրված կամ ընդօրինակված տարբեր բովանդակությամբ շատ ձեռագրեր։

Ամասիայում են ծնվել հին աշխարհի հույն հայտնի հեղինակ՝ աշխարհագրագետ Ստրաբոնը (63թ. մ.թ.ա.— 21/25թ. մ.թ.), միջնադարյան հայ ականավոր բժիշկ, մատենագիր ու բառարանագիր Ամիրդովլաթ Ամասիացին (1420/25—1496), բժիշկ Գալուստ Ամասիացին, որը 1669 թ. Պոլսում հրատարակել է իր բժշկարանը։ Ենթադրվում է, որ այստեղ է ծնվել նաև Պոնտոսի թագավոր Միհրդատ 6-րդ Եվպատորը (132—63թթ. մ.թ.ա.)։

## ԱՆԻ

Հայոց հին մայրաքաղաքների շարքի մեջ ամենից սիրվածը թերևս Անին է։ Անին գտնվում էր Ախուրյան գետի բարձրադիր աջ ափին, ՀՍՍՀ Անիի շրջանի Խարկով գյուղի դիմաց, երեք կողմերից խոր ակոսված սարահարթակի վրա։

Անիի գրաված տարածքը բնակեցված է եղել հնագույն ժամանակներից։ Այստեղ հայտնաբերվել են մեծ հնություն ունեցող կիկլոպյան կառույցների մնացորդներ, ինչպես և VIII—VII դդ. (մ.թ.ա.) դամբարանադաշտ։

Իբրև սովորական ամրոց, Անին հիշատակվում է V դարից։ Այն Շիրակ գավառի հետ միասին պատկանում էր Կամսարական նախարարական տանը։ VIII դարի վերջերին իրենց նախկին նշանակությունը կորցրած Կամսարականները Շիրակն ու Անին վաճառում են Բագրատունիներին։

Անիի զարգացումն ու ծաղկումը սկսվում է 961 թվականով, երբ այն Բագրատունի Աշոտ 3-րդը դարձնում է պետության մայրաքաղաք։ Ընդամենը 40—50 տարվա ընթացքում հասարակ գյուղաքաղաքից Անին վերածվում է երկրի և Մերձավոր արևելքի խոշորագույն քաղաքներից մեկի։ 961—1020 թվա-

կանների ընթացքում կառուցվում են քաղաքի Ներքին (կամ Աշոտյան) ու Արտաքին (կամ Սմբատյան) պարիսպները, Մայր տաճարը, Գագկաշեն ու Ապուղամրենց և այլ եկեղեցիներ, քարավանատներ ու հյուրանոցներ, արքունի պալատը, ժայռափոր կացարաններ, բնակելի շենքեր, բաղնիքներ, արհեստավորական ու առևտրական կուղպակների շարքեր և բազմաթիվ այլ շենքեր։ Անին տարածվում է նաև Արտաքին պարսպից դուրս փռված սարահարթի վրա։ Բագրատունյաց թագավորության տնտեսական, քաղաքական ու մշակութային կյանքի բոլոր թելերը ձգվում են դեպի Անի։ Մայրաքաղաքի հետ առանձնապես սերտ առնչություն ունեին մշակութային առումով՝ Տեկորը, Արգինան, Հոռոմոսը (Ղոշավանք) ու Խծկոնքը, իսկ պաշտպանական առումով՝ Մաղասաբերդն ու Տիգնիսը, որոնք մայրաքաղաքի մատույցները պաշտպանում էին արտաքին հարձակումներից։

XI դարի առաջին քառորդի վերջերից Անի-Շիրակի թագավորության ներքին կյանքում ծայր են առնում երկպառակություններ։ Տարոնի իշխանությունը (966 թ.), Տայքի կյուրապաղատությունը (1000 թ.) և Վասպուրականի թագավորությունը (1016 թ.) գրաված Բյուզանդական կայսրությունը ամեն կերպ ձգտում է նվաճել նաև Բագրատունիների Շիրակի թագավորությունը Անի մայրաքաղաքով։ Դրա հետ գրեթե միաժամանակ հասունանում էր սելջուկյան արշավանքների վտանգը։ Անին գրավելու համար Բյուզանդիան մի քանի արշավանքներ է կազմակերպում, որոնք բոլորն էլ ավարտվում են կայսերական զորքերի ամոթալի պարտությամբ։ Այնուամենայնիվ, կայսրությանը հաջողվում է 1045 թ. գրավել Անին։ Բայց բյուզանդական տիրապետությունը Անիում տևում է մինչև 1064 թվականը, երբ այն գրավվեց սելջուկյան սուլթան Ալփ-Արսլանի կողմից և ավերվեց։ Վերջինս 1072 թ. կիսավեր Անին վաճառում է Դվինի էմիր Աբլ-Սվարին, որն իր հերթին այն հանձնում է Մանուչեին։ Սկսած այդ ժամանակներից մինչև 1199 թվականը Անին գտնվում էր Մանուչեյան էմիրների տիրապետության տակ և մի քանի անգամ կարճ ժամանակով անցել է վրաց իշխանության ներքո (1124—1126 թթ., 1161 թ., 1174թ.)։ Զաքարյան իշխանները 1199թ. Անին ազատագրում են օտար տիրապետությունից և իբրև սեփականություն իրենց ձեռքին պահում մինչև Լենկթեմուրի արշավանքները։

Անիի ներքին կյանքի զարգացումը, սելջուկյան տիրապետության շրջանում մասնակի կանգառից հետո՝ Զաքարյանների իշխանության օրոք, մինչև մոնղոլական ծանր լծի հաստատումը, շարունակվում է բավական արագ թափով։ Այդ ժամանակներում Անիում կառուցվում են մի շարք եկեղեցիներ, իշխանական պալատներ ու բնակելի շատ շենքեր, վերանորոգվում են քաղաքի պաշտպանական պարիսպները, առանձին անհատների կողմից այդ պարիսպների ուղղությամբ կառուցվում են նոր աշտարակներ, շարունակվում է առևտրի ու արհեստագործության, մշակութային կյանքի առաջընթացը։

Անին արհեստագործության խոշոր կենտրոն էր։ Այստեղ զարգացած էին մետաղամշակությունը, բրուտագործությունը, շինարարական, կենցաղային, առևտուրը սպասարկող և այլ արհեստներ։ Անիի արհեստների թիվը մոտ 50-ի էր հասնում։ Դրանք իրենց ժամանակի բարձր զարգացած արհեստներն էին, որոնցից շատերի արտադրանքը մեծ համբավ ուներ ոչ միայն երկրի ներսում, այլև հարևան և հեռավոր երկրների շուկաներում։ Առանձնապես հայտնի էին գործվածքեղենը, գորգերը, մետաղյա իրերն ու զենքերը, խեցեղենը։

Արհեստագործությունից ոչ պակաս զարգացած էր նաև քաղաքի ներքին ու արտաքին առևտուրը։ Քաղաքն ուներ իր շուկան և քարավանատները, որտեղ կատարվում էր ներքին ու արտաքին առևտուրը։ Առևտրի հիմնական առարկաները գյուղատնտեսական մթերքներն ու արհեստավորական շինվածքներ էին։ Անին միջազգային տարանցիկ առևտրի կենտրոն էր։ Այստեղ հատվում էին քարավանային առևտրի մի շարք մայրուղիներ։ Դրանցից էին՝ Անի—Տփխիս, Անի—Կարս—Կարին—Սև ծովի ափեր, Անի—Մայաֆարկին (Տիգրանակերտ)— Ասորիք, Անի—Երևան—Դվին—Թավրիզ ճանապարհները, որոնք հատկապես մեծ նշանակություն էին ձեռք բերել XI—XIII դարերում։ Անին այդ դարերում առևտրատնտեսական կապեր ուներ ոչ միայն հարևան Վրաստանի, Աղվանքի, Ատրպատականի, Պարսկաստանի, Հայաստանի արևմտյան հատվածի, Սև ծովի առափնյա քաղաքների, այլ նաև Գալիցիայի, Լեհաստանի, Հարավային Ռուսիայի, Կիլիկիայի և ուրիշ երկրների հետ։ Անիում արդեն հանդես էին եկել մեծահարուստ վաճառականներ ու առևտրականներ, որոնք միաժամանակ կալվածատերեր ու վաշխառուներ էին (Տիգրան Հոնենց, Սահմադին և ուրիշներ)։

Անիի բնակչության մի մասը զբաղվում էր գյուղատնտեսությամբ՝ հացահատիկների, բնչութի, բանջարեղենի և այլ կուլտուրաների մշակությամբ, անասնապահությամբ։

Անին միջնադարյան Հայաստանի մշակութային խոշոր կենտրոններից էր։ Իբրև մայրաքաղաք, այստեղ հավասարապես զարգացած էին և՛ կրթության գործն ու մատենագրությունը, և՛ գիտությունը, ճարտարապետությունն ու արվեստը։

Բագրատունյաց թագավորության ժամանակներում սովորական դպրոցներից բացի մայրաքաղաք Անին ուներ իր բարձրագույն դպրոցը՝ ճեմարանը (համալսարան), որի ճանաչված դասախոսներից են եղել Գրիգոր Մագիստրոսը, Հովհաննես Իմաստասերը և ուրիշներ։ Հայաստանի այլ վայրերում եղած բարձրագույն դպրոցների նման Անիի ճեմարանում նույնպես կրոնական առարկաներից բացի ավանդվում էին համարողական արվեստ (մաթեմատիկա), երաժշտություն, ճարտարապետություն և այլ առարկաներ։ Անիի մատենագիրներից հայտնի են Սամվել Անեցին և Մխիթար Անեցին։ Անիում գործում էր արքայական գրադարան։ Բագրատունի թագավորները՝ հատկապես Հովհաննես-Սմբատն ու Գագիկ 2-րդը, առանձնակի ուշադրություն էին դարձնում գրի ու գրականության զարգացման վրա։

Մշակութային առումով հսկայական հետաքրքրություն են ներկայացնում Անիի մինչև 250-ի հասնող վիմագիր արձանագրությունները, որոնք փորագրված են պաշտպանական պարիսպների ու դրանց աշտարակների պատերին, եկեղեցիների ու պալատների վրա։ Դրանք հիմնականում վերաբերում են եկեղեցիներին արված նվիրատվություններին, աշտարակների, պարիսպների, պալատների, եկեղեցիների, տաճարների ու մատուռների շինությանը, վերանորոգմանը և վերաշինությանը։

Անին ոսկերչության, քանդակագործության և քանդակագործության հայտնի կենտրոն էր։ Արվեստի այդ ճյուղերն այստեղ հիմնականում ունեին կիրառական նշանակություն։

Իր բազմադարյան պատմության ընթացքում հայ ժողովրդի ստեղծած ժառանգության մեջ ճարտարապետությունը գրավում է ամենաառաջնակարգ տեղերից մեկը, իսկ ճարտարապետության մեջ էլ, կարելի է ասել, առյուծի բաժինը պատկանում է Անիին։ Անի այցելած տասնյակ հեղինակներ, ճանապարհորդներ և ճարտարապետներ, առանց բացառության, հիացել են նրա նրբակերտ շենքերով, պաշտպանական պարիսպներով ու աշ-

տարակներով, տասնյակների հասնող եկեղեցիներով, Ախուրյանի վրայի կամուրջներով և այլ կառույցներով։

Անիի մեծատաղանդ ճարտարապետներից մեկը՝ Տրդատը, որ ապրել ու գործել է X դարի վերջերին և XI դարի սկզբներին, օգտվելով մեր անցյալի ժառանգությունից, ստեղծել է մոնումենտալ շատ շենքեր (Անիի Մայր եկեղեցի, Արգինա և այլն)։ Ըստ հեղինակավոր շատ մասնագետների կարծիքի, այդ շենքերն իրենց ազդեցությունն են թողել Արևմուտքի գոթական և ռոմանական ոճերի վրա, որովհետև, ինչպես նշում են, դրանք իրենց մեջ պարունակում են վերջինն րիս նախնական տարրերը։ Անիում ձևավորվեց հայ ճարտարապետության անիական ոճը, որն իր բարերար ազդեցությունն է թողել հետագա ժամանակների հայկական ճարտարապետության վրա, և որի նշանակությունը դուրս է գալիս ազգային ճարտարապետության սահմաններից։

Անին XI—XIII դարերում Արևելքի խոշորագույն քաղաքների թվին էր պատկանում և ուներ շուրջ 100 հազար բնակիչ։ Քաղաքական աննպաստ պահերին Անիում ապաստան էին գտնում շրջակայքի գյուղերի տասնյակ հազարավոր բնակիչներ։

Անին իր կառուցվածքով հար ու նման էր միջնադարյան մյուս խոշոր քաղաքներին։ Այն բաղկացած էր միջնաբերդից, բուն քաղաքից կամ շահաստանից և արվարձաններից։ Միջնաբերդը գտնվում էր քաղաքի հարավարևմտյան ծայրին և շահաստանից բաժանված էր հատուկ պարսպով։ Միջնաբերդում էին գտնվում արքունի պալատը, եկեղեցիներ, արքունի բաղնիքը և այլ կառույցներ։ Միջնաբերդից հյուսիս-արևելք, ընդարձակ սարահարթի վրա, փռված էր բուն քաղաքը, որը նույնպես պատած էր պարսպով։

Անիում մի հատուկ ընդարձակ թաղամաս էր կազմում, այսպես կոչված «Ստորգետնյա Անին»՝ բնական և արհեստական հարյուրավոր քարանձավներից բաղկացած թաղամասը, որը գտնվում էր Ծաղկոցաձորի և Գայլաձորի ուղղությամբ։ Այս քարայրներում կային կրկնահարկ և եռահարկ բնակարաններ, ընդարձակ սրահներ, եկեղեցիներ, խանութներ ու պահեստներ, գերեզմանատուն, գաղտնարաններ։ Միանգամայն հասկանալի է, որ այդ քարայրներն օգտագործվել են նաև պաշտպանական նպատակներով։ Քաղաքն ունեցել է մի շարք դռներ՝ Դվինի դուռ, Կարնո դուռ և այլն։

Իր ժամանակի առումով Անին օժտված է եղել առաջնակարգ կոմունալ պայմաններով։ Քաղաքում կային ցանցավորված ջրմուղ, հյուրանոցներ, բաղնիքներ, մասնակի կոյուղիներ։ Քաղաքի գլխավոր փողոցները սալահատակված էին և ունեին մինչև 6 մ լայնություն։

Անիում իրար զուգորդում էին ճոխ առանձնատներն ու հասարակ խրճիթները։ Այնտեղ կարելի է հանդիպել շքեղ պալատներից սկսած մինչև աղքատիկ հյուղակների ու հասարակ քարանձավ-բնակարանների։

1236 թվականին մոնղոլները նախ պաշարեցին, ապա դավադրաբար գրավեցին ու ավերեցին Անին։ Մոնղոլական ծանր լծի հաստատմամբ, Հայաստանի մյուս ծաղկած քաղաքների հետ միասին Անիի պատմության մեջ ևս սկսում է կտրուկ անկման և անկման ժամանակաշրջանը։ Անիից սկսվեց զանգվածային արտագաղթ, որը սելջուկյան շրջանում դեռ այնքան էլ մեծ ծավալ չուներ։ Անին աստիճանաբար հետադիմելով, XIV դարի վերջերին արդեն դադարում է գոյություն ունենալուց։ Նրա տեղում մնում է հայկական մի խղճուկ գյուղ, որը հետագայում դարձավ Թուրքական։

Լայն են անեցիների արտագաղթի վայրերի ու երկրների աշխարհագրական սահմանները։ Նրանք տարբեր ժամանակներում գաղթել ու բնակություն են հաստատել Նախիջևանում, Ջուղայում, Վանում, Կիլիկիայում, Կարինում, Պոլսում, Սև ծովի հարավային և հյուսիսային առափնյա քաղաքներում (Տրապիզոն, Թեոդոսիա և այլն), Աստրախանում, Արևմտյան Ուկրաինայում, Լեհաստանում, որտեղ նրանք, չնայած մոռացել էին մայրենի լեզուն, բայց մինչև մեր ժամանակները ավանդույթի ուժով իրենց համարում էին անեցիներ և հպարտանում դրանով։

Ավերակների կույտի վերածված Անին դարեր շարունակ դարձել էր խաշնարած ցեղերի քոչավայր։ Նրանք իրենց գոմերը, փարախները և կիսագետնափոր խրճիթները կառուցելու համար անխնա թալանում էին վաղեմի մայրաքաղաքի սքանչելի շենքերի սրբատաշ ու քանդակազարդ քարերը, ավերակների վայրում ամենուրեք ոսկի և թանկագին իրեր որոնում։

Չնայած դարավոր ավերումներին, այնուամենայնիվ, միջնադարյան Հայաստանի վեհաշուք մայրաքաղաքից մինչև մեր օրերը պահպանվել են ուշադրության արժանի ճարտարապետական շատ կոթողների ավերակներ ու մնացորդներ։

Անիում կային տասնյակ եկեղեցիներ։ Ավանդությունը դրանց թիվը հասցնում է նույնիսկ 1001-ի։ Եկեղեցիներ ու մատուռներ կային և՛ բուն քաղաքում ու նրա արվարձաններում, և՛ պաշտպանական պարիսպների աշտարակներում, և «Ստորգետնյա Անիում»։

Անիի եկեղեցիների թագուհին Մայր տաճարն էր, որը մասնագետներից և ճանապարհորդներից շատերը համարել են Կովկասի ճարտարապետության զարդը։ Այդ եկեղեցին նվիրված էր Աստվածածնին։ Շինարարությունը սկսվել է Սմբատ 2-րդի օրոք՝ 989 թվականին և ավարտվել է Գագիկ 1-ինի օրոք, նրա կնոջ՝ Կատրամիդե թագուհու հոգացողությամբ 1001 թվականին։ Ճարտարապետը հայտնի Տրդատն էր, Կոստանդնուպոլսի ս. Սոֆիա տաճարի գմբեթի վարպետ վերակառուցողը։ Տաճարի վրա կան բազմաթիվ արձանագրություններ։ Գմբեթը փլված է, իսկ պատերը խարխուլ վիճակում հասել են մինչև մեր օրերը։ Մայր տաճարը Անիի ամենախոշոր կառույցներից է։ Նրա հմայքը պարզության մեջ է, կեղծ կամարակալների, նրբասլաց սյուների, խոյակների ու բարձրարվեստ քանդակների մեջ։ Առաքելոց եկեղեցին, որը, հավանաբար, հիմնադրվել է 1004 թվականին, համարվում է Անիի ամենահայտնի կոթողներից մեկը։ Այժմ պահպանված են միայն եկեղեցու արևմտյան ճակատը և արևելյան հատվածի կամարները։ Երեք գմբեթներից կանգուն է միայն մեկը։ Կառուցված է սև և կարմրավուն քարերով։ Պատերին կան արձանագրություններ։ Դռան շրջանակները պատած են բարձրաճաշակ քանդակներով։ Ամենաուշ շրջանի արձանագրությունը վերաբերում է 1348 թվականին։ Ենթադրում են, որ Առաքելոց եկեղեցին կաթողիկոսարան է եղել և կարևոր դեր է խաղացել Անի մայրաքաղաքի հոգևոր կյանքում։

Անիում հայտնաբերված եկեղեցիներից հնագույնը պալատական եկեղեցին է, որը կառուցվել է VII դարում, իսկ հետագայում, հատկապես XIII դարում, դրան կից կատարվել են շինարարական նոր աշխատանքներ։ Եկեղեցու որմնասյուների վրա կան ուշադրության արժանի բարձրաքանդակներ։

Մայր եկեղեցու շինարարությունն ավարտվելուց անմիջապես հետո, Գագիկ 1-ինը 1001 թվականին սկսում է մի այլ հայտնի եկեղեցու՝ ս. Գրիգորի (որը կոչվում է նաև Գագկաշեն) կառուցումը։ Այն ավարտվել է 1010 թվականին։ Եկեղեցին եռահարկ էր, իր ճարտարապետական կառուցվածքով նման Զվարթ-

նոցին։ Դրա ճարտարապետը նույնպես Տրդատն է եղել։ Տաճարն արտաքին կողմից շրջապատված էր 36 կամարներով, ուներ 36 պատուհան, երեք դուռ, որոնց շրջանակները ծածկված էին քանդակներով։ Սակայն Գագկաշեն եկեղեցին երկար չի դիմանում, տալիս է վտանգավոր ճեղքեր ու կործանվում։ Եկեղեցու պատի վրա տեղադրված էր Գագիկ 1-ի արձանը։

Որմնանկարներով ամենահայտնին ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցին էր (հետագայում «Նախշլի» կոչված), որը կառուցել էր Տիգրան Հոնենցը 1215 թվականին։ Նա իր կառուցած եկեղեցուն տվել էր թանկագին սպասք, զանազան կալվածքներ։ Եկեղեցուն կից կառուցված էին օժանդակ սենյակներ և բաղնիք, որ ուներ առանձին բաժանմունքներ։ Ս. Գրիգոր եկեղեցին իր հատակագծով նման է Մայր եկեղեցուն, բայց մեծությամբ շատ է զիջում վերջինին։ Գմբեթը բազմանկյուն է՝ կոնաձև տանիքով։

Անիի արտաքին պարսպից դուրս գտնվում է Հովվի եկեղեցին, որը կառուցվել է XI դարում։ Եկեղեցին եռահարկ է, գմբեթով և իր մեջ պարունակում է գոթական ոճի «նախնական տարրերը»։ Հայ ճարտարապետության ականավոր պատմաբան Թորոս Թորամանյանը Հովվի եկեղեցին համարում է ճարտարապետական գոհարներից մեկը։

Անիում կար նաև վրացական (քաղկեդոնական) եկեղեցի, ինչպես և մի քանի մզկիթներ, որոնք կառուցվել էին XI—XII դարերում։ Առանձնահատուկ հետաքրքրություն է ներկայացնում Մանուչեի մզկիթը, որը կառուցվել է XI դարի երկրորդ կեսին՝ Մանուչեի իշխանության օրոք (ավելի հին վարչական շենքի վերափոխմամբ) և նրա անունով էլ կոչվել։

Պաշտամունքային շենքերի հետ համեմատած, քաղաքացիական կառուցվածքները շատ վատ են պահպանվել։ Դրանցից շատերն ընդհանրապես հիմնահատակ ավերվել և անհետ կորել են։

Անիի քաղաքացիական շենքերից կարևորագույնը արքունի պալատն էր, որը գտնվում էր միջնաբերդում, կառուցվել էր Բագրատունիների թագավորության շրջանում, իսկ հետագայում ենթարկվել որոշ փոփոխության։ Արքունի պալատի ավերակները շատ վատ են պահպանվել։ Եղած մնացորդներն էլ թաղված էին հողի հաստ շերտի տակ և ի հայտ են բերվել ակադեմիկոս Ն. Մառի ղեկավարած պեղումների ժամանակ՝ 1907 և 1908 թվականներին։

Գեղումներով բացված է պալատի միջանցքը՝ 50 մետր երկարությամբ, որը պալատը բաժանում է հյուսիսային ու հարավային թևերի։ Հարավային թևի որոշ հատվածներ երկհարկանի են։ Երկրորդ հարկում սովորաբար տեղադրված են հանդիսասրահները, իսկ առաջինում՝ տնտեսական օժանդակ սենյակներն ու պաշտպանական նպատակների ծառայող այլ բաժիններ։ Զաքարյանների իշխանության օրոք Անիում կառուցվել էին նաև իշխանական պալատներ։ Դրանցից հայտնի էին երկուսը, որոնցից մեկը, որ եռահարկ էր, գտնվում էր Ծաղկոցաձորի կիրճի զառիթափ կողին և կոչվում էր Իշխանի կամ Պարոնի պալատ, իսկ մյուսը՝ «Սարգսի» պալատ, պեղված 1905 թվականին։

Անիի ավերակների ձևով մեզ հասած պաշտպանական պարիսպները վերաբերում են Բագրատունիների թագավորության շրջանին։ Քաղաքը պատած էր կրկնակի պարիսպներով, որոնցից առաջինը կառուցել էր Աշոտ 3-րդը 963—964 թվականներին և կոչվում էր Ներքին, Փոքր կամ «Աշոտաշեն» պարիսպ։ Ներքին պարիսպը կառուցված էր Ախուրյանի ու Ծաղկոցաձորի իրար մոտեցման վայրում։ Պարսպի աշտարակներում եղել են փոքրիկ եկեղեցիներ։ Արտաքին, Մեծ կամ «Սմբատյան» պարիսպները կառուցվել են Սմբատ 2-րդի օրոք։ Դրա շինարարությունը տևել է 8 տարի և ավարտվել է 989 թվականին։ Արտաքին պարիսպը ձգվում էր Ներքին պարսպից բավական հեռու և որոշ հատվածում կրկնակի էր։ «Սմբատյան» պարսպի երկարությունը 2,5 կմ էր; բարձրությունը՝ 8—10 մ։ Շադդադյանների ու Զաքարյանների օրոք մի քանի անգամ ենթարկվել է նորոգման։ Աշտարակներից ու բուրգերից շատերը ներսի մասից 2—3 հարկանի էին։ Դրանք ունեին հատուկ անուններ՝ Աբրահամի բուրգ, Շանուշի բուրգ, Աշոտի բուրգ, Մխիթարիչի աշտարակ և այլն։ Դրանցում տեղավորվել է քաղաքապաշտպան պահակազորը։ Արտաքին պարսպի արտաքին կողմով, դրան զուգահեռ ձգվում էր ավելի քան 500 մ երկարությամբ բավական խոր խրամը։

Ճարտարապետական շինարարական առումով իրենց ուրույն տեղն ունեն Անիի կամուրջները, որոնք ձգվում էին Ախուրյան գետի վրա։ Դրանք մի քանի հատ էին և հիմնականում կառուցվել էին X—XI դարերում։ Առանձնապես հայտնի էին երկու կամուրջներ, որոնցից մեկը գտնվում էր քաղաքի հարավային ծայրին՝ ս. Գրիգոր եկեղեցուց մի փոքր հյուսիս, իսկ երկրորդը՝

Մանուչեի մզկիթի և Մայր եկեղեցու միջև։ Առաջինից պահպանվել են միայն առանձին մնացորդներ, իսկ երկրորդի ավերակները համեմատաբար լավ են պահպանվել։ Այն ունեցել է երեք աչք, կենտրոնի կամարի թռիչքը 31,5 մ է, երկու կողմում ունեցել է երկաթագամ դռներ և փայտյա բացվող մասեր, որոնք հնարավորություն էին տալիս ցանկացած ժամանակ կամրջի ծայրային հատվածները հավաքել ու կամուրջը դարձնել անանցանելի։

Նշվածներից բացի, Անիում կան նաև տարբեր աստիճանի ավերված հնություններ և հուշարձաններ, որոնց ուսումնասիրությունը լրացրել է վաղեմի մայրաքաղաքի, Հայաստանի միջնադարյան մյուս խոշոր քաղաքների և, մասամբ, հարևան երկրների քաղաքների պատմության շատ հարցեր։ Դրանցից կարելի է հիշատակել ս. Հովհաննես, Ապուղամրենց, Շուշան Պահլավանու (ս. Սարգիս), Շախմատային, Ջաքարեի (ս. Աստվածածին), Քարիմանդինի, Հոռոմի, Աղբերկի (ս. Աստվածածին) եկեղեցիները, վիմափոր եկեղեցիները և տասնյակ վիմափոր ու սովորական մատուռները, Բարսեղի, Ավագի, Մխիթարի և այլոց հուշարձանները, Տիգրան Հոնենցի տապանատունը, Աղջկաբերդը, «Ստորգետնյա Անին», կիկլոպյան պարիսպներն ու շինվածքների հետքերը, Մայր տաճարի ճանապարհին գտնվող ութանկյուն աշտարակի բեկորները, քաղաքի մուտքի մոտ գըտնըվող երկու աշտարակները (հաղթանակ կամարը) և այլն, և այլն։

Անիի հետ սերտորեն առնչված էին նրա շրջակայքում գտնվող Մաղաս ու Տիգնիս բերդերը և Տեկոր, Բագնայր, Հոռոմոս (Կոշավանք ու Խծկոնք վանքերը, բուն քաղաքի հնությունների ու հուշարձանների հետ կազմելով մի բարդ ու ճարտարապետական-պատմական առումով վերին աստիճանի հետաքրքիր համալիր, հուշարձանների ու հնությունների բնական մի վիթխարի թանգարան, որի ուսումնասիրությունը տակավին ավարտված չի կարելի համարել։

Բայց և այնպես Անին միջնադարյան Հայաստանի ամենալավ ուսումնասիրված քաղաքներից է։ Անիի վերաբերյալ բազմազան տեղեկություններ են հաղորդել V—XVIII դարերի հայ շատ թե քիչ հայտնի գրեթե բոլոր պատմագիրները՝ սկսած Ղ. Փարպեցուց, վերջացրած Աբրահամ Կրետացիով, չհաշված հիշատակարաններն ու մանր ժամանակագրությունները, որոնք

ևս սպառնակում են այդ կարգի մի շարք նյութեր ու հաղորդագրություններ։ Քաղաքի առանձին հարցեր լուսաբանվում են պեղումների ընթացքում հայտնաբերված նյութական մշակույթի մնացորդների (գործիքներ, իրեր, զարդեր, արհեստավորական արտադրանքի մնացորդներ, շենքերի ավերակներ և այլն) և վիմագիր արձանագրությունների հիման վրա։ Անիի վերաբերյալ շատ են հիշատակությունները օտար աղբյուրներում՝ վրացական, բյուզանդական, արաբական, պարսկական պատմագիրների ու ժամանակագիրների երկերում։

Անիագիտության մեծագույն երախտավորը ակադեմիկոս Ն. Մառն է, որը 1892—1893 և 1904—1917 թթ. հնագիտական պեղումներ է կատարել քաղաքի ավերակներում, մանրակրկիտ ուսումնասիրել բոլոր կարգի սկզբնաղբյուրների հիշատակությունները և դրանց հիման վրա գրել «Անի» կապիտալ աշխատությունը, որն իր մեջ ամփոփում է քաղաքի համառոտ պատմությունն ու համակողմանի հնագիտությունը։ Բայց ակադեմիկոս Մառը Անիի միայն սոսկ հետազոտողը չէ։ Նա հանգանականությամբ հավաքված և իր հնագիտական արշավախմբին տրամադրված համեստ միջոցների հաշվին զգալի վերանորոգման աշխատանքներ է կատարել՝ որոշ հուշարձաններ պահպանելու համար։ Անիում ստեղծվել էին թանգարաններ (Մանուչեի մզկիթում, հատուկ այդ նպատակի համար կառուցված շենքում և Մայր եկեղեցում), որտեղ կենտրոնացրել էին արշավախմբերի ընթացքում հայտնաբերված նյութական մշակույթի մնացորդները։ Նրա առաջարկով 1917 թ. ստեղծվեց Անիի գիտահետազոտական ինստիտուտը, բայց այդ նպատակի համար Պետրոգրադից Թբիլիսի ուղարկված նյութերը խառը իրադրության հետևանքով տեղ չհասան։

Այժմ վաղեմի մայրաքաղաքից 2—3 կմ արևմուտք գտնվող թուրքական Անի անշուք գյուղում ստեղծված է մի խղճուկ պանսիոնատ, որտեղ այցելում են զբոսաշրջիկներ ամենատարբեր երկրներից՝ Անիի ավերակները դիտելու համար, իսկ նրա հուշարձանների ու հնությունների պահպանման մասին խոսք անգամ չի կարող լինել։ Ամենազոր ժամանակը և մարդու ավերիչ ձեռքը անխնա ոչնչացնում են այդ անզուգական հնություններն ու հուշարձանները։

*Հիշատակվում է նաև Արաբկեր ձևով։ Անունը հավանաբար կապված է հնագույն Արաբրակնուա քաղաքի անվան հետ, որի մոտ էլ կառուցվել է այն։ Քաղաքը տիրել են նաև արաբները, ոմանք նրա անունը կապում են թուրքերեն «արաբ» և «գեր» («գիր») բառերի հետ, որ նշանակում է արաբ մտած, կամ արաբ մտիր։ Հայկական ժողովրդական ստուգաբանությամբ Արաբկիր նշանակում է՝ առ ափին գետի։ Հույները կոչել են Արապրասեշ։ Աղբյուրներում տարբեր ժամանակներում համարվում է ամրոց, գյուղաքաղաք, քաղաք-ամրոց, բերդաքաղաք, քաղաք։*

*Գտնվում է Եփրատ գետի աջ կողմում, գետափից 14—15 կմ արևմուտք, Ակն և Խարբերդ քաղաքների միջև, Մալաթիայից մոտ 70 կմ հյուսիս։ Քաղաքը փռված է Անտիտավրոսյան լեռնաշղթայի ստորոտում, Ոսկեգետ (Արաբկիր, Բուլանիկ) գետի ակունքում, սարավանդի վրա։ Դիրքը բարձր ու գեղատեսիլ է։ Շրջակայքում տարածվում են արգավանդ դաշտեր։ Ունի առողջարար օդ։ Ջրառատ է, բայց խմելու ջուրը սակավ է։ Ձմեռը տևում է նոյեմբերից մինչև ապրիլի սկզբները։ Ամառը շոգ է ու չոր։ Հայտնի է իր մրգերով, հատկապես խաղողով։ Արաբկիրի մոտակայքում կան արծաթի հանքեր։*

*Արաբկիրը հնում մտնում էր Փոքր Հայքի Երկրորդ՝ ըստ Հուստինիանոսի վարչական բաժանման (VI դ.) Երրորդ Հայքի մեջ։ Նոր ժամանակներում այն Սեբաստիայի (նաև Խարբերդի) նահանգի Արաբկիր գավառի կենտրոնն էր։ Իսկ Արաբկիր գավառը հիշատակում է նաև թուրք պատմագիր Քյաթիբ Չելեբին։*

*Արաբկիրի հիմնադրումը, համենայն դեպս նրա վերակառուցումը, մեզ հասած վիճակում, վերագրվում է Վասպուրականի Արծրունի վերջին թագավոր Սենեքերիմին, որը 1021 կամ 1022 թվականին իր թագավորությունը Բյուզանդիային տալու դիմաց Սեբաստիայի հետ միասին ստացել էր նաև Արաբկիրի շրջանը։ Հետագայում, դարեր շարունակ, Արաբկիրը նշանակալի առաջադիմություն չի ունեցել։ Այն թուրքական տիրապետության տակ է անցել XV դարում, շարունակ մնալով իբրև խղճուկ մի գյուղաքաղաք։*

*Արևմտյան Հայաստանի մյուս տասնյակ քաղաքների նման*

հակասական են նաև Արաբկիրի բնակչության քանակի մասին մեզ հասած վիճակագրական տվյալները։ Համեմատաբար արժանահավատ կարելի է համարել ոչ թե թուրքական պաշտոնական, այլ անկողմնակալ հեղինակների ու պարբերական մամուլի հաղորդած տեղեկությունները, ըստ որոնց Արաբկիրը 1800—1830-ական թվականներին ուներ մոտ 15 հազար բնակիչ, որից 12 հազարը՝ հայեր, 1830—1850 թվականներին նրա բնակչության ընդհանուր քանակը մնացել էր գրեթե նույնը, բայց հայերի թիվը իջել էր մինչև 9 հազար մարդու։ 1915 թվականի եղեռնից առաջ քաղաքի բնակչության թիվը հասնում էր մոտ 20 հազար մարդու, որից 10 հազարը հայեր էին։ Արևմտյան Հայաստանի մյուս հարյուրավոր բնակավայրերի հայության հետ միասին Արաբկիրի հայերը ևս երկու անգամ՝ 1895—96 և 1915 թթ. թուրքական ջարդարարների կողմից ենթարկվել են տեղահանման ու բնաջնջման, իսկ քաղաքի շատ թաղեր հիմնովին ավերվել։ Տարագրված արաբկիրցիներից 800 հոգի 1922-ին նորից են վերադառնում և բնակություն հաստատում իրենց հարազատ քաղաքում, բայց, չդիմանալով քեմալականների բռնություններին, հեռանում են իրենց տոհմուտեղից և գաղթում Սովետական Հայաստան։ ՀՍՍՀ ներգաղթած արաբկիրցիները 1925 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանում սովետական կարգերի հաստատման օրը, հանդիսավոր պայմաններում Երևանի մոտ հիմնադրել են Նոր Արաբկիր ավանը, որը 1929 թ. ուներ 1000 բնակիչ, իսկ 30 տարի հետո՝ 60000։ Նոր Արաբկիրը տասնամյակներ առաջ ձուլվել է մայրաքաղաք Երևանի հետ՝ կազմելով նրա մի թաղամասը։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտման տարում՝ 1945 թվականին, Արաբկիրն ուներ 6684 բնակիչ, որից մոտ 600-ը՝ հայ։ Սակայն 1946 թվականից հետո այդտեղ մնացած հայերի մեծ մասը գաղթեց Սիրիա, Կ. Պոլիս, Մալաթիա և քաղաքում մնաց մոտ 200 հայ բնակիչ։

XIX—XX դարերում Արաբկիրն առաջին հերթին հայտնի էր իր կտավագործությամբ։ XIX դարի կեսին այստեղ գործում էին 15 ջուլհակային, 9 մանածագործական և սփռոցի արտադրության 18 ձեռնարկություններ։ Ինչպես կարելի է եզրակացնել իրազեկ հեղինակների վկայություններից, Արաբկիրի գործվածքները բարձր որակի էին և կարող էին մրցել Միջնադարյան արևելքի ցանկացած քաղաքի գործվածքեղենի հետ։ Գ. Սրվանձ-

տյանը վկայում է, որ այդ ժամանակների Արաբկիրում առանձնապես հայտնի էր Պողոս էֆենդի Տեր-Պետրոսյանի ձեռնարկությունը, որի գործվածքներն իրենց որակով համազոր էին Հալեպի և նշանավոր այլ քաղաքների գործվածքներին։

Ջուլհակությունից և մանածագործությունից բացի, որոնք ամենաառաջնակարգն էին քաղաքի արհեստների շարքում, տարածված էին նաև ոսկերչությունը, մետաղագործությունը, պղնձագործությունը, օճառագործությունը, զինագործությունը։

Արաբկիրի առևտուրը բավական աշխույժ էր։ Նա ուներ իր շուկան տասնյակ խանութներով ու կրպակներով։ Հնում այստեղով էին անցնում Ջիմարա—Մալաթիա, իսկ նոր ժամանակներում՝ Ակն—Մալաթիա ճանապարհները։ Քաղաքն արտահանում էր գործվածքներ (գլխավորապես սավաններ և սփռոցներ), մետաքս, ինչպես և մրգեր։

Բնակիչների զգալի մասը զբաղվում էր գյուղատնտեսությամբ՝ բամբակի, հացահատիկների, պտղատու այգիների մշակությամբ, շերամապահությամբ։

Տնտեսական վատթար պայմանների և թուրքական իշխանությունների ծանր հարկային քաղաքականության հետևանքով Արաբկիրում նույնպես տարածված էր պանդխտությունը. մի կտոր հաց վաստակելու համար շատ արաբկիրցիներ հարկադրված էին թողնել իրենց տունուտեղը և աշխատանք փնտրել զանազան քաղաքներում։ Ընդորում պանդխտում էին գրեթե միայն հայերը՝ հայ արհեստավորներն ու սևագործները։

Արաբկիրը կառուցված է ամֆիթատրոնի ձևով։ Լեռնալանջի վրա շարքերով ձգվում են նրա հարյուրավոր տները, որոնք քարակերտ են, 2—3 հարկանի, տափակ կտուրներով, շրջապատված պարտեզներով։ Նրա հիշատակության արժանի հուշարձաններն ու հնությունները սահմանափակվում են հին բերդի ավերակներով, եկեղեցիներով և մի քանի մզկիթներով։ Բերդը, ինչպես ասվեց, հավանաբար կառուցվել էր XI դարի առաջին կեսին այստեղ տեղափոխված Վասպուրականի Արծրունի իշխանների կողմից։ Նրա ավերակները՝ պարիսպների և մյուս կառույցների մնացորդները, պահպանվել էին մինչև մեր օրերը։ Քաղաքի եկեղեցիները XIX դարում և XX-ի սկզբում թվով 7 էին, որոնցից 4-ը լուսավորչական էին, 2-ը՝ բողոքական, իսկ մեկը՝ կաթոլիկական։ Լուսավորչական եկեղեցիները կոչվում էին ս. Աստվածածին, որը Արաբկիրի գլխավոր եկեղեցին էր, ս. Հակոբ, ս. Գևորգ,

ս. Լուսավորիչ։ Դրանցից բացի, քաղաքն ուներ մի ամբողջ շարք ուխտավայրեր՝ ս. Սարգիս, ս. Գևորգ, ս. Թագուհի, Կաթն աղբյուր, Ծակքար և այլն։ Արաբկիրի շրջակայքում նկատվում են զանազան հնությունների և բնակավայրերի հետքեր։

XIX և XX դդ. Արաբկիրն ուներ բավական աշխույժ մշակութային կյանք։ Հայերն այստեղ ունեին 13 դպրոց՝ Մայր վարժարան, ս. Թարգմանչաց, Զարուհյան և այլն, որոնց աշակերտների ընդհանուր թիվը հասնում էր 1000-ի, կաթոլիկ հայերն ունեին մեկ վարժարան՝ ս. Փրկիչ կոչված իրենց եկեղեցուն կից, իսկ երկու վարժարան ունեին բողոքական հայերը, որոնք նույնպես գործում էին եկեղեցիներին կից։ Արաբկիրն ուներ իր առաջնորդարանը, որը գտնվում էր քաղաքի կենտրոնում և որի իրավասության էին ենթակա լուսավորչական եկեղեցիներին կից գործող վարժարանները։

Արաբկիրը հայ գրչության կենտրոններից է։ Այստեղ XV—XVII դարերում գրվել են մի քանի ձեռագրեր, որոնցից մեզ հայտնի են 1446 թ. ընդօրինակված մի Ճաշոց և խաչատուր քահանայի 1640 թ. գրած Մաշտոցը։

Տարագիր արաբկիրցիները ԱՄՆ-ում, Բրիջուոթր քաղաքում հիմնել են «Ուսումնասիրաց ընկերություն Արաբկիրի» միությունը, որն իր մասնաճյուղերն ունի ԱՄՆ-ի մոտ 20 քաղաքներում։ 1925 թ. հրատարակվում է Միության «Նոր Արաբկիր» անունով պաշտոնական թերթը։

Արաբկիրում են ծնվել բառարանագիր Թադևոս Աստվածատրյանը (1831—1906), բանասեր, թարգմանիչ Դավիթ Բեկը (ծնված 1870թ.), սովետահայ ականավոր բանաստեղծ Վահագն Դավթյանը (1922թ.) և հայ մշակույթի այլ գործիչներ։

## ԱՐԴԱՀԱՆ

Արդահանը արևմտահայերեն տառադարձությամբ գրվել է Արտահան ձևով և կոչվել է նաև Քաջաց քաղաք, Քաջաց բերդ։ Այն իր բազմադարյան պատմության ընթացքում գրեթե միշտ եղել է գավառական տիպի քաղաք, համեմատաբար սակավ բնակչությամբ։ Այդ է պատճառը, որ հաճախ հիշատակվում է նաև իբրև քաղաքավան, ավան, բերդավան, գյուղաքաղաք։

Գտնվում է Կուրի վերին հոսանքի շրջանում, Արդահանի սարահարթում։ Շրջապատված է կաղնիների անտառով։ Քաղաքից հարավ կա մի արհեստական լճակ, որը դժվար է ասել, թե երբ է կառուցվել։ Կլիման ցուրտ է, ձմեռը տևում է 7—8 ամիս և տեղում է առատ ձյուն։ Ջրառատ է։ Քաղաքը երկու մասի է բաժանված Կուր գետով։

Հնում Արդահանը Մեծ Հայքի Գուգարք աշխարհի համանուն գավառի կենտրոնն էր, հետագայում մտնում էր էրզրումի նահանգի մեջ, իսկ 1878 թվականից մինչև առաջին համաշխարհային պատերազմի վերջը՝ Կարսի մարզի Արդահանի օկրուգի կենտրոնն էր։

Արդահանի բնակչության քանակի վերաբերյալ շատ թե քիչ արժանահավատ տվյալները վերաբերում էին XIX—XX դարերին։ 1828—29թթ. Արդահանում կար 400 բնտանիք, մեծ մասը հայեր։ XIX դարի վերջերին քաղաքի ընտանիքների թիվը հասնում էր 650-ի, որից 380-ը հայեր, իսկ մնացածը ռուսներ, հույներ, թուրքեր և այլք։ 1897-ին նրա բնակչության թիվը հասնում էր մոտ 4000 մարդու, իսկ առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին՝ 4113 մարդու, որից 2063-ը՝ հայեր[4]։ Քաղաքը ռուսների կողմից 1829 թվականին ազատագրվելու ժամանակ նրա բնակիչներից շատերը, գերազանցապես հայերը, գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանի տարբեր շրջաններում։

Արդահանում հայերը բնակվում էին քաղաքի Նոր թաղում, իսկ ռուսները (մոլոկաններ), թուրքերը և մասամբ հույները՝ գերազանցապես Հին թաղում։

Հայերի հիմնական զբաղմունքներն էին առևտուրն ու արհեստները՝ դարբնությունը, պղնձագործությունը, հյուսնությունը, ջուլհակությունը և այլն։ Մեծ թվով բնակիչներ զբաղվում էին գյուղատնտեսությամբ՝ երկրագործությամբ ու անասնապահությամբ։ Այստեղ XX դարի սկզբներին կային 5 ոչ մեծ գործարան ու ֆաբրիկա՝ աղյուսագործական, կաշեգործական, տեքստիլ ձեռնարկություններ։ Այդ նույն ժամանակներում քաղաքում կային մոտավորապես 150 արհեստանոց, խանութ ու կրպակ։

Արդահանի պատմական հուշարձաններից ու հնություններից

---

4 «Պատմաբանասիրական հանդես», Երևան, 1974, №4, էջ 149։

ուշադրության արժանի են բերդը, եկեղեցիները, Կուրի վրայի կամուրջները, շրջակայքի ամրոցների մնացորդները և ռուս-թուրքական 1877—78 թթ. պատերազմում զոհված զինվորականներին նվիրված հուշարձանը։

Բերդը գտնվում է պարսպապատ քաղաքի կենտրոնում, բարձր ու դժվարամատչելի ժայռաբլրի վրա։ Դրա կառուցման ժամանակը հայտնի չէ։ Միայն կարելի է պնդել, որ գոյություն ուներ հին ժամանակներից և վերափոխվել, ավելի էր ամրացվել Բագրատունիների օրոք։ Մինչև նոր ժամանակները կանգուն էին նրա պաշտպանական պարիսպներն ու բուրգերը։

Արդահանի բերդը գրավում է եռանկյունաձև տարածություն, որի երկարությունը («ներքնաձիգը») հասնում է մոտավորապես 170 մետրի։ Պարիսպները կառուցված են որձաքարի մեծ կոշտերից, իսկ բուրգերն ու դռների կամարները՝ սրբատաշ քարից և աղյուսից։ Բագրատունիներից հետո՝ XI դարում, Արդահանի բերդը գրավել են վրաց Բագրատունիները, հետագայում մի քանի անգամ անցել է ձեռքից ձեռք, իսկ XVI դարում, Սուլեյման 1-ինի օրոք նվաճվել օսմանյան թուրքերի կողմից։ Բերդն ուներ մի քանի դռներ։ Նրա արևմտյան դռան վրա քանդակված է Բագրատունիների զինանշանը՝ առյուծ, իսկ ներսում կան վիմագիր զանազան արձանագրություններ ու խաչքարեր։ Բերդում կային մզկիթ, որը XIX դարում կիսավեր վիճակում էր, բաղնիք, զանազան շինություններ ու քարակերտ ստորգետնյա սենյակներ։ 1828—29 թթ. և 1877—1878 թվականներին, ռուս-թուրքական պատերազմների ժամանակ, Արդահանի բերդը երկու անգամ ազատագրվում է թուրքական լծից, բայց հետագայում այն նորից է անցել թուրքերին։ Ներկայումս կիսակործան է, բայց դիրքի վրա, այնուամենայնիվ, թողնում է մեծ տպավորություն։

Արդահանի հայկական եկեղեցիները թվով երկուսն էին, որոնք հին էին և կոչվում էին ս. Աստվածածին ու ս. Գևորգ։ Դրանք կանգուն էին և գործում էին մինչև առաջին համաշխարհային պատերազմի տարիները։

Քաղաքի հին և նոր թաղերը իրար հետ կապվում էին Կուրի վրա գցված երկաթե երկու մեծ կամուրջներով, որոնք կառուցվել էին XIX դարում։

Արդահանն ընդհանրապես բարեկարգ քաղաք չի եղել։ Նրա բնակելի շենքերը գաճաճ էին ու անշուք։ Այստեղ 1892 թվականին տեղի է ունեցել մեծ հրդեհ, որի հետևանքով ոչնչացել

են բավական քանակությամբ շենքեր, իսկ Թուրքական կառավարությունը հայերին արգելում էր նոր շենքեր կառուցել հների տեղում։ Քաղաքի նոր թաղը փաստորեն ծնունդ էր առել այդ աղետաբեր հրդեհից հետո։ Նոր թաղում էին գտնվում փոստհեռագրատունն ու բանկի շենքերը, շուկան, դպրոցները և այլ կառույցներ ու հիմնարկներ։

Քաղաքն ուներ երկդասյան և հայոց ծխական դպրոցներ։ Այստեղ XIX դարի վերջին և XX-ի սկզբին գործում էր թատերական ինքնագործ խումբ։ Արդահանում է ծնվել ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ մեխանիկ Բ. Լ. Աբրահամյանը։

Ներկայումս Արդահանը գավառական փոքր քաղաք է, համանուն գավառակի (կազայի) կենտրոնը։ 1960 թ. նա ուներ 7228 բնակիչ՝ թուրքեր և քրդեր։ Քաղաքում գործում են կաշվի, կոշիկի, բրդյա տեքստիլի և գյուղատնտեսական գործիքների արտադրության փոքրիկ ձեռնարկություններ, որոնք սովորական արհեստանոցներից շատ քիչ են տարբերվում։

## ԱՐԴՎԻՆ

Արևմտահայ տառադարձությամբ՝ Արտվին։ Կոչվել է նաև Լիվանա (Լիվանե)։ Բնույթով գավառական տիպի քաղաք էր, բայց պաշտոնապես համարվել է նաև գյուղ։

Գտնվում է Ճորոխ գետի ստորին հոսանքի ձախ ափին, Բաթումից հարավ, այնտեղից եկող ճանապարհի վրա։ Բարձրությունը ծովի մակարդակից մոտ 400 մետր է (1284 ոտնաչափ)։ Փռված է գեղատեսիլ լեռնալանջի վրա, շրջապատված անտառապատ տարածքներով։ Ամբողջապես թաղված է կանաչի մեջ։ Շրջակայքում կան ընդարձակ բարեբեր հողեր։

Հնում մտնում էր Մեծ Հայքի Տայոց աշխարհի Ճակք գավառի մեջ և համարվում էր վերջինիս կենտրոնը։ Այն հաճախ հիշատակվում է նաև իբրև Եգր աշխարհի Հիզազ գավա
XVI—XIX դարերում Ախալցխայի փաշայության Ար
վառի (սանջակի), իսկ Ռուսաստանին միացնելուց
Թումի մարզի Արդվինի օկրուգի կենտրոնն էր։
Թուրքիայի Արդվինի նահանգի (վիլայեթի) կե

ոի քաղաք։
դվինի գա-
հետո՝ Բա-
Ներկայումս
նտրոնն է։

1970 թվականի մարդահամարի համաձայն, Արդվինի նահանգն ուներ ընդամենը 225,9 հազար բնակիչ։

IX—XI դարերում Արդվինը մտնում էր Բագրատունիների իշխանության, XI—XIII դարերում՝ Վրաց Բագրատունիների թագավորության մեջ։ XIII դարի 30-ական թվականներին գրավել են մոնղոլ-թաթարները, իսկ 1555 թվականին՝ օսմանյան թուրքերը։ Արդվինը Բաթումի մարզի հետ միասին Ռուսաստանին էր միացվել ռուս-թուրքական 1877—78 թվականների պատերազմի ժամանակ՝ մտնելով նախ իբրև օկրուգի կենտրոն Բաթումի մարզի, ապա՝ գավառական քաղաք՝ Քութայիսի նահանգի մեջ։ Քաղաքը նորից Թուրքիային է անցել 1921 թվականից։

Արդվինի նոր ժամանակների բնակչության թվի (և մասամբ ազգային կազմի) վերաբերյալ եղած տվյալները խիստ հակասական են։ Համեմատաբար արժանահավատ կարելի է համարել ոչ պաշտոնական աղբյուրների հաղորդած այն տվյալները. ըստ որոնց քաղաքը 1870 թ. ուներ 750 տուն հայ բնակիչ և գրեթե նույնքան էլ թուրքեր ու այլազգիներ։ 1889 թ. հայերի թիվը հասնում էր 6500 մարդու, իսկ թուրքերինը՝ ընդամենը 1300։ XX դարի սկզբին նրա ամբողջ բնակչությունը 8000 շունչ էր, որից մոտ 7000-ը՝ հայեր[5]: 1921 թվականին, երբ Արդվինը նորից անցավ Թուրքիային, նրա հայ բնակիչները գաղթեցին և վերաբնակեցվեցին Վրաստանում, Աբխազիայում և Սովետական Հայաստանում։ 1965 թվականի տվյալներով Արդվինի բնակչության թիվը 9800 մարդուց չէր անցնում։

Գյուղատնտեսական զբաղմունքներն Արդվինում քաղաքի ամբողջ տնտեսության մեջ ունեին կարևոր նշանակություն։ Զբաղվում էին այգեգործությամբ և մասամբ երկրագործությամբ։ Ամենատարածված զբաղմունքներից էր ձիթապտղի մշակությունը, որի բերքի մեծագույն մասն արտահանվում էր։ Հայերը գերազանցապես զբաղվում էին արհեստներով ու առևտրով։ Ամենատարածված արհեստներից էին մանածագործությունն ու ջուլհակությունը, փայտամշակումը՝ հյուսնությունն ու ատաղձագործությունը։ Արտադրում էին մետաքսե և բամբակե գույնզգույն կտավներ։ Արդվինից արտահանվող ապրանքների մեջ ձիթապտղից բացի կարևոր էին նաև փայտանյութը և ձեռագործ

5 «Լումա» հանդես, 1899, գիրք Բ, էջ 188—189, Տեր-Հակոբյան. Հայ աշխարհագրության դասագիրք, 1881, էջ 173։

գործվածքեղենը։ Քաղաքի ներքին առևտուրը գրեթե բացառապես մանրածախ էր և կենտրոնացած էր միակ շուկա-հրապարակում, որտեղ կային մի քանի տասնյակ կրպակներ ու արհեստանոցներ։

Արղվինի շուրջը եղած պարիսպների և բազմաթիվ շինությունների ավերակները ցույց են տալիս, որ նա միջնադարում եղել է վաճառաշահ քաղաք և աճեցել է հետագայում՝ մոնղոլական, թուրքմենական և թուրքական տիրապետության շրջանում։ Քաղաքն ընդհանրապես փռված է մեծ տարածության վրա. Ճորոխի ափով այն ձգվում է ավելի քան 5 կմ երկարությամբ։ Տները դրսից և ներսից սպիտակ են, կղմինդրածածկ։ Պահպանված են Թամար թագուհու ժամանակներին վերագրվող միջնադարյան բերդի ավերակները։ Այդ բերդը գտնվում է ուղղակի Ճորոխի ափին՝ ուղղահայաց վեր խոյացած ժայռի վրա։ XX դարի սկզբներին ուներ 5 եկեղեցի և նույնքան էլ մզկիթ։ Եկեղեցիները կրում էին ս. Աստվածածին, Պողոս-Պետրոս, Գր. Լուսավորիչ ս. Խաչ և առաքելական ս. Աստվածածին անունները։ Յուրաքանչյուր եկեղեցուն կից XIX դ. վերջերին և XX-ի սկզբներին կար դպրոց, որոնցից բացի քաղաքում գործում էր նաև մի վարժարան, որը 1870-ական թվականներին ուներ շուրջ 100 աշակերտ։

Արղվինում են ծնվել ականավոր մի շարք գործիչներ և արվեստագետներ՝ կուսակցական-պետական գործիչ, Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Ն. Զարոբյանը (1908—1980 թթ.), բանասեր, պատմաբան, ձեռագրագետ Ներսես (Գաբրիել) Հակոբի Ակինյանը (1883—1963), ժողովրդական նկարիչ Մ. Գ. Գյուրջյանը և ուրիշներ։

## ԱՐԾԿԵ

Արծկեն գտնվում է Վանա լճի հյուսիսային ափին, մի փոքրիկ կղզու դիմաց գտնվող Արծկե հրվանդանի վրա, որը լճի ջրերը բարձրանալիս նույնպես վերածվում էր կղզու։ Նավահանգիստ էր և գտնվում էր լճափերով դեպի Խլաթ ու Բաղեշ (Բիթլիս) տանող ճանապարհի վրա։

Արծկեն հիշատակվում է դեռևս ուրարտական արձանագրություններում՝ Զիուկունի անունով։ Այստեղ պահպանվել է ուրարտական Ռուսա II թագավորի սեպագիր արձանագրություններից

*մեկը։ Հնագույն ժամանակներում հավանաբար այն եղել է ամրացված կետ՝ բերդաքաղաք։ Հայ մատենագրության մեջ հիշատակվում է V դարից։ Մովսես Խորենացին, Ղազար Փարպեցին և Ստեփանոս Ասողիկը այն հիշատակում են որպես գյուղ, ոմանք կոչում են՝ ավան, իսկ մնացած մատենագիրները, որոնց թվում և արաբական աղբյուրները՝ համարում են քաղաք։*

*Արծկեի քաղաքական պատմության ընթացքը նման է Արճեշի պատմությանը։ Այստեղ տեղի են ունեցել մի շարք քաղաքական իրադարձություններ, որոնք հետևանք էին երկրում տեղի ունեցող դեպքերի։ Մինչև օտար տիրապետության տակ անցնելը, ավելի ճիշտ՝ մինչև արաբական նվաճումները, Արծկեն պատկանում էր մերթ Գնունիներին, մերթ էլ՝ Բզնունիներին և վարչականորեն մտնում էր Տուրուբերանի Բզնունիք գավառի մեջ։ Արաբներն իրենց առաջին արշավանքների ժամանակ, VII դարի կեսերին, գրավում են Արծկեն և այն կոչում Դար ալ-Ջավազ, որից էլ ծագել է նրա այժմյան՝ Ալջավազ կամ Ադիլջևազ (Ադիլջևազ) անունը։ XI դարի սկզբներին քաղաքն անցնում է Բյուզանդիայի տիրապետության տակ, 1054 թվականին գրավում են սելջուկ թուրքերը, 1100 թվականին տիրում են Շահարմենները, 1207 թ.՝ էյուբյանները, իսկ 1244-ին՝ մոնղոլները։ Արծկեն մեծ հարված է ստացել Շահ-Աբաս 1-ին շահի 1603—1604թթ. արշավանքի ժամանակ։ Աղբյուրների վկայությամբ, պարսկական բանակը, գրավելով Արծկեն, այն մատնում է հրի ու սրի, ավերում տներն ու մյուս շենքերը։*

*Հին Արծկեն Վանա լճի մակարդակի բարձրացման հետևանքով ջրածածկ է եղել X—XII դարերից։ Այն ամուր բերդաքաղաք էր, կրկնակի պարիսպներով պատած, և երկար ժամանակ իր գոյությունը պահպանում էր կղզու վերածված մի փոքրիկ ցամաքամասի վրա։ Ունեցել է երկու ամրոց՝ մեկը լեռան ստորոտում, որ ամբողջապես ծածկված է ջրով, իսկ մյուսը լեռան գագաթին, որ կանգուն է, բայց ամայի։ Նույնիսկ XX դարի սկզբներին դեռևս նշմարվում էին ջրի մեջ անցած աշտարակների և եկեղեցիների գմբեթների ծայրերը։ Այն լիովին ամայացել է XVII—XIX դարերում։*

*Հին Արծկեի փոխարեն, լճափի ավելի բարձրադիր մասում ժամանակի ընթացքում կառուցում են Նոր Արծկեն, որը XVII—XVIII դարերում Վանի նահանգի (վիլայեթ) Ալջավազ գավառի (սանջակ) կենտրոնն էր։ Ալջավազը բավական ընդարձակ տա-*

բածությունն գրավող, արգավանդ հողերով հայտնի գավառներից էր, որ XIX դարի երկրորդ կեսում ուներ 140 գյուղ 30000 բնակիչներով, որից 25000-ը հայեր, 30 եկեղեցի, 10-ից ավելի տարրական կրթարաններ։ Նոր Արծկեն շրջապատված է ծառաստաններով ու այգիներով։

Արծկեում XIV—XV դարերում բնակություն էին հաստատել նաև որոշ թվով քրդեր։ Սակայն մինչև առաջին համաշխարհային պատերազմը նրա բնակչության մեծ մասը կազմում էին հայերը։ XX դարի սկզբներին Արծկեի բնակչության թիվը հասնում էր 2460 մարդու, որից 1340-ը հայեր էին, իսկ մնացածը քրդեր, թուրքեր և հրեաներ։ Նրա հայ բնակչությունը հիմնականում զբաղվում էր երկրագործությամբ, անասնապահությամբ, այգեգործությամբ, արհեստներով, առևտրով և մասամբ երկանաքարի հանույթով ու ձկնորսությամբ։ 1915 թվականին նրա հայ բնակչության մի մասը զոհ գնաց թուրքական յաթաղանին, իսկ մյուս մասը տեղահանվեց ու տարագրվեց զանազան տեղեր։

Արծկեն ուներ երկու եկեղեցի՝ ս. Աստվածածին և ս. Սարգիս։ Նրա հյուսիսային կողմում, Սիփան լեռան լանջին էր գտնվում Երաշխավոր կամ Սքանչելագործ վանքը, որի ավերակները պահպանվել են մինչև մեր օրերը։ Ինչպես Մասիսի, Առնոսի, Արտոսի, Բյուրակնի, այնպես էլ Սիփանի հետ մեր ժողովուրդը կապել է զանազան ավանդություններ ու առասպելներ։ Արծկեն փաստորեն տեղադրված է Սիփանի հարավային փեշերին և, իզուր չէ, որ արծկեցիներն այն համարել են իրենց «սեփական» լեռը և մի շարք ավանդություններ հյուսել դրա շուրջը։ Դրանցից մեկի համաձայն, երբ Նոյի տապանը ջրի երեսին խաղալիք դարձած մոտենում է Սիփանի կատարին՝ վերջինս իբր բացականչում է. «Գնա ի Մասիս, որ բարձր է քան զիս»։

Արծկեն նշանակալի հետք է թողել հայ մշակույթի պատմության մեջ։ XV դարում այն գրչության կենտրոն էր, որտեղ ընդօրինակվել են տարբեր բովանդակությամբ մի շարք ձեռագրեր՝ հիմնականում ավետարաններ։ Արծկեում են ծնվել XV դարի հայտնի պատմագիր և եկեղեցական գործիչ Թովմա Մեծոփեցին՝ «Պատմութիւն Լանկ Թամուրայ և յաջորդաց իւրոց» աշխատության հեղինակը և ամենայն հայոց կաթողիկոսի աթոռը էջմիածնում հաստատելու անցքերին եռանդուն մասնակիցը, գրիչ, երգիչ և բանաստեղծ Ներսեսը՝ Արծկեի եպիսկոպոսը։ XV դարում Արծկեում է ապրել ու ստեղծագործել ժամանակագիր

Մովսես Արծկեցին, որի գրչին պատկանող չափածո տարեգրության հեղինակային ձեռագիր-բնագիրը ժամանակին գտնվել է Բաղեշի (Բիթլիս) Ամրդոլու վանքի մի ձեռագիր գանձարանում։

## ԱՐԾՆ

Արծնը գտնվում էր Բարձր Հայք կոչված աշխարհի (նահանգ) Կարին գավառում, Արևմտյան Եփրատի վերին հոսանքում, այժմյան Էրզրումի շրջանում, որ այնքան հայտնի է իր բնական հարստություններով (նավթ, քարածուխ, երկաթ. հանքային ջրեր) և արգավանդ հողերով։

Հայաստանում հիշատակվում են Արծն կամ Արզն արմատով մի քանի տեղանուններ։ Դրանցից են Վանա լճի հյուսիսային ափին գտնվող Արծկե (թուրքերեն Ադելջևազ) քաղաքը, պատմական Հայաստանի Աղձնիք աշխարհի Արզն կամ Արզանան գավառը համանուն քաղաքով, Սովետական Հայաստանի առողջարան Արզնին, Արածանի գետը և այլն։ Ամենայն հավանականությամբ այդ անունը կապված է հնագույն որևէ ցեղի կամ ցեղախմբի անվան հետ։

Արծնի տեղում հնագույն ժամանակներից ի վեր գոյություն է ունեցել սովորական բնակավայր, որը քաղաքի է վերածվել միայն X դարից, երբ Հայաստանում վերելք էին ապրում արհեստագործությունն ու առևտուրը, և նախկին տասնյակ ավաններ ու գյուղաքաղաքներ վերածվում էին մարդաշատ քաղաքների։

Արծնը գտնվում էր Եփրատի աջ ափին, Արևելքն Արևմուտքի հետ կապող քարավանային այն ճանապարհի վրա, որ գալիս էր Պարսկաստանից և Դվինով ու Անիով ձգվում մինչև Սև ծովի հարավային նավահանգիստները։ XI դարի առաջին կեսում իր զարգացման գագաթնակետին հասած այդ քաղաքի մասին վկայություններ ունեն ոչ միայն հայ, այլև բյուզանդական ու արաբական մատենագիրները, որոնք հիացմունքով են խոսում դրա մարդաշատության, վաճառաշահության և անբավ հարստությունների մասին։ XI դարի հայ պատմագիր Արիստակես Լաստիվերտցին իր հայրենի քաղաք Արծնը համարում է «մեծանիստ» ու «շահաստան», Մատթեոս Ուռհայեցին (XII դ.) այն կոչում է «հռչակավոր» ու «բազմամբոխ», իսկ Սմբատ Գունդստաբլը

վկայում է, թե այն «լի էր բազմամարդությամբ ու գանձով»։ Բյուզանդացի պատմագիրներ Հովհաննես Սկիլիցեսի ու Կեդրենոսի վկայությամբ, սելջուկների կողմից 1049 թվականին քաղաքը գրավելու ժամանակ միայն սպանվածների թիվը հասնում էր 150 հազար մարդու, իսկ արաբական մատենագիր Իբն ալ Ասիրը հաղորդում է, որ քաղաքից վերցված ավարը այնքան շատ է եղել, որ 10 հազար սայլով հազիվ են տարել։

Արծնը իր բնույթով բավական տարբերվում էր սովորական ֆեոդալական քաղաքներից։ Այն պարիսպներ չուներ և որոշ առումով, այսպես կոչված, «ազատ» քաղաք էր, արհեստագործության ու առևտրի խոշորագույն կենտրոն, որ փռված էր ընդարձակ տարածության վրա։ Աղբյուրների ու հնագիտական նյութերի բացակայության պատճառով անհնար է ստույգ որևէ խոսք ասել այդ մեծանիստ ու ծաղկուն քաղաքի թաղամասերի, ճարտարապետական կոթողների, արհեստների տեսակների, կոմունալ պայմանների և քաղաքը բնութագրող մյուս հարցերի վերաբերյալ։ Սակայն ընդհանուր վկայությունները և անուղղակի փաստերը գալիս են ասելու, որ Արծնը իր մեծության ու փարթամության համապատասխան ունեցել է հարյուրավոր ճարտարապետական կոթողներ, ժամանակի պահանջներին համապատասխանող կոմունալ պայմաններ, տասնյակների հասնող արհեստներ, ներքին ու արտաքին աշխույժ առևտուր, ծավալուն քաղաքաշինություն. Ուռհայեցու վկայությամբ միայն նրա եկեղեցիների թիվը հասնում էր 800-ի։ Արծնը անհամեմատ ավելի արագ էր զարգանում, քան իր հարևանը՝ Թեոդոսուպոլիս (Կարին) բերդաքաղաքը, որին Արծնի բնակիչները անվանում էին Արզն Ռում, այսինքն՝ ռումների (հույների) Արզն, դրանից էլ մնացել է Կարին-Թեոդոսուպոլսի մյուս՝ Արզրում (Էրզրում) անունը։

Սակայն միջնադարյան Հայաստանի այդ վաճառաշահ քաղաքի պատմությունն անհամեմատ կարճ է եղել։ Իբրև հարուստ, բազմամարդ և միաժամանակ անպարիսպ քաղաք, այն իր վրա է գրավում XI դարի 40-ական թվականներից Հայաստանը պարբերաբար ավերող սելջուկյան հորդաների ուշադրությունը։ Վերջիններս 1049 թվականի արշավանքի ընթացքում մի շարք այլ բնակավայրեր գրավելուց ու հիմնահատակ ավերելուց հետո, մեծ ամբոխ կազմած, հարձակվում են Արծնի վրա։ Բնակչությունը մոտ մեկ շաբաթ հերոսաբար պաշտպանվում է։ Անպա-

րիսպ քաղաքը, Թեոդոսուպոլսի բյուզանդական կայազորի կողմից օգնություն չստանալու պատճառով, ի վերջո, տեղի է տալիս Գազազած թշնամին, կոտրելով պաշտպանվողների դիմադրությունը, գրավում է քաղաքը և այն հիմնահատակ կործանում։ Բնակչության մեծագույն մասը սրի է քաշվում, իսկ մի կերպ փրկվածները ապաստան են գտնում Հարևան Թեոդոսուպոլիս-Կարինում ու այլ բնակավայրերում։

Դրանից հետո Արծնը այլևս չի վերականգնվել և, իբրև քաղաք, իսպառ վերացել է քարտեզի վրայից։ Վաղեմի քաղաքի տեղում նոր ժամանակներում հիշատակվում է Խարարզ (=Թրք. խարաբա՝ ավերակ+Արզն՝ Արծն) անունով գյուղը, որի XIX դարի վերջերին և XX-ի սկզբներին ունեցած մոտ 1000 բնակիչներից ավելի քան 800-ը հայեր էին։ Նրանց մեծագույն մասը ոչնչացավ 1915 թ. երիտթուրքերի կազմակերպած ցեղասպանության ժամանակ, իսկ մի կերպ փրկվածները գաղթեցին տարբեր երկրներ։ Ականատեսների վկայությամբ մինչև մեր դարի սկիզբները Խարարզ գյուղի մոտ դեռևս նշմարվում էին միջնադարյան Արծն քաղաքի ընդարձակ ավերակները։

## ԱՐՂԱՆԱ—ՄԱԴԵՆ

Հնում, հայկական աղբյուրներում, սովորաբար կոչվել է Արկնի, Արղնի, Արղանա, իսկ այժմ՝ Մադեն, Հին Արղանա։ Համարվել է բերդ, ավանաբերդ, գյուղաքաղաք, քաղաք։

Գտնվում է Արևմտյան Տիգրիսի ակունքներից մեկի՝ Արղանա գետի (Աղանա-սու) աջ ափին, Խարբերդ—Դիարբեքիր ճանապարհին, Դիարբեքիրից մոտ 55 կմ հյուսիս արևմուտք, ծովի մակարդակից 1235 մ բարձրությամբ սարավանդի վրա։ Նախկինում շրջակայքն ամբողջովին պատած էր խիտ անտառներով, որոնք շարունակ կտրտվել են պղինձ ձուլելու համար փայտածուխ ստանալու նպատակով։ Քաղաքի հարավարևմտյան կողմում կան պղնձի հարուստ հանքավայրեր, որոնք հայտնի են և շահագործման են ենթարկվել տակավին ուրարտական ժամանակներից։ Այժմ էլ դրանց պաշարները չեն սպառվել և արդյունահանումը շարունակվում է։ Պղնձից բացի նույն հանքավայրերում կան նաև ոսկի և արծաթ։

Հնում, ինչպես ասվեց, բերդ էր և կոչվում էր Արկնի՝ մոտե-

յով Մեծ Հայքի Չորրորդ Հայք աշխարհի Պաղնատուն գավառի մեջ։ Նոր ժամանակներում և այժմ՝ Արղանա-Մադենը Դիարբեքիրի նահանգի համանուն գավառի (սանջակ) ու գավառակի (կազա) կենտրոնն է։

1800—1830-ական թթ. Արղանա-Մադենն ուներ մոտ 8000 բնակիչ, որից 6000-ը՝ հայեր, 1830—50-ական թթ. նրա բնակչության քանակը նվազելով հասել էր 3000 մարդու, որի կեսը կազմում էին հայերը։ Որոշ աղբյուրներում մոտ 3000 բնակիչ է նշված նաև XX դարի սկզբների Արղանա-Մադենում, բայց, այլ աղբյուրների համաձայն, այդ ժամանակ գյուղաքաղաքն ունեցել է մոտ 1500 տուն, կամ շուրջ 7000—8000 բնակիչ[6]։ Հայերից բացի այստեղ բնակվում էին նաև քրդեր, հույներ և հրեաներ։ Նրա հայ բնակիչները աշխատում էին պղնձի հանքերում, զբաղվում երկրագործությամբ, արհեստներով ու առևտրով։ Գ. Սրվանձտյանի վկայությամբ 1840—1860-ական թթ. ծաղկում ապրող Արղանա-Մադենի հանքարդյունաբերությունը հետագա տասնամյակներում անկման էր հասել և դատապարտվել անուշադրության։ Այստեղ պղնձի հանույթն ու ձուլումը կատարվում էին բացառապես ձեռքի աշխատանքով և իբրև վառելիք օգտագործվում էր փայտածուխը։ Նրա պղնձարդյունաբերությունը որոշ աշխուժացում է ապրել XIX դարի վերջերին և XX-ի սկզբներին։ Մեր դարի սկզբներին այստեղ տարեկան արտադրվում էր մոտ 3000 տոննա սև պղինձ, որը հիմնականում առաքվում էր Դիարբեքիր, Էրզրում և Տրապիզոն։

Արղանա-Մադենի պղնձի հանույթը և նախնական մշակումը խիստ կրճատվեց առաջին համաշխարհային պատերազմի տարիներին, երբ նրա հայ բնակչության մի մասը տարագրվեց օտար երկրներ, որի հետևանքով այստեղի պղնձարդյունաբերությունը զրկվեց հարյուրավոր որակյալ աշխատողներից։

Արղանա-Մադենը բաժանված էր 3 մեծ թաղերի՝ Վերին, Միջին և Ստորին։ Քաղաքում հայերը, հույները, քրդերը և հրեաներն ապրում էին առանձին թաղերում։ Տները ցրված էին սարահարթի և լեռնալանջի վրա՝ լեռան գագաթից մինչև ստորոտը կազմելով անկանոն մի քանի շարքեր։ Հայերն ունեին իրենց եկեղեցին՝ ս. Աստվածածին անունով, և մի վարժարան, որ գործում էր անցյալ դարի կեսերից։

---

[6] ՀՍՀ, հ. 2-րդ, էջ 86։

## ԱՐՃԵՇ

Վանա լճի ավազանը հնագույն ժամանակներից ի վեր քաղաքակրթության կենտրոններից էր։ Սկզբնապես այստեղ էր ձևավորվել Հայաստանի հնագույն պետությունը՝ Ուրարտու-Արմենիան, որը հետագայում՝ VIII դարում (մ. թ. ա.), արդեն գրավում էր գրեթե ամբողջ Պատմական Հայաստանի տարածքը։ Հնագույն այդ ժամանակներում Վանա լճի առափնյա շրջաններում հիմնադրվել էին մի շարք բերդաքաղաքներ, որոնցից շատերը հետագայում ոչ միայն պահպանեցին իրենց գոյությունը, այլև ունեցան նոր վերելքի ժամանակներ։ Վանա լիճն իր շուրջն ընկած տարածքներով համահայաստանյան մասշտաբով կենսական կենտրոն էր դարձել հատկապես X—XIII դարերում, երբ երկիրը թևակոխել էր զարգացած ավատատիրության ժամանակաշրջանը։ Լճով կատարվող առափնյա աշխույժ նավարկությունը, Դվինից, Թավրիզից ու Հյուսիսային Միջագետքից եկող առևտրի ճանապարհները, հնից ժառանգություն ստացած տասնյակների հասնող արհեստների զարգացումը, ձկնորսությունը, աղի հանույթը, ներքին առևտրի առաջադիմությունը մեծապես նպաստում էին այդ շրջանների տնտեսական ու մշակութային զարգացմանը։ Ավելի բազմամարդ են դառնում լճի եզերքի հին քաղաքները՝ Վանը, Արճեշը, Արտամետը, առաջանում են նոր քաղաքներ՝ Խլաթ, Դատվան, Բերկրի և այլն։ Ստեփանոս Ասողիկի այն հիշատակությունը, թե Բագրատունիների ժամանակ «ագարակները» դարձան «ավաններ», իսկ «ավանները՝ քաղաքներ», լիովին վերաբերում էր նաև Վանա լճի շրջակայքին, որտեղ X—XIII դդ. կային մոտ մեկուկես տասնյակ քաղաքներ։

Արճեշը գտնվում է Վանա լճի հյուսիսային ափին, լիճը թափվող Արճեշ փոքրիկ գետակի գետաբերանում։ Տարբեր ժամանակներում Արճեշը հիշատակվում է իբրև գյուղ, ավան, քաղաք, բերդաքաղաք և նավահանգիստ։ Գոյություն ունի ուրարտական ժամանակներից. նրա անունը կապում են ուրարտական Արգիշտի 2-րդ թագավորի (մահ. մոտ. 685 թ. մ. թ. ա.) անվան հետ։ Այստեղ պահպանվել են թագավորի թողած երկու սեպագիր քարակոթողները, որոնցում հիշատակվում է քաղաքի, մի արհեստական լճի ու ջրանցքի կառուցման մասին։ Սակայն Արճեշի տեղում բնակավայր է գոյություն ունեցել տակավին քա-

բնդարյան ժամանակներում։ Նրա տարածքում հայտնաբերվել են քարեդարյան գործիքներ, բրոնզի դարի խեցեղեն։

Արճեշը միջին դարերում գավառի կենտրոն էր։ Այն մտնում էր Տուրուբերան աշխարհի մեջ և ըստ ոմանց գտնվում էր Աղիովիտ գավառում (որ հայտնի է նաև Քաջբերունիք անունով), իսկ ըստ ուրիշների՝ Ապահունիքում։ Պատկանում էր Գնունիների նախարարական տանը, իսկ 1000 թվականից՝ Արծրունիներին։ Երբեմն Վանա լիճը կոչվել է Արճեշի անունով։

Հայ մատենագրության մեջ Արճեշը հիշատակվում է VII դարից։ Նրա մասին բավական հարուստ տեղեկություններ են հաղորդում ոչ միայն հայ, այլև արաբական մատենագիրները։

Արճեշի քաղաքական պատմությունն ունեցել է շատ ելևէջներ։ Քաղաքի քաղաքական պատմության առաջին կարևոր իրադարձությունը դրա գրավումն էր բյուզանդական Հերակլ կայսեր (610—641) կողմից։ Հիշատակությունների համաձայն, կայսրին հաջողվել էր քաղաքը գրավել միայն երկարատև պաշարումից հետո։ Քաղաքացիներն ու կայազորը համառ դիմադրություն են ցույց տվել կայսերական բանակին, բայց վերջիվերջո տեղի են տվել։ Քաղաք մտած բյուզանդական զորքը ավերել ու կողոպտել է այն։

VII դարի կեսերին Արճեշը բյուզանդիացիներից գրավում են արաբները, որոնք այն դարձնում են իրենց ամրացված կետերից մեկը, այստեղ զետեղելով բավական մեծաքանակ կայազոր։ Սակայն այդ բոլորովին չի խանգարել տեղի հայությանը մասնակցելու արաբական լծի դեմ ուղղված 772—775 թթ. ժողովրդական ազատագրական ապստամբությանը։ 775 թվականին Արճեշի մոտ տեղի է ունեցել այրուձիահեծ ճակատամարտ արաբական 30-հազարանոց բանակի և հայ ապստամբների միջև։ Հայերը կատաղի դիմադրություն են ցույց տվել, բայց թվական մեծ գերակշռություն ունեցող թշնամին ճակատամարտից դուրս է եկել հաղթանակով։ Ապստամբները պարտվել են՝ տալով 1500 զոհ։

Արճեշը խալիֆայության տիրապետության տակ մնում է մինչև XI դարի առաջին քառորդի վերջերը։ 1021 թվականին այն նորից է գրավվում Բյուզանդական կայսրության կողմից։ Սակայն կայսրության կազմում այս անգամ Արճեշը մնում է ընդամենը 32—33 տարի։ Սելջուկները դեպի Հայաստան կատարած իրենց երրորդ արշավանքի ժամանակ՝ Տուղրիլ սուլթանի

հրամանատարությամբ 1054 թվականին 8 օր տևած պաշարումից հետո գրավում ու ավերում են այն։

Սելջուկյան կայսրության մասնատումից հետո, Արճեշը նախ (1110 թ.) մտնում է Շահարմենների սուլթանության, ապա (1208 թ.) էյուբյանների էմիրության մեջ մինչև մոնղոլական լծի հաստատումը (1244թ.)։

Թշնամական հարձակումներից բացի, Արճեշը մի քանի անգամ ավերվել է կործանիչ երկրաշարժերից։ Քաղաքին առանձնապես մեծ վնասներ են պատճառել 1276 և 1715 թվականներին տեղի ունեցած երկրաշարժերը, որոնց հետևանքով փլվել են բազմաթիվ շենքեր և զոհվել բավական թվով մարդիկ։

X—XIII դարերի համեմատությամբ, հետագայում Արճեշն ընդհանուր առմամբ ավելի անշուք էր և ավելի սակավամարդ։ XVIII դարի երկրորդ կեսից, Վանա լճի մակարդակի բարձրացման հետևանքով հին Արճեշն աստիճանաբար անցնում է ջրի տակ և XIX դարի երկրորդ կեսից այլևս չէին երևում նրա շենքերը՝ եկեղեցիները, բնակելի տները և մյուս կառույցները։ Միայն խիստ ալեկոծությունների ժամանակ, երբ լճի ալիքները նահանջում էին դեպի խորքերը, հազիվ նշմարվում էին նրա պաշտպանական պարիսպների ու դրանց աշտարակների մնացորդները։

Պատմական Արճեշը ջրի տակ թաղվելուց հետո, դրանից մի փոքր հյուսիս, ավելի բարձրադիր վայրում կառուցել են Ականց անունը կրող (Նոր Արճեշ, թուրքերեն՝ Էրջիշ) քաղաքը, որը XIX դարի սկզբին ուներ 1500 տուն բնակիչ, մեծ մասը՝ հայեր։ Իսկ XX դարի սկզբներին՝ ընդամենը 260 տուն հայ և քուրդ բնակիչ։

Բնակչության զբաղմունքներն էին երկրագործությունը, այգեգործությունը, գինեգործությունը, ձկնորսությունը, առևտուրը։ Իսկ քրդերը հիմնականում զբաղվում էին անասնապահությամբ։ Արճեշի հայ առևտրականները Պոլսից, Էրզրումից, Վանից, Անդրկովկասի քաղաքներից ներմուծում էին զանազան ապրանքներ՝ կտորեղեն, նավթ, շաքար և այլն։ Քաղաքի համար առանձնապես կարևոր նշանակություն էր ստացել դեպի Վան տանող սայլուղին, որը, մասամբ տնտեսական և մասամբ էլ ռազմական նպատակներով, XIX դարի երկրորդ կեսին խճապատել էին։

Քաղաքի հայ բնակչությունը ցեղասպանության ենթարկվեց թուրքական ջարդարարների ձեռքով առաջին համաշխարհային

պատերազմի տարիներին, իսկ մի կերպ փրկվածներն ապաստան գտան հիմնականում Սովետական Հայաստանում։

Քաղաքն ունեցել է երկու եկեղեցի։ Նրա մոտ էր գտնվում Մեծոփա հայտնի վանքը, XV դարի պատմագիր Թովմա Մեծոփեցու կրթարանը և գործավայրը։ Արճեշը XV դարում հայկական մշակույթի կենտրոններից էր՝ գրչության կարևոր օջախ, որի հետ է կապված մի ամբողջ շարք ձեռագրեր ընդօրինակած գրիչներ՝ Աղաբիայի, Ստեփանոսի, Սիմեոն Արճիշեցու, Գրիգոր Տաուշեցու և ուրիշների գործունեությունը։ Ականց-Արճեշ քաղաքում է ծնվել հայ ականավոր զորավար, 1941—1945 թթ. Հայրենական պատերազմում փառաբանված գեներալ-մայոր Նվեր Սաֆարյանը։

## ԱՐՇԱԿԱՎԱՆ

Հայկական պետության քաղաքական դրությունը IV դարում չափազանց լարված էր։ Հայաստանի անկախությանն սպառնում էին նրա արևելյան և արևմտյան աշխարհակալ պետությունները՝ սասանյան Պարսկաստանն ու Հռոմը։ Այդպիսի պայմաններում հայկական կենտրոնական միասնական պետության ուժեղացման հարցը դարձել էր այդ դարի պատմական հիմնական պրոբլեմը։ Հայաստանը միայն կենտրոնացված ուժեղ պետության առկայության պայմաններում կարող էր պաշտպանել իր քաղաքական անկախությունն օտար զավթիչների ոտնձգություններից։ Դրանից ելնելով էլ IV դարի Արշակունի հայ թագավորները, մանավանդ նրանցից հետատեսները, ամեն ջանք գործադրում էին նախարարների կենտրոնախույս տրամադրությունները կոտրելու և նրանց կենտրոնական պետությանը հնազանդեցնելու համար։ Այնպես որ IV դարի հայկական պետության ներքին կյանքն ամբողջապես երանգավորված էր հայոց թագավորների և կենտրոնախույս տրամադրություններ ունեցող ֆեոդալ-նախարարների պայքարով։ Այդ պայքարի ամենասուր պահերից մեկը Արշակ Բ-ի (352—368 թթ.) թագավորության շրջանն էր, երբ սասանյան Պարսկաստանը սպառնում էր Հայաստանի քաղաքական անվտանգությանը, մինչդեռ նրա նախարարությունների մի մասը քաղաքական այդ վտանգավոր ու լարված պահին չէր էլ ուզում ճանաչել կենտրոնական պետությունը և ամեն միջոցներով ձգտում էր լինել ինքնիշխան, իր

այդ պառակտողական պայքարի ընթացքում նույնիսկ դիմելով թշնամական պետությունների օգնությանը։ Արշակ Բ-ն՝ այդ հեռատես ու եռանդուն գործիչը, արտաքին վտանգը վերացնելու ելքը առաջին հերթին տեսնում էր նախարարների կենտրոնախույս տրամադրությունները կոտրելու և կենտրոնացված ուժեղ պետությանը ենթարկելու մեջ։ Նա հանուն այդ վեհ նպատակի բնաջնջեց՝ անջատողական ձգտումներով կենտրոնացած իշխանության համար ռեալ վտանգ ներկայացնող Կամսարականների նախարարական տունը՝ հարքունիս գրավելով դրան պատկանող տարածքներն ու բերդերը։ Եվ ահա նույն նպատակով Արշակ Բ-ն IV դարի 50-ական թվականների վերջին Այրարատի Կոգովիտ գավառում (այժմյան Բայազետի շրջանում)՝ Թավրիզ—Դարույնք (Բայազետ)—Կարին (Էրզրում)—Տրապիզոն քարավանային տարանցիկ ճանապարհի վրա հիմնադրում է իր անունը կրող Արշակավան քաղաքը։ Արշակավանը գտնվում էր Մասիսի թիկունքում, ընդարձակ գետահովտում։ Պատմահայր Մովսես Խորենացին գրում է. «...(Արշակավանը) էր քաղաք Հայոց, զոր շինեաց Արշակ արքայ Հայոց ի թիկնաց լեռինն Մասեաց ի Կոգովիտ գաւառի»։ Հայագետներից ոմանք Արշակավանը նույնացնում են Արածանիի հովտից Արարատյան դաշտ տանող ճանապարհին գտնվող Խարաբաբաժար (Խարաբաբազար) կամ Քեռհնայրազար հնավայրերի հետ, որոնք գտնվում են Հայկական պար լեռնաշղթայի համանուն լեռնանցքների շրջանում։ Մինչև մեր ժամանակներն այստեղ նշմարվում էին քարավանատների և բազմաթիվ այլ շինությունների մնացորդներ։

Արշակավանը դառնալու էր Հայաստանի նոր մայրաքաղաքը։ Փավստոս Բուզանդը վկայում է, որ այստեղ բազում այլ շենքերի հետ միասին «շինեցին եւ... ապարանս արքունի»։

Արշակ Բ-ի արքայական հատուկ հրովարտակով Արշակավանում բնակվելու իրավունք է տրվում տերերի ձեռքից փախած «ծառաներին», [illegible] և առահասարակ բոլոր նրանց, ովքեր ենթակա էին հետապնդման ու հալածանքի։ Խորենացու ասելով Արշակավանի կառուցումը պարզապես ուղղված էր նախարարների շահերի դեմ։ Նոր մայրաքաղաքի հիմնադրմամբ Հայոց արքան ձգտում էր՝ ա) նոր բնակչությանը որոշ արտոնություններ տալով՝ նախարարների դեմ մղվող պայքարում նրան դարձնել իր հենարանը, բ) նա-

խարարներին ենթակա շինականների հաշվին մեծացնել պետական հարկատու բնակիչների թիվը և գ) շինականներին ու «ծառաներին» տրվող արտոնությունները օգտագործել սուր բնույթ ստացած դասակարգային ներհակությունները առժամանակ մեղմացնելու համար։

Պատմագիրների վկայության համաձայն, շատ կարճ ժամանակամիջոցում Արշակավանը դառնում է խոշոր ու բազմամարդ քաղաք։ «Պարսից պատերազմը» վեպի մեջ Արշակավանը բնորոշված է իբրև «գողերի», «ավազակների», «մարդասպանների» գումարման վայր՝ ժողովարան։ Նրա բնակչության հասցեին ամեն տեսակի լուտանքներ են ուղղում նաև ֆեոդալիզմի գաղափարախոս պատմագիրները։ Նրանք գրում են, որ իբր այստեղ հավաքվել էին միայն մարդաթողները, կնաթողները, պարտապանները, փախստականները, քրեական հանցագործները, ամեն տեսակի բախտախնդիր տարրեր, խառնիճաղանջ մի ամբոխ։ Հետագայում, բազում դարեր, ավանդույթի ուժով, Արշակավանը դարձել էին խառնիճաղանջության խորհրդանիշ։ Դա միանգամայն տրամաբանական է և այստեղ զարմանալու ոչինչ չկա։ Արշակավանի բնակչության հիմնական մասը բաղկացած էր ֆեոդալ նախարարների հարկային ծանր լծից փախած շինականներից և «ծառաներից», որոնց նույն ֆեոդալական կարգերի ջատագով պատմագիրները միայն այդպես կարող էին հորջորջել։ Շինականների և «ծառաների» փախուստը դեպի Արշակավան՝ դա զրկվածների, նեղվածների, տառապյալների ըմբոստացումն էր իրենց հարստահարողների դեմ։

Ֆեոդալ նախարարները բողոքում և պահանջում են թագավորից իրենց «ծառաներին» հետ վերադարձնել, սակայն Արշակը մերժում է նրանց պահանջը։ Թագավորի այդ քաղաքականությունից դժգոհ նախարարները, եկեղեցու անվերապահ համաձայնությամբ, խռովություն են բարձրացնում և իրենց միացյալ զորքերով հարձակվում են Արշակավանի վրա՝ կոտորում նրա բնակիչներին և քաղաքը հիմնահատակ ավերում։ Այդ մասին Մովսես Խորենացին գրում է. «Եւ նախարարացն Հայոց ժողովեալ՝ դիմեցին ի վերայ արքունական ձեռնակերտին Արշակաւանի, և մարին գնա սրով սուսերի յառնէ մինչև ցկին, բայց ի տղայոց ստնդիացած. քանզի դառնացեալք էին իւրաքանչիւր ի վերայ ծառայից իւրեանց և յանցաւորաց»։

Ինչպես տեսնում ենք, պատմիչի ասելով նախարարները

խնայում են միայն ծծկեր երեխաներին։ Ոմանց կարծիքով Արշակավանում սպանվել է 20 հազար մարդ, իսկ ըստ ուրիշների՝ նույնքան ընտանիք։ Դրանով հիմնահատակ ավերվում է Նորակերտ մայրաքաղաքը և այլևս չի վերականգնվում։ Արշակավանն, այսպիսով, ունեցել է 5—6 տարվա կյանք։ Նրա ավերման գործում եկեղեցուց բացի, խառն էր նաև սասանյան Պարսկաստանը, որը Հայաստանի նկատմամբ իր զավթողական քաղաքականության հաջողության երաշխիքը տեսնում էր նաև նրա կենտրոնացած պետության թուլացման և ֆեոդալական երկպառակությունների մեջ։

## ԱՐՇԱՄԱՇԱՏ

Ծոփքի թագավորության այս մայրաքաղաքը հիշատակվում է նույն անվան մի շարք տարբերակներով. Մատթեոս Ուռհայեցին (XII դ.) կոչում է Աշմուշատ, արաբ պատմիչները՝ Սումայսատ, այլ մատենագիրներ ու գրիչներ՝ Շամոշատ, Շամուշատ, Շիմշատ։ Սկզբում եղել է բերդ, որի շուրջը հետագայում, հելլենիզմի շրջանում, փռվել է բուն քաղաքը։

Աշխարհագրական դիրքը վերջնականապես չի ճշտված՝ ոմանք այն տեղադրում են Չորրորդ Հայքի Բալահովիտ, ոմանք էլ՝ Անձիտ կամ Հանձիտ գավառում, որոնք իրար սահմանակից էին։ Եվ այդ պատճառով էլ աշխարհագրական քարտեզներից շատերի վրա այն չի նշանակված։ Սակայն, օգտվելով մի քանի պատմագիրների, հատկապես՝ Մ. Ուռհայեցու մի վկայությունից Արշամաշատը տեղադրում են Հայկական Տավրոսի հյուսիսային ստորոտում, Բալու և Խարբերդ քաղաքների միջև, վերջինից ոչ հեռու, Ալելուա դաշտում։ Կիպերտի քարտեզում (Բեռլին, 1910 թ.) Արշամաշատը նշանակվում է Ծովք լճից հյուսիս-արևելք, Բալուից Խարբերդ տանող ճանապարհին, Արածանիի ձախ ափին, նրա աջակողմյան Փերի վտակի գետաբերանի մոտ։ Թեպետ անունը հիշեցնում է Ծովքի (Գյոլչիկ) և Արածանիի միջև, Խարբերդի դաշտում նոր ժամանակներում եղած Շամուշի կոչված գյուղի անունը, սակայն դրանց լրիվ նույնացմանը խանգարում է այն, որ վերջինս գտնվում էր հարթավայրում, մինչդեռ Արշամաշատ-Շամուշատը ունեցել է լեռնային դիրք և եղել է

Հայտնի ամրոց։ Շատ հավանական է Ն. Ադոնցի այն ենթադրությունը, ըստ որի, քաղաքն ավերվելուց հետո, նրա բնակիչները բնակություն են հաստատել նոր տեղում և այդ նոր բնակավայրը նույնպես կոչել իրենց հայրենի քաղաքի անունով։ Անընդունելի է ոմանց այն ենթադրությունը, թե Արշամաշատը գտնվում էր հռոմեական աղբյուրների հիշատակած Հռանդեա վայրի տեղում, որն այնքան նշանավոր էր դարձել այստեղ տեղի ունեցած 62 թ. (մ. թ.) ճակատամարտի և 63 թ. կայացած զինադադարի համաձայնագրի շնորհիվ։ Անհավանական է նաև Արշամաշատը Տուրուբերան աշխարհի Արշամունիք գավառում տեղադրելը. Տուրուբերանի գավառներից ոչ մեկը Ծոփքի թագավորության մեջ չի մտել, հետևապես վերջինիս մայրաքաղաքն այնտեղ լինել չէր կարող։

Արշամաշատը հիմնադրվել է մ. թ. ա. III դարի 40—30-ական թվականներին Արշամ թագավորի կողմից և կոչվել նրա անունով։ Հիշատակում են հայ և օտար բազմաթիվ պատմիչներ՝ Թ. Արծրունի, Մ. Ուռհայեցի, Սմբատ Գունդստաբլ, Պտղոմեոս, Տակիտոս, Պլինիոս, Պոլիբիոս, Իբն-Խորդաբե, Յակուտ և ուրիշներ։ Առաջին անգամ հիշատակել է Պտղոմեոսը։ Արշամաշատի մոտ է տեղի ունեցել (202թ. մ.թ.ա.) սելևկյան Անտիոքոս Մեծի ընդհարումը Ծոփքի Քսերքսես (Շավարշ) հայ թագավորի հետ, որի ամրոցն էր այն։

II—I դդ. (մ. թ. ա.) Արշամաշատը առևտրի և արհեստագործության կարևոր կենտրոն էր, հելլենիստական մի ծաղկած քաղաք, որը գտնվում էր առևտրական ճանապարհի վրա և կապված էր հարևան ու հեռավոր շատ քաղաքների հետ։ Հետագայում, Ծոփքի թագավորությունը Տիգրան Մեծի կողմից (95—55 թթ. մ. թ. ա.) Մեծ Հայքին միացնելուց հետո, Արշամաշատը կորցնում է իր նախկին արտակարգ նշանակությունը, դադարում է մայրաքաղաք լինելուց և աստիճանաբար վերածվում սովորական բերդաքաղաքի, որպիսին էր նաև Արշակունիների թագավորության շրջանում (I—V դդ.)։

Արշակունիների թագավորության անկման շրջանում Արշամաշատը նախ գրավում են բյուզանդացիները, ապա՝ արաբները (VII դ.), սելջուկները (XI դ.)։ Ընդ որում, Մատթեոս Ուռհայեցու մի վկայությունից հայտնի է դառնում, որ XI դարում այն ամուր բերդաքաղաք էր և նախ մտնում էր Փիլարտոս իշխանի, ապա նրան պարտության մատնած Մուշեղ Մամիկոնյանի թա-

*ռան՝ Թոռնիկ Մամիկոնյանի իշխանության մեջ, որի հիմնական տարածքը կազմված էր Սասունից և մասամբ Տարոնից, բայց ուղղակի կոչվում էր Սասունի իշխանություն։ «Յայսմ աւուրս գնայր Թոռնիկ սակաւ արամբք եւ մտանէր իւր բերդն յԱշմուշատ քաղաք ի վերայ Արածանւոյ»,— հաղորդում է Մ. Ուռհայեցին։*

*Արշամաշատն իբրև բերդաքաղաք հիշատակվում է մինչև XI—XII դարերը։ Հավանաբար կործանվել է երկրաշարժից։ Համենայն դեպս, Յակուտի ապրած ժամանակներում (XIII դ.) այն արդեն զգալի չափով ավերված էր, սովորական ավանից ոչնչով չէր տարբերվում և ուներ փոքրաթիվ բնակչություն։*

*Որոշ հեղինակներ վկայում են, որ պատմական Արշամաշատի հնավայրում՝ Բալուի շրջանի Խարաբա կոչված գյուղի մոտ (ըստ ամերիկյան աշխարհագետ Հունտինգտոնի՝ Խարաբա և Նաջարան գյուղերի միջև) մինչև մեր օրերը պահպանվել են յոթ եկեղեցու և երեք ամրոցի ավերակներ։*

## ԱՐՏԱՄԵՏ

*Արտամետը հիշատակվում է իբրև ավան, գյուղաքաղաք, քաղաք (իսկ նոր ժամանակներում՝ գյուղ)։ Այն տարբեր աղբյուրներում կոչված է նաև Արտամատ, Արտեմիդա, Ավան, իսկ բերդը՝ Ջարդ։ Ոմանք, հետևելով ավանդությանը, Արտամետը շփոթել են Արտաշեսյան կամ Արտավանյան ավանի հետ, իսկ Ղ. Ինճիճյանը այն սխալմամբ նույնացրել է Շամիրամակերտի հետ։ Վերջինս, որ առաջին անգամ գործածված է պատմահայր Մովսես Խորենացու կողմից, ոչ թե Արտամետն էր, այլ Վանը։ Արտամետ անունը կապ ունի Անահիտ աստվածուհու հունարեն λեκ. Արտեմեդակ հետ, իսկ Թովմա Արծրունին, մեջբերելով ավանդությունը, գրում է, թե Արտամետ նշանակում է «Արտաշեսի մուտք» կամ «Արտավանի մուտք»։*

*Արտամետը գտնվում էր Վանա լճի հարավարևելյան ափին Վան քաղաքից մոտ 13 կմ հարավ-արևմուտք, այժմյան համանուն աննշան գյուղի տեղում, եռանկյունաձև ու ապառաժոտ տափարակի վրա, որի մի կողմում նրա Ջարդ կոչված բերդն էր, իսկ վերջինիս շրջակայքում տարածվում էր բուն քաղաքը*

Արտամետի գիրքն ու բնությունն ունեն անզուգական գեղեցկություն։ Նրա հյուսիսային կողմում ծփում են Վանա լճի ջրերը, իսկ հարավում բարձրանում են Հայկական Տավրոս լեռնաշղթայի մի քանի լեռնագագաթները, որոնց կատարներից տեսանելի են ամբողջ լիճն ու նրա շրջակայքի բնակավայրերը։ Գյուղաքաղաքն ամբողջությամբ թաղված էր պտղատու այգիների, հատկապես խնձորենիների և ընկուզենիների մեջ։ Արտամետի խնձորը հայտնի է եղել ամբողջ երկրում։ Աշնան ամիսներին գյուղաքաղաքի օդը բուրում էր նրա փարթամ այգիների խնձորների անուշ հոտով։ Պատմում են, որ հարսանիքների ժամանակ հարսի շորերը անուշահոտ էին դարձնում հենց այդ խնձորներից մի քանիսը դնելով հարսանեկան ավանդական թիթեղապատ սնդուկի մեջ։ Պակաս չէր նաև ձվի մեծությամբ, նուրբ կճեպով ընկուզի համբավը։ Ջրառատ է Արտամետը։ Նա ունի աղբյուրի խմելու լավորակ ջուր, իսկ հարավային կողմով անցնում է Շամիրամի առուն, որի ջուրը նույնպես պիտանի է խմելու համար։

Առաջին համաշխարհային պատերազմի հետևանքով Արտամետը մարդաթափ եղավ ու միանգամից անշքացավ, ավերվեցին նրա այգիները, ոռոգման ցանցը և նախկին ծաղկած գյուղաքաղաքի տեղում մնաց սակավամարդ անշուք գյուղը, ժառանգելով միայն նրա անունը։

Արտամետի տեղում բնակավայր է եղել հնագույն ժամանակներում։ Հեթանոսական շրջանում այն Անահիտ աստվածուհու (հունարեն՝ Արտեմիդա) անվան հետ կապված մեհենատեղի էր, որը քրիստոնեության ընդունումից հետո վերածվել էր եկեղեցու։ Արտամետի կառուցումը ավանդաբար վերագրում են Արտաշես Ա-ին (II դար մ. թ. ա.)։ Ըստ այդ ավանդության, Արտաշեսն այն կառուցել էր իր կնոջ՝ Սաթենիկի համար որպես ամառանոց-քաղաք և ինքը Սաթենիկի հետ այստեղ է անցկացրել մեղրամիսը։ Արտամետը մտնում էր Վասպուրական աշխարհի Տոսպ գավառի մեջ, մինչև VIII դարի վերջերը կազմելով Ռշտունիների տիրույթների բաղկացուցիչ մասը, իսկ դրանից հետո անցնում է Արծրունիներին։ Այն աննախընթաց զարգացում է ապրում Արծրունիների թագավորության օրոք՝ X—XI դարերում, սովորական բնակավայրից վերածվելով ֆեոդալական քաղաքի, հավանաբար ունենալով ավելի քան 10 հազար հայ բնակիչ։

*Նոր ժամանակներում, մինչև առաջին համաշխարհային պատերազմը, թեպետ սովորույթի ուժով Արտամետը շարունակել են կոչել քաղաք, գյուղաքաղաք, բայց բնակչության թվով համեմատաբար փոքր բնակավայր էր. XIX դարի առաջին կեսում ուներ մոտ 500 տուն բնակիչ, որից 400 տունը՝ հայ, մնացածը՝ թուրք, իսկ XX դարի սկզբներին թուրքերն ավելի մեծ թիվ էին կազմում. Վ. Մաևսկու տվյալներով, այդ ժամանակ գյուղաքաղաքի 600 բնակիչներից 400-ը թուրքեր էին, իսկ 200-ը՝ հայեր[7]: Հայերը բնակվում էին քաղաքի բուն թաղում, իսկ թուրքերը հիմնականում շրջակայքի այգիներում։*

*Արտամետի բնակչության զբաղմունքի մեջ առանձնապես հայտնի էր այգեգործությունը։ Նրա շրջակայքում տարածվում էին մրգատու այգիներն ու ընկուզենիների պուրակները, որոնք ոռոգվում էին գյուղաքաղաքի հարավային մասով դեպի Վան գնացող Շամիրամի (Մենուայի) ջրանցքի ջրերով։ Ինչպես ասվեց, Արտամետն առաջին հերթին հայտնի էր խնձորով։ Ականատես հեղինակները գրում են, որ բերքառատ տարիներին նավակային «քարավանները» Վանա լճով վաճառքի համար մեծ քանակությամբ խնձոր էին տանում առափնյա շրջանների քաղաքներն ու նավահանգիստները՝ Արճեշ, Արծկե, Խլաթ, Վան և այլն։ Բնակչության մյուս զբաղմունքներից էին հողագործությունը, ձկնորսությունը (Վանա լճում) և մասամբ առևտուրը, որը բավական աշխույժ բնույթ էր կրում XIX դարի վերջերին և XX-ի սկզբներին, երբ շարք էր մտել Վան—Արտամետ սայլուղին։ Սակայն նրա առևտրի ծավալը սահմանափակ էր և իր բնույթով գրեթե բացառապես մանրածախ։ Մեծ չէր նաև ձկնորսության նշանակությունը։ Այնպես որ, Արտամետի բնակչության տնտեսության հիմնական ճյուղերը այգեգործությունն ու երկրագործությունն էին, որոնց հետ և սերտորեն կապված էին տեղական արհեստները։*

*Վանից եկող և դեպի Ոստան ձգվող ճանապարհով Արտամետը բաժանված էր երկու թաղի՝ հայկական և թուրքական։ Դրանք երկուսն էլ գյուղական համայնապատկեր էին ներկայացնում, բայց հայկական թաղը համեմատաբար ավելի բարե-*

---

7 Լինչ, *Հայաստան, հ. 2-րդ, Թիֆլիս, 1914, էջ 130—136,* В. Т. Маевский, Ванский вилает, 1901, էջ 250.

կարգ էր, որի մեջ բարձր գիրքով առանձնանում էր ծովահայաց ս. Աստվածածին եկեղեցին։

Արտամետի հայ բնակչությունը 1895 թվականին կողոպտվել է թուրքերի կողմից։ 1915 թվականին նրանցից շատերը մասնակցել են Վանի հերոսական ինքնապաշտպանությանը և նահանջող ռուսական զորքերի ու հայ կամավորների ջոկատների հետ միասին գաղթել Արևելյան Հայաստանի զանազան շրջանները։

XX դարի սկզբին Արտամետի հայկական դպրոցը, որ գոյություն ուներ անցյալ դարից, տեղավորված էր երկհարկանի բարեկարգ շենքում։ Գյուղաքաղաքում 1870 թվականից գործում էր Արշակունյաց բարեգործական ընկերությունը, որը նպաստում էր նաև նրա մշակութային-կրթական գործի առաջադիմությանը։ XVI—XVII դարերում Արտամետում ընդօրինակվել են մի քանի ձեռագրեր։ Հայտնի է Ավետիս գրիչը, որ 1605 թվականին այստեղ գրել է մի Ավետարան։ Արտամետի Աստվածածին եկեղեցում ընդհուպ մինչև առաջին համաշխարհային պատերազմը պահպանվում էր մի ձեռագիր Հայսմավուրք։ Արտամետում են ծնվել (1910թ.) սովետական կինոռեժիսոր Գ. Ս. Բալասանյանը, գրականագետ Ռ. Հովհաննիսյանը և ուրիշներ։

Հին Արտամետի միայն չնչին մնացորդներն էին հասել մինչև մեր դարը։ Նոր ժամանակների շատ տներ կառուցված էին հին քաղաքի ավերակների վրա, կործանված շենքերի քարերով։ Այնուամենայնիվ, Արտամետի վաղեմի բարեկարգ վիճակը վկայող հնությունների ու հուշարձանների բավական ավերակներ կային։ Նրա բուն տարածքում և շրջակայքում նշմարվում են հին բերդի, մի քանի եկեղեցիների, վանքերի ու սրբավայրերի, զանազան շենքերի մնացորդներ, ուրարտական սեպագիր արձանագրություններ և հիշատակության արժանի նյութական մշակույթի այլ հուշարձաններ։ Քաղաքում պահպանվել են Արտաշես Ա-ին վերագրվող բերդի պարիսպների մնացորդները և հետագայում կառուցված չորս փառահեղ եկեղեցիների ավերակները, որոնք գտնվում են այգիներում։ Վերջիններից ամենահինը, հավանաբար, կառուցվել է XIII դարում։ Հայկական եկեղեցիներից բացի, այստեղ կար նաև հունական մի եկեղեցի։ Արտամետի հայ բնակչության այցելության մշտական վայրերից էին ս. Շմավոն, Թուխ Մանուկ և ս. Հակոբ ուխտավայրերը։

Արտամետի հարավային մասով անցնող Շամիրամի առվի

պատերի վրա պահպանվել են ուրարտական մի քանի սեպագիր արձանագրություններ։ Դրանցից մեկը, որ ամենից ընդարձակն է և բաղկացած է 14 տողից, մի այլ արձանագրության հետ միասին գտել է ֆրանսիացի պրոֆեսոր Շուլցը։ Գյուղաքաղաքից մոտ 4 կիլոմետր հարավ-արևմուտք, դարձյալ Շամիրամի առվի երկու ափին, դեմ դիմաց կանգնած են երկու սրբատաշ մեծ քարեր, որոնց վրա նույնպես կան սեպագիր արձանագրություններ և որոնք նույնպես վերաբերում են Մենուա թագավորի ժամանակներին։

## ԱՐՏԱՆՈՒՋ

Արտանուջը հիշատակվում է իր անվան մի քանի տարբերակներով՝ Արտանույշ, Արտանուչ, Արտանուշ, ինչպես նաև Թուրքական էրդենուշ աղավաղված ձևով։ Տեղացի բնակիչները մինչև այժմ էլ կոչում են Բերդ՝ նկատի ունենալով, որ հնում սոսկ բերդ էր։ Թուրքերը պաշտոնապես այն այժմ կոչում են Ադակալե։

Ըստ ավանդության, այստեղ է թաղված ինչ-որ թագավորի դուստր Արտանուշը կամ Վարդանուշը, որի անունով էլ իբր կոչվել է քաղաքը։

Սկզբնաղբյուրներում և պաշտոնական փաստաթղթերում երբեմն համարվում է սովորական գյուղ, բերդ, գյուղաքաղաք, իսկ երբեմն էլ՝ քաղաքավան, քաղաք։

Գտնվում է Ճորոխի աջակողմյան վտակ Արտանուջ գետի ձախ ափին, Արդվինից 21—22 կմ հարավ-արևելք, լեռան զառիվայրում։ Բնականից ունի ամուր դիրք՝ պատած է ժայռերով, որն ավելի է անմատչելի դարձվել պաշտպանական ամրակուռ պարիսպներով։ Ջրառատ, մեղմ կլիմայով ու առողջարար օդով քաղաք է։

Հնում Արտանուջը մտնում էր Մեծ Հայքի Գուգարք աշխարհի Կղարջք գավառի մեջ և համարվում էր վերջինիս կենտրոնը։ Թուրքական վարչական բաժանմամբ նախկինում Չըլդըրի կամ Ախալցխայի փաշայության Արտանուջի գավառակի կենտրոնն էր։ 1878—1921թթ. մտնում էր Բաթումի մարզի Արդվինի օկրուգի մեջ։ Արտանուջը նաև հայկական հոգևոր թեմի կենտրոն էր։

Արտանուջը հին բնակավայրերից է։ Սեն Մարտենը այն նույնացնում է Ղազար Փարպեցու հիշատակած Ողջնհաղ գյուղին, որտեղ V դարում, Վարդանանց պատերազմի ժամանակ, զոհվել ու թաղվել է Վարդանի եղբայրը՝ Համայակ Մամիկոնյանը։ Պատկանում էր Բագրատունիներին։ VII դարում նվաճել ու ավերել է արաբական ոստիկան (էմիր) Մրվանը, բայց շատ չանցած Աշոտ Կյուրապաղատը այն նորից հետ է վերցրել։ XI դարում Արտանուջը Բագրատունիների այն ճյուղի բնակատեղին էր, որը հետո հաստատվեց Վրաց գահի վրա։ Այդ ժամանակներում Արտանուջը սովորական բերդ էր, որի մասին հիշատակություն ունի Կոստանդին Ծիրանածինը (905—958)։ Նրա բերդ լինելու վերաբերյալ տեղեկություններ է հաղորդում նաև թուրք պատմագիր Քյաթիբ Չելեբին, բայց ավանդությամբ և զրույցներով զուգորդված, որ դրանք դարձնում են քիչ արժանահավատ։ Հետագայում Արտանուջը մտնում էր վրաց Բագրատունիների թագավորության, իսկ XVI դարից՝ Օսմանյան պետության կազմի մեջ։

Արտանուջը սակավամարդ քաղաք էր։ XIX դարի վերջերին ուներ 1000 բնակիչ (նրա բնակչությունը գրեթե նույնքան էր նույն դարի 70-ական թվականներին), որից 960-ը հայեր, իսկ մնացածը՝ թուրքեր, 1907թ.՝ 1214 բնակիչ, մեծագույն մասը՝ դարձյալ հայեր։ Նրա հայ բնակչությունը տեղահան է արվել առաջին համաշխարհային պատերազմի տարիներին և տարագրվել զանազան երկրներ։

Ըստ երևույթին, Արտանուջը միջին դարերում ավելի բազմամարդ է եղել և առևտրատնտեսական առումով ավելի կարևոր դեր է խաղացել։ Հայտնի է, որ IX—XI դարերում այն առևտրական ճանապարհներով կապված էր Վրաստանի, Աբխազիայի, Տրապիզոնի, Բյուզանդիայի և Անի-Շիրակի թագավորության կենտրոնների հետ։ Նոր ժամանակներում նրա տնտեսական դերն ավելի համեստ էր։ XIX—XX դարերում նրա բնակչությունը քաղաքային զբաղմունքներին՝ արհեստներին ու առևտրին զուգընթաց զբաղվում էր նաև գյուղատնտեսությամբ։ Կարևոր դեր էր խաղում հատկապես խաղողագործությունը։ Արտանուջը արտահանում էր ընտիր գինի, որը մեծ համբավ ուներ զանազան շուկաներում։ Արհեստներից տարածված էին դերձակությունը, ներկարարությունը, կոշկակարությունը, դարբնությունը, ատաղձագործությունը, կերպասագործությունը, մետաքսագոր-

ծությունը։ Բավական աշխույժ բնույթ ուներ նրա ներքին ու արտաքին առևտուրը։ Գինուց բացի, արտահանում էր մորթիներ, բուրդ և այլ ապրանքներ։

Միջին դարերում Արտանուջի բերդը հայտնի էր իր ամրությամբ։ Նրա բերդը, որ XIX դարի երկրորդ կեսում արդեն ավերակ վիճակում էր, կառուցված է Արտանուջ գետի ձախ ափին, գետի հունից ավելի քան 70 մ բարձրություն ունեցող ժայռաբլրի վրա, որտեղ կարելի է բարձրանալ միայն մեկ, այն էլ ժայռափոր ճանապարհով։ Վաղեմի բերդի պարսպից դուրս կա մի գերեզման, որն ըստ ավանդության, թագուհու կամ տիրուհու շիրիմն է։ Բուն բերդում, լեռան գագաթի վրա են գտնվելիս եղել թագավորական կամ իշխանական ապարանքներ, որոնք իբր կառուցվել են Արտանուջ կամ Վարդանուշ տիրուհու հարսանիքի առիթով։ Բերդում պահպանվում են նաև տաճարի, ավանի և, նույնիսկ, պարտեզի մնացորդներ։ Բերդը պատած էր աշտարակավոր կրկնակի պարիսպներով, որոնց ավերակները նույնպես պահպանվել են մինչև մեր օրերը։

Արտանուջն ուներ երկու եկեղեցի, որոնցից մեկը հին էր և XIX դարում ավերակ էր, իսկ մյուսը՝ գործող, քարաշեն էր, կանգուն՝ կառուցված 1836 թվականին։ Վերջինս կոչվում էր ս. Ստեփանոս։ Քաղաքն ուներ նաև մի անշուք մզկիթ և բաղնիք։

XIX դարի առաջին կեսում Արտանուջում կար հայկական մի փոքրիկ ուսումնարան, նույն դարի 70-ական թվականներից բացվում է քաղաքի երկրորդ, իսկ XX դարի սկզբներին՝ երրորդ վարժարանը։ Դրանք բոլորն էլ տարրական էին և գրագիտություն էին սովորեցնում հայ մանուկներին։

## ԲԱԲԵՐԴ

Արևմտյան Հայաստանի Բաբերդ քաղաքը, նրա մյուս տասնյակ քաղաքների նման, մեզ հայտնի է անվան մի ամբողջ շարք տարբերակներով ու զանազան անուններով՝ Բայբերդ, Բայբուրդ, Բայբերտոն, Սմբատավան և այլն։ Հիշատակվում է իբրև բերդավան, բերդաքաղաք, քաղաք։ Հնում այն վարչականորեն մտնում էր Մեծ Հայքի Բարձր Հայք աշխարհի Սպեր գավառի, իսկ նոր ժամանակներում՝ Էրզրումի նահանգի Էրզրումի գավառի մեջ։

Բաբերդը գտնվում է Ճորոխ գետի հովտում, Տրապիզոնից Կարին (Էրզրում) տանող ճանապարհին, ծովի մակերևույթից 1680 մ բարձրության վրա, Պոնտական լեռնահամակարգին պատկանող Կոփ լեռան ստորոտում։ Քաղաքը երեք կողմերից՝ հյուսիսից, արևմուտքից և արևելքից պատած է ոչ բարձր լեռներով, բաց է միայն հարավային կողմից, որտեղով ճանապարհը գնում է դեպի Կարին։ Բաբերդը երկու մասի է բաժանված Ճորոխ գետով։ Շրջակայքում կան արծաթի չօգտագործվող պաշարներ, որոնց մասին հիշատակություն կա տակավին անտիկ հեղինակների մոտ, և պղնձահանքեր, որոնք նոր ժամանակներում շահագործման էին ենթարկվում մի ոմն թուրք փաշայի և մի հայ վաճառական-արդյունաբերողի կողմից։ Ջրառատ է։ Շրջակայքում բխում են նաև հանքային աղբյուրներ։

Բաբերդի պատմությունը, մանավանդ վաղ ժամանակների անցած ուղին, քիչ է հայտնի և հատուկ ուսումնասիրություններ չեն կատարվել։ Սակայն հայտնի է, որ դեռևս III դարում (մ. թ. ա.) այն գոյություն ուներ և համարվում էր նշանավոր բերդաքաղաք։ Հայոց պատմության մեջ առաջին անգամ հիշատակել է Մովսես Խորենացին՝ կապված I դարի (մ. թ.) քաղաքական դեպքերի հետ։ Սպեր քաղաքի Սպերի գավառի հետ միասին Բաբերդը նույնպես կազմում էր Բագրատունիների սեփականությունը։ Հայաստանի 387 թվականի բաժանմամբ Կարնո աշխարհի (Բարձր Հայք) կազմում Բաբերդը նույնպես անցել է Բյուզանդական կայսրության տիրապետության տակ։ Բյուզանդական Հուստինիանոս 1-ին կայսրը (527—565) ավելի է ամրացրել Բաբերդը պաշտպանական նոր կառույցներով, ինչպես նաև կառուցել է նրա ավերակ վիճակում մեզ հասած նոր բերդը։

Միջնադարյան Բաբերդի մասին կարևոր վկայություններ ունեն արաբական ճանապարհորդ և հեղինակ Յակուտը (1179—1229), վենետիկցի հայտնի ճանապարհորդ Մարկո Պոլոն (XIII դ.), իտալացի ճանապարհորդ Հ. Բարբարոն (XV դ.) և ուրիշներ։ Յակուտը գրում է, որ Բաբերդը «մեծ անվան և գեղեցիկ քաղաք» է «Էրզրումի նահանգում, Հայաստանի հողի վրա»։ Մարկո Պոլոն դեպի Չինաստան կատարած (1271թ.) իր ճանապարհորդության մասին գրած նոթերում նշում է Բաբերդի հարավարևմտյան կողմում գտնվող արծաթահանքերի մասին, իսկ Հ. Բարբարոն վկայում է, որ այն 1474թ. ունեցել է 1500 ընտանիք։

Իբրև բերդաքաղաք և տարանցիկ ճանապարհի վրա գտնվող առևտրի կարևոր կենտրոն, Բաբերդը հաճախակի դարձել է արտաքին նվաճումների առարկա։ 1071 թ. այն գրավել են սելջուկ թուրքերը, XIII—XIV դարերում՝ Ռումի սուլթանությունը, XIV—XV դարերում՝ Ջեղայիրլյան և թուրքմենական Ակ-կոյունլու ցեղերը, իսկ 1514-ին՝ տիրել են օսմանյան թուրքերը։

Նոր ժամանակներում Բաբերդը թուրքական լծից երկու անգամ ազատագրվել է ռուսական զորքերի կողմից, մեկը 1829 թվականին, իսկ մյուսը՝ առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ՝ 1916 թվականին, սակայն Ադրիանապոլսի պայմանագրով՝ 1829 թվականին, ինչպես և 1918 թվականին այն նորից է անցել թուրքական տիրապետության տակ։

Իտալացի ճանապարհորդ Հ. Բարբարոնի վկայությունից կարելի է եզրակացնել, որ Բաբերդը XV դարի 40-ական թվականներին ունեցել է մինչև 10 հազար բնակիչ։ Քաղաքի անցած և հետագա ժամանակների բնակչության թվի վերաբերյալ շատ թե քիչ արժանահավատ այլ տեղեկություններ չկան։ Իսկ նոր ժամանակներին վերաբերող տվյալները հակասական են։ Համեմատաբար արժանահավատ ու ընդունելի կարելի է համարել վիճակագրական այն թվերը, ըստ որոնց Բաբերդը 1870-ին ուներ 180 տուն հայ և 820 տուն թուրք բնակիչ, XIX դարի վերջերին նրա բնակչության թիվը հասնում էր 6000 մարդու, իսկ առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին՝ 30000 մարդու, որից 10000-ը՝ հայեր, իսկ մնացածը թուրքեր, հույներ, քրդեր և այլք։ Մոտավորապես մինչև XIII—XIV դարերը Բաբերդը զուտ հայաբնակ քաղաք էր։ Դրանից հետո այստեղ տարբեր ժամանակներում բնակություն են հաստատել օտար ազգությունների պատկանող հազարավոր բնակիչներ։ 1829 թվականին, Ադրիանապոլսի պայմանագրի կնքումից հետո, Բաբերդ քաղաքից և նրա շրջակայքից 1000 հայ ընտանիք գաղթել ու բնակություն են հաստատել Հայկական մարզում և Ախալցխայի գավառում։ Արևմտյան Հայաստանի մյուս մասերի հայության ճակատագրի նման ողբերգական եղավ նաև Բաբերդի հայ բնակչության ճակատագիրը։ Թուրքերն այստեղ հայերին զանգվածային ջարդերի ենթարկեցին առաջին անգամ 1895 թվականի սեպտեմբերի 30-ին, կենդանի մնացածներին բռնությամբ մահմեդականացնելով։ Համիդյան այդ կոտորածի ժամանակ հայ հոգևորականներին և ուսուցիչներին կոտորեցին մինչև վեր-

ջին մաքրը։ Էլ ավելի ահավոր էր առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ երիտթուրքերի կազմակերպած հայկական ջարդը՝ 1915 թվականի մեծ եղեռնը, որի հետևանքով միանգամայն հայաթափ եղավ նաև Բաբերդ քաղաքը։

Գտնվելով Կարին—Տրապիզոն առևտրական կարևոր ճանապարհի վրա՝ Բաբերդի տնտեսական կյանքը բավական առաջադիմել էր դեռևս վաղ ժամանակներում։ Առևտրական կյանքը Բաբերդում աշխույժ բնույթ ուներ XIX դարի երկրորդ կեսում և XX-ի սկզբներին։ Քաղաքում ամեն տարի մայիս կամ հունիս ամսին, կազմակերպվում էր երկու շաբաթ տևողությամբ տոնավաճառ, որտեղ տեղական ապրանքներից բացի վաճառվում էին նաև ներմուծովի բազմատեսակ արտադրանքներ՝ գործվածքներ, ապակյա, բյուրեղապակյա, հախճապակյա, ճենապակյա զանազան անոթներ ու իրեր և այլ ապրանքներ։ Քաղաքը XX դարի սկզբներին ուներ մինչև 500 խանութ, կրպակ և արհեստանոց, 40 իջևանատուն, մի ընդարձակ շուկա, որի չորս կողմերում շարքերով դասավորված էին տասնյակ խանութներ ու կրպակներ[8]: Քաղաքի տնտեսական կյանքում առևտրին համահավասար կարևոր դեր էին խաղում արհեստները՝ ոսկերչությունը, երկաթագործությունը, մանածագործությունն ու ջուլհակությունը, գորգագործությունը և այլն։ XX դարի սկզբներին այստեղ աստիճանաբար առաջացել են սննդի ու թեթև արդյունաբերության մի քանի ոչ խոշոր և տեխնիկապես համեմատաբար ցածր մակարդակ ունեցող ձեռնարկություններ՝ հացի փուռ, 1 կաշեգործական, օճառի, ներկի, մոմի գործարաններ։ Քաղաքի բնակչության մի մասը զբաղվում էր երկրագործությամբ ու անասնապահությամբ։ Ըստ որոշ աղբյուրների հաղորդած տեղեկությունների, այստեղ XX դարի սկզբներին գործում էին 3 ձիթհան և բազմաթիվ ջրաղացներ։

Քաղաքի տները մեծ մասամբ միահարկ էին և անշուք։ Դրանք կառուցված էին խառնիխուռն, առանց որոշակի հատակագծման։ Նրա կառույցներից շատ թե քիչ աչքի ընկնողները եկեղեցիներն էին և մզկիթները։ Վերջիններից նշանավոր էր բարձր ու շքեղ մինարեով Ուլու ջամին, որը նախկինում եղել է եկեղեցի։ Բաբերդում հիշատակվում է չորս եկեղեցի՝ ս. Աստվածածին, ս. Հովհաննես, ս. Հրեշտակապետ և ս. Աստվածամայր։ Դրանք

---

8 Ա—Դո, Վանի, Բիթլիսի և Էրզրումի վիլայեթները, Երևան, 1912, էջ 194։

82

կառուցված էին տարբեր ժամանակներում, բայց բոլորը XIX դարում և XX-ի սկզբներին կանգուն էին և գործում էին։ Քաղաքի մոտ, մի գեղատեսիլ սարի վրա էր գտնվում Լուսավորչի վանքը, որը նոր ժամանակներում ավերված էր։

Բաբերդն առաջին հերթին բերդաքաղաք էր. այն հայտնի էր իր բերդով, որը գտնվում էր հյուսիսային մասում՝ լեռներով պատած դժվարամատչելի վայրում, շրջապատված բոլոր կողմերից կրկնակի պարիսպներով։ Նրա բերդը կանգուն է եղել մինչև XIX դ. առաջին կեսը և ավերվել է 1829 թ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ։ Դրանից բացի, քաղաքի շրջակայքում պահպանվել են նաև այլ ամրությունների մնացորդներ։

Քաղաքի տարածքում, Ճորոխ գետի վրա կային 5 քարաշեն կամուրջներ, որոնցով իրար հետ կապված էին գետի աջ և ձախ մասերում փռված քաղաքի երկու հիմնական թաղամասերը։

Բաբերդը միջնադարյան Հայաստանի գրչության նշանակալի կենտրոններից էր և եպիսկոպոսանիստ էր։ Այստեղ XIII—XV և XVII դարերում գրված տարբեր բնույթի ու բովանդակության ձեռագրեր են հասել մինչև մեր օրերը։ Քաղաքի մշակութային կյանքը նոր ժամանակներում սերտորեն կապված էր այստեղ գործող երկու դպրոցների հետ, որոնցից մեկը Մեսրոպյան արական դպրոցն էր 150 աշակերտով, իսկ մյուսը՝ Հռիփսիմյան օրիորդաց դպրոցը 50 աշակերտուհիներով։ Հայկական մշակութային կյանքը միանգամից մարել է 1915 թ. մեծ եղեռնից հետո, երբ քաղաքը իսպառ հայաթափ է եղել։

## ԲԱԳԱՐԱՆ

Հիշատակվում է նաև Ամուր, Բագրան, Դիցավան անուններով և համապատասխանում է այժմյան Բաքրանին, որ մի փոքրիկ գյուղ է, ծվարած Ախուրյան գետի աջ զառիվեր ափին։ 1968 թվականից վաղեմի այդ քաղաքի անունն է կրում նաև Հայկական ՍՍՀ Հոկտեմբերյանի շրջանի նախկին Հաջիբայրամլու (իսկ 1935 թվականից՝ Բախչալար) գյուղը։ Մի այլ Բագարան էլ գտնվում էր Այրարատյան աշխարհի Կոգովիտ գավառում (Բայազետի շրջան), որը ֆեոդալական հասարակ դաստակերտ էր և չպետք է շփոթել մեր խնդրո առարկայի հետ։

Բագարան բերդաքաղաքը, որ հիշատակվում է նաև իբրև ամրոց, ավան, բերդ, քաղաք, գտնվում էր Ախուրյանի և Արաքսի միախառնման շրջանում, Ախուրյան գետի աջ ափին, Մրեն գյուղից հարավ, իսկ պատմական Երվանդաշատ մայրաքաղաքից 8—9 կմ հյուսիս, երեք կողմերից պատած Ախուրյան գետի անմատչելի կիրճով, որն ընդհանուր առմամբ ձգվում է հյուսիսից հարավ և անմատույց դարձնում այն երեք ժայռաբլուրները, որոնց վրա գտնվում էին քաղաքի երբեմնի պարսպապատ ամրոցներն իրենց ապարանքներով։ Քաղաքի տարածքում բխում են սառնորակ շատ աղբյուրներ, որոնք այժմ գործի են դնում մի քանի ջրաղացներ։ Ուներ այգիներ և արհեստական անտառ-պուրակ։ Վերջինս տնկվել էր II դարի սկզբներին (մ. թ. ա.) և հավանաբար ուներ նույն նշանակությունը, ինչ-որ դրանից առաջ տնկված Արմավիրի «Սոսյաց» անտառն էր, որի ծառերի տերևների սոսափյունից քրմերը կատարում էին «գուշակություններ», միայն վերջինս սոսիների (հարավային չինարի) պուրակ էր, իսկ Բագարանինը՝ հիմնականում կաղնիների՝ դարձյալ լինելով պարսպապատ արգելանոց։ «Ծննդոց» կոչված այդ անտառի մնացորդները թփուտների ձևով նշմարվում են առ այսօր։

Բագարանը մտնում էր Այրարատյան աշխարհի Արշարունիք (կամ Երասխաձոր) գավառի մեջ և վերջինիս հետ միասին մինչև II դարի (մ. թ. ա.) 90-ական թթ. վերջերը պատկանում էր Երվանդունիներին, իսկ դրանից հետո՝ նախ Կամսարականներին (մինչև VIII դարը մ. թ.), ապա՝ Բագրատունիներին՝ VIII—XI դդ.։

Բագարանի պատմությունը չնայած հատուկ ուսումնասիրության առարկա չի դարձել, սակայն պատմագիրների և այլ աղբյուրների վկայությունների հիման վրա կարելի է ուրվագծել իր ընդհանուր կողմերով։

Ըստ Մովսես Խորենացու, Բագարանը կառուցել է Երվանդունիների վերջին թագավոր Երվանդ Դ-ն մ. թ. ա. II դարի սկզբներին և, նախկին մայրաքաղաք Արմավիրից այստեղ տեղափոխելով կուռքերը, այն դարձրել էր Արարատյան թագավորության կրոնական գլխավոր կենտրոնը։ Նույն Երվանդ թագավորը Բագարանում քրմապետ էր նշանակել իր եղբորը՝ Երվազին։ Սակայն շուտով վերանում է Երվանդունիների հարստությունը և Հայաստանում թագավորական նոր հարստության

հիմնադիր Արտաշես Ա-ն, որ սպանել էր Երվանդ թագավորին և նրա քրմապետ եղբորը, Բագարանից կուռքերը տեղափոխում է իր կառուցած Արտաշատ մայրաքաղաքը, իսկ քրմապետի 500 ծառաներին նվիրում Սմբատին։ Նույն կիսաավանդական պատմության համաձայն վերջինս այդ ծառաներին բնակեցրել է Մասիսի թիկունքում՝ Կոգովիտ գավառում և նրանց բնակավայրն էլ նույնպես կոչել Բագարան։

Դրանից հետո Բագարանն անշքանում է և ավելի քան 1000 տարի մեր պատմության մեջ չի հիշատակվում։ VIII դարի վերջերին այն Արշարունիք ու Շիրակ գավառների հետ միասին (որոնք Կամսարականներից Բագրատունիներին էին անցել մասամբ դրամով գնելու, մասամբ էլ արաբական էմիրին պարտության մատնելու և զենքի ուժով գրավելու միջոցով) դառնում է Բագրատունի Աշոտ Մսակերի սեփականությունը, որը այն դարձնում է իր աթոռանիստը։ Սկսած այդ ժամանակներից, Բագարանը բավական բարգավաճում է, և Բագրատունի առաջին թագավոր Աշոտ Ա-ն (885—890) այն դարձնում է նորահիմն թագավորության մայրաքաղաքը։ Աշոտ Ա-ին փոխարինած Սմբատ Ա-ն (890—914) լքում է Բագարանը և իր համար աթոռանիստ ընտրում Երազգավորսը, որը այդ ժամանակվա դրությամբ գտնվում էր Բագրատունիների թագավորության կենտրոնական շրջանում և ստրատեգիական տեսակետից ուներ ավելի անմատույց դիրք։ Սակայն այդ հանգամանքը հավանաբար քիչ է ազդել Բագարանի ընդհանուր վիճակի վրա. այն Բագրատունիների թագավորության գոյության ամբողջ ընթացքում համարվում էր բարգավաճ բնակավայրերից մեկը, որտեղ կատարվել են քաղաքացիական և եկեղեցական կարևոր կառուցումներ։ VIII—IX դդ. Բագարանում էր գտնվում Բագրատունի իշխանների ու նրանց ընտանիքի անդամների տոհմական դամբարանը։ Այստեղ է թաղված նաև Աշոտ Ա թագավորը։

1045 թվականին Անիի թագավորության հետ միասին Բագարանը ևս նվաճվում է Բյուզանդիայի կողմից, 1064 թվականին այն գրավում են սելջուկ թուրքերը, XII դ. սկզբներին՝ Շահարմենները։ Հյուսիսային Հայաստանի հետ միասին XIII դարի սկզբներին (1211թ.) Բագարանը ազատագրվեց Զաքարյան հայ իշխանների կողմից և մի քանի տասնյակ տարվա ընթացքում այնտեղ վերականգնվեց նախկին բարեկարգ վիճակը։ Սակայն խիստ կարճատև էր նրա այդ վերջին առաջադիմության

շրջանը։ 1236 թվականին մոնղոլ թաթարների նվաճմամբ Բագարանը սկսեց արագ անկում ապրել, իսկ 1394 թ. այն գրավեց ու ավերեց Լենկթեմուրը, որից հետո այստեղ մի կերպ պահպանված անշուք ու փոքրիկ բնակավայրը այլևս ոչնչով նման չէր նախկին Բագարան քաղաքին։ Վերջինս XIV—XV դարերում վերածվել էր ավերակների կույտի և տարբեր վիճակում իրենց գոյությունը պահպանում էին միայն մի քանի կառույցներ կամ դրանց ավերակները՝ պաշտպանական պարիսպներ, բերդի առանձին հատվածներ, մի աշտարակ, կիսաքանդ արքայական պատշգամբ, մեկ կանգուն և երկու կիսականգուն եկեղեցի, կամրջի, բնակարանների մնացորդներ, գերեզմանատների հետքեր, վաղեմի բերդից Ախուրյան տանող ստորերկրյա ուղի։

Բագարանում հայտնի են հայկական երեք եկեղեցի՝ ս. Թեոդորոս, ս. Գևորգ, ս. Շուշան։ Դրանցից առաջինը, որը մեր օրերն է հասել կանգուն վիճակում, բայց առանց գմբեթի, կառուցվել է VII դարում։ Այն հիմնադրվել է Բուտ Առավեղյան իշխանը 624թ., իսկ կառուցումն ավարտել է նույն իշխանի կինը՝ Աննան 631 թ.։ Ներքուստ ու արտաքուստ խաչաձև այդ եկեղեցին իր կառուցվածքով հարում է էջմիածին տաճարին և համարվում է հայկական եկեղեցական ճարտարապետության եզակի կոթողներից մեկը։ Օտարերկրյա հեղինակավոր մասնագետների կարծիքով ս. Թեոդորոս տաճարի կառուցվածքային տարրերը Բյուզանդիայի միջոցով անցել են Եվրոպա և իրենց ազդեցությունը թողել Հունաստանի, Իտալիայի և Ֆրանսիայի մի ամբողջ շարք եկեղեցիների վրա։ Հին ու ակնահաճո կառուցվածք ունի նաև ս. Գևորգ եկեղեցին, որը գտնվում էր բերդի հյուսիսային կողմում և գավառի բնակչության նշանավոր ուխտատեղիներից էր՝ կառուցված Պետրոս Գետադարձ կաթողիկոսի և Հովհաննես-Սմբատ թագավորի օրոք 1030թ., իսկ ս. Շուշանը հավանաբար կառուցվել էր ավելի ուշ։ Բագարանի եկեղեցիների վրա նշմարված են ավելի քան 10 արձանագրություններ, որոնց թվում են նաև 956 ու 1034 թվականների արժեքավոր երկու արձանագրությունները։ Վերջինիս մեջ հիշատակվում է Վահան անունով մի քահանա, որ իրեն անվանում է «գծող»։

Պատմական Բագարան քաղաքի տեղում եղած Բագարան գյուղը XX դարի սկզբներին ուներ շուրջ 350 հայ բնակիչ, որոնք զբաղվում էին երկրագործությամբ ու անասնապահությամբ։

Նեղվելով թուրքական հայաջինջ քաղաքականությունից, նրա հայ բնակչությունը առաջին համաշխարհային պատերազմի տարիներին գաղթեց ու վերաբնակություն հաստատեց Երևանի նահանգի տարածքում։ Այժմ նույն տեղում գոյություն ունի քրդաբնակ մի գյուղակ՝ կրելով Բաքրան անունը։

## ԲԱԼՈՒ

Նախ եղել է բերդ, ապա բերդաքաղաք, իսկ նոր ժամանակներում՝ գավառական քաղաք (կամ գյուղաքաղաք)։ Հիշատակվում է նաև Պալու, Բալիոբիտ տարբերակներով և համապատասխանում է Ռոմանոպոլսին, որի կառուցումը վերագրում են Ռոմանոս կայսեր (XIդ.)։ Ժողովրդական ստուգաբանությամբ Բալու է կոչվել շրջակայքում շատ բալենիներ ունենալու պատճառով։ Ուսումնասիրողներն այդ անունը առաջացած են համարում հնագույն ժամանակներում Հայկական լեռնաշխարհում բավական լայն տարածությունների վրա բնակված բալ կամ բաղ ցեղի անունից։ Ի դեպ այդ նույն ցեղանվան հետ են կապում նաև Բաղաբերդ, Բաղաց աշխարհ, Պաղին, Պաղնատուն, Կարա-բաղ, Բաղ-ա-սական անունները։

Գտնվում է Հայկական Տավրոս լեռնաշղթայի հյուսիսային ստորոտին, Դերսիմի հարավային ծայրագավառում, Արածանիի (Արևելյան Եփրատ) ստորին հոսանքի աջ ափին, շրջանաձև հարթավայրում։ Արածանին երեք կողմից շրջապատում է քաղաքը, որն ամբողջապես թաղված է այգիների մեջ։ Բալուից հարավ անտառապատ տարածություններ են։ Նրա մոտակայքում են գտնվում Մեսրոպյան հայկական բերդի ավերակները։ Ստեփանոս Ասողիկի վկայությամբ Բալուն խիստ ավերվել է 995 թ. երկրաշարժից, բայց հետագայում վերականգնվել ու մինչև XIII դարի վերջերը շարունակել է բարգավաճել։ Շրջակայքում կան պղնձի (և գունավոր այլ մետաղների) ու քարածխի հանքեր։

Հնում Բալուն Չորրորդ Հայք աշխարհի (ավելի հնում՝ Ծոփք) Բալահովիտ գավառի կենտրոնն էր և գլխավոր բերդը։ Թուրքական տիրապետության շրջանում Բալուն իբրև գավառակ նախ մտնում էր Դիարբեքիրի նահանգի (վիլայեթ) Արգանա Մադենի գավառի (սանջակ), ապա Խարբերդի նահանգի մեջ իբրև գավա-

րի կենտրոն։ Ներկայումս Բալուն համանուն վիլայեթի (նահանգի) կենտրոնն է, իսկ այդ նահանգը 1970 թվականի մարդահամարով ուներ 403,8 հազար բնակիչ։

Բալուի հին ժամանակների բնակչության քանակի մասին արժանահավատ վկայություններ չկան։ Ոմանք պնդում են, թե հնում իբր ունեցել է մինչև 100 հազար բնակիչ, որ շատ անհավանական է։ Հավանական կարելի է համարել, որ X—XIII դարերում նրա բնակչության թիվը հասել է 25—30 հազար մարդու և իր մարդաշատությամբ ու մեծությամբ ոչնչով չի զիջել Մուշին, Երզնկային, Կամախին և Հայաստանի այդ ժամանակաշրջանի միջին մեծության այլ քաղաքների։

XIX դարի սկզբներին Բալուի միայն հայկական տների թիվը հասնում էր 1000-ի՝ մոտ 7000 բնակիչներով, իսկ քրդերը 2000—3000 շունչ էին։ 1873 թ. կային 6240 հայ և 2250 քուրդ բնակիչներ։ XIX դարի 70-ական թվականներից քաղաքի արհեստավոր ու առևտրական բնակչությունն սկսում է աստիճանաբար գաղթել ավելի մեծ քաղաքներ՝ Ադանա, Խարբերդ, Դիարբեքիր, Սեբաստիա, ինչպես նաև Մալաթիա ու Քղի։ Այնուամենայնիվ, 1914թ. ունեցած նրա 10.000 բնակչից 5000-ը հայեր էին, իսկ մյուս կեսը քրդեր, հույներ, ասորիներ և մասամբ թուրքեր։ Բալուի հայ բնակչությունը նույնպես 1915 թ. ենթարկվեց բնաջնջման։ Նրա միայն մի մասին է հաջողվել փրկվել թուրքական յաթաղանից։ Հետագայում որոշ քանակությամբ փախստական հայեր վերադառնում են իրենց տեղերը։ 1940-ական թվականներին Բալուում և շրջակայքում կային 750 փախստական հայեր։

Գյուղատնտեսական կուլտուրաներից Բալուում մշակում էին ցորեն, գարի, եգիպտացորեն, բամբակ, պտղատու ծառեր (դեղձենի, տանձենի, սալորենի, խնձորենի և այլն)։ Քաղաքի բնակչության մի մասը զբաղվում էր մեղվաբուծությամբ, իսկ քուրդ բնակչությունը՝ անասնապահությամբ։ Հայերը հիմնականում զբաղվում էին արհեստներով ու առևտրով։ Տարածված արհեստներից էին մանածագործությունը, կտավագործությունը, պղնձագործությունը, դարբնությունը և այլն։

Բալուն առևտրական քաղաք է եղել դեռևս միջին դարերում։ Այստեղով էր անցնում Արածանիի հովտով դեպի Խարբերդ ու Մալաթիա ձգվող ճանապարհը։ XIX—XX դարերում Բալուն [illegible]

ու արհեստանոցներ։ Ներքին աշխույժ առևտրից բացի, քաղաքն իր արտադրանքներով մասնակցում էր նաև արտաքին առևտրին։ Բալուից և համանուն գավառից արտահանվում էին հացահատիկներ, բամբակ, ծիրանի, դեղձի, սանձի, սալորի չիր, անասնապահական մթերքներ և այլ ապրանքներ։

Բալուի մասին վիմագրական և մատենագրական հիշատակություններ շատ կան։ Ուրարտական շրջանում այն եղել է բերդ։ Ուրարտուի թագավոր Մենուան այստեղ թողել է մի կարևոր սեպագիր արձանագրություն, ըստ որի ինքը Խեթերի երկրից խլել է Գուպանի քաղաքը, նվաճել Պուտերիա քաղաքը և ընդհարվել Մելիդա (Մալաթիա) երկրի հետ[9]: Արձանագրության մեջ հիշատակված Պուտերիա քաղաքը ենթադրաբար նույնացնում են կամ հետագայի Բալուի, կամ Ուրարտական Վաշտալ բերդաքաղաքի հետ։ Միխայիլ Ասորի պատմագիրը Բալուի հիմնադրումը վերագրում է Սելևկյանների ժամանակներին (IV—II դդ. մ. թ. ա.)՝ Սելևկոս թագավորին։ Սկզբում, ինչպես ասվեց, այն բերդ էր և հավանաբար քաղաք-բերդաքաղաքի է վերածվել XI դարում, երբ իր շրջակայքի հետ միասին մտնում էր Սասունի Թոռնիկ իշխանի տիրույթի մեջ։ Իսկ այժմ անշուք փոքր գյուղ է։

Նոր ժամանակները հասած վիճակում Բալուն արտաքնապես խղճուկ, նեղ ու ծուռումուռ փողոցներով, մեծ մասամբ կավակերտ տներով գավառական տիպի գյուղաքաղաք էր, որի շենքերը անկանոն ցրված են մեծ տարածության վրա, իրարից բաժանված լինելով այգիներով, պարտեզներով ու փոքրիկ բանջարանոցներով։ Լուսավորչական հայերը ունեին չորս թաղ, որոնք կոչվում էին իրենց չորս եկեղեցիների անուններով՝ ս. Լուսավորիչ կամ ս. Գրիգոր, ս. Աստվածածին, ս. Կիրակոս, ս. Սահակ։ Եկեղեցիներից հինը. գեղեցիկը, որ գմբեթավոր, քառաթև կառուցվածք էր, ս. Լուսավորիչն էր։ Այդ չորս եկեղեցիներից բացի, կար նաև մի բողոքական եկեղեցի, որը հայ բողոքականների թաղային եկեղեցին էր։ Դրանք բոլորը, որոնց թվում և գլխավոր եկեղեցին՝ ս. Աստվածածինը կամ Քաղցրահայաց ս. Աստվածածին կոչված վանքը, առաջին համաշխարհային պատերազմի տարիներին ավերվել ու ամայացել էր։

Բալուի բերդը XX դարի սկզբներին դեռևս կիսականգուն էր։

---

9 Ն. Ադոնց, Հայաստանի պատմություն, Երևան, 1972, էջ 203։

Գյավում էր բավական մեծ տարածք և գտնվում էր զառիվեր կողերով լեռան վրա, որի լանջերը ցայտում են հորդարուխ աղբյուրներ։ Բերդի ճանապարհը նեղ է, քարակերտ ու ոլորապտույտ։ Եվրոպական ճանապարհորդները հիացմունքով են խոսում երբեմնի անառիկ այդ բերդի ավերակների վեհության, ամրությունների, համայնապատկերի մասին։

Բալուի շրջակայքում կան մի քանի բերդերի ու ամրոցների ավերակներ, որոնց թվում են և Մեսրոպյան կոչված բերդի մնացորդները։ Ըստ կիսաավանդական մի պատմության, Բալուի մոտ է գտնվում նաև այն քարայրը, որտեղ ճգնել է Մեսրոպ Մաշտոցը հայոց գրերը արարելիս։

Բալուն հայ գրչության նշանակալի կենտրոններից է։ Այստեղ XV—XVII դարերում գրվել կամ ընդօրինակվել են Ավետարան, Մաշտոց, Շարականոց և այլ բովանդակությամբ ձեռագիր մատյաններ։ Այստեղ գործած գրիչներից հայտնի են Ավետիք Աբեղան (XV դ.) և Մարտիրոս Սարկավագը (XVII դ.)։

XIX դարի երկրորդ կեսում և XX դարի սկզբներին աշխույժ դպրոցական կյանք է ունեցել Բալուն։ Այդ ժամանակ նրա բոլոր կարգի դպրոցների թիվը (հաշված մասնավոր վարժարանները) հասնում էր 8-ի։ Դրանցից առանձնապես նշելի են հայկական 2 երկսեռ դպրոցները, որոնք ունեին 150—170 աշակերտ և 80—90 աշակերտուհի։ Այդ դպրոցներում աշակերտները հայերենից բացի սովորում էին նաև ֆրանսերեն և թուրքերեն։ Հայկական դպրոցներից հիշատակության արժանի է նաև բողոքական հայերի (դրանք 30—25 տուն էին) երկսեռ դպրոցը 20—30 աշակերտ-աշակերտուհիներով։

Բալուն տվել է ազգային հայտնի գործիչներ, որոնց թվում է նաև Երվանդ Օտյանը։

## ԲԱՅԱԶԵՏ

Բայազետը Արևմտյան Հայաստանի փոքր, բայց մեր ժողովրդի պատմության մեջ հիշատակության արժանի դեր խաղացած քաղաքներից է։ Հնում այս քաղաքի տեղում Բագրատունի նախարարների ոստանն էր՝ Դարույնք հայտնի բերդավանը, որի տեղում XV դարում կառուցված բերդը և հետագայում նրան կից

առաջացած գյուղաքաղաքը կոչվեց Բայազետ, 1829 թվականից հետո՝ նաև Հին Բայազետ (ի տարբերություն Նոր Բայազետի, որտեղ հիմնականում բնակություն էին հաստատել Բայազետից գաղթածները), ինչպես նաև Դողու Բայազիդ։

Պաշտպանական և առևտրատնտեսական առումներով Բայազետի դիրքը նպաստավոր է։ Այն գտնվում է Մեծ Մասիսից հարավ-արևմուտք, Ծաղկանց (Ալադաղ) լեռների հյուսիսարևելյան ճյուղերից մեկի լանջին, Դեղին (Զարգիմար) գետի Սարիսու ճյուղի վրա։ Նրա դիրքն ու համայնապատկերը գեղատեսիլ են։ Տեղադրված է նեղ դաշտի խորքում, լերկ ու ժայռոտ լեռների արանքում ու դրանց զառիվայրերի վրա, ծովի մակերևույթից մոտ 1750 մ բարձրությամբ։ Ամառն այստեղ մեղմ է, ձմեռը՝ ցուրտ, գարնանը՝ անձրևոտ։ Քաղաքի համար ամենալավ ժամանակն աշունն է, որ տևում է բավական երկար։ Էրզրումի նման, Բայազետը ևս հայտնի է իր աղբյուրներով։

Դժվար է ասել, թե երբ է հիմնադրվել Բայազետի տեղում եղած Դարոյնք բերդավանը։ IV դարում այն Մեծ Հայքի հայտնի բերդերից էր և Բագրատունի նախարարների ոստանը։ Դարոյնքի տեղում, որն ամենայն հավանականությամբ ավերվել էր հարձակումների և երկրաշարժերի հետևանքով, նոր բերդ է կառուցվում հետագայում։ Այս վերջինիս կառուցումը կիսաավանդական պատմությունը վերագրում է օսմանյան սուլթան Բայազետ 1-ինին (1389—1402) և անունն էլ կապում սուլթանի անվան հետ։ Հետագայում բերդի շուրջը փռվում է քաղաքն իր թաղերով։ Հայ պատմագիրներից Բայազետն առաջին անգամ հիշատակում է Առաքել Դավրիժեցին (XVII դ.)։

Հնում Դարոյնք-Բայազետը Այրարատյան աշխարհի Կոգովիտ գավառի կենտրոնն էր և, ինչպես ասվեց, Բագրատունիների իշխանանիստը։ 1555 թվականի Հայաստանի բաժանմամբ անցել է Թուրքիային և դարձել համանուն սանջակի (գավառի) կենտրոնը։ XIX դ. առաջին կեսում Բայազետի գավառը Արևմտյան Հայաստանում կազմակերպված փաշայություններից մեկն էր, որտեղ իշխում էր Սլիվանի քրդական ցեղը՝ օգտվելով ներքին լայն իրավունքներից։ Բայազետի փաշայությունը, Արևմտյան Հայաստանի մյուս նույնատիպ իշխանությունների նման վերացվեց սուլթանի կողմից զենքի ուժով XIX դ. երկրորդ կեսում։ Դրանից հետո իբրև սովորական գավառ այն մտնում էր էրզրումի վիլայեթի (նահանգ) մեջ։

Բայազետն իբրև ամուր բերդաքաղաք, XIX դարում և XX դարի սկզբներին միշտ եղել է ռուս-թուրքական հարաբերությունների կիզակետում։ Այն 1828—1914 թվականների ընթացքում ռուսների կողմից չորս անգամ ազատագրվել է թուրքական լծից, բայց նորից է հետ վերադարձվել Թուրքիային։ Դրանցից առաջինը տեղի է ունեցել 1828 թվականին, երբ ռուսական զորքերը, օգոստոսի 28-ին ջախջախելով թուրքական կայազորի պետ քուրդ Բահլուլ փաշային, գրավում են քաղաքը։ Բայազետի համար մղված այդ մարտերում քաջաբար կռվել են նաև Բայազետի Մելիք-Մարտիրոսի 500 հոգուց բաղկացած հեծյալ ջոկատի զինվորները։ Սակայն Ադրիանապոլսի պայմանագրով (1829 թ.) Բայազետը վերադարձվում է Թուրքիային։

Երկրորդ անգամ ազատագրվել է Արևելյան պատերազմի ժամանակ։ 1854 թվականի հուլիսի 17-ին Չինգլի լեռնանցքում (Մեծ Մասիսից հյուսիս-արևմուտք) ռուսական զորքերի Էրիվանյան ջոկատը թուրքական 20000-ոց բանակը ջախջախելուց հետո անմիջապես գրավում է Բայազետը, որը հետո նորից անցավ Թուրքիային։

Բայազետը երրորդ անգամ ազատագրվել է ռուս-թուրքական 1877—1878 թթ. պատերազմի ժամանակ։ 1877 թ. ռուսական բանակի հայազգի զորավար Ա. Տեր-Ղուկասովը առանց կռվի քաղաքը գրավել է թուրքերից։ Սակայն նույն թվականին, օգտվելով զորավարի բացակայությունից, թուրքական զորքն ու խառնիճաղանջ մի հսկայական ամբոխ հարձակվում և հունիսի 6—29-ը ավերում է քաղաքը ու նրա բերդը պահում պաշարված դրության մեջ։ Նրանք գրեթե ամբողջովին կոտորում են քաղաքի հայ բնակչությանը և ամայացնում ամբողջ թաղամասեր։ Ավազակային այդ հարձակումն է, որ այնքան վարպետությամբ նկարագրված է մեծ վիպասան Րաֆֆու «Խենթ» վեպում։ Բեռլինի 1878 թ. պայմանագրով Բայազետը դարձյալ վերադարձվում է Թուրքիային։

Ռուսական զորքերի կողմից այն չորրորդ անգամ ազատագրվում է առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ՝ 1914 թվականին և 3—4 տարի փաստորեն մնում էր ռուսական պետության մեջ։ Սակայն 1918 թ. թուրքերն այն հետ են վերցնում՝ տեղահանելով կամ փաստ ոչնչացնելով նրա հայ բնակչությանը։ Ներկայումս Բայազետը թուրքերով ու քրդ-

դերով բնակեցված գավառական տիպի փոքրիկ քաղաք է, որի տնտեսության ճյուղերը կազմում են անասնապահությունը, բրդի ու կաշվի մշակությունը, կարպետագործությունը, մանրածախ տեղական առևտուրն ու մասամբ արհեստագործությունը։

Բայազետը երբեք բազմամարդ քաղաք չի եղել։ Նրա բնակչության թիվը համեմատաբար մեծ է եղել XVII—XVIII դարերում։ Այսպես, XVIII դարի կեսերին այն ուներ 2000 տուն՝ մոտավորապես 10—12 հազար հայ բնակիչներով, իսկ 1812 թվականին նրա ամբողջ բնակչությունը հասնում էր մոտավորապես 12 հազար մարդու, որի մեծ մասը դարձյալ կազմում էին հայերը։ 1829-ին ուներ 7000, 1840-ին՝ 4000, 1891-ին՝ 2000, իսկ 1914-ին՝ 5000 բնակիչ, որից 2000-ը՝ հայ, իսկ մնացածը՝ թուրքեր ու քրդեր[10]։ Հայերը, թուրքական բռնություններից նեղվելով, պարբերաբար գաղթել են Արևելյան Հայաստան։ Նրանք ամենամեծ զանգվածով գաղթել են 1829 թվականին և հիմնականում բնակություն հաստատել նախկին Գավառում, որը նրանք իրենց հայրենի քաղաքի անվամբ կոչեցին Նոր Բայազետ (այժմ՝ Կամո)։

Բայազետի հայ բնակչությունը զբաղվում էր առևտրով, երկրագործությամբ, անասնապահությամբ, արհեստներով։ Առևտրական առումով Բայազետի նշանակությունն առանձնապես մեծացել էր XVIII—XIX դարերում։ Այստեղից արտահանվում էին ծխախոտ, ձավար և այլ ապրանքներ։ Քաղաքի մոտ 200-ի հասնող խանութների ու կրպակների մեծագույն մասը պատկանում էր հայերին։ Քաղաքն ուներ իր շուկան և իջևանատունը։ Բայազետով էր անցնում Թավրիզ—Էրզրում—Տրապիզոն քարավանային ճանապարհը, որն անշուշտ նպաստում էր նրա և՛ ներքին, և՛ արտաքին առևտրի զարգացմանը։

Բայազետը կառուցված է առանց նախօրոք մշակված հատակագծի։ Նրա շենքերը ցրված են դարավանդաձև լեռնալանջերին և արտաքնապես վառ տպավորություն չեն թողնում։ Քաղաքի հիմնական թաղերի տները կառուցված են կարմրավուն քարերով։ Երկու հիմնական մասից էր բաղկացած Բայազետը, որոնցից մեկը կառուցված է բարձր ժայռի վրա և կոչ-

10 Ղ. Ինճիճյան, Նոր Հայաստան, հ. Ա, Վենետիկ, 1806, էջ 114, Ա—Դո, Վանի, Բիթլիսի և Էրզրումի վիլայեթները, Երևան, 1912, էջ 204—206։

վում է Կարաթուրում, իսկ մյուսը՝ բլրի վրա և կոչվում է Էսկի-կալա։ Երկու քաղաքամասերն էլ մեծ վնասներ էին կրել 1840թ. հունիսի 20-ին սկսված և մեծ ու փոքր ընդհատումներով մինչև սեպտեմբերի 20-ը տևած երկրաշարժից։ Բայազետը չուներ կոմունալ տարրական պայմաններ։ Վատ էր քաղաքի սանիտարական վիճակը։ Այստեղ եղած երեք բաղնիքները կիսավեր վիճակում էին և գործում էին դեպքից դեպք։

Բայազետի հիշարժան հուշարձաններն ու հնությունները սահմանափակվում էին բերդով, եկեղեցիներով, մատուռներով և ուխտատեղիներով, երկու պալատով, մզկիթներով, մի ավերակ ընդարձակ շուկայով։

Քաղաքի նոր բերդը, որի կառուցումն ինչպես ասվեց, վերագրվում է սուլթան Բայազետ 1-ինին, XIX դարի վերջերին ավերակ էր։ Նրա ավերակներից բացի այստեղ Էսկի-կալա բլրի վրա նշմարվում էին նաև հայկական հին բերդի՝ Դարոյնքի մնացորդներն ու նրան կից եղած ավանի հետքերը։ Պահպանվել էր մի բուրգ, պաշտպանական պարիսպների առանձին հատվածների հիմնապատեր և այլ կառուցվածքների ավերակներ։ Վաղեմի բերդի դարպասների մոտ կային զանազան քանդակներ։ Այդ նույն բլրի վրա էր գտնվում նաև ս. Գրիգոր եկեղեցին։

Բայազետի հուշարձաններից առանձնահատուկ ուշադրության է արժանի ոմն Իսակ-փաշային վերագրվող պալատը (XVII դ.), որը կիսավեր էր և գտնվում էր Կարաթուրում ժայռի գագաթին։ Հատկապես գեղեցիկ են դրա մուտքի դարպասը, բազմաթիվ սենյակներն ու դրանց պատերին արևելյան ոճով արված որմնանկարները, կիսավեր մզկիթը, որ վերածվել էր զորանոցի։ Մի ժամանակ այդ պալատը համարվել է թուրքական կայսրության ամենանշանավոր պալատներից մեկը։ Նրա դահլիճները մարմարապատ էին և զարդարված բազմաթիվ սյուներով, իսկ պատերը ծածկված էին արաբական ոճի քանդակներով։ Իսակ-փաշայի պալատից բացի գոյություն ուներ նաև մի այլ պալատ, որը տեղական կառավարիչների նստավայրն էր և բաղկացած էր գետնուղիներով իրար հետ միացած մի քանի դահլիճներից ու սենյակներից։

Մինչև 1877 թվականը Բայազետում կային 3 եկեղեցի՝ ս. Աստվածածին (VII դ.), ս. Կարապետ, որ մի քանի անգամ վերանորոգվել էր XVIII—XIX դարերում, Սիրանավոր, մեկ ժամ՝

*ս. Գրիգոր անունով, որը XIX դ. վերջերին կիսավեր էր, երեք ուխտատեղի, ինչպես նաև 3 մզկիթ։ Դրանցից բացի, քաղաքի հարավարևմտյան մասում պահպանվել էին Ամենափրկիչ հնագույն եկեղեցու ավերակները։*

*XIX դարի երկրորդ կեսում Բայազետում կային խալֆայական մի քանի դպրոցներ։ Դրանցից բացի 70—80-ական թվականներից գործում էր Արամյան երկսեռ վարժարանը, որը XX դարի սկզբներին ուներ 200 հայ աշակերտ-աշակերտուհիներ։*

## ԲԵՐԿՐԻ

*Սկզբնաղբյուրներում հիշատակվում է նաև Բարկիրի, Բարկըրի, Բերգրի, Պարկիրի և անվան այլ տարբերակներով, իսկ թուրքերը կոչել են Բերգրի-կալե։*

*Սկզբնական շրջանում սովորական գյուղ է եղել, ապա՝ ավան բերդով կամ բերդավան, գյուղաքաղաք, բերդաքաղաք։*

*Գտնվում է Վանա լճից հյուսիս-արևելք, լճափից 16 կմ հեռավորությամբ, Բերկրի գետի աջակողմյան հարթավայրում, ձորամիջում։ Հեռավորությունը Վան քաղաքից մոտ 65 կմ է, իսկ Արճեշից՝ 46—47կմ։ Քաղաքը տեղադրված է համանուն դաշտի (որ նախկինում կոչվում էր Աբաղայի դաշտ) հյուսիսային ծայրամասում , ծովի մակարդակից ավելի քան 1760մ բարձրության վրա։ Ջրառատ է, և շրջակայքում կան ընդարձակ արդյունավետ հողեր։ Ունի քարածխի հարուստ հանքեր և նավթի զգալի պաշարներ։*

*Պատմականորեն Բերկրին մտնում էր Մեծ Հայքի Վասպուրական աշխարհի Առբերանի գավառի մեջ։ Հնում այն Գնունի նախարարական տան տիրույթն էր, իսկ VIII—IX դարերից անցել է Արծրունիներին։ Նոր ժամանակներում, ըստ թուրքական վարչական բաժանման, Վանի նահանգի (վիլայեթի) Բերկրիի գավառակի կենտրոնն է․ այստեղ էր նստում գավառակի քուրդ կամ թուրք բեկը։*

*Բերկրին երբեք մարդաշատ բնակավայր չի եղել։ Սակայն պատմական աղբյուրների հաղորդած տեղեկություններից կարելի է եզրակացնել, որ միջին դարերում այն ավելի խոշոր ու բարեկարգ է եղել, քան նոր ժամանակներում։ Հին և միջին դարերում նրա բնակչությունը զանգվածորեն բաղկացած էր*

հայերից։ Այստեղ բնակվում էին նաև որոշ թվով հրեաներ, որոնք Հայաստան էին բերված տակավին Տիգրան Բ-ի և նրա որդի Արտավազդ Բ-ի օրոք (I դ. մ. թ. ա.)։ VIII դարում, Աբբասյան խալիֆների կիրառած քաղաքականության հետևանքով, Բերկրիում և նրա շրջակայքում հաստատվում են արաբական ութմանիկ ցեղին պատկանող շատ բնակիչներ, իսկ ավելի ուշ՝ նաև քրդեր։ Սակայն դրանից հետո էլ, ընդհուպ մինչև առաջին համաշխարհային պատերազմը, Բերկրիի բնակչության մեծագույն մասը դարձյալ հայերն էին։ XIX դարի սկզբին գյուղաքաղաքն ուներ 300 տուն հայ և քուրդ բնակչություն, իսկ XX դարի սկզբին՝ 3100 բնակիչ, որից 2100-ը հայ, իսկ մնացածը՝ թուրքեր, հրեաներ, քրդեր[11]։ Այլ աղբյուրների համաձայն, 1915 թվականի սկզբին Բերկրի բնակչության թիվը հասնում էր 5000 մարդու, որից 3000-ը՝ հայեր, իսկ մնացածը՝ թուրքեր, քրդեր և հրեաներ։ 1877—78թթ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ Բերկրին թուրքական բանակատեղի էր և այդ պատճառով բնակչությունն ամբողջությամբ ցրվել էր տարբեր տեղեր։ Մնացել էին միայն մի քանի տուն թուրքեր։ Պատերազմի ավարտից հետո նրանց մեծ մասը նորից է վերադառնում իր հայրենի բնակավայրը։ Այստեղի հայերի մեծ մասը զոհ գնաց 1915 թվականի եղեռնին, իսկ մյուս մասը տեղահանվեց. քչերին հաջողվեց փրկվել թուրքական յաթաղանից և ապաստան գտնել Արևելյան Հայաստանում։

Բերկրին ականատես է եղել քաղաքական բազմաթիվ իրադարձությունների։ Դժվար է ասել, թե երբ է հիմնադրվել այն։ Սակայն այստեղ ուրարտական սեպագիր արձանագրությունների գոյությունը ցույց է տալիս, որ հնագույն բնակավայր էր։ VII դարում Բերկրին գրավել են արաբները, 880թ. ազատագրվել է Աշոտ Բագրատունու կողմից, 1021 թ. անցել է Բյուզանդիային, 1054 թ. գրավել են սելջուկ թուրքերը, 1241 թ.՝ մոնղոլները, իսկ XVI դ. սկզբին՝ թուրքերը։

Բերկրիի մասին հիշատակություններ ունեն Խորենացին, Սեբեոսը, Թովմա Արծրունին, Լաստիվերտցին, Ուռհայեցին, Գանձակեցին, Ստեփանոս Օրբելյանը, թուրք հեղինակ Չելեբին և ուրիշներ։ Նա բարգավաճել էր IX—XI դարերում։ Այդ ժամանակներում Բերկրին առևտրական ճանապարհներով

---

11 ՀՍՀ, հ. 2-րդ, էջ 425։

կապված էր Խոյի (Հեր), Արճեշի, Խլաթի, Բաղեշի (Բիթլիս) և այլ քաղաքների հետ։ Եվ միանգամայն հասկանալի է, թե ինչու XI դ. պատմագիր Արիստակես Լաստիվերտցին այն կոչում է քաղաք։

Նոր ժամանակների Բերկրիի բնակչության զբաղմունքը երկրագործությունը, այգեգործությունը, անասնապահությունը, արհեստները և առևտուրն էր։ Արհեստները բավարարում էին հիմնականում տեղական բնակչության պահանջմունքները։ Կարևոր նշանակություն էր ստացել ձկնավաճառությունը. բերկրեցիները մեծ քանակությամբ Վանի տառեխ էին վաճառում տարբեր գավառներում ու քաղաքներում։

Որոշ ժամանակ արդյունահանվել են նաև քաղաքի շրջակայքի նավթահանքերը։ Այդ նավթահանքերը 1860-ական թվականներից շահագործում էր հայ ձեռնարկատեր Առավելյանցը, սակայն դրանք 1880 թվականին ավերվեցին շեյխ Ուբեյդ-Ուլլայի զինվորների կողմից։

Այժմ Բերկրին փոքրիկ ու խղճուկ բնակավայր է, սովորական մի անբարեկարգ գյուղ, հետամնաց տնտեսությամբ։

Վաղեմի բերդավանում կան հիշատակության արժանի պատմական հնություններ և զանազան կառուցվածքների ավերակներ։ Դրանց մեջ անշուշտ ամենանշանավորը նրա բերդն էր, որ բավական մանրամասնությամբ նկարագրել է XVII դարի թուրք հեղինակ Է. Չելեբին։ Նա գրում է, որ Բերկրիի բերդը գտնվում էր «սեպ և սև» ժայռի վրա, կառուցված էր խոշոր քարերով, գրավելով բավական ընդարձակ հնգանկյունի ձև ունեցող տարածք։ Այստեղ էին գտնվում քուրդ բեկի ապարանքը, բաղնիք, իշխանատուն, կրպակներ, այգիներ ու պարտեզներ։ Քարաժայռերի վրա եղած հրբեմնի այդ բերդը շատ անգամ է ավերվել և նորից նորոգվել։ Նրա մնացորդները նշմարվում են ցայսօր։

Պատմական և հնագիտական առումով հետաքրքրություն է ներկայացնում այստեղ հայտնաբերված ուրարտական թագավոր Մենուայի մի սեպագիր արձանագրությունը, որը տարված է Ստամբուլի թանգարանը։ Արձանագրության մեջ խոսվում է ուրարտական թագավորի կողմից ոռոգման նպատակով Բերկրիի գետից հանված ջրանցքի մասին։ Այստեղ պահպանված են ուրարտական մի քանի արձանագրություններ ևս։

Բերդավանի մոտ, համանուն գետի վրա, կա քարաշեն,

բազմակամար մի կամուրջ, որը կառուցվել է մինչև թուրքական տիրապետությունը։

Բերդավանն ուներ ս. Աստվածածին անունով մի եկեղեցի, որն այժմ ավերակների կույտի է վերածվել։ Բերկրիի շրջակայքում են գտնվում հայ ժողովրդի պատմության և մշակութային կյանքում նշանակալի դեր խաղացած Տեր Հուսկան որդի Հնադարյան հայտնի վանքը, Առեստ ավանը՝ Արշակունիների շրջանի (I—V դդ.) արքայական ձկնորսարանը, Ամյուկ բերդը և պատմական այլ վայրեր։

Բերկրին միջնադարյան Հայաստանի գրչագրության կենտրոններից է։ Այստեղ միայն XIV—XV դարերում գրված և ընդօրինակված մեզ հայտնի ձեռագրերի թիվը հասնում է 10-ի։ Դրանք ավետարաններ, շարակնոցներ, բառգրքեր են, որոնք ունեն գրիչների հիշատակարաններ։ Առանձնապես ուշագրության արժանի է 1418 թ. Հակոբ կրոնավորի ընդօրինակած ծաղկազարդ ավետարանը։ Նույն դարի մյուս գրիչներից հայտնի է Կարապետ քահանան, որը ևս ընդօրինակել է երկու ավետարան։

XIX դարի երկրորդ կեսում և XX դարի սկզբներին Բերկրիում գործում էր հայկական մի վարժարան։

## ԲԻԹԼԻՍ

Հին Հայաստանի այս քաղաքը հայտնի էր Բաղեշ, Բաղաղեշ և այլ անուններով։ Նրա դիրքը պատմական գրեթե բոլոր ժամանակաշրջաններում ռազմաստրատեգիական ու առևտրատնտեսական առումով հարմար է եղել և նպաստել է նրա ընդհանուր առաջադիմությանը։ Հնագույն ժամանակներից ի վեր Բիթլիսով և համանուն գետի հովտով էր անցնում Տրապիզոնից և Հայաստանի կենտրոնական նահանգների խոշոր քաղաքներից՝ Արտաշատից, Դվինից, Անիից, Կարսից, Կարինից դեպի Միջագետք ձգվող կարևորագույն ճանապարհներից մեկը։ Արտաշեսյանների ժամանակ այստեղով էր անցնում Արտաշատ—Տիգրանակերտ հայտնի մայրուղին՝ հայկական «արքայական ճանապարհը»։

Բիթլիսը գտնվում է Վանա լճից մոտ 25 կմ հարավ-արևմուտք, Զորապահակ կոչված լեռանցքից հարավ, Ավեկյուս

(Համեղաշուր), Խոսրովու (Ամրդոլ) և այլ գետակների միախառնման տեղում, որտեղ իր սկիզբն է առնում Բիթլիսի գետը՝ Տիգրիսի վտակներից մեկը։ Քաղաքը փռված է ոչ միայն այդ գետակների գետաբերաններն ընդգրկող կենտրոնական ձորում, այլև դրա հարակից զառիվեր ձորակողերին, կազմելով մի հսկայական ամֆիթատրոն, որտեղ շենքերը լեռնալանջերին տեղադրված են շարքերով, աստիճանաձև՝ ամռան կեսին թաղվելով այգիների կանաչ ծովի մեջ։ Եվ իզուր չէ, որ ճանապարհորդներն առանց բացառության հիացմունքով են խոսում Բիթլիսի դիրքի ու նրա համայնապատկերի գեղատեսիլության ու հմայիչ արտաքինի մասին։ Նրա համայնապատկերը լրացնում են աջ ու ձախ մասերով աղմուկ աղաղակով հոսող գետակներն ու առվակները, հորդաբուխ սառն աղբյուրները։

Քաղաքի բարձրությունը ծովի մակերևույթից շուրջ 1600 մ է, կլիման ցամաքային է՝ բավական շոգ ամառներով և զգալի ցուրտ ու տևական (մինչև 5 ամիս) ձմեռներով։ Օդը մաքուր է ու առողջարար, ջրերն առատ ու քաղցրահամ։ Քաղաքում և նրա շրջակայքում հաջողությամբ աճում են դեկորատիվ ծառատեսակներից ուռենին ու կաղամախին, մրգատու ծառերից ու մյուս կուլտուրաներից՝ տանձենին, խնձորենին, սալորենին, ծիրանին, նռնենին, կեռասենին, թզենին, խաղողը, հատապտուղներ և այլն։ Բիթլիսը այգեշատ քաղաք է։ Այստեղ գրեթե բոլոր տներն ունեցել են իրենց այգիները և պարտեզները։

Հնագույն քաղաք է Բիթլիսը։ Նրա հիմնադրումը ավանդաբար վերագրել են Ալեքսանդր Մակեդոնացուն (IV դ. մ. թ. ա.)։ Ավանդության ասելով այդ քաղաքը նրա հանձնարարությամբ կառուցել է զորավար Լիսը (կամ Պելատի Լիս), որի անունով էլ կոչվել է Բիթլիս (=չար Լիս) կամ Պետլիս։ Ականատեսների ասելով, բուն քաղաքի կենտրոնական մասում բխող աղբյուրը մինչև նորագույն ժամանակները ավանդույթով կոչվել է Ալեքսանդրի անունով։

Բիթլիսի մասին մեզ են հասել հայկական, արաբական, բյուզանդական, թուրքական բազմաթիվ հեղինակների բազում վկայություններ, որոնք թույլ են տալիս ուրվագծել նրա քաղաքական պատմության կարևոր պահերն ու դրվագները։ Հայկական մատենագրության մեջ այն Բաղեշ անունով հիշատակում է Սեբեոսը (VII դ.)։ Պատմագիրներից ոմանք Բիթլիսը համարում են Աղձնիքի Սալնաձոր գավառի գլխավոր քաղաքը,

իսկ մյուսները վերագրում են Տուրուբերան աշխարհի Բզնունիք գավառին։

Բիթլիսը բավական վաղ է ընկել օտարների տիրապետության տակ։ VII դարում այստեղ հաստատվում են արաբական նվաճողները, X դարում կարճ ժամանակով՝ բյուզանդացիները, իսկ այդ նույն դարի վերջերից քրդական զանազան ցեղեր, որոնց իշխանությունը XII և XV դարերում մի քանի տասնամյակներ սելջուկների ու կարա-կոյունլուների կողմից գրավվելուց հետո, նորից է վերականգնվում ու շարունակում իր գոյությունը։ Բիթլիսի քրդական իշխանությունը, որ սովորաբար կոչվում էր խանություն կամ հյուքյումեթություն, առանձնապես հզոր է եղել XVI—XVIII դարերում, երբ այն կարողացել էր դիմագրավել թուրքերի բազմաթիվ հարձակումներին և նրանց հարկադրել ընդունել իր ներքին ինքնավարությունը՝ իբրև Վանի էյալեթի քրդական ընդարձակ հյուքյումեթություն։ Բիթլիսի այդ ցեղապետությունը թուրքական պետության կողմից վերացվել է 1849 թվականին, երբ սուլթանական զորքերը պարտության են մատնել քրդական խանությանը և գրավել ու ավերել նրա կենտրոն Բիթլիսը։ Դրանից հետո նախկին խանության տարածքից կազմվում է Բիթլիսի վիլայեթը՝ համանուն կենտրոնով։ Իսկ վիլայեթն արդեն սոսկ վարչատարածքային [illegible] կա-տությամբ և որևէ առանձնաշնորհում չուներ։ Բիթլիսի նահանգը ընդարձակ երկրամաս էր։ XIX դարի վերջերին և XX դարի սկզբներին նրա տարածքը հասնում էր ավելի քան 27 հազար քառակուսի կիլոմետրի։ 1878—79թթ. նահանգի բնակչության թիվը հասնում էր մոտ 400 հազար մարդու, որից 250 հազարը կազմում էին հայերը, XIX դ. վերջերին նահանգի բնակչությունը 382 հազար էր, որից 180 հազարը՝ հայեր։ Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին նահանգի հայերը ևս ենթարկվեցին ցեղասպանության՝ նրանց մի մասը զոհ գնաց թուրքական յաթաղանին, իսկ մյուս մասը տեղահանվեցին զանազան կողմեր։ 1950 թ. տվյալներով Բիթլիսի նահանգի բնակչությունը չէր հասնում նույնիսկ 100 հազար մարդու։ Բիթլիսը կենտրոն է նաև համանուն գավառի և գավառակի։

Բաղեշ-Բիթլիսի բնակչությունը ամենայն հավանականությամբ միջին դարերում ավելի բազմամարդ է եղել։ Սակայն նրա բնակչության վերաբերյալ արժանահավատ տվյալներ

չկան։ Քուրդ իշխողներն ու սուլթանական տիրակալները վիճակագրության հետ այնքան էլ «գլուխ» չունեին և համընդհանուր մարդահամարներ չեն անցկացրել։ Լինչի ասելով, Բիթլիս քաղաքը XIX դ. սկզբներին ունեցել է շուրջ 30 հազար բնակիչ, որից մոտ 10 հազարը՝ հայեր։ 1914 թվին հայերի քանակը իջնում է 7000 մարդու, իսկ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին քաղաքն իսպառ զրկվում է հայերից։

Իր հարմար դիրքի շնորհիվ Բաղեշ-Բիթլիսը դարեր շարունակ մեծ նշանակություն էր ձեռք բերել որպես առևտրի կենտրոն։ XX դարի սկզբներին քաղաքն ուներ երեք շուկա, մոտ 1200 խանութ ու կրպակ և մի շարք իջևանատներ։ Տեղական ապրանքներով առևտուր էին կատարում հասարակության տարբեր խավերը, բայց այն հիմնականում գտնվում էր հայերի ձեռքին։ Նրա շուկաներում ու խանութներում վաճառվում էին գյուղատնտեսական մթերքներ՝ հացահատիկ, մրգեր, կաթնամթերքներ, միս, ինչպես նաև անասուններ, արհեստավորական զանազան արտադրանքներ՝ գործվածքներ, գործիքներ, տնային գործածության իրեր և այլն։ Առանձնապես մեծ համբավ ուներ տեղական «շիլա» կոչված կարմիր կտորը, որը զգալի չափով արտահանվում էր նաև տարբեր տեղեր։ Ըստ երևույթին Բիթլիսի առևտրական դերն ավելի մեծ է եղել միջին դարերում։ Թովմա Արծրունին (IX դար) այն ուղղակի կոչում է «շահաստան Բաղեշ»։ Արհեստներով նույնպես հիմնականում զբաղվում էին հայերը։ Քաղաքի զարգացած արհեստներից էին կաշեգործությունը, մանածագործությունն ու ջուլհակությունը, դերձակությունը, ներկարարությունը, դարբնությունն ու զինագործությունը։ Իրենց նշանակությամբ քաղաքային զբաղմունքներից՝ առևտրից ու արհեստագործությունից, հետ չէին մնում գյուղատնտեսական զբաղմունքները։ Բիթլիսը շատ հայտնի էր իր ընտիր մրգերով ու խաղողով։ Քաղաքում տուն չկար, որ չունենար իր այգին կամ բանջարանոցը։

Բիթլիսը ընդհանուր առմամբ պահպանել է իր միջնադարյան կառուցվածքը։ Կենտրոնական ձորում վեր ցցված ժայռաբլրի վրա գտնվում են նրա հին բերդի ավերակները, որի շուրջը տարածվում են բնակելի թաղամասերը, իսկ ավելի հեռու՝ ձորերում ձգվում են արվարձանները։ Սեպուհ կոչված լեռան վրա գտնվող նրա միջնադարյան բերդը պատած է եղել աշտարակավոր ամրակուռ պաշտպանական պարսպով։ Բերդ

կարելի էր մտնել լեռան զառիթափ լանջերով ձգվող նեղ ճանապարհով՝ մի քանի շարժական կամուրջներ անցնելուց հետո։ Բերդը խանի աթոռանիստն էր։ Այստեղ էին գտնվում նրա ապարանքը և խանական վերնախավի տները։ Բերդի միակ դուռը գտնվում էր հարավային կողմում և երկաթակուռ էր։ Բուն քաղաքն իր բնակելի թաղամասերով, շուկայով, եկեղեցիներով ու մզկիթներով, քարավանատներով ու ապարանքներով փռված էր կենտրոնական ձորի փոքրիկ հարթավայրում և նրա շրջակայքի ձորալանջերին, այնտեղ, որտեղ իրար են միանում Բիթլիսի գետը կազմող Ավեխի և Խոսրովի գետակները։ Բուն քաղաքը երբեք պարսպապատ չի եղել։ Դրա կարիքը չի էլ զգացվել. քաղաքը բոլոր կողմերից պաշտպանված է զառիթափ լեռնալանջերով և բավական էր ամրացնել շրջակայքի հետ կապող կիրճերը (դրանք թվով 6 էին և յուրաքանչյուրն ուներ իր դուռը), որպեսզի թշնամու համար Բիթլիսը դառնար դժվարամատույց։

Բիթլիսն, ըստ երևույթին, հատուկ հատակագծման ընդհանրապես չի ենթարկվել։ Սակայն բնական յուրահատուկ պայմանների շնորհիվ նրա կառուցապատումը կատարվել է որոշակի պլանով։ Քաղաքի բնակելի զանգվածները, թաղերն ու առանձին շենքերը տեղադրված են ձորերի կողերին՝ շարքերով, և կազմում են մի մեծ ամֆիթատրոն, որում յուրաքանչյուր ցածր շարքի տների հարթ կտուրները հաջորդ բարձր շարքի համար ծառայում էին իբրև բակ։ Այդ, ինչպես և թաղերն ու տների միջև եղած այգիներն ու պարտեզները Բիթլիսը դարձնում էին ակնահաճո քաղաք։ Առանձնապես գեղեցիկ է ձորի հյուսիսային լանջերի տեսքը։ Տների մեծագույն մասը քարակերտ է, իսկ շինարարական քարով Բիթլիսը հարուստ է. մեծ քանակությամբ քար են արդյունահանում նրա շրջակայքի քարահանքերից։

Բիթլիսում կային մի շարք հասարակական և մի քանի հարյուր տնային բաղնիքներ, որոնց կեղտաջրերը տեղական կոյուղով թափվում էին գետակների մեջ։

XX դարի սկզբներին Բիթլիսում կային և գործում էին չորս մենաստաններ (վանքեր), որոնք կարևոր դեր են խաղացել հայ դպրության պատմության մեջ։ Դրանցից ամենահայտնին Ամրդոլու ս. Հովհաննես վանքն էր իր Կարմրակ ս. Նշան դրմբեթավոր եկեղեցով։ Ամրդոլու վանքը առանձնապես մեծ դեր

է խաղացել XVI—XVIII դարերում, երբ նա դարձել էր հայկական մշակույթի կարևոր կենտրոն, հայ դպրության նշանավոր հանգրվան։ Այս վանքի հետ է կապված մի շարք վարդապետ-գիտնականների՝ (Վարդան Բաղիշեցի, Հովհաննես Կոլոտ, Գրիգոր Արճիշեցի և ուրիշներ) ուսումնառությունը կամ գործունեությունը։ Քաղաքի շրջակայքում էին գտնվում մյուս երեք վանքերը՝ Գոմանց ս. Աստվածածինը, Ավելուտ ս. Աստվածածինը և Խնդրակատար ս. Աստվածածինը իրենց հոյակերտ գմբեթավոր եկեղեցիներով։ Դրանք ես զգալի հետք են թողել հայ գրչության ու դպրության պատմության մեջ։

Բիթլիսի մզկիթների թիվը XIX դարի վերջերին հասնում էր 15-ի։ Իրենց հնությամբ, մեծությամբ ու կառուցվածքով դրանցից համեմատաբար նշանավոր էին չորսը, որոնցից երկուսը՝ Կզըլ և Շեյխ ջամիները հնում հայկական եկեղեցիներ են եղել և մզկիթների էին վերածվել քուրդ տիրապետողների ժամանակներում։ Գրեթե բոլոր մզկիթներն ունեին իրենց մինարեները։

Բիթլիսում, գետակների վրա, տարբեր ժամանակներում կառուցել էին մեծ ու փոքր տասնյակ կամուրջներ, որոնք իրար հետ էին կապում ձորալանջերի թաղամասերը։

Քաղաքի հայությունը ուներ իր դպրոցները։ XIX դարի երկրորդ կեսում և XX դարի սկզբներին քաղաքում գործում էին հայկական չորս արական ու երեք օրիորդաց դպրոցներ։ Դպրոցներ ունեին նաև բողոքական հայերը։ Դրանք հիմնականում ցածր կարգի էին։ Քաղաքի մշակութային կյանքում առանձնապես խոշոր դեր էր խաղում Ամրդոլու վանքը, որտեղ, ինչպես ասվեց, կրթվել ու գործել են հայ դպրության հայտնի շատ դեմքեր։

Բիթլիսում են ծնվել XVIII դարի ժամանակագիր Դավիթ Բաղիշեցին, ականավոր դերասանուհի Ջաքելը (Մարիամ, 1858—1926)։ Բիթլիսը Վիլյամ Սարոյանի ծնողների և պապերի հայրենական քաղաքն է։

Առաջին համաշխարհային պատերազմին հաջորդած ավելի քան 60 տարվա ընթացքում Բիթլիսն առանձնապես առաջադիմություն չի ունեցել։

Ներկայումս նույնանուն նահանգի կենտրոն Բիթլիսը գավառական տիպի քաղաք է (1965-ին ուներ մոտ 18,5 հազար բնակիչ)։ Նրա արդյունաբերությունը սահմանափակված է

ծխախոտի և կաշվի վերամշակման մի քանի ձեռնարկություններով, որոնց արտադրանքի զգալի մասը առաքվում է տարբեր տեղեր։

## ԳՅՈՒՄՈՒՇԽԱՆԱ

Գյումուշխանա (Գյումուշխանե, Կյումուշխանե) անունը համեմատաբար նոր է և փաստորեն հին հունական Արգիրոկաստրոն կամ Արգյուրապոլիս անվան թուրքերեն թարգմանությունն է, որ նշանակում է «արծաթի տուն», «արծաթի հանք»։

Պատմագիրների և աշխարհագրագետների մոտ երբեմն հիշատակվում է իբրև հանքավայր, ավան, իսկ երբեմն էլ՝ քաղաք։

Գտնվում է Սև ծովի ավազանին պատկանող Խորշատ կամ Գյումուշխանա գետի հովտում, Երզնկայից հյուսիս-արևմուտք, Տրապիզոն—Էրզրում ճանապարհի աջ կողմում, զառիվեր կողերով ահավոր ապառաժների վրա, որոնց ստորոտով հոսում է Խորշատը։ Ջրառատ է, բարենպաստ կլիմայական պայմաններով։ Բուն քաղաքը բուսականությունից աղքատ է, սակայն գյուղ շուրջը, Խորշատ գետի հովտում, փռված են գեղեցիկ ու բնդարձակ այգիներ և պարտեզներ։ Գյումուշխանան հատկապես հայտնի է խնձորով և տանձով։ Քաղաքից հարավ կա մի լճակ, որի մեջ թափվում են հորդաբուխ աղբյուրների ջրերը։ Շրջակայքում հնագույն ժամանակներից ի վեր հայտնի են եղել և շահագործվել են արծաթի հարստագույն հանքավայրերը։ Արծաթի հետ միասին կան կապարի և պղնձի պաշարներ։ Համեմատաբար նոր ժամանակներում նշմարվել են նաև ոսկի, երկաթ և քարածուխ։

Հնում Գյումուշխանան մտնում էր Փոքր Հայքի մեջ, սկզբում Նրա Առաջին Հայք պրովինցիայի, իսկ հետագայում, Հուստինիանոս 1-ինի (527—565թթ.) վարչական վերափոխությունից հետո, Երկրորդ Հայքի մեջ։ XVII դարից այն Տրապիզոնի նահանգի (վիլայեթ) Գյումուշխանայի գավառի (սանջակ) կենտրոնն է։

Գյումուշխանա-Արգիրոկաստրոնը, իբրև արծաթի հանքա-

վայրին կից կազմավորված ավան, գոյություն ունի հնագույն ժամանակներից։ Արծաթի հանույթի ընդլայնման և արհեստագործության ու առևտրի զարգացման շնորհիվ հետագայում այն աստիճանաբար վերածվել է քաղաքի։ Արծաթի և պղնձի հանքերի գործարանային շահագործումը սկսվել է XIX դարի կեսից, երբ դրանք զավթվեցին ֆրանսիացիների կողմից։ Իսկ հանքավայրերում հիմնական աշխատողները հույներ և հայեր էին։ Ռուսական զորքը ռուս-թուրքական երկու պատերազմների ժամանակ (1829—29 թթ. և 1877—78 թթ.) գրավել է Գյումուշխանան, սակայն դրանց հաջորդած հաշտության պայմանագրերով այն նորից է մնացել թուրքական տիրապետության տակ։

Լեռնահանքային գործից բացի, Գյումուշխանայի հայ և հույն բնակչությունը զբաղվում էր նաև արհեստներով, առևտրով, ծխախոտի ու կակաչի (հաշիշ) մշակությամբ, այգեգործությամբ։ Գյումուշխանայի արծաթը, պղինձը և ոսկին արտահանվում էին կիսամշակ վիճակում։ Նրա արտահանած ապրանքներից էին նաև տեսակ-տեսակ մրգերը, ծխախոտը, հաշիշը։

Դժվար է ասել, թե Գյումուշխանան ինչքան բնակչություն է ունեցել հնում և միջին դարերում։ Պատմագիրների վկայություններից ակնհայտ է դառնում, որ այն երբեք բազմամարդ քաղաք չի եղել, բայց նոր ժամանակների համեմատությամբ միջին դարերում նրա բնակչության թիվն ավելի մեծ է եղել։ 1872—73 թթ. Գյումուշխանան ունեցել է 250 տուն հայ, 320 տուն հույն և 420 տուն թուրք բնակիչ, 1892թ. նրա բնակչության թիվը հասնում էր 5000 մարդու, 1915-ին՝ եղեռնից առաջ, ուներ 8000 բնակիչ, որից 2500-ը հայեր[12]։ Գյումուշխանայի բնակչությունը, հատկապես հայությունը, մեծ արտահոսք է տվել XIX դարի երկրորդ կեսում և XX-ի սկզբներին։ Նրա բնակչության զգալի հատվածներ, նեղվելով աղքատությունից, թողել հեռացել են հայրենի քաղաքից՝ բնակություն հաստատելով Բաքերդում, Երզնկայում, Տրապիզոնում, Պոլսում և, նույնիսկ, Փարիզում ու Ռուսաստանի զանազան քաղաքներում։ Սակայն նրա հայ բնակչությունը զանգվածաբար տեղահանվել է թուրքական ջարդարարների կողմից առաջին համաշխարհա-

12 Ս. Մ. Սոցիկյան, Արևմտահայ աշխարհ, էջ 85, «Մուրճ» ամսագիր, 1890, էջ 98։

յին պատերազմի տարիներին։ Նրանց մի մասը զոհ է գնացել թուրքական յաթաղանին, իսկ 1915 թ. մեծ աղետից մի կերպ փրկվածները գաղթել են օտար երկրներ։ 1970-ական թվականներին Գյումուշխանայում մնացել էին միայն 330 հայեր։

Գյումուշխանայի շատ թե քիչ աչքի ընկնող շենքերը կարելի է հաշվել մատների վրա․ Դրանցից էին գավառական վարչական շենքերը, եկեղեցիները, մզկիթները և քաղաքում ու դրա մոտակայքում եղած հայկական ու հունական վանքերի համալիրները։ Հայերն ունեին մեկ եկեղեցի ս. Աստվածածին անունով, որ կառուցվել էր 1269 թվականին և կանգուն էր ու գործում էր մինչև առաջին համաշխարհային պատերազմը։ Հույները ևս քաղաքում ունեին իրենց եկեղեցին, բայց նրանց կրոնական առաջնորդը նստում էր քաղաքից 8—9 կմ հեռավորությամբ գտնվող հունական ս. Սարգիս վանքում։ Հայկական վանքը քաղաքին ավելի մոտ էր գտնվում՝ նրանից մոտ 4 կմ հեռավորության վրա, դեպի հյուսիս-արևելք։ Այն կոչվում էր ս. Փրկիչ կամ ս. Ամենափրկիչ և ավերվել է XX դարի սկզբներին։ Հավանական կարելի է համարել, որ Գրիգոր Դարանաղցու հիշատակած Գյումուշխանայի վանքը հենց նույն ս. Փրկիչն է։ Ս. Աստվածածին եկեղեցում, կամ ս. Փրկիչ վանքում պահվում էին մեծ թվով ձեռագրեր, ուստի և երբեմն տեղակի այն համարվել է մատենադարան։ Հայերն ունեին Մեսրոպյան երկսեռ վարժարան։ Հետագայում, XIX դ. երկրորդ կեսին և XX դարի սկզբներին, այստեղ գործում էր նաև երկրորդ վարժարանը, որ կրում էր ս. Հռիփսիմեի անունը։ Երկուսը միասին 1872—73 թթ. ունեին 110 աշակերտ և 70 աշակերտուհի։ Հույները ևս ունեին իրենց ուսումնարանը։

Գյումուշխանայում են ծնվել հայերեն-իտալերեն հայանի բառարանի հեղինակ, Մխիթարյան միաբան Հ. Մանուել վ. Ջախջախյանը (1770—1835) և Մանուել Գյումուշխանեցին։

## ԳԻԱԳԻՆ

Արևմտահայերը սովորաբար կոչում են Տիատին։ Ոմանք նույնացնում են պատմական Ծաղկոտն գավառի Ծաղկավանք ոստանի, ոմանք նույն գավառի գլխավոր բնակավայրի՝ Զարեհավան ավանի հետ։ Ղ. Ալիշանն այն նույնացնում է հին

Տառյանոս (կամ Տառնոնս) ավանի հետ, որը հիշատակվում է IV դարից։ Նա գրում է, որ ս. Հովհաննես (Ուչքիլիսե) վանքի միաբաններն այդ անունը հիշատակել են նոր՝ Դիատոուն ձևով, իբր թե հիշատակ Ձիրավի ճակատամարտում (371թ.) զոհված հույն զինվորների, որոնց որպես պատիվ իբր թաղել էին այստեղ և հենց այդ Դիատոուն ձևն էլ աղավաղելով դարձել է Դիադին։ Համարվել է գյուղ, ավան, գյուղաքաղաք, քաղաք։

Գտնվում է Արածանիի վերին հոսանքի աջ ափին, Բայազետից մոտ 38 կմ արևմուտք, Ծաղկանց (Ալադաղ) լեռների արևելյան փեշերին, Էրզրում—Բայազետ ճանապարհի վրա, տեղական մի քանի ճանապարհների խաչման կետում։ Քաղաքից 5—6 կմ հեռավորությամբ գտնվում է Արածանիի բնական հռչակավոր կամուրջը, որը Որոտանի վրայի «Սատանի» կամուրջի նման գոյացել է կրաքարային և ծծմբային բաղադրությամբ հանքային ջրերի երկարատև գործունեության շնորհիվ՝ կրի և ծծմբի միացություններից։ Կամուրջի բարձրությունն ու լայնությունն ավելի քան 21 մ է։ Նրա շուրջ կուչմից բխում են բազմաթիվ տաք ու գոլ ծծմբային և կրային հանքային ջրեր։ Կամրջից մի փոքր հեռու, Արածանիի աջ ափին գտնվում է Դիադինի հանքային ջրերի մեծ ակը՝ գլխավոր Ջերմավը։ Ջրի ջերմությունը շատ բարձր է. ականատեսների վկայությամբ նրա վրա նույնիսկ կարելի է ոչխարի միս եփել։ Այդ աղբյուրները միասին վերցրած համապատասխանում են պատմական Վարշակի ջերմուկներին, որոնց մասին կան պատմական մի ամբողջ շարք վկայություններ։

Դիադինը համանուն գավառակի (կազա) կենտրոնն է և մտնում է Էրզրումի նահանգի (վիլայեթ) Բայազետի գավառի (սանջակ) մեջ։

Դիադինի բնակչության քանակի վերաբերյալ եղած տվյալները խիստ հակասական են։ Կարելի է համեմատաբար արժանահավատ համարել այն հաղորդումները, ըստ որոնց այս սակավամարդ գյուղաքաղաքը XIX դարի սկզբներին ուներ 500 տուն հայ և քուրդ բնակիչ, նույն դարի 80-ական թվականներին՝ մոտ 80 տուն, XX դարի սկզբին մոտ 100 տուն, 1909-ին՝ 300 տուն, իսկ 1915-ին՝ մեծ արհավիրքից առաջ, մոտ 400 տուն։ Մինչև XIX դարի 20-ական թվականների վերջերը Դիադինն

բնակչության մեծագույն մասը կազմում էին հայերը։ Սակայն 1828—29թթ. ռուս-պարսկական պատերազմից հետո այստեղի հայերը համարյա ամբողջությամբ գաղթեցին Արևելյան Հայաստան և հիմնականում բնակություն հաստատեցին այժմյան Վարդենիսի (նախկին՝ Բասարգեչարի) շրջանի գյուղերում։ Եվրոպական ճանապարհորդներից մեկը գրում է, որ 1831 թվականին այստեղ կային միայն 3 տուն հայ, և 20—30 տուն քուրդ բնակիչ։ Հետագայում և՛ հայերի, և՛ քրդերի բանակը ավելանում է, բայց ինչպես ցույց են տալիս վկայակոչված թվերը, Դիադինն այնուամենայնիվ մնացել է խղճուկ ու սակավամարդ գյուղաքաղաք։

Մյուս գյուղաքաղաքների բնակչության նման, Դիադինի բնակիչները նույնպես հիմնականում զբաղվում էին գյուղատնտեսությամբ, արհեստներով ու առևտրով։ Նրա արհեստավորներն ու առևտրականները գերազանցապես հայեր էին։ Արհեստների նշանակությունը սահմանափակվում էր գավառակի սահմաններով, ներքին առևտուրը մանրածախ էր, իսկ արտաքինը տարանցիկ առևտուր էր՝ Բայազետ—Էրզրում ճանապարհով կատարվող առևտրի բաղկացուցիչ մասը, որին Դիադինը քիչ մասնակցություն ուներ։ Քաղաքի շուկան փոքրիկ էր և ուներ ընդամենը 40—50 կրպակ ու արհեստանոց (1909թ.), որոնց տերերը հայ արհեստավորներն ու մասամբ առևտրականներն էին։

Դիադինն ուներ իր բերդը, որը գտնվում էր Արածանիի ժայռոտ ափին։ Մինչև 1843 թվականը այն կանգուն էր, իսկ հետագայում վերածվել է ավերակների կույտի։

Գյուղաքաղաքում կար հայկական մեկ եկեղեցի՝ ս. Աստվածածին անունով։ Այն փայտածածկ էր, ուներ 3 խորան և կանգուն է եղել մինչև XX դարի սկզբները։ Կային վարչական շենքեր, հեռագրատուն, Դիադին անունով մի ավերակ վանք և այլ կառույցներ ու հնություններ։ Դիադինի համար յուրովի հանգստավայր էր վերը նշված հանքային ջրերի շրջանը, որտեղ բնական վիճակում լողանք էին ընդունում հոդացավերով տառապող տեղացի և եկվոր հիվանդները։

# ԴԻԱՐԲԵՔԻՐ

Պատմական Հայաստանի հարավարևմտյան ծայրաշրջանում գտնվող Դիարբեքիր քաղաքը հնագույն ու հին աղբյուրներում հիշատակվում է Ամիդ, Ամիդա, Ամիդու, Ամիթ անուններով և դրանց բազմաթիվ այլ տարբերակներով։ Սեպագիր արձանագրություններում կոչված է նաև Բիտ-Զամանի երկրի անունով, որտեղ գտնվում էր այն և բավական ժամանակ եղել էր վերջինիս կենտրոնը։

Քաղաքի Դիարբեքիր անունը համեմատաբար նոր է և ունի արաբական ծագում։ Ընդ որում, սկզբում Դիարբեքիր էր կոչվում միայն վարչատարածքային միավորը՝ երկրամասը, գավառը, իսկ հետագայում ժողովուրդն այդ անունը տարածել է նաև նրա կենտրոն Ամիդի վրա՝ վերջինս նույնպես կոչելով Դիարբեքիր։

Իբրև նոր անուն Դիարբեքիրը համեմատաբար ճիշտ է ստուգաբանվել։ Բայց և այնպես դրա մասին եղած ստուգաբանությունները հաճախ իրարից բավական տարբերվում են։ Այսպես, ոմանք գրում են, որ Դիարբեքիրը կազմված է արաբերեն «դիար»-ի («երկիր, «նահանգ», «շրջան», «բնակվելու տեղ») և նրա առաջին կառավարիչներից մեկի՝ Բեքրի անվան միացումից։ Ուրիշները գրում են, թե իբր օսմանական տիրապետության շրջանում այս նահանգը բավական երկար ժամանակ մնացել էր անմշակ, այսինքն՝ «կույս», որից էլ իբր անունը կոչվել է «Դիար բեքիր», այսինքն «երկիր կույսի» նկատի ունենալով, որ «բեքիր» արաբերեն նշանակում է «կույս»։ Ամենից ընդունելին այն վարկածն է, ըստ որի Դիարբեքիրը ծագել է արաբական «դար»-ի («բնակության տեղ», «գավառ» և այլն) հոգնակի ձևի՝ «դիար»-ի և «բեկր կամ բակր» արաբական ցեղանվան զուգորդությունից՝ արաբերեն տառադարձությամբ կոչվելով Դիարբակր, որը թուրքերենում դարձել է Դիարբեքիր։

Դիարբեքիրը գտնվում է Արևմտյան Տիգրիսի աջ ափին, Հայկական Տավրոսի ճյուղերից մեկի փեշերին, որոնք, շարունակվելով ավելի հարավ, ձուլվում են գետի հովտում փռված հարթության հետ։ Քաղաքի մոտից սրընթաց Տիգրիսը, թողնելով հյուսիսից հարավ ուղղությունը, շրջվում է դեպի արևելք, և, մինչև իր մեջ Արևելյան Տիգրիսն ընդունելը, հոսում է այդ ուղղությամբ։

Դիարբեքիրի շուրջը տարածվում են համանուն գավառի արգավանդ դաշտերը, որոնք հնուց ի վեր հայտնի են եղել իրենց ցորենով, բամբակով, տեսակ-տեսակ խաղողով, մրգեղենով։ Այստեղ մշակում են նաև ծխախոտ, զբաղվում մեղվաբուծությամբ։ Հռչակված է մանավանդ իր սեխով։ Կան աղահանքեր։ Քաղաքում բխում են աղբյուրներ, կան ջրհորներ՝ հազիվ մեկ—մեկուկես մետր խորությամբ։

Դիարբեքիրն իր բազմադարյա պատմության ընթացքում գրեթե մշտապես եղել է տարբեր կարգի վարչաքաղաքական միավորների՝ կուսակալությունների, իշխանությունների, էմիրությունների կենտրոն։ Հնագույն ժամանակներում այն սեպագիր արձանագրություններում հիշատակվող Բիտ-Զամանի երկրամասի կենտրոնն էր, որ բավական ժամանակ դարձել էր ասուրա-ուրարտական պայքարի ասպարեզներից մեկը, հետագայում՝ Սոփքի հայկական իշխանության կենտրոնը, ապա՝ Մեծ Հայքի Չորրորդ Հայք աշխարհի գլխավոր քաղաքներից մեկը։ Դիարբեքիրը վարչական կենտրոն և կարևոր բերդաքաղաք էր նաև արաբական տիրապետության շրջանում (VII—IX դդ.) ու հետագա ժամանակներում՝ լինելով տարբեր տարածք ընդգրկող էմիրությունների իշխանանիստը։ Թուրքական տիրապետության շրջանում ևս Դիարբեքիրը միշտ եղել է և է իբրև վարչական կենտրոն՝ կուսակալության, վիլայեթի կառավարիչների աթոռանիստ։

Դիարբեքիրի մասին մեզ հասած տեղեկությունները բազմազան են։ Նրա վերաբերյալ հիշատակություններ կան ասուրական ու ուրարտական սեպագիր արձանագրություններում, հայ պատմագիրների (Մովսես Խորենացի, Ղազար Փարպեցի, Սեբեոս, Մատթեոս Ուռհայեցի), բյուզանդական, վրաց ու արաբական հեղինակների, եվրոպական ճանապարհորդների և այլոց մոտ։ Այնուամենայնիվ, Դիարբեքիրի հիմնադրման ժամանակն ու հանգամանքները մնում են անորոշ։ Այն առաջին անգամ Ամիդու անունով հիշատակվում է մ. թ. ա. երկրորդ հազարամյակի վերջերին։ IX—VIII դարերում (մ. թ. ա.), նույն սեպագիր արձանագրությունների հաղորդած տեղեկությունների համաձայն, Ամիդ-Դիարբեքիրը եղել է ուրարտական Բիտ-Զամանի կոչված երկրամասի՝ իշխանության կենտրոնը, որից հետո անցել է Ասորեստանին, իսկ վերջինիս ան-

կումից հետո (մ. թ. ա. VII դարի վերջ) վերստին մտել Հայաստանի կազմի մեջ։

Սկսած այդ ժամանակներից, ավելի քան 600 տարի, Ամիդ-Դիարբեքիրը մնում էր հայկական պետության կազմում։ Ըստ Մովսես Խորենացու, քաղաքի ամրությունները կառուցել է Հայկազունի կամ Երվանդունի Տիգրանը մ. թ. ա. VI դարի կեսերին։ Այդ պատճառով էլ հայ պատմագրության մեջ Ամիդը հիշատակվում է նաև Տիգրանակերտ անունով, որը հաճախ շփոթել են Տիգրան Բ-ի կառուցած (70-ական թթ. մ. թ. ա.) Հայոց հայտնի մայրաքաղաքի՝ Աղձնիքի Տիգրանակերտի հետ։ Սակայն Տիգրանակերտ-Մարտիրոպոլիսի և Ամիդ-Դիարբեքիրի շփոթության պատճառը միայն այդ չէր։ Բանն այն է, որ VI դարում բյուզանդական կայսրեր Հուստինիանոսը (527—565) և Մորիկը (նույն դարի վերջերին) Հայաստանի հարավարևմտյան մասից ու Վերին Միջագետքից կազմել էին երկու պրովինցիա, որոնք երկուսն էլ կոչվում էին Չորրորդ Հայք։ Դրանցից մեկի՝ Հուստինիանոսի ստեղծած Չորրորդ Հայքի կենտրոնը Տիգրանակերտ-Մարտիրոպոլիսն էր, իսկ Մորիկինը՝ Ամիդ-Դիարբեքիրը։ Այդ հանգամանքը նույնպես պատճառ է դարձել Տիգրան Բ-ի մայրաքաղաքի ու Ամիդի նույնացման համար։ Տիգրանակերտ մայրաքաղաքի դիրքը վերջնականապես ճշտվել է մեր դարի առաջին կեսում գերմանացի գիտնական Լեման Հաուպտի կողմից և այն ոչ մի առնչություն չունի Հայկազունի Տիգրանին վերագրվող մյուս Տիգրանակերտի՝ Ամիդ-Դիարբեքիրի հետ։

Ամիդ-Դիարբեքիրը հզոր բերդաքաղաք էր, Վերին կամ Հայոց Միջագետքի գլխավոր բանալին։ Մասամբ այդ էր պատճառը, որ այն պարբերաբար դառնում էր խոշոր պետությունների պայքարի առարկա։ I դարի 30-ական թվականներից, պարթևների ու հռոմեացիների միջև կնքված համաձայնագրով, Ամիդը Հայաստանից անջատվում ու միացվում է Ադիաբենին, իսկ հետագայում, III դարի վերջերին, անցնում է Հռոմեական կայսրությանը, որը IV դարում այն վերակառուցելով ու ավելի ամրացնելով դարձրել էր ամուր ռազմակայան ընդդեմ սասանյան Պարսկաստանի։ Սակայն դրանով Ամիդի քաղաքական կացությունն ամենևին չի կայունանում։ Նույն դարի 60-ական թվականներին Պարսից Շապուհ 2-րդ արքան գրավում է Ամիդը մոտ երկուս ու կես ամիս պաշարելուց հետո։ Դրա-

նից հետո քաղաքը փոխնեփոխ ընկել է բյուզանդացիների, արաբների, սելջուկ-թուրքերի, թուրքմենական ցեղերի ու այլոց տիրապետության տակ, իսկ 1515-ին նվաճվել օսմանյան թուրքերի կողմից։

Միջին դարերում Ամիդ-Դիարբեքիրը եղել է մարդաշատ քաղաք, սակայն նրա այդ ժամանակվա բնակչության քանակի վերաբերյալ չկան արժանահավատ վկայություններ։ Հայտնի է միայն, որ բնակչության մեծ մասը կազմում էին հայերը։ Այստեղ ապրում էին նաև արաբներ, քրդեր, թուրքական ժողովուրդներ։

Դիարբեքիրի բնակչության թվի վերաբերյալ ստույգ տվյալներ չկային նաև XIX դարում և XX-ի առաջին կեսին։ Թուրքիայի պակասավոր վիճակագրության տվյալները հակասական են և հնարավորություն չեն տալիս որոշել նրա բնակչության ճշգրիտ քանակն ու ազգային կազմը։ Այնուամենայնիվ, եղած աղբյուրների հիման վրա կարելի է կռահել, որ Դիարբեքիրը XIX գ. վերջերին և XX դարի սկզբներին ունեցել է 45—50 հազար բնակիչ, որից շուրջ 10—15 հազարը՝ հայեր։ Նրանք թուրքական ջարդարարների կողմից առաջին անգամ հարձակման են ենթարկվել 1895-ին։ Համիդյան ցեղասպանները միայն առաջին 3 օրում քաղաքում ոչնչացրել են 3000 մարդ, հրկիզել 2000 տուն և հարյուրավոր խանութ ու կրպակ։ Համիդյան ջարդերից մի կերպ փրկված թվով շուրջ 5000 հայերը բնաջնջվեցին երիտթուրքերի ձեռքով 1915-ին՝ մեծ եղեռնի օրերին։ Եվ այդ ժամանակներից Դիարբեքիրը զրկվել է հայ բնակչության հիմնական զանգվածներից։

Ականատեսները վկայում են, որ դիարբեքիրցի հայերը ընդհանրապես կենսուրախ էին, սիրում էին ուխտագնացություններ, խնջույքներ, զբոսանքներ, որոնք սովորաբար ուղեկցվում էին երգ ու պարով։

Հնագույն ժամանակներից ի վեր Ամիդ-Դիարբեքիրը առևտրատնտեսական լայն կապերով կապված էր Արևելքի և Արևմուտքի երկրների հետ։ Այստեղով էր անցնում Պարսից Դարեհ 1-ինի ժամանակ կառուցված «արքայական ճանապարհը», որ բանուկ էր մնացել նաև հետագա ժամանակներում, այստեղով են անցնում մեր դարի սկզբներին անցկացված Բաղդադի երկաթուղին (որի կառուցման համար հարկադիր աշխատանքի քշված հազարավոր տարագիր հայեր զոհվեցին զա-

ժան պայմանների հետևանքով) և հարբերդ—Դիարբեքիր բարեկարգ ճանապարհը, որ խճապատվել է դեռևս անցյալ դարի 70—80-ական թվականներին, այնպես որ, Դիարբեքիրը XIX դ. երկրորդ կեսին և հաջորդ դարի սկզբներին առևտրի խոշոր կենտրոն էր։ Քաղաքում կային մի քանի շուկա-հրապարակներ և հարյուրավոր կրպակներ ու խանութներ։ Այստեղ առևտուր էր կատարվում և ներքին (գերազանցապես գյուղատնտեսական մթերքներով ու արհեստավորական արտադրանքներով) և ներմուծովի ապրանքներով։

Քաղաքի տնտեսական կյանքում, այնուամենայնիվ, առաջին տեղը գրավում էր ոչ թե առևտուրը, այլ արհեստագործությունը։ Մերձավոր արևելքում Դիարբեքիրը հռչակված էր իր ոսկերիչների, ջուլհակների, կոշկակարների, մետաքսագործների, դերձակների արտադրած ապրանքներով։ Որոշ արհեստագործությունների գծով քաղաքում առաջացել էին համեմատաբար խոշոր, նախակապիտալիստական ձեռնարկություններ՝ մանուֆակտուրային տիպի, որոնք իրենց մեջ միավորում էին բավական թվով աշխատողներ։ Դիարբեքիրից արտահանվող ապրանքների մեջ իրենց ծավալով ու որակով հատկապես հայտնի էին մետաքսյա ու բամբակյա գործվածքները։

Քաղաքի համար էական նշանակություն ուներ լեռնահանքային արդյունաբերությունը, որի մեջ աշխատում էին հարյուրավոր բանվորներ։ Նրանք շրջակայքում գտնվող հանքավայրերից արդյունահանում ու արտահանում էին անագ, պղինձ և երկաթ։

Դիարբեքիրի բնակիչների մյուս զբաղմունքներից էին երկրագործությունը, բանջարաբուծությունը, այգեգործությունը և մասամբ անասնապահությունը։ Առանձնապես հռչակված էին նրա սեխը, խաղողն ու պտուղները։ Որոշ թվով մարդիկ Տիգրիսում զբաղվում էին ձկնորսությամբ։

Դարերի ընթացքում Դիարբեքիրում կերտվել են տարբեր կարգի կառուցվածքներ ու ճարտարապետական կոթողներ՝ սկսած աղբատ, կավաշեն կամ աղյուսակերտ խրճիթներից մինչև պալատները, պաշտպանական ամրությունները և եկեղեցիներն ու մզկիթները։

Քաղաքի հնագույն բերդն ամբողջությամբ ավերված է և նրա մնացորդները հազիվ են նշմարվում։ Հետազոտյում, մասամբ թուրքական տիրապետության օրոք, մասամբ դրան նա-

*խորդած դարերում կառուցվել են Դիարբեքիրի մինչև օրս հիմնականում կանգուն մնացած ամրությունները։ Քաղաքի պաշտպանական պարիսպը կառուցված է անշաղախ հսկա քարերից, որոնք ագուցված են իրար մեջ, ունի 8 կմ երկարություն, 10 մ բարձրություն և 5 մետր լայնություն։ Աշտարակների թիվը հասնում է 72-ի՝ խորհրդանշելով Քրիստոսի 72 աշակերտներին։ Դրանցից 12-ը առավել հաստապատ էին ու ավելի բարձր՝ խորհրդանշելով 12 առաքյալներին։ Աշտարակները կրկնահարկ էին։ Դրանց ստորին հարկերը ծառայել են որպես մթերանոցներ ու զինանոցներ, իսկ վերին հարկերը՝ զորանոցներ։ Պարիսպն ունի մետաղակուռ չորս դարպասներ, որոնք նայում են դեպի հորիզոնի չորս կողմերը։ Դրանցից հյուսիսայինը միջին դարերում կոչվել է Հայոց դուռ (արաբերեն բաբ-ալ-Արմանի), ավելի ուշ՝ նաև Լեռնի դուռ, Կարնո կամ Էրզրումի դուռ, արևմտյանը՝ Հոռոմոց (բյուզանդացիների) դուռ, հարավայինը՝ Մերգինի (Մարդինի) դուռ, իսկ արևելյանը՝ Նոր դուռ կամ Շաթ (արաբերեն՝ «գետի») դուռ։*

*Միջնաբերդը տեղադրված էր քաղաքի հյուսիսարևելյան մասում, բարձր ժայռի վրա։ Այն շրջապատված էր քառադուռ ու աշտակավոր դարպասով և համարվում էր փաշայի նստավայրը։ Միջնաբերդում էին գտնվում [illegible] պալատը՝ փաշայի ողջակը, պարիսպներով, շատրվաններով, կամարակապ հովանոցներով շրջապատված արքունի պալատը և այլ կառույցներ։*

*Բուն քաղաքի հուշարձաններից իրենց ճարտարապետությամբ ու ճոխությամբ աչքի էին ընկնում եկեղեցիներն ու մզկիթները, որոնց ընդհանուր թիվը XIX դարի վերջերին հասնում էր 50-ի։*

*XX դարի սկզբներին Դիարբեքիրի հայկական գործող եկեղեցիները թվով երկուսն էին՝ Ճգախորան ս. Սարգիսը, որն ուներ բազմաթիվ արժեքավոր ձեռագրեր, և յոթնախորան ս. Կիրակոսը։ Կային նաև ասորական և հունական մի քանի եկեղեցիներ։ Գլխավոր մզկիթը՝ Ուլու-ջամին, որ շատ շքեղ շենք է, հնում եկեղեցի էր ս. Աստվածածին անունով՝ հիմնված բյուզանդական Հերակլ կայսեր օրոք՝ 629 թվականին, իսկ հետագայում վերածվել էր մզկիթի։ Քաղաքում տարբեր ժամանակներում մզկիթների էին փոխվել նաև նախկին Կաթողիկե, ս. Գևորգ, ս. Երրորդություն, ս. Հովհաննես և այլ եկեղեցիներ։*

Այդ երևույթը միայն դիարբեքիրյան չէր։ Մեր երկիրը նվաճած մահմեդական տիրակալները՝ արաբական, սելջուկյան, թուրքական նվաճողները, մզկիթ «կառուցելու» «հարմար ու ձեռնտու» միջոց էին համարում սոսկ եկեղեցիների խաչերը մահիկով փոխարինելը։ Այդ եղանակով բազմաթիվ եկեղեցիներ մզկիթների էին վերածվել նաև Դվինում, Անիում, Վանում և Հայաստանի տասնյակ այլ քաղաքներում։

Պատմաճարտարապետական առումով Դիարբեքիրի ուշադրության արժանի մյուս կառույցներից են ընդգետնյա ուղին և Տիգրիսի վրայի կամուրջը։ Ստորգետնյա ուղին սկսվում էր քաղաքի Բուղաղա կոչված շուկայի մոտից և ձգվում մինչև քաղաքից դուրս գտնվող կառափնարանը։ Այս գետնուղին հնադարյան է և նրա կառուցման ճշգրիտ ժամանակը մեզ համար մնում է անորոշ։ Տիգրիսի վրայի կամուրջը, որ բանուկ է մինչև այժմ, ունի 10 կամար։ Դրա վրայով է քաղաքը կապվում Տիգրիսի ձախափնյա շրջանի հետ։

Քաղաքի ամրությունները, տները, եկեղեցիներն ու մզկիթները և մյուս կառույցները շինված են հիմնականում սևավուն որձաքարից, այնպես որ քաղաքի շինությունների ընդհանուր գույնը սև է, որի հետևանքով էլ այն հաճախ կոչվել է Սև Ամիդ («Կարա Ամիդ»)։ Քաղաքում կային նաև կիսաաղյուսաշեն և կավակերտ տներ։

Դիարբեքիրում տները սովորաբար ծածկում էին հարդով և կավահողով։ Քաղաքը խիստ հատակագծման չէր ենթարկված։ Փողոցները ծուռումուռ էին, փոշոտ, նեղ ու անշուք։ Անշուք ու մանր էին նաև հրապարակները։ Քաղաքի խմելու և ոռոգելու ջուրը ստացվում էր ներսի աղբյուրներից, ջրհորներից և շրջակայքում բխող աղբյուրներից ու գետերից։

Դիարբեքիրը հայկական մշակույթի հայտնի կենտրոն էր դեռևս վաղ միջնադարում։ V դարի մատենագիր Ղազար Փարպեցին այստեղ է գրել Վահան Մամիկոնյանին ուղղված իր հայտնի «Թուղթը»։ 1872—1873 թթ. Դիարբեքիրում կար հայկական 6 վարժարան, իսկ XIX դ. վերջին դրանց թիվը արդեն 7 էր, որոնցից երկուսը եկեղեցիներին կից, իսկ մյուս հինգը պատկանում էին Անձնվեր, Հայրենասիրաց, Մեսրովբյան, Պատանյաց և Համազգային ընկերություններին։ Վարժարաններից ոմանք բարձր տիպի էին. դրանցում գրագիտություն տալուց բացի ավանդվում էին նաև ճարտարապետություն, աշխար-

հագրություն, տրամաբանություն, փիլիսոփայություն, երկրաչափություն, երաժշտություն և այլ առարկաներ։

Ժամանակակից Դիարբեքիրը սովորական ասիական նահանգական քաղաք է։ 1960 թվականի մարդահամարի տվյալներով նրա բնակչության քանակը հասնում էր 80645 մարդու, իսկ 1970-ին՝ 149,6 հազարի[13]։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները սակավաթիվ են և համեմատաբար փոքր մասշտաբի։ Այստեղ գործում են սննդի և տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններ, ավտոհավաքման գործարան։ Երկաթուղային կայարան է ու խճուղային մի քանի ճանապարհների հանգույց։ Իսկ իր արտաքին տեսքով, հատակագծամբ ու բարեկարգմամբ այն շատ քիչ է տարբերվում նախորդ ժամանակներում ունեցած վիճակից։

## ԴԻԼՄԱՆ

Արևմտահայ տառադարձությամբ գրվում է Տիլման։ Ենթադրվում է, թե այդ անունը կապված պետք է լինի Հայաստան արշաված՝ «դելմիկներ» ցեղի անվան հետ։ Իրականում այն գյուղաքաղաք է, թեպետ տարբեր հեղինակներ համարել են նաև գյուղ, ավան, կամ իսկական քաղաք։

Գտնվում է Ուրմիա լճից հյուսիս-արևմուտք, մեր դարի սկզբներից սովորական գյուղի վերածված Սալամաստի մոտ, Սալմաստ (Ջուբաչայ) գետի ձախակողմյան Դիլման վտակի վրա, Խոյ քաղաքից 44—45 կմ հարավ-արևմուտք։ Ոմանք ուղղակի նույնացնում են Սալմաստի հետ, որ ճիշտ չէ։ Գյուղաքաղաքը փռված է արգավանդ հարթավայրում, որը հայտնի է իր այգեստաններով։

Դիլմանը Սալմաստ գավառի (մահալի) կենտրոնն է։ Այս գավառի կենտրոնը նախկինում Սալմաստն էր, որն անշքանալով վերածվել է գյուղի և նրան փոխարինել է գյուղաքաղաքի վերածված Դիլմանը։

XX դարի սկզբներին Դիլմանի բնակչության թիվը հասնում էր մոտ 10 հազար մարդու։ Հայերն այստեղ կազմում էին բնակ-

[13] «Турецкая республика», Москва, 1975, էջ 543.

չության 40—50% -ը։ Զբաղվում էին երկրագործությամբ, այգեգործությամբ, անասնապահությամբ, ինչպես նաև արհեստներով ու առևտրով։ Գյուղաքաղաքն ուներ իր շուկա-հրապարակը տասնյակ կրպակներով ու արհեստանոցներով։ Բավական բարեկարգ ճանապարհով կապված էր Թավրիզի և Ուրմիայի հետ։

XIX դարի վերջերին և XX-ի սկզբներին Դիլմանում հաշվվում էր մոտ 800 կավակերտ տուն։ Նրա քաղաքացիական շինություններից շատ թե քիչ աչքի էին ընկնում վարչական շենքերը, որտեղ տեղադրված էին գավառի հիմնարկները։ Այստեղ մեծ հնություն և ճարտարապետական առումով հատուկ հետաքրքրություն ներկայացնող կառույցներ չկային, որովհետև գյուղաքաղաքը նոր էր ձևավորվել։

Հայերը Դիլմանում ունեն երկու եկեղեցի։ Այստեղ XIX դարից գործում է հայկական վարժարանը։

Դիլման աննշան գյուղաքաղաքը հայտնի դարձավ առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ՝ 1915 թվականի ապրիլի 17—18-ին նրա մոտ տեղի ունեցած ճակատամարտի շնորհիվ։ Այդ ճակատամարտը, որ մղվել է թուրքական ու ռուսական զորքերի միջև, ավարտվել է վերջիններիս կատարյալ հաղթանակով և Դիլմանը թուրքական զորքերից ազատագրմամբ։ Ճակատամարտին մասնակցել է նաև զորավար Անդրանիկի հրամանատարությամբ ռուսական բանակում գործող հայկական կամավորական ջոկատը, որն առաջինն է նետվել թուրքերի դեմ մարտի և հերոսաբար կռվել մինչև ռուսական զորքի հիմնական ուժերի վրա հասնելը և նրանց հետ միասին մասնակցել Դիլմանի գրավմանը։ Անդրանիկի և նրա հրամանատարության տակ գործող հայկական ջոկատի հերոսության մասին գովեստով են խոսում ռուսական չորրորդ կորպուսի հրամանատար գեներալ Չեռնոզուբովը, Դիլմանի շրջանում գործող զորքերի ընդհանուր հրամանատար գեներալ Նազարբեկովը և ուրիշ զորահրամանատարներ։ Վերջինս Դիլմանի այդ հայտնի ճակատամարտի «շահող» ուղղակի համարել է զորավար Անդրանիկին։ Թուրքական զորքերի հրամանատար Խալիլ բեյը ճակատամարտում խայտառակ պարտություն կրելուց հետո երկար ժամանակ ռուսական զորքերի կողմից հետապնդվեց, և ձախողվեցին Անդրկովկաս ներխուժելու նրա պլանները։

## ԵՐԱԶԳԱՎՈՐՍ

*Կոչվել է նաև Շիրակավան։ Գտնվում էր այժմյան Բաշ-Շորագյալ գյուղի տեղում։ Եղել է բերդ, ավան, գյուղաքաղաք, քաղաք։ Գտնվում էր Ախուրյան և Կարս գետերի միացման անկյունում, Ախուրյան գետի աջ ափին, Լենինական քաղաքից հարավ-արևմուտք։ Տեղադրված է հարթավայրում։ Ջրառատ է, շրջապատված սևահողային արգավանդ դաշտերով։ Հնում մտնում էր Մեծ Հայքի Այրարատ աշխարհի Շիրակ գավառի, իսկ նոր ժամանակներում՝ Կարսի մարզի Կարսի օկրուգի մեջ։ Շիրակ գավառի հետ միասին Երազգավորսը նույնպես սկզբում՝ III—VIII դարերում, պատկանում էր Կամսարական նախարարական տանը. իսկ դրանից հետո՝ Բագրատունիներին։*

*Հայ մատենագրության մեջ Երազգավորսի մասին առաջին հիշատակությունը վերաբերում է VII դարին։ Սմբատ I Բագրատունի թագավորը (890—914), որ հաջորդել էր Աշոտ 1-ինին, արքայական աթոռը 890 թվականին Բագարանից տեղափոխել է այնտեղ և Երազգավորսը նրա ու Աշոտ 2-րդի (914—928) օրոք՝ 890—928թթ., եղել է Բագրատունիների թագավորության մայրաքաղաքը։ Սկզբում այն հայտնի էր Երազգավորս, իսկ հետագայում՝ Շիրակավան անունով։*

*Երազգավորս-Շիրակավանի մասին վկայություններ ունեն Սեբեոսը, Ստեփանոս Ասողիկը, Սամվել Անեցին և այլ մատենագիրներ։ VII դարում այն սովորական գյուղ էր, իսկ IX դարի վերջերին, մատենագիրների արտահայտությամբ, գյուղաքաղաք, քաղաքագյուղ։ Մայրաքաղաք դառնալուց հետո Երազգավորսը վերածվում է քաղաքի։ Սակայն այն մնում է ֆեոդալական ոչ մեծ քաղաքի շրջանակներում։ Եվ թվում է, թե դրա հիմնական պատճառը ոչ հեռու գտնվող Անիի արագ առաջադիմությունն էր, որ դեպի իրեն էր ձգում Բագրատունիների թագավորության բոլոր թելերը և այն, որ Աշոտ 2-րդի եղբայր Աբասը (928—953) թագավորության աթոռը Երազգավորսից տեղափոխեց Կարս։*

*Երազգավորսն ունեցել է իր բերդը, որը շրջափակված է եղել պաշտպանական պարիսպներով։ Գյուղաքաղաքի ամենահայտնի կառույցը, սակայն, ս. Փրկիչ կամ Ամենափրկիչ տաճարն էր, որ կառուցել էր Սմբատ 1-ինը 897 թվականին և այդ*

եկեղեցում էլ ինքը Գևորգ կաթողիկոսի ձեռքով օծվել Հայոց թագավոր։ Եկեղեցին «բարձր գմբեթով» էր և ամբողջովին կառուցված էր սրբատաշ քարերով։ Տաճարը XX դարի սկզբին կիսակործան էր, իսկ այժմ փաստորեն կանգուն է միայն մի պատը, այն էլ ոչ լրիվ, իսկ մյուս պատերը, տանիքը և գմբեթը վերածվել են ավերակների կույտի։

Երազգավորս-Շիրակավանն էլ Անիի հետ միասին սելջուկների կողմից ենթարկվել էր ավերման։ Այն վերականգնվել էր XII դարի վերջերին և Զաքարյանների օրոք բավական առաջադիմել էր։ Սակայն XIII դարի երկրորդ կեսից նորից է անշքացել և վերածվել սովորական գյուղի, որին հետագայում տվել են Բաշ-Շորագյալ անունը։

Ենթադրվում է, որ Երազգավորս-Շիրակավանում է ծնվել VII դարի հայ խոշոր գիտնական Անանիա Շիրակացին։

Բաշ-Շորագյալը XX դարի սկզբներին խոշոր բնակավայր էր և հաճախ համարվում էր ավան։ Այն հայաբնակ էր և առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին ուներ 1220 բնակիչ, որոնք հիմնականում զբաղվում էին հացահատիկի մշակությամբ և մասամբ անասնապահությամբ։ Կարսի մարզը Թուրքիային անցնելուց հետո՝ Բաշ-Շորագյալի հայ բնակչությունը տեղափոխվեց Սովետական Հայաստան։

## ԵՐԶՆԿԱ

Երզնկան տարբեր ժամանակներում ու տարբեր հեղինակների կողմից հիշատակվում է իբրև ավան, բերդաքաղաք, քաղաք։ Հնում սովորաբար այն կոչվել է Երեզ, Երիզա կամ Երիզավան, իսկ թուրքական տիրապետության շրջանում՝ Երզինգան, Երզինգյան, Երզինջան։ Ոմանք էլ այն նույնացրել են Հուստինիանուպոլսի հետ, որ անընդունելի է։

Երզնկան գտնվում է Արևմտյան Եփրատի միջին հոսանքի շրջանում, Երզնկայի դաշտի արևմուտքում, Գայլի (Երզնկա) գետաբերանի մոտ։ Հնում այն գտնվում էր ուղղակի Եփրատի ափին, իսկ այժմ, երկրաշարժի հետևանքով գետի ողողումներից խուսափելու նպատակով, քաղաքը մոտ 2 կմ «շարժել» են դեպի հյուսիս։ Քաղաքի գրաված տարածքն ու շրջակայքը հարթավայրային է, որի բարձրությունը ծովի մակերևույթից

հասնում է 1300 մ-ի։ Նրա ավերված թաղը անմիջականորեն տարածվում է Եփրատի ափին և տեղացիների կողմից ստացել է Հին քաղաք անունը։ Այս մասում Երզնկայի օդն անմաքուր է, խմելու ջուրը՝ ցածրորակ։ Կլիման բարեխառն է, բայց ամառանն այստեղ սաստիկ շոգ է լինում, որի շնորհիվ այլ մշակույթների հետ միասին հաջողությամբ աճել է նաև բամբակենին։ Ջրառատ քաղաք է և տարեկան ստանում է 700—750 մմ մթնոլորտային տեղումներ։ Շրջակայքում կան հորդաբուխ ջերմուկներ, որոնցով ջեռուցման են ենթարկվել քաղաքի որոշ թաղամասեր։

Երզնկան գտնվում է հաճախակի կրկնվող կործանիչ երկրաշարժերի գոտում։ Այստեղ շուրջ 800 տարվա ընթացքում երկրաշարժերի հետևանքով զոհվել է մի քանի հարյուր հազար մարդ։ Միայն 1045—1784թթ. ընթացքում Երզնկայի դաշտում և համանուն քաղաքում տեղի ունեցած կործանիչ երկրաշարժերի թիվը հասնում է ավելի քան 25-ի։ Այդպիսի ուժգին երկրաշարժեր են տեղի ունեցել 1045, 1165, 1236, 1251, 1254, 1268, 1281, 1458, 1462, 1682, 1784, 1939, 1966 և այլ թվականներին։ Ըստ Կոստանյանցի կազմած Հայկական լեռնաշխարհի երկրաշարժերի ժամանակագրության, 1268թ. երկրաշարժից զոհվել են 15 հազար մարդ, 1458թ.՝ 32 հազար, 1482-ին՝ 30000, 1583թ.՝ 15000 մարդ և այլն։ Ամենաաղետաբեր երկրաշարժերից մեկը 1784թ. հուլիսի 30-ին տեղի ունեցածն էր, որի հետևանքով քաղաքը և նրա շրջակայքում գտնվող 3 գյուղ հիմնահատակ ավերվել են։ Միջնադարյան մեր մատենագիրները, օտար մի քանի ճանապարհորդներ բավական մանրամասն նկարագրել են այդ երկրաշարժերի ընթացքը, պատճառած վնասները, մարդկային հսկայական զոհերը, երկրաշարժերի հետևանքները վերացնելու համար ձեռնարկված աշխատանքները։ Երզնկացիները մի շարք անգամ իրենց հայրենի քաղաքը վերականգնել ու վերաշինել են միանգամայն փլատակներից։

Բազմադարյան հարուստ պատմություն ունի Երզնկան։ Այն առաջին անգամ հիշատակվում է VIII դարի (մ. թ. ա.) սեպագիր արձանագրություններում, իսկ պատմագիրների առաջին վկայությունը վերաբերում է I դարին (մ. թ. ա.), երբ այն ավան էր և կոչվում էր Երեզ կամ Երիզա։

Հելլենիստական շրջանում Երեզ-Երզնկան Հայաստանի կրո-

նական կարևորագույն կենտրոններից մեկն էր։ Այստեղ էր գտնվում հայ հեթանոսական աստվածուհիներից մեկի՝ Անահիտի, գլխավոր տաճարը, որն ուներ ընդարձակ կալվածքներ, հսկայական թվով անասուններ, բազում գանձեր ու թանկագին իրեր, աստվածուհու ոսկեձույլ արձանը, որը հափշտակել ու իբրև ավար Հռոմ է տարել Անտոնիոս զորավարը 30 թ. (մ. թ. ա.)՝ կողոպտելով նաև տաճարի մյուս հարստությունները։ Ավանն ու նրա հեթանոսական տաճարը բազմամարդ էին լինում մանավանդ Նավասարդի տոնին (օգոստոսի առաջին կեսին), երբ Հայոց նոր տարվա տոնակատարություններին մասնակցելու համար այստեղ էին գալիս հազարավոր ուխտավորներ։

Իբրև մշակույթի և հոգևոր կենտրոն Երեզ-Երզնկան մեծ հարված է ստացել IV դարի սկզբներին (մ. թ.), Հայաստանում քրիստոնեությունը պետական կրոնի վերածվելու ժամանակ։ Երկրի տարբեր մասերի հեթանոսական տասնյակ տաճարներ ավերելու հետ միասին վերացրեցին նաև այստեղի Անահիտի մեհյանը, նրա տեղում կառուցելով քրիստոնեական տաճար, որի նույնիսկ տեղն ու հետքերը չեն պահպանվել։

Սկսած այդ ժամանակներից քաղաքի պատմության հիմնական պահերը մեզ արդեն հայտնի են պատմագիրների, ժամանակագիրների ու գրիչների, ճանապարհորդների կատարած հիշատակությունների շնորհիվ։ Նրա մասին տարբեր կարգի վկայություններ ունեն Մովսես Խորենացին, Հովհ. Մամիկոնյանը, Մ. Ուռհայեցին, Վարդան Արևելցին, Կ. Գանձակեցին, Գր. Կամախեցին, Մխիթար Այրիվանեցին, արաբական ու վրացական մի շարք հեղինակներ, արևմտաեվրոպական ճանապարհորդներ։

Հայաստանի 387 թ. բաժանմամբ Երեզ-Երզնկան Արևմտյան Հայաստանի հետ միասին անցնում է Բյուզանդական կայսրությանը։ Երկրի այդ մասի մի շարք քաղաքների ու ավանների հետ միասին Երեզը նույնպես Հուստինիանոս կայսեր (527—565) կողմից վերակառուցվում ու ամրացվում է. կայսրը ավանից ոչ հեռու, նրա հարավարևելյան կողմում, Կարին տանող ճանապարհի վրա, նախկին Ջեմին վայրում հիմնադրում է իր անունը կրող բերդաքաղաքը՝ Հուստինիանուպոլիսը։ X—XI դարերում Երզնկան նույնանուն բավական ընդարձակ իշխանության կենտրոնն էր, Բյուզանդիային ենթակա մի իշխա-

նություն, որը գոյություն է ունեցել մինչև սելջուկ թուրքերի արշավանքներն ու նվաճումները։ 1057թ. սելջուկ թուրքերը գրավում են Երզնկան։ Սակայն դրանից հետո, ընդհուպ մինչև XIII դարի 60—70-ական թվականները, Երզնկան զարգանում և դառնում է նշանակալի քաղաք։ Նրա այդ ժամանակների ծաղկած վիճակի մասին տեղեկություններ են հաղորդում վենետիկցի Մարկո Պոլոն, որը դեպի Չինաստան կատարած իր շատ հայտնի ճանապարհորդության ընթացքում եղել էր նաև Երզնկայում, և արաբ հեղինակ Իբն-Բաթուտան։ Նրանք հաղորդում են, որ Երզնկայի բնակիչների մեծագույն մասը կազմում են հայերը, որ քաղաքն ունի լավ ու բարեկարգ շուկաներ, որ այստեղ արտադրված ապրանքների մեջ ամենահայտնին բամբակե գործվածքներն են, որոնց Մարկո Պոլոն որակում է որպես աշխարհի «ամենալավ բեհեզներ»։

Երզնկան 1243 թ. գրավել են մոնղոլները, իսկ 1394-ին՝ Լենկթեմուրը, որի այստեղ գործադրած դաժանություններն ու բռնությունները հասել էին հրեշավոր չափերի։ 1514-ին Երզնկան ընկել է թուրքական տիրապետության տակ։

Արևմտյան Հայաստանի թուրքական վարչական բաժանմամբ Երզնկան միշտ մտել է Էրզրումի վիլայեթի (նահանգի) մեջ և եղել Երզնկայի սանջակի (գավառի) կենտրոնն ու թուրքական մի մարդաշատ կայազորի տեղադրավայր բերդաքաղաքը։

Երզնկայի բնակչության քանակի, տնտեսական վիճակի, մշակութային կյանքի, կոմունալ պայմանների մասին շատ թե քիչ արժանահավատ տվյալները վերաբերում են նոր ժամանակներին։

Երզնկայի բնակչության ազգային կազմի կտրուկ փոփոխությունները սկսել էին տակավին XIV դարից, մինչ այդ քաղաքի բնակչությունը, ինչպես հաղորդում են Իբն-Բաթուտան և Մարկո Պոլոն, միատարր էր և բաղկացած էր գրեթե միայն հայերից։ Հայերը բացարձակ մեծամասնություն էին կազմում նաև XIX դ. առաջին կեսին. 1830թ. քաղաքի հայ բնակիչների թիվը հասնում էր 15 հազար մարդու։

Ըստ Քինեի տվյալների, Երզնկան 1890-ական թվականներին ունեցել է 23 հազար բնակիչ, որից 15 հազարը թուրքեր, 7500-ը՝ հայեր, իսկ մնացածը հույներ և այլք։ Դրանից մեկ տասնամյակ առաջ՝ 1880-ին քաղաքում հաշվում էին 600 տուն,

որից 4000-ը՝ թուրքական, իսկ 1800-ը՝ հայկական[14]: Նրա բնակչության թիվն առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին հասնում էր մոտ 24 հազար մարդու, որի մեկ երրորդից ավելին կազմում էին հայերը։

Չնայած նպաստավոր պայմանների առկայությանը, Երզնկայում XIX դարում և XX-ի սկզբներին, այնուամենայնիվ, կապիտալիստական որևէ ձեռնարկություն չի առաջացել. Թուրքական կառավարությունը արգելք էր դնում այդ բնագավառում հայ վաճառականների ու ձեռնարկատերերի կատարած յուրաքանչյուր քայլի վրա։ Այսպես, Թուրքական կառավարության հրամանով անմիջապես լուծարքի է ենթարկվել մի հայ վաճառականի հիմնադրած լուցկու ձեռնարկությունը պարզապես միայն այն պատճառով, որ դրա արտադրած լուցկու տուփերի վրա գրված էր «Լուցկիք Հայաստանի» մակնիշը։ Իսկ XIX դարի երկրորդ կեսում քաղաքում գործող կաշեմշակման պետական «գործարանը» ավելի շուտ հասարակ մանուֆակտուրա էր, քան կապիտալիստական ձեռնարկություն։ Այնպես որ Երզնկան նոր ժամանակներում դարձյալ մնում էր արհեստավորական քաղաք, որտեղ ավանդույթի ուժով հնից եկող արհեստների հետ միասին նոր պայմանների ազդեցության տակ առաջացել էին նաև մի քանի նոր արհեստներ։ Արհեստներով գերազանցապես զբաղվում էին հայերը։ Քաղաքում գործող արհեստներից էին մետաքսագործությունը, կտավագործությունը, գերձակությունը, դարբնությունը, պղնձագործությունը, հյուսնությունը, ատաղձագործությունը, քարկոփությունը, ժամագործությունը, կավագործությունը և այլն։ Արհեստավորների թիվը հասնում էր մի քանի հազարի, որոնց ճնշող մասը ընդգրկված էր արհեստավորական եղբայրությունների՝ էսնաֆությունների մեջ։ Գավառում և շրջակայքում առանձնապես հայտնի էր Երզնկայի ջուլհակների արտադրած ամուր և նուրբ «շերտավոր կտավը»։

Իր մեծագույն մասով մանրածախ, բայց աշխույժ բնույթ ուներ Երզնկայի ներքին առևտուրը, որի ապրանքները բաղկացած էին արհեստավորական շինվածքներից, գյուղատնտեսական մթերքներից և ներմուծովի որոշ ապրանքներից։ Զգալի նշանակություն ուներ նաև քաղաքի արտաքին ու տարանցիկ

[14] «Մշակ» լրագիր, Թիֆլիս, 1895, № 145։

առևտուրը։ Ինչպես ասվեց, դարեր շարունակ Երզնկան գտնըվում էր քարավանային բանուկ ճանապարհների վրա։ Նոր ժամանակներում այստեղով էր անցնում Թավրիզ—Էրզրում—Երզնկա ճանապարհը. քաղաքն առանձին ճանապարհներով կապված էր Տրապիզոնի ու Սեբաստիայի վրայով, Հալեպի հետ։

Երզնկան անբարեկարգ քաղաք էր։ Նրա բոլոր շենքերը աղյուսակերտ, կավակերտ կամ փայտաշեն են, մեծ մասամբ հողածածկ տանիքով։ Փողոցները նեղ են ու ծուռումուռ, փոշոտ ու ցեխոտ։ Քաղաքի կենտրոնում շուկան է, շրջապատված անշուք խանութներով ու արհեստանոցներով։ Համեմատաբար բարեկարգ ու մաքուր են եղել հայկական թաղերը, որոնց թիվը չորսն էր, յուրաքանչյուրն ունենալով իր եկեղեցին։ Դրանց կենտրոնում գտնվում էր «Ժաման» կոչված մեծ հրապարակը։ Բոլոր բակերում կային ջրհորներ, ինչպես և հատուկ ջրմուղով ջուր էր բերված մոտակայքից։

Տարբեր ժամանակներում կործանիչ երկրաշարժերի պատճառով Երզնկայում կառուցված շենքերը՝ եկեղեցիները, քարավանատները և նշանավոր մյուս կոթողները ավերվել ու ջնջվել են երկրի երեսից։ Այդպես է հիմնահատակ կործանվել նաև Անահիտի հնագույն հեթանոսական տաճարի տեղում կառուցված Գրիգոր Լուսավորչի եկեղեցին։ Նոր ժամանակներում, այնուամենայնիվ, Երզնկան ուներ շատ թե քիչ նշանակալի մի շարք կոթողներ՝ հայկական եկեղեցիներ, բաղնիք, ստորերկրյա ջրանցքներ, բերդ, վարչական շենքեր, մի քանի մզկիթներ, որոնց մեջ համեմատաբար հայտնի էր Իզզեթ փաշայի կառուցածը։

Հայկական եկեղեցիները թվով հինգն էին՝ ս. Նշան, ս. Երրորդություն, ս. Սարգիս, ս. Փրկիչ և ս. Աստվածածին։ Դրանց մեջ ամենահայտնին ս. Նշանն էր, որն, ըստ ավանդության, հիմնադրել էր Գր. Լուսավորիչը։ Այստեղ է թաղվել Հովհ. Երզնկացին։

Քաղաքացիական շենքերից նշանավոր էր Սերայ կոչված պալատը, որը թուրքական զորահրամանատարի նստավայրն էր։ Պալատի շուրջը գտնվում էին պետական և զինվորական մարմինների շենքերը՝ գանձարանը, զորանոցը, կառավարչությունը, փաշայի ապարանքը, ոստիկանատունը և այլն։

Երզնկայի բերդը գտնվում էր ոչ թե անմիջապես քաղաքում, այլ նրանից արևելք՝ Կարին (Էրզրում) տանող ճանապարհին։

Այն քաղաքի գլխավոր ամրոցն էր, թուրքական բազմամարդ կայազորի զորանոցն ու զինարանը։ Դրա կառուցման մասին ստույգ տեղեկություններ չկան։ Ենթադրվում է, թե այն կառուցել են Իկոնայի սուլթանները XIV—XV դարերում։ Ամրակուռ էր Երզնկայի այդ բերդը։ Այն կառուցված էր կոփածո խոշոր քարերով և շրջափակված աշտարակավոր երեք շարք պարսպով, որի բարձրությունը ավելի քան 9 մետր էր, իսկ հաստությունը՝ մոտ 2,5 մետր։ Մինչև մեր օրերը պահպանվում են պարսպապատերի ներքևի մասերը՝ մինչև 2—2,5 մետր բարձրությամբ։

Երզնկան հայ մշակույթի նշանակալի կենտրոններից է։ Այստեղ XIII—XVII դարերում ընդօրինակվել են բազմաթիվ ձեռագրեր՝ ավետարաններ, գանձարաններ, մաշտոցներ, հայսմավուրք, շարակնոց, Գրիգոր Տաթևացու «Քարոզածոյ մեկնութիւն Մատթէոսի Աւետարանին» աշխատությունը և այլն։

Երզնկայից ոչ հեռու, Սեպուհ լեռան ստորոտին կառուցված Ավագ և Կապոսի վանքերին կից XIV—XV դարերում գործում էին դպրոցներ, որտեղ դասավանդել են նաև Գևորգ Երզընկացին ու Հովհաննես Համշենցին։ Այդ դպրոցներում սովորողների զգալի մասը Երզնկայի պատանիներից էր։ Սակայն քաղաքի դպրոցական կյանքը իր իսկական հունի մեջ է մտնում նոր ժամանակներում՝ XIX դարում և XX-ի սկզբներին։ Այսպես, եթե 1850 թվականին քաղաքում գործում էր հայկական միայն մեկ վարժարան, 1872—1873 թթ.՝ տանազան կարգի 5 դպրոց, ապա 1886-ին դրանց թիվը հասնում էր 8-ի՝ ունենալով 1590—1600 տղա ու աղջիկ աշակերտներ։ Տարբեր ժամանակներում գործած նրա դպրոցներից էին ս. Նշանա վարժարանը, ս. Լուսավորչի, ս. Փրկչյան, ս. Սարգսի, Քրիստինյան դպրոցներն ու վարժարանները, Ներսես Հայրապետի գիշերօթիկը, Ընկերական, Կենտրոնական, Եղնիկյան, Աղամյան վարժարանները։ XX դարի սկզբներին քաղաքի երկսեռ վարժարանների թիվը հասնում էր 10—12-ի։ Այդ ժամանակներում քաղաքում կար նաև մանկապարտեզ՝ 250—300 երեխաներով։ ՀՍՍՀ պետական կենտրոնական արխիվի տվյալներով (ֆ. 57, գ. 742), 1914 թվականին, պատերազմից առաջ, Երզնկան ունեցել է 3 գրադարան, 4 ընթերցարան, 1 ինքնագործ թատրոն՝ 25 դերասաններով, 3 դեղատուն, 2 բաղնիք, 3 բժիշկ և 3 դեղագործ, 2500 աշակերտ և 100 ուսուցիչ-ուսուցչուհիներ։ Այստեղ գործում

էր Հայկական բարեգործական ընկերության մասնաճյուղը, 1909—1911թթ. լույս էր տեսնում «Արգի» շաբաթաթերթը, իսկ 1910—1911-ին՝ «Արոր» ամսագիրը։ Քաղաքում գործում էին նաև թուրքական դպրոցներ, ինչպես և զինվորական ուսումնարան։

Երզնկայում են ծնվել Կոստանդին, Հովհաննես և Մարտիրոս Երզնկացիները, XV դարի գրիչ Ամիր Դավիթը, XVII դարի հայտնի գրիչ և տաղասաց Ամիրաս Երզնկացին և ուրիշներ։

Երզնկայի հայ բնակչության մի մասը Աբդուլ Համիդի (1895թ.) և երիտթուրքերի (1915—1916թթ.) կազմակերպած ջարդերի հետևանքով ոչնչացավ, իսկ մի կերպ փրկվածները տարբեր եղանակներով գաղթեցին զանազան կողմեր։ Վերջիններիս մի խումբը բնակություն է հաստատել Սովետական Հայաստանում, իսկ մի այլ խումբ՝ ԱՄՆ-ի Դետրոյտ քաղաքում։

Ներկայումս Երզնկայի բնակչությունը հասնում է մոտ 60 հազար մարդու և գրեթե ամբողջապես բաղկացած է թուրքերից։ Վիլայեթի կենտրոն է, որտեղ գործում են տեղական նշանակություն ունեցող թեթև ու սննդի արդյունաբերության մի քանի ձեռնարկություններ։

## ԶԱՐԵՀԱՎԱՆ

Ավելի հաճախ հիշատակվում է ոչ թե իբրև քաղաք, այլ՝ ավան, բայց իրականում այն բավական մարդաշատ քաղաք էր և գտնվում էր Մեծ Հայքի Այրարատյան աշխարհի Ծաղկոտն գավառում, լինելով վերջինիս կենտրոնը։ Ոմանք նույնացնում են Դիադին գյուղաքաղաքի հետ, որ Ղ. Ալիշանը համարում է անընդունելի և տեղադրում հետագայի Զուչան գյուղի տեղում։

Զարեհավանը գտնվում էր Դիադինից ոչ հեռու, Արածանիի ակունքի շրջանում, նրա աջ ափին, Բագավանի (Ուչքիլիսե) մոտ, Թավրիզ—Կարին—Տրապիզոն քարավանային բանուկ ճանապարհի վրա (Նպատ լեռան հյուսիսային ստորոտում)։ Նրա մոտակայքում էր գտնվում նաև Անգղ բերդը։ Մի այլ Զարեհավան էլ գտնվում էր նույն Այրարատյան աշխարհի Բասեն գավառում։ Այս վերջինս նույնպես հելլենիստական քաղաք էր, և անունը կապված էր Արտաշես Թագավորի հոր՝ Զարեհի անվան հետ։

Ծաղկոտն գավառի Զարեհավան քաղաքն առաջին անգամ հիշատակել է հույն հայտնի հեղինակ Պտղոմեոսը (II դ.)։ Մեր մատենագրության մեջ նրա մասին առաջին հիշատակությունը վերաբերում է IV դարին՝ կապված Պարսկաստանի արքայից արքա Շապուհի 368—369 թթ. դեպի Հայաստան կատարած ավերիչ արշավանքի հետ։ Պատմիչները վկայում են, որ Շապուհը Հայաստանի մի շարք քաղաքներից, որոնց թվում և Զարեհավանից, հազարավոր հայ ու հրեա գերիներ տարավ Պարսկաստան։ Փավստոս Բուզանդի այդ հիշատակությունից պարզ երևում է, որ Զարեհավանը IV դարում բավական մեծ քաղաք էր։ Այստեղ հայերի հետ միասին բնակվում էին հազարավոր հրեաներ, որոնք Զարեհավան էին տեղափոխված դեռևս Տիգրան Մեծի օրոք (I դ. մ. թ. ա.)՝ Միջերկրածովյան արևելքի հելլենիստական քաղաքներից։ Պատմիչը վկայում է, որ Զարեհավանը ավերելուց հետո, Պարսից շահն այնտեղից բռնությամբ Պարսկաստան է տարել 6 հազար ընտանիք հայ և 8 հազար ընտանիք հրեա։

Հաջորդ դարի կեսերին վերաբերող վկայություններից երևում է, որ Շապուհի արշավանքից հետո Զարեհավանը վերածվել է սովորական գյուղի կամ սակավամարդ ավանի, ինչպիսին այն համարել են և հետագա ժամանակների պատմագիրները՝ Ղազար Փարպեցին, Սեբեոսը, Ստեփանոս Ասողիկը։

Զարեհավանը սերտորեն առնչվում է 450—451 թթ. Վարդանանց պատերազմի հետ։ Սասանյան լծի դեմ ելած ապստամբներն այստեղ Հովսեփ կաթողիկոսի գլխավորությամբ կոտորել են պարսիկ մոգերին, որոնք փորձում էին կանգնեցնել զրադաշտական ատրուշաններ։ Այնուհետև հիշատակվում է 650-ական թվականներին տեղի ունեցած քաղաքական իրադարձությունների հետ կապված։ Այդ մասին եղած բավական ընդարձակ վկայության մեջ Սեբեոսը հաղորդում է, որ արաբները, նեղվելով բյուզանդացիների կողմից, խուսափեցին վերջիններիս հետ ճակատամարտի բռնվելուց. «եկին յանկարծակի և գնացին անցին զգետովն, և չոգան ամրացան ի Զարեհաւանի»։ Իսկ այդ հիշատակությունից ակնհայտ է դառնում, որ Զարեհավանն ամրացված բնակավայր է եղել։

Զարեհավանից էր միջնադարյան Հայաստանի գյուղացիական-աղանդավորական թոնդրակյան հուժկու շարժման առաջնորդ Սմբատ Զարեհավանցին (IX դ.), որն իր գործունեու-

թյունը ծավալել էր Թոնդրակ գյուղում և շարժումն էլ կոչվել է վերջինիս անունով։

Հետագա դարերում Զարեհավանը չնայած չի հիշատակվում, բայց իբրև հայաբնակ ոչ խոշոր գյուղ գոյություն ուներ մինչև XIX դարը, իսկ այդ հարյուրամյակի երկրորդ կեսին այն արդեն ամայի էր, և բնակիչները գաղթել էին զանազան կողմեր։

## ԶԱՐԻՇԱՏ

Հիշատակվում է նաև անվան Սարիսա և Սարասա տարբերակներով։ Հավանաբար գտնվում էր Ալի կամ Աղի կրոնական կենտրոնի տեղում, որի անունով գավառը կոչվեց Աղիհովիտ, իսկ Ալի ավանն էլ Զարիշատ կամ Զարիաշատ՝ Արտաշես 1-ինի հոր՝ Զարեհի անունով։ Հին Հայաստանի հայտնի քաղաքներից էր, իսկ ուշ միջնադարում՝ Թովմա Մեծոփեցին հիշատակում է իբրև գյուղաքաղաք։ Մտնում էր Մեծ Հայքի Տուրուբերան աշխարհի Աղիհովիտ գավառի մեջ։ Հնում, հելլենիստական շրջանի Հայաստանում, Զարիշատը «արքունի քաղաք» էր և համարվում էր Արտաշես 1-ինի հոր՝ Զարեհի տիրույթը։ Աղիհովիտ գավառը հարևան Առբերանիի (որ մտնում էր Վասպուրական աշխարհի մեջ) և Չորրորդ Հայք աշխարհի Հաշտյանք գավառների հետ միասին Արշակունիների թագավորության շրջանում արքայական տան կրտսեր զավակների տիրույթներն էին։ Գահակալական կռիվներից խուսափելու համար վերջիններիս արգելված էր բնակվել մայրաքաղաքների մոտ (Այրարատյան աշխարհի կենտրոնական գավառներում)։ Հետագայում Աղիհովիտ գավառը կրել է տարբեր անուններ՝ Արճեշի, Քաջբերունիքի և այլն։

Գտնվում էր Արածանիի հովտում, Վանա լճի հյուսիսարևմտյան կողմում, ափամերձ շրջանում, Արտաշատ—Տիգրանակերտ հայկական «արքայական ճանապարհի» վրա, նոր ժամանակների Երիշատ գյուղի տեղում։

Զարիշատը Հայաստանի հելլենիստական խոշոր քաղաքներից էր։ Այն հիմնադրվել էր Արտաշես 1-ինի օրոք (II դ. մ. թ. ա.) և բարեկարգվել ու բազմամարդ դարձել Տիգրան 2-րդի ժամանակներում (I դ. մ. թ. ա.) ու հետագա III—IV հարյուրամյակ-

ների ընթացքում։ IV դարի առաջին կեսում (մ. թ.) նրա բնակչության թիվը հասնում էր մի քանի տասնյակ հազարի։ Ըստ Փավստոս Բուզանդի վկայության, Պարսից արքա Շապուհ 2-րդը իր 368—369 թթ. արշավանքի ժամանակ այստեղից Պարսկաստան է բռնագաղթեցրել 24 հազար ընտանիք, իսկ ըստ այլ աղբյուրների, տեղահանվածների թիվը կազմում էր 11 հազար ընտանիք։ Հելլենիստական մյուս քաղաքների նման Զարիշատի բնակչության կազմում հայերից բացի կային նաև հրեաներ (իսկ Տիգրանի օրոք նաև հույներ ու ասորիներ)։ Քաղաքի բնակչության հիմնական զբաղմունքները կազմում էին արհեստներն ու առևտուրը։ Սակայն էական նշանակություն ուներ նաև գյուղատնտեսությունը, որի համար Զարիշատի շրջակայքում կան նպաստավոր պայմաններ։ Գյուղատնտեսությունը քաղաքային զբաղմունքների նկատմամբ կարևոր նշանակություն էր ստացել հետագայում՝ Շապուհ 2-րդի զորքերի կողմից IV դարի 60-ական թվականներին քաղաքն ավերելուց և նրա արհեստավոր ու առևտրական բնակչությունը Պարսկաստան քշելուց հետո։ Սկսած այդ ժամանակներից Զարիշատը անշքանում է՝ վերածվելով սովորական բերդի կամ ամրոցի։ Այն մասնակիորեն վերականգնվել էր Լենկթեմուրի ավերիչ արշավանքներից հետո և XV դարում հիշատակվում է իբրև գյուղաքաղաք։ Սակայն նրա այդ մասնակի բարեկարգ վիճակը երկար չի տևում և թուրք-պարսկական մռայլ տիրապետության շրջանում Զարիշատը վերածվում է փոքրիկ գյուղի։

Մովսես Խորենացին վկայում է, որ Զարիշատում է թաղվել Գնել Արշակունին։ Այստեղ է ծնվել Գրիգոր Տաթևացու հայտնի աշակերտներից մեկը՝ Հովհաննես Քաջբերունի եպիսկոպոսը (1350—1415)։

Աղիովիտի այս Զարիշատը չպետք է շփոթել Վանանդ գավառի նույնանուն քաղաքի հետ։

## ԶԱՐԻՇԱՏ

Հիշատակվում է նաև Զարեհաշատ, Զարոլշատ և թուրքական Արփաչայ անուններով։ Տուրուբերան աշխարհի Աղիովիտ գավառի Զարիշատից տարբերելու համար՝ Մովսես Խորենացին այս Զարիշատը հիշատակում է «Զարիշատ Վանանդայ» ձևով։

Ըստ Ղ. Ալիշանի, Զարիշատը Արտաշեսյանների օրոք եղել է արքայական ամուր դաստակերտ, որ կառուցվել էր Արտաշես Ա-ի օրոք և նրա հոր՝ Զարեհի անունով կոչվել Զարեհաշատ, իսկ հետագայում ձևափոխվելով դարձել Զարիշատ։ Ուշ շրջանի մի ավանդության համաձայն, իբր ոմն արքայադստեր՝ Զարուհու անունով է, որին են վերագրում հին Երվանդակերտ դաստակերտի մոտ եղած բերդի կառուցումը։

Գտնվում էր Կարս քաղաքից հյուսիս, Ախուրյան գետի Զարիշատ և Մեծագետ վտակների միջև, բնականից ունենալով ամուր դիրք։ Շրջակայքում տարածվում են արգավանդ դաշտեր։ Վարչական առումով հնում մտնում էր Մեծ Հայքի Այրարատյան աշխարհի Վանանդ գավառի մեջ, նոր ժամանակներում Էրզրումի նահանգի (վիլայեթ) Կարսի գավառի Զարիշատի գավառակի (կազա) կենտրոնն էր, իսկ Կարսի մարզի կազմակերպումից հետո (1878)՝ Կարսի օկրուգի Զարիշատի ոստիկանական շրջանի կենտրոնը։

IV դարի պարսկական հարձակումներից հետո այս Զարիշատը նույնպես դարեր շարունակ մեր մատենագրության մեջ չի հիշատակվում։ Անուղղակի տվյալների հիման վրա կարելի է կռահել, որ այն անշքացել էր, բայց շարունակում էր իր գոյությունը։ Զարիշատն ուներ իր ամրոցը, որը պարսպապատ էր և գրավում էր մի քառակուսի տարածք։ Այդ ամրոցի ավերակները XX դարի սկզբներին դեռևս նշմարվում էին։ Զարիշատը XIX դարի երկրորդ կեսում ավերված վիճակում էր և երբ 1878թ. Սան Ստեֆանոյի պայմանագրով Կարսի մարզը միացվեց Ռուսաստանին, վաղեմի քաղաքի ավերակների տեղում նոր բնակավայր հաստատեցին ռուս մոլոկանները՝ այն կոչելով Գրենադյորսկոյե։ Մոլոկանների այդ գյուղը XX դ. սկզբին ուներ 63 տուն 344 ռուս բնակիչներով, որոնք, սակայն, 1920 թ. թուրքական հարձակման ժամանակ թուրքերի կողմից բռնությամբ տեղահանվեցին, իսկ ամայացած Զարիշատ-Գրենադյորսկոյեն էլ ամբողջ Կարսի մարզի հետ միասին 1921թ. Մոսկվայի և Կարսի պայմանագրերով նորից անցավ Թուրքիային։

Իգդիր գյուղաքաղաքը, որ հիշատակվում է նաև իբրև սովորական ավան և գյուղ, ամենայն հավանականությամբ համապատասխանում է միջին դարերի Ցոլակերտին։ Սկզբնաղբյուրներում կոչված է նաև Արդյանք, Իղդիր։ Գտնվում է Մասիսից հյուսիս-արևմուտք, Արարատյան դաշտի հարավային մասում, Արաքսի աջ կողմում, Երևանից մոտ 40 կմ հարավ-արևմուտք։ Տեղանքը հարթավայրային է։ Գյուղաքաղաքը շրջապատված է այգիներով ու բարդու պուրակներով։ Կլիման շոգ է, չոր ու փոշառատ, շրջակայքում ճահիճները գրավում են բավական ընդարձակ տարածություն, որոնք ապականում են օդը։ Իգդիր անունով գյուղեր կային նաև Կարսի մարզում, Իրանում (Արդաբիլի մոտ) և այլ տեղերում։

Հնում Իգդիրն իր շրջակայքով Կողբի հետ կազմում էր Մեծ Հայքի Այրարատյան աշխարհի Ճակատք գավառը։ Նոր ժամանակներում հիմնականում այդ նույն գավառի տարածքից էր կազմված Երևանի նահանգի Սուրմալուի գավառը, որի վարչական կենտրոնը Իգդիրն էր։

Իգդիրի մասին սկզբնաղբյուրները համեմատաբար քիչ տեղեկություններ են հաղորդում։ XIV—XV դարերից Իգդիրի շրջակայքում բնակություն էին հաստատել բավական թվով թուրքեր ու քրդեր, որոնք հաճախակի հարձակումներ էին կատարում հայաբնակ այդ գյուղաքաղաքի վրա՝ ավերելով և կողոպտելով այն։ Այնպես որ նրա հայ բնակչությունը դարեր շարունակ ինքնապաշտպանական կռիվներ էր մղում ավարառու հարևանների դեմ։

Իբրև գավառի կենտրոն Իգդիրն ունեցել է իր ամրոցը, որի մասին բավական տեղեկություններ է հաղորդում իսպանական ճանապարհորդ Ռ. Գ. Կլավիխոն։ Նա 1403 թվականին եղել է Իգդիրի ամրոցում և հաղորդում է, որ այդ ժամանակ ամրոցի տերը կին էր։ Հայաստանի 1555 թվականի բաժանմամբ Իգդիրը անցել էր Պարսկաստանին և մինչև 1828 թվականը մնացել էր նրա կազմում։ Թուրքմենչայի պայմանագրով անցել էր Ռուսաստանին և այդ ժամանակներում դեռևս սովորական գյուղ էր։

Իգդիրը թուրքերի կողմից զավթվել է հայ-թուրքական պա-

տերազմի ժամանակ։ 1920 թվականի աշնանը Կարաբեքիր փաշայի զորքերը գրավեցին այն և 1921 թ. Կարսի պայմանագրով Սուրմալուի գավառի հետ միասին, որը երբեք թուրքերին չէր պատկանել, Իգդիրն անցավ թուրքական տիրապետության տակ։ Ներկայումս այն թուրքաբնակ փոքրիկ գյուղաքաղաք է։

Ժամանակակից ընդհանուր մարդահամարների բացակայության հետևանքով, Թուրքիայի և Արևմտյան Հայաստանի մյուս տասնյակ քաղաքների նման Իգդիրի բնակչության ստույգ թիվը նույնպես հայտնի չէ։ XIX դարի և XX-ի սկզբի Իգդիրի բնակչության քանակի վերաբերյալ աղբյուրներում հաղորդվում են հակասական թվեր, որոնց հիման վրա կարելի է ասել հետևյալը։ 1831—32 թթ. Իգդիրն ունեցել է շուրջ 133 ընտանիք 624 հայ բնակիչներով, որոնց մեծ մասը (100 ընտանիք) ըստ Թուրքմենչայի պայմանագրի այստեղ էին գաղթել Խոյից, Սալմաստից, ինչպես և մի փոքր ուշ՝ Բայազետից։ XIX դարի 80-ական թվականների տվյալների համաձայն նրա ընտանիքների թիվը հասնում էր 500-ի, 1906 թ. ուներ ավելի քան 3600 բնակիչ՝ մեծ մասամբ հայեր, իսկ 1914 թվականին՝ շուրջ 10 հազար բնակիչ, որոնց ավելի քան 75 %-ը դարձյալ կազմում էին հայերը, իսկ մնացածը՝ թուրքեր, հույներ և այլք։ Բնակչության զբաղմունքների մեջ առաջնակարգ տեղ էին գրավում գյուղատնտեսական ճյուղերը՝ երկրագործությունը, խաղողագործությունը, պտղաբուծությունը, բամբակագործությունը, որոնց համար Իգդիրն ուներ բարենպաստ պայմաններ՝ տաք կլիմա, արգավանդ հողերով հարթավայրեր, ոռոգելու ջրի պաշարներ։ Սակայն գյուղաքաղաքի բնակչության զգալի մասը զբաղվում էր նաև զանազան արհեստներով ու առևտրով։ Իգդիրի համար վաղուց ի վեր կարևոր նշանակություն ուներ Վանից ու Բայազետից Արարատյան դաշտ տանող ճանապարհը, որը անցնում է Հայկական պար լեռնաշղթայի Օրգովի հովիտ կոչված լեռնանցքով և Իգդիրով դիմում դեպի Արաքսի վրայի Մարգարայի կամուրջը։

Իգդիրում XIX դարի վերջերին և XX-ի սկզբներին գործում էին հայկական երկու վարժարան, մեկը՝ տղաների, իսկ մյուսն՝ օրիորդաց։ Այստեղ են իրենց նախնական կրթությունն ստացել հետագայում նշանավոր դարձած մի շարք գործիչներ։ Իգդիրում են ծնվել հայ ականավոր ակնաբույժ Հայկ Կանայանը (1875—1952), ՀՍՍՀ վաստակավոր բժիշկ, աչքի հիվանդու-

*թյուններ, ամբիոնի հիմնադիրը, հայ հեղափոխական, ռազմական գործիչ՝ հայկական դիվիզիայի հրամանատար Հակոբ Աթոյանը (1894—1937), ՀՍՍՀ վաստակավոր նկարիչ Հակոբ Ազատյանը (1902—1963) և ուրիշներ։*

*Իգդիրն ասիական տիպի գյուղաքաղաք է։ Նրա փողոցները նեղլիկ են, ծուռումուռ, փոշոտ։ Միասնական հատակագծի չի ենթարկված, բայց տներն իրենց բակերում ունեն բանջարանոցներ ու պարտեզներ և իրարից գտնվում են որոշակի հեռավորության վրա։ Ճարտարապետական առումով ուշադրության արժանի կոթողներ չունի։ Ուներ տարբեր ժամանակներում կառուցված հայկական երեք եկեղեցի։ Մինչև XX դարի սկզբները տակավին պահպանվում էին Իգդիրի միջնադարյան բերդի ավերակները, որոնք այժմ հազիվ են նշմարվում։*

## ԽԱՐԲԵՐԴ

*Հիշատակվում է անվան մի շարք տարբերակներով և բազմաթիվ ուրիշ անուններով՝ Քարբերդ, Քարփութ։ Ստեփանոս Ասողիկը կոչում է Կարբերդ, բյուզանդական պատմագիր Կեդրենոսը հիշատակում է Քարպոտե ձևով, արաբ հեղինակները՝ Հիսն Զիադ, իսկ թուրքերը կոչել են Մամուրեթ-ուլ-Ազիզ, Էլյազըզ, Էլյազըգ։ Սովորաբար նույնացնում են հին Հորբերդի հետ։ Անվան ծագման ու իմաստի մասին կան մի քանի կարծիքներ։ Դրանցից մեկի համաձայն Քարբերդ է կոչվել ժայռերով շրջապատված լինելու պատճառով, ըստ մի այլ կարծիքի՝ Խար գյուղի անունից է ծագել և որովհետև սկզբում միայն բերդ էր, ապա կոչվել է Խարբերդ, իսկ մասնագետների մի այլ խումբ գտնում է, որ «խար» մեզ անծանոթ մի հին լեզվով նշանակում է ճանապարհ և բերդն էլ շինված էր ճանապարհին իբրև հանգրվան, այստեղից էլ իբր կոչվել է ճանապարհների քաղաք-բերդ («խար»—«բերդ»)։ Ամենից հավանականը, ըստ երևույթին, այն վարկածն է, որի համաձայն միջնադարյան Հայաստանի այս բերդաքաղաքի անունը համապատասխանում է ասորեստանյան սեպագիր արձանագրություններում հիշատակված Խարտա քաղաքի անվանը։ Հ. Մանանդյանը Խարբերդի տեղում է տեղադրում Հայասա-Ազզի ցեղային միության Ուրա*

ամրոցը, իսկ ուրիշներն, ինչպես ասվեց, այն նույնացնում են հին հայկական Հորեբերդի հետ։

Տարբեր ժամանակներում հիշատակվում է իբրև ամրոց, բերդ, բերդաքաղաք, քաղաք։ Գտնվում է Արածանիի ստորին հոսանքի ձախ կողմում, գետափից 13—14կմ հեռավորություն ունեցող սարավանդի վրա, Մալաթիայից մոտ 70 կմ հյուսիս-արևելք։ Քաղաքից հարավ-արևելք Ծովք (Գյոլչիկ) լճակն է, որտեղից սկիզբ է առնում Տիգրիսի ակունքներից մեկը։ Այդ լճակում գտնվող փոքրիկ կղզյակի վրա միջին դարերում կառուցվել էր կաթողիկոսական դղյակ, որը որոշ ժամանակ իր աթոռանիստն էր դարձրել նաև Ներսես Շնորհալին։

Հնում Խարբերդը մտնում էր Մեծ Հայքի Չորրորդ Հայք աշխարհի Անձիտ կամ Հանձիթ գավառի մեջ։ Նոր ժամանակներում համանուն նահանգի և գավառի կենտրոնն է։

Արևմտյան Հայաստանի մյուս տասնյակ քաղաքների նման Խարբերդի բնակչության թվի վերաբերյալ նույնպես ստույգ տվյալներ չկան։ Այդ է պատճառը, որ տարբեր հեղինակների մոտ նրա ընդհանուր բնակչության և հայերի քանակի վերաբերյալ տրված են հակասական թվեր։ Ըստ դրանցից համեմատաբար ավելի արժանահավատների վկայությունների, քաղաքը XIX դ. սկզբին ունեցել է մոտ 3000 տուն հայ և թուրք բնակիչ, 1830—1850-ական թթ. նրա բնակչության թիվը հասնում էր մոտ 25 հազար մարդու, որից հայեր՝ 15400։ Էփրիկյանի տվյալներով XX դարի սկզբին Խարբերդի բնակչության քանակը մոտ 12200 էր, որից հայեր՝ 6080, իսկ թուրքեր և ուրիշ ազգությունների պատկանողներ՝ 6120 մարդ։ Նախորդ ժամանակների համեմատությամբ հայերի թվի նվազումը բացատրվում է 1895—1896թթ. համիդյան ջարդերով և քաղաքի բնակիչներից շատերի դեպի Ամերիկա կատարած գաղթով։ 1895թ. թուրքերը կողոպտել ու ավերել են Խարբերդի հայկական թաղերը, քանդել այստեղի երկու եկեղեցիները, ուսումնարանները, կոտորել ավելի քան 700 մարդու, որոնց թվում էին տանջամահ արված մի շարք հոգևորականներ, բռնությամբ մահմեդականացրել ավելի քան 1000 հայերի (200 տուն)։

Խարբերդի հայերի գաղթը դեպի Կովկաս մասնակիորեն սկսվել էր տակավին XIX դարի 50-ական թվականներից։ Սակայն զանգվածային արտագաղթն ու բռնի տեղահանությունը

տեղի է ունեցել առաջին համաշխարհային պատերազմի տարիներին՝ 1915 թ. մեծ եղեռնի օրերին։ Այստեղ տարագրությունը սկսվել էր 1915 թ. հունիսի 26-ից։ Այդ նույն թվականի վերջերին, մեծ տեղահանությունից հետո, քաղաքում մնացել էր միայն 2000 հայ բնակիչ, իսկ մեր դարի 60-ական թվականներին՝ 1000։ Խարբերդցիները սփռվել են աշխարհով մեկ։ Նրանց մի զգալի մասն էլ գաղթել ու բնակություն է հաստատել Սովետական Հայաստանում։ Հանրապետության մայրաքաղաք Երևանի հարավարևելյան կողմում 1929 թ. հիմնադրված Նոր Խարբերդ ավանի (որն այժմ վերածվել է քաղաքատիպ ավանի) առաջին բնակիչները հիմնականում խարբերդցիներն էին։

Խարբերդի հայ բնակչությունը զբաղվում էր արհեստներով, առևտրով և, մասամբ, երկրագործությամբ ու այգեգործությամբ։ Արհեստներից զարգացած էին որմնադրությունը, ջուլհակությունն ու մանածագործությունը, ներկարարությունը, կոշկակարությունը, պղնձագործությունը, թիթեղագործությունը։ Առանձնահատուկ նշանակություն էին ստացել մետաքսագործությունն ու գորգագործությունը։ 1881թ. Գրիգոր և Սարգիս Քյուրքճյան եղբայրներն այստեղ հիմնել էին մետաքսի գործարան, որը 1894—96թթ. քարուքանդ էր արվել թուրքական իշխանությունների ձեռքով։ Մետաքսյա գործվածքների հետ միասին քաղաքի ձեռնարկություններն արտադրում էին նաև բամբակյա գործվածքներ, կարմիր կտավ։ Քաղաքի կտավագործական երկու ձեռնարկությունների արտադրանքի զգալի մասն արտահանվում էր Կարին (Էրզրում), Կարահիսար, Դիարբեքիր, Մալաթիա, Բալու և այլ քաղաքներ։ Ավելի զարգացած էր գորգագործությունը։ Խարբերդի գորգագործական ձեռնարկությունների թիվը հասնում էր 8-ի։ Դրանց հիմնադիրը ոմն Գենյանն էր։ Քաղաքի ձեռնարկություններում արտադրված հայկական գորգերը վաճառվում էին զանազան երկրներում և մեծ համբավ ունեին։ Դրանք արտահանվում էին նույնիսկ ԱՄՆ։ 1908թ. Նյու Յորքում բացվել էր Խարբերդի գորգերի հատուկ խանութ, որտեղ դրանք վաճառվում էին մեծ հաջողությամբ։

Քաղաքի ձեռնարկությունների ու արհեստանոցների կարիքները հոգալու և տնային գործածության զանազան շինվածքներ արտադրելու համար 1880 թ. սկզբին Բարիկյան եղբայր-

ներն այստեղ հիմնել էին մեքենաշինական գործարան, որն արտադրում էր ջրհան պոմպեր, գյուղատնտեսական ու արհեստավորական զանազան գործիքներ և տնային գործածության իրեր։

Խարբերդում հավասարապես զարգացած էին և՛ ներքին, և՛ արտաքին առևտուրը։ Նրա ընդարձակ շուկա-հրապարակում և դրա տասնյակ խանութներում ու կրպակներում վաճառվում էին գործվածքներ, գորգեր, գյուղատնտեսական արտադրանքներ, արհեստավորական զանազան շինվածքներ, անասուններ, մրգեր, բամբակ ու հում մետաքս և այլ ապրանքներ։ Խարբերդից արտահանվում էին հաշիշ, մետաքս, ոչխարի մորթի, նուշ, մեղրամոմ, բամբակ, գինի, գորգեր, մետաքսյա ու բամբակյա գործվածքներ և այլ ապրանքներ։ Քաղաքի վաճառականությունը Եվրոպայից ներմուծում էր զանազան մեքենաներ և գործարանային այլ ապրանքներ։ Խարբերդի ներքին և արտաքին առևտրական կապերն աշխույժ բնույթ ունեին մանավանդ XIX դարի վերջին քառորդից մինչև առաջին համաշխարհային պատերազմն ընկած տասնամյակներում։ Դրան նպաստում էին, Խարբերդ-Դիարբեքիր, Խարբերդ—Մալաթիա, Խարբերդ—Կապան—Մադեն, Խարբերդ—Չմշկածագ սայլուղիների բարեկարգումն ու խճապատումը, որ կատարվում էին 1870-ական թվականներից, երբ արդեն ավարտվել էին 15 տարի տևած (1856—1871 թթ.) Տրապիզոն—Բաբերդ—Կարին խճուղու կառուցման աշխատանքները։ Մոտավորապես հենց այդ ժամանակներից ի վեր Խարբերդում, նրա հին բերդի ընդարձակ հրապարակում կազմակերպվում էին տոնավաճառներ։

Քաղաքի շենքերը զանգվածորեն քարակերտ էին, մեծ մասը՝ երկհարկանի։ Կառուցապատումը կատարված էր առանց նախօրոք կազմված որոշակի հատակագծի։ Այդ պատճառով էլ նրա շենքերը խառնիխուռն էին, փողոցները՝ նեղ ու ծուռումուռ։ Համեմատաբար բարեկարգ էին միայն հայկական թաղերը, որոնք էլ երկու անգամ (1895—96 թթ. և 1915 թ.) ավերվել են թուրք ցեղասպանների կողմից։ Ուներ մի քանի բաղնիքներ, որոնք գտնվում էին հակասանիտարական վիճակում։

Խարբերդի հնությունների մեջ մեր կարծիքով ամենից կարևորը բերդն էր, որով քաղաքն այնքան հայտնի էր ամբողջ միջնադարում և մասամբ նոր ժամանակներում։ Բերդը գտնվում

էր Հայկական Տավրոս լեռնահամակարգին պատկանող մի լեռնագագաթի վրա, որի հարավարևելյան կողմը խիստ զառիվեր է և անհրաժեշտություն չի զգացվել այս կողմում կառուցել պարսպապատեր։ Պարսպապատեր էին կառուցել միայն նրա հյուսիսային և արևելյան կողմերից։ Նրա ձևը, շինարարական հնարանքները և ոճը լիովին հայկական են, ուրարտացիներից ժառանգած ճարտարապետական արվեստի նկատելի տարրերով։ Այդ պատճառով էլ ապառաժների վրա կերտված այդ բերդի կառուցումը վերագրում են կամ Ծոփաց նախարարներին ու թագավորներին (II դ. մ. թ. ա.— IV դ. մ.թ.) կամ էլ մեր նախնիներին՝ ուրարտացիներին (880—860 թթ. մ. թ. ա.), առաջիններին համարելով խոր հնից գոյություն ունեցած բերդի սոսկ վերակառուցողներ կամ վերականգնողներ ու վերանորոգողներ։

Այստեղ կան ինքնատիպ կառուցվածքներով քառակուսի սենյակներ, մի քանի ներքնուղիներ, որոնք փորված են բերդի տակ, ժայռի մեջ և տանում են դեպի տարբեր կողմեր։ Մուտքի մոտ դեռևս պահպանվում են պարսպահատվածները, կրկնակի դռներ։ Դռներից մեկը (իսկ բերդն ունեցել է 2 դուռ) մինչև 1915 թ. դեռևս կար։ Աշտարակներից շատերը կործանված են։ Կանգուն են արևելյան պարսպի առանձին հատվածներ և մի աշտարակ։ Կիսակործան վիճակում մեզ են հասել կամարներ, ժայռափոր աստիճաններ, գաղտնի անցքեր, ճանապարհներ։ Բերդը տեղում ջուր չի ունեցել։ Նրա համար ջուրը բերում էին ժայռի ստորոտում բխող աղբյուրներից։

XIX դ. երկրորդ կեսին Խարբերդում կային տարբեր ժամանակներում կառուցված և տարբեր վիճակում գտնվող հայկական 6 եկեղեցի, որոնցից 5-ը լուսավորչական, իսկ մեկը՝ բողոքական։ Առաջինները կրում էին ս. Կարապետ, ս. Հակոբ, ս. Նշան, ս. Ստեփանոս և ս. Սարգիս անունները, իսկ բողոքականների եկեղեցին կոչվում էր ս. Աստվածածին, որին թուրքերը տվել էին Կզըլ-քիլիսա անունը։ Քաղաքում կային նաև մի քանի մզկիթներ։

Արևմտյան Հայաստանի մյուս տասնյակ քաղաքների նման, Խարբերդի պատմությունը ևս հատուկ ուսումնասիրության հարց չի դարձել, եթե նկատի չունենանք տարբեր առիթներով մի

շարք հեղինակների առանձին դիտողություններն ու դատողությունները, որոնք էլ գերազանցապես վերաբերում են միայն նրա քաղաքական պատմության առանձին պահերին։ Մինչդեռ Խարբերդի մասին կան շատ վկայություններ (Մատթեոս Ուռհայեցի, Ստեփանոս Ասողիկ, Միխայիլ Ասորի, Էվլիա Չելեբի և ուրիշներ), որոնք տեղում պահպանված հնությունների հետ միասին կարող են ատաղձ ծառայել նրա պատմությունն ուրվագծելու համար։ Քաղաքական ելևէջներով լեցուն պատմություն է ունեցել Խարբերդը։ 654թ. այն Բյուզանդիայից գրավել են արաբները, 751-ին՝ նորից անցել է Բյուզանդական կայսրությանը, 1057թ. գրավել են սելջուկները, ապա Փիլարտոս հայ իշխանը, XII դ.՝ Բալակ թուրք ամիրան, XV դ.՝ Սկանդար բեկը՝ ավերելով ու կողոպուտի ենթարկելով ամբողջ բազմը, իսկ 1617թ. սուլթան Ահմեդ 3-րդի օրոք ոմն Ջոփան օղլին նորից է ավերում մի կերպ վերականգնված քաղաքն ու նրա շրջակայքի գյուղերը՝ սրի քաշելով ամբողջ բնակչությանը։

Այդ բոլորով հանդերձ, Խարբերդը XIX դարում և XX-ի սկզբներին հայկական մշակույթի զգալի կենտրոններից էր։ Այստեղ եկեղեցիներին կից գործում էին թաղային հինգ կրթարաններ և Սմբատյան երկսեռ վարժարանը, որի աշակերտների թիվը 1872—73-ին հասնում էր 410-ի (340 տղա և 70 աղջիկ)։ Քաղաքի միջնակարգ միակ դպրոցը Եփրատ անունով կոլեջն էր։ Գործում էին մի քանի գիշերօթիկներ, որբանոցներ, ժողովարաններ, առաջնորդարան։

Խարբերդը հայ գրչության նշանակալի կենտրոններից էր։ Այստեղ ընդօրինակված ձեռագրերից մեզ են հասել ավետարաններ, հայսմավուրք, մաշտոց, ճաշոց և այլն։ Միայն XV դարում ընդօրինակվածներից մեզ հայտնի են 6 ձեռագիր։ Դարի գրիչներից է Մինաս դպիրը, իսկ ծաղկողներից՝ Գրիգոր ծաղկողը, որը 1444թ. այստեղ ծաղկել է (նկարազարդել) մի հայսմավուրք։ Քաղաքում XX դարի սկզբներին հրատարակվել են «Եփրատ» ազգային-գրական, գիտական և քաղաքական հանդեսը (1909—1914 թթ.), «Դէտ» աստվածաբանական պատմականգրական երկշաբաթաթերթը (1913—1914թթ.), «Ամենուն համար» կրոնական-բարոյական, գրական շաբաթաթերթը։ Այստեղ են ծնվել հայ մանկավարժ, Եփրատ կոլեջի պրոֆեսոր Ն. Հ.

Թեևլքեճյանը (1864թ.), բանասեր, թատերագիր, մանկավարժ Թ. Վ. Թովմաճանյանը (1864-ին), քանդակագործ Թուրը (Թուրունճյան, 1888թ.), ֆրանսահայ գրող Հ. Ռ. Ջարդարյանը (1892 թ.), Վահե Հայկը և ուրիշ երախտավորներ։

## ԽԼԱԹ

Իր մեծությամբ Խլաթը Վանա լճի եզերքին գտնվող քաղաքների մեջ զիջում էր միայն Վանին։ Այն գտնվում է լճի արևմտյան ափին, բարձրադիր հարթավայրում, որի արևելյան ու արևմտյան մասերով սրընթաց դեպի Վանա լիճ են հոսում մի քանի գետակներ և առվակներ։ Գեղատեսիլ է նրա դիրքը։ Հարավում քաղաքի համայնապատկերն ակնահաճո է դարձնում Վանա լիճը (որ կոչվել է նաև Խլաթի լիճ), իսկ հարավ-արևմուտքում և հյուսիս-արևմուտքում Մշո ու Մանազկերտի դաշտերի փարոսներն են՝ Նեմրութը և Սիփանը, որ այդ կողմերում եզրագծում են քաղաքի հորիզոնը։

Խլաթը Հայաստանի հնագույն բնակավայրերից է և դժվար է ասել, թե այն երբ է հիմնադրվել։ Սկզբում հիշատակվում է որպես ավան, իսկ հետագայում վերածվում է խոշոր քաղաքի, որ ուներ իր ամուր բերդը և համարվում էր Վանա լճի ամենամեծ նավահանգիստը։

Խլաթի մասին շատ տեղեկություններ են հաղորդում հայ և օտար տասնյակ մատենագիրներ՝ Ստեփանոս Ասողիկ, Արիստակես Լաստիվերտցի, Վարդան Արևելցի, Կիրակոս Գանձակեցի, Գրիգոր Խլաթեցի, Մատթեոս Ուռհայեցի, Յակուտ, Իբն ալ-Ասիր, Հովհաննես Սկիլիցես և ուրիշներ։ Արիստակես Լաստիվերտցին այն համարում է Հայաստանի XI դարի խոշորագույն քաղաքներից մեկը, իսկ արաբական հայտնի մատենագիր Յակուտի խոսքերով ասած Խլաթը «ամուր և հռչակավոր քաղաք» էր, «օժտված ամեն տեսակի բարիքներով»։ Առանձնապես մեծ գովեստով են խոսում նրա մասին իբրև նավահանգստի ու ամուր բերդաքաղաքի։ Եվ քաղաքի պաշտպանական պարիսպը սովորաբար կոչել են մեծակառույց, աշտարակավոր, եռադարպաս։

Տարբեր ժամանակների և տարբեր ազգությունների պատ-

կանող հեղինակների մոտ Խլաթը հիշատակվում է այլևայլ անուններով ու նույն անվան տարբերակներով՝ Ալլաբխ, Իխլաթ, և այլն։ Հայկական մատենագրության մեջ հնում երբեմն կոչվել է Բզնունյաց քաղաք (կամ Քաղաք Բզնունյաց), Թուրքերը սովորաբար կոչում են Ախլաթ, որ փոխ են առել արաբներից։ Իսկ արաբների մոտ, ըստ XI դարի արաբական մատենագիր Իբն ալ-Ասիրի, քաղաքը Ախլաթ («խառը») է կոչվել իբր այն պատճառով, որ այդտեղի բնակիչները միատարր չէին և խոսում էին երեք լեզվով՝ արաբերեն, պարսկերեն և հայերեն։

Արշակունիների թագավորության շրջանում (I—V դդ.) և հետագայում, մինչև VIII դարի վերջին քառորդը, Խլաթը պատկանում էր Բզնունի նախարարական տանը և եղել է Բզնունիք գավառի գլխավոր քաղաքը։ Արաբական լծի դեմ ուղղված 773—775 թվականների ապստամբությունից հետո, երբ Հայաստանի մի շարք այլ նախարարական տների հետ մ
Բզնունիները նույնպես կորցնում են իրենց քաղաքական
Բզնունիք գավառն ու նրա կենտրոն Խլաթը VIII դարի
րին կամ հաջորդ դարի սկզբներին անցնում են Տարոնի
րատունիներին, իսկ Սմբատ 1-ին Բագրատունու ժա
(890—914) ընդհանրապես ազատագրվում է արաբներից
րականուցվում է հնից գոյություն ունեցող բերդը։ Մոտա
պես հենց այդ ժամանակներից էլ Հայաստանի մյուս բ
թիվ քաղաքների հետ միասին սկսվում է Խլաթի վերելք
ջանը և X—XI դդ. համեմատաբար կարճ ժամանակամի
այն դառնում է երկրի խոշոր ու մարդաշատ քաղա
մեկը։ Խլաթի զարգացմանը նպաստում էին նավահա
լինելը և Արճեշից դեպի Բաղեշ տանող ճանապարհը։ XI
առաջին կեսին այն դարձել էր արհեստագործության ու ա
րի խոշոր կենտրոն, մի քանի տասնյակ հազար բնակչ
ունեցող քաղաք։ Այդ ժամանակներում քաղաքի անդորրը խ
վում է միայն մեկ անգամ։ 997 թվականին Խլաթի
հարձակվում է Տայքի կյուրապաղատ Դավիթը՝ նպատակ
նալով այն գրավել ու միացնել իր ընդարձակ իշխանու
Սակայն նրա զորքերը քաղաքի պարիսպների տակ կր
խայտառակ պարտություն և հարկադրված նահանջում են
նունայն։

Խլաթի քաղաքական կացությունը XI—XIII դա
ունեցել է զգալի ելևէջներ։ 1000 թվականին Բյուզանդակա

սել 2-րդ կայսեր կողմից քաղաքն Արծրունիներին շնորհվելուց հետո, նրա բնականոն զարգացման ընթացքը շարունակվում է մինչև սելջուկյան XI դարի 70-ական թվականների արշավանքները, երբ այն գրավվում ու ավերվում է վերջիններիս կողմից։ 1110 թվականին Շահարմենները գրավում են Խլաթը և այն դարձնում իրենց ընդարձակ սուլթանության մայրաքաղաքը։ Նրանց տիրապետությունն այստեղ տևում է մինչև XIII դարի 30-ական թվականները՝ մինչև մոնղոլական արշավանքները։ XIII դարի սկզբներին, երբ Հյուսիսային Հայաստանն ազատագրված էր սելջուկյան լծից և Զաքարյան իշխանների գլխավորությամբ այնտեղ կազմված էր մի կիսանկախ, հզոր իշխանություն, նույն իշխանների նախաձեռնությամբ փորձեր են կատարվում ազատագրելու նաև երկրի կենտրոնական մասերը, որոնց թվում և Խլաթն ու դրա շրջակայքը։ Այդ նպատակով Զաքարե և Իվանե Զաքարյանները 1210 թ. հայ-վրացական բանակի գլուխն անցած արշավում են դեպի Վանա լճի եզրերը և Խլաթ։ Սակայն Զաքարյան եղբայրների այդ արշավանքը վերջանում է անհաջողությամբ։ Խլաթը դարձյալ մնում է օտարի լծի տակ, Իվանեն գերվում է սուլթանի կողմից և ազատ է արձակվում միայն Զաքարեի սպառնալիքից հետո։

Խլաթի անկումը սկսվում է XIII դարի 30-ական թվականներից։ Կարելի է ասել քաղաքի համար ճակատագրական նշանակություն են ունեցել Ջալալեդդինի և մոնղոլների նվաճումները։ Ջալալեդդինը 1230 թվականին գրավելով Խլաթը այն ենթարկում է սոսկալի ավերածության։ Դրանից ոչնչով չի տարբերվում մոնղոլական 1245 թվականի նվաճումը, որի հետևանքով նախորդ ավերման հետքերը դեռևս չվերացված, քաղաքը ենթարկվում է հրի ու սրի։ Ջալալեդդինի և մոնղոլների կատարած ավերումների պակասը լրացնում է 1246 թվականին տեղի ունեցած կործանիչ երկրաշարժը, որը փլատակների է վերածում քաղաքի կառույցների մեծ մասը՝ խլելով մեծ թվով մարդկային զոհեր։ Մասամբ դրանք, մասամբ էլ օտարի ծանր տիրապետության հետևանքով երկրում սկսված տնտեսական ու մշակութային կյանքի ընդհանուր անկումը իր հետ անկում է տանում նաև Խլաթը։ XIV—XV դարերում քաղաքը փաստորեն նորից վերածվել էր մի անշուք բնակավայրի, թեպետ մատենագիրները սովորության ուժով այն շարունակում էին կոչել քաղաք։

Խլաթը թուրք-պարսկական XVI—XVII դարերի երկարատև պատերազմների կովախնձորներից մեկն էր։ Առանձնապես ծանր հետևանքներ են ունեցել XVI դարի 40-ական թվականներին իրանական շահ Թահմազի և թուրքական սուլթան Սուլեյման 1-ինի կռիվները, որոնց ընթացքում, 1548 թվականին Խլաթն ահավոր ավերածության է ենթարկվում իրանական զորքի կողմից։ Սուլեյման 1-ինը, քաղաքը վերագրավելուց հետո, վերակառուցում է նրա բերդը, բայց այն կործանիչ հարված էր ստացել և այլևս երբեք չի հասնում իր նախկին վիճակին։

Տարօրինակ է, բայց փաստ է, որ նոր ժամանակների Խլաթի մասին մեր տեղեկությունները աղքատիկ են։ Բավական է ասել, որ նույնիսկ նրա բնակչության թվի վերաբերյալ մեզ հասած տեղեկությունները հեռու են արժանահավատ լինելուց, եթե նկատի ունենանք դրանց աղաղակող տարբերությունները։ Շատ թե քիչ հավանական կարելի է համարել հետևյալ տվյալները։ 1800—1810 թթ. քաղաքն ունեցել է մոտ 7 հազար բնակիչ, որից 5000-ը հայեր, 1850 թ.՝ 5 հազար բնակիչ, որից հայեր՝ 4000, 1891 թվականին՝ 23659, որից հայեր 6609, քրդեր ու թուրքեր՝ 16635, այլք՝ 415 մարդ։ Իսկ մեր դարի 60-ական թվականների վերջերին Խլաթը, որ սովորական գավառական քաղաք է, նույնանուն գավառակի կենտրոնը, ուներ ընդամենը 12 հազար բնակիչ, որոնց մեծագույն մասը կազմում էին քըրդերը։

Նոր ժամանակների Խլաթի բնակիչների զբաղմունքները կազմում էին երկրագործությունը, այգեգործությունը, ձկնորսությունը, առևտուրը, արհեստագործությունը և մասամբ աղի հանույթը։

Պատմական Խլաթի հուշարձաններից պահպանվել են քաղաքի մոտակայքի ժայռերում փորված քարանձավները, ծովեզրին գտնվող պաշտպանական պարսպի մի քանի աշտարակներ. զանազան շենքերի ավերակներ, որոնք հիմնականում գտնվում են Ներքայումս Խարաբա շահար (=«ավերակ քաղաք») կոչված թաղամասում՝ հին Խլաթի տեղում։ Քաղաքի ծայրամասում պահպանված է արաբական ժամանակների ընդարձակ գերեզմանատուն՝ տապանագիր ունեցող հսկա գերեզմանաքարերով։ Ըստ ավանդության, այստեղ թաղվածները հարձակվել էին մեր երկրի վրա և նրանց բոլորին ոչընչացրել է Սասունցի Դավիթը։

Բերդից և դրա պաշտպանական կառույցներից բացի, Խլաթի մյուս հուշարձաններից ուշադրության արժանի են ս. Խաչ և քաղաքից դուրս գտնվող՝ Գամաղիել երբեմնի եպիսկոպոսանիստ եկեղեցիներն ու միակ մզկիթը։

Խլաթը XV դարում չնայած անկման պատկեր էր ներկայացնում, սակայն մնում էր իբրև հայկական մշակույթի նշանակալի կենտրոն։ Առանձնապես հայտնի է նրա գրչության դպրոցը։ Այստեղ XV դարի ընթացքում ընդօրինակված ձեռագրերից մեզ հայտնի է ավելի քան 10-ը, որոնցից 3-ը Աստվածաշունչ, 2-ը՝ ավետարան, 2-ը՝ հայսմավուրք և այլն։ Հայտնի էր հատկապես Կարապետ քահանա գրիչը, որ գործել է XV դ. առաջին կեսին։ Խլաթում է ծնվել Գրիգոր Խլաթեցին (1349—1425), որին XVII դարի հայ գրիչներից մեկն իր հիշատակարանում որակում է իբրև «յոյժ կորովամիտ, հանճարեղ, բանիբուն...»։ Այո, Գրիգոր Խլաթեցին հայ մշակույթի ականավոր դեմքերից է՝ մատենագիր, մանկավարժ, բանաստեղծ, երաժիշտ, հասարակական գործիչ։

## ԽՆՈՒՍ

Այս ոչ մեծ բերդաքաղաքը, որ երբեմն հիշատակվում է Խնուն ձևով, իսկ թուրքերը կոչում են Խնըս-կալե, համարվել է նաև ուղղակի ավան կամ բերդ։ Գտնվում է Արածանիի (Արևելյան Եփրատ) աջակողմյան վտակ Խնուս գետի ափին, Բյուրակնյան լեռների արևելյան ստորոտում, հյուսիսից և հարավից աղեղնաձև ձգվող լեռնաճյուղերով սահմանափակված՝ Խնուսի գոգավորության արևմտյան մասում, ձորահովտում, որի կենտրոնում բարձրանում է քարքարոտ, խիստ զառիվեր լանջերով մի լեռ։ Հենց այդ լեռան վրա էլ հիմնված են Խնուսի ամուր բերդը և նոր ժամանակներում կառուցված թուրքական ս,ահակակետերը։ Դրա ստորոտով հոսում է Խնուսի գետը, քաղաքը բաժանելով երկու մասի, իսկ վերջինս շրջափակող առապարը խիստ թեքությամբ ու պարսպի նման փակում է ազատ մուտքը դեպի քաղաք։ Քաղաքը տեղադրված է զառիթափ լեռնալանջերի վրա, ծովի մակարդակից ունենալով մոտ 1800 մ բարձրություն։ Այն ջրառատ է, առողջարար կլիմայական պայ-

մաններով։ Խնուսի մոտ կան ածխաթթվային հանքային աղբյուր, որտեղ լոգանք էին ընդունում մեծ մասամբ կանայք, շինարարական ընտիր քարի պաշարներ, քարածխի և կերակրի աղի հանքավայրեր։

Հնում Խնուսը Մեծ Հայքի Տուրուբերան աշխարհի Վարաժնունիք գավառի կենտրոնն էր։ Ոմանք այն տեղադրում են նույն աշխարհի Հարք, ոմանք էլ՝ Տվարածատափ (այժմ՝ Կարայազ) գավառում, որ անընդունելի է։ Նոր ժամանակներում Խնուսը էրզրումի նահանգի Խնուսի գավառակի կենտրոնն էր։ Այստեղ էր նստում գավառակի թուրք պաշտոնյան՝ կայմակամը իր ենթականերով։

Խնուսի միջին դարերի բնակչության քանակի մասին ուղղակի տեղեկություններ չկան, իսկ անուղղակի նկարագրություններից երևում է, որ, ընդհանուր առմամբ, այդ ժամանակներում այն բավական խոշոր բնակավայր է եղել։ XIX—XX դարերի բնակչության քանակի վերաբերյալ եղած տվյալները խիստ հակասական են։ Արևմտյան Հայաստանի մյուս քաղաքների հայության քանակը թուրքական պաշտոնական աղբյուրները միտումնավոր պակասեցրել են։ Այդպիսի բնույթ ունեն դրանք նաև Խնուսի բնակչության քանակի վերաբերյալ։ Անհատ հեղինակների հաղորդումներն ավելի արժանահավատ են ու իրականությանը մոտ։ 1800—1830-ական թվականներին Խնուսի բնակչության թիվը հասնում էր 5000 մարդու, որի 80%-ը (4000-ը) կազմում էին հայերը, 1830—1850-ական թվականներին՝ 6000 բնակիչ, որից հայեր՝ 3000։ Հետագա տասնամյակներում թուրքական բռնությունների ու հալածանքների հետևանքով հայերի քանակը գնալով նվազում է՝ 1914 թվականին նրա 8000 բնակիչներից հայեր էին միայն 2000-ը։ 1915 թվականի Մեծ եղեռնի հետևանքով Խնուսի գավառակում բնաջնջվեցին ավելի քան 25000 հայեր։ Բնաջնջվեց նաև Խնուս քաղաքի հայությունը. 1916 թվականին այստեղ մնացել էին միայն 200 հայ բնակիչ։ Խնուսում հայերից բացի բնակվում էին նաև լեզգիներ, քրդեր, թուրքեր։

Խնուսի բնակչության զբաղմունքները կազմում էին երկրագործությունը, անասնապահությունը, հատկապես ձիաբուծությունը, արհեստագործությունն ու առևտուրը։ Հայերի հիմնական զբաղմունքներն արհեստներն ու առևտուրն էին։ Նրա արհեստների նշանակությունը սահմանափակվում էր գավառակի



*Ակն — Համայնապատկերը*



*Ամասիա — Համայնապատկերը*



*Անի—Մայր տաճար*



*Անի—պաշտպանական պարիսպը և Դվինի դուռը*



Անի—Տիգրան Հոնենցի եկեղեցին



*Արաբկիր—տեսարան*



*Արդահան—համայնապատկերը*



*Արդվին — համայնապատկերը*



*Արտանուջ — տեսարան*



*Բագարան—ս. Թեոդորոս եկեղեցին*



*Բայու—տեսարան*



*Բիթլիս—տեսարան*



*Խարբերդ—Վերին Թաղը*



*Դիարբեքիրի բերդը*



*Երազգավորս—ավերակ շենք*



*Խարբերդ—Համայնապատկերը*



*Էրզրում — Համայնապատկերը*



*Խլաթի ավերակները*



Դիարբեքիր—տեսարան



Կարսի պաշտպանական պարիսպները



Կարսի Առաքելոց եկեղեցին



Հասանկալա—Հին բերդն ու ջերմուկը



*Վանի բերդը*



*Վան—Համայնապատկերը*

շրջանակներով։ Ավելի հայտնի էր իր առևտրով։ XX դարի սկզբներին Խնուսը ուներ բավական աշխույժ առևտուր։ Նա առևտրական սերտ հարաբերությունների մեջ էր Էրզրումի, Բիթլիսի և Մուշի հետ։ Քաղաքն ուներ իր շուկան տասնյակ կրպակներով։

Ինչպես ասվեց, քաղաքը համանուն գետով բաժանված էր երկու մասի։ Գետի աջ ափին գտնվում էր բերդը, իսկ ձախ ափին՝ բնակելի տների մեծագույն մասը։ Մի քանի տասնյակ տներ էլ ցրված էին ձորից վերև, մի փոքրիկ հարթավայրում։ Քաղաքի բնակելի տներն, առանց բացառության, տափակ հողածածկ կտուրներով էին։ Փողոցները նեղ էին ու անբարեկարգ։ Ուներ մի քանի բաղնիք։

Խնուսի ամենանշանավոր կառույցը կարելի է համարել նրա բերդը, որի մասին հին հայկական աղբյուրներում տեղեկություններ չեն հաղորդված։ Այն հիշատակված է օտար հեղինակների կողմից։ Առաջին հիշատակությունը կատարել է իտալացի մի ճանապարհորդ (1471—1478թթ.), իսկ մյուս կարևոր վկայությունը պատկանում է թուրք հեղինակ Էվլիա Չելեբիին (1647 թ.)։ Այն կառուցված է Խնուս գետի ձախ ափին բարձրացող անմատչելի լեռան վրա։ Ամուր կառուցվածք էր, քառակուսի ատվերագծով, որի երկարությունը հասնում էր 600 քայլի։ Շրջապատված էր ժայռերով ու պաշտպանական ամրակուռ պարսպով։ Ուներ միայն մեկ դուռ՝ հյուսիսային կողմից։ Բերդի տարածքում զանազան նպատակներով կառուցված պաշտպանական շինվածքներից բացի կային նաև շուկա ու մզկիթ։ Ըստ ոչ արժանահավատ տեղեկությունների, կառուցվել է XV դարում՝ Ուզուն-Հասանի կողմից։ XIX դարի վերջերին Խնուսի այդ բերդը արդեն միանգամայն ավերակ ու ամայի էր։

Բուն քաղաքում կար հայկական երկու եկեղեցի՝ մեկը հնաշեն, իսկ մյուսը՝ նոր։ Դրանցից նշանավորն առաջինն էր՝ ս. Աստվածածին քարաշեն, կամարակապ եկեղեցին, որ գտնըվում էր գետի ափին, մի առանձին ժայռի վրա։ Քաղաքում կար նաև մի անշուք մզկիթ, իսկ գետի վրա բավական ճաշակով կառուցված էր քարաշեն կամուրջ։

Խնուսում դիպվածով գտնվել է փղի ընտանիքին պատկանող նախապատմական մի վիթխարի կենդանու բրածո, որը երկրաբանության մեջ կոչվել է «հայկական փիղ»։

Խնուսի արևելյան կողմում կան զանազան հնություններ։

XIX դարի վերջերին և XX-ի սկզբներին խնուսի մշակութային և ազգային կյանքը բավական եռուն էր։ Այստեղ, ս. Աստվածածին եկեղեցուն կից գործում էր մի վարժարան (որը գոյություն ուներ XIX դ. երկրորդ կեսի սկզբներից և որոշ ժամանակ փակ մնալուց հետո վերաբացվել էր 1909 թվականին) 100-ից ավելի աշակերտներով ու 4 ուսուցչով։ Դպրոցն ուներ նորակառույց, քարաշեն բարեկարգ շենք՝ շինված Միացյալ ընկերության կողմից։ Նույն ընկերությունն էր կառուցել նաև առաջնորդարանը և Որիտասարդաց ակումբը, որը նույնպես ս. Աստվածածին եկեղեցուն կից էր և կարևոր դեր էր խաղում քաղաքի հայ մշակույթի կյանքում։

## ԽՈՋԱԹ

Հնում կոչվել է խոզան։ Թուրքերը գրում են Գոզաթ և Գյուզա ձևերով, իսկ արևմտահայ գրականության մեջ սովորաբար հիշատակվում է խոզադ տարբերակով։ Ոմանց մոտ համարվել է_ավան, գյուղաքաղաք, իսկ ոմանց մոտ էլ՝ քաղաք։

Գտնվում է Դերսիմի արևմտյան մասում, Արածանիի աջակողմյան վտակ Փերիի աջ օժանդակներից մեկի ակունքի շրջանում, խարբերդից մոտ 42 կմ հյուսիս, ջրառատ ու բարձրադիր սարավանդի վրա։ Շրջապատված է խիտ այգիներով, իսկ քաղաքից 2—3 կմ հյուսիս՝ անտառապատ տարածքներ են։ Խճուղային ճանապարհով կապված է խարբերդ քաղաքի, իսկ գյուղամիջյան ճանապարհներով՝ շրջակա բնակավայրերի հետ։ Մտնում էր խարբերդի նահանգի (վիլայեթ) Դերսիմի գավառի (սանջակ) մեջ, իսկ այժմ Խոզաթի նահանգի համանուն գավառի և գավառակի կենտրոնն է։

Մինչև առաջին համաշխարհային պատերազմը խոզաթը հիմնականում հայաբնակ գյուղաքաղաք էր։ Այստեղի հայերի մի մասը տեղացի էր, իսկ մյուս մասը եկել էր խարբերդից, Արաբկիրից, Ակնից, Չմշկածագից։ Առաջին համաշխարհային պատերազմից առաջ քաղաքն ուներ 8640 հայ և 1944 քուրդ բնակիչ։ Հայերն զբաղվում էին առևտրով, արհեստներով, երկրագործությամբ և այգեգործությամբ։ Քրդերի հիմնական զբաղմունքը անասնապահությունն էր։ Գավառից և նրա սահ-

մաններից դուրս հայտնի էին Խոզաթի բուրդը, գորգերը, մըրգերը, հատկապես՝ ընկույզը։ XIX դարի 80-ական թվականներին ուներ մոտ 50 խանութ ու կրպակ, մի քանի տասնյակ արհեստանոցներ, շուկա։ Հայերն ունեին 2 եկեղեցի, որոնցից մեկը փայտաշեն՝ ս. Փրկիչ անունով, իսկ մյուսը՝ քարակերտ ս. Գեվորգ անունով։ Գյուղաքաղաքում գործում էր հայկական ուսումնարանը, որն ուներ 70—80 աշակերտ։ Գյուղաքաղաքի շրջակայքում կան 6 եկեղեցու ավերակներ, որոնք ցույց են տալիս, թե Խոզաթը անցյալում ավելի շեն ու խոշոր է եղել։ Առաջին համաշխարհային պատերազմի ընթացքում մասամբ բնաջնջվեցին և մասամբ էլ բռնի տեղահանվեցին այստեղի հայերը։ Ներկայումս կան միայն մի քանի հայ ընտանիքներ, մնացած բնակչությունը հիմնականում քրդեր են։

## ԽՈՅ

Հնում սովորաբար կոչվել է Հեր, իսկ պարսկերեն՝ Խո՛վախ։ Հիշատակվում է իբրև բերդ, ավան, բերդաքաղաք, քաղաք։

Գտնվում է Ուրմիա լճից հյուսիս, Կոտուր գետի միջին հոսանքի ձախ կողմում, Խոյի այգեվետ և բարեբեր դաշտում։

Մի ժամանակ առանձին խանության, ներկայումս Խոյ համանուն գավառի (մահալի) կենտրոնն է։ Իսկ Խոյ գավառը XIX դարի վերջերին ուներ 8 հայաբնակ գյուղ 308 տնտեսություններով և 1836 բնակիչներով։ Գավառն ուներ 8 եկեղեցի և միայն մեկ վարժարան։ Նրա զուտ հայաբնակ գյուղերից էին Սեյդավարը, Դիզան և Մահլազան։ Խոյի գավառը համապատասխանում է պատմական Պարսկահայք աշխարհի Հեր գավառին։

Խոյ քաղաքը բավական վնասներ է կրել 1791թ. դեկտեմբերի 27-ի Թավրիզի աղետաբեր երկրաշարժից։

Խոյի բնակչության քանակի վերաբերյալ առանձին հեղինակների մոտ և պաշտոնական փաստաթղթերում հաղորդվում են խիստ հակասական տվյալներ։ Մինչև 1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմին հաջորդած ներգաղթը, Խոյ քաղաքի և համանուն գավառի բնակչության մեծամասնությունը կազմում էին հայերը, իսկ այդ ժամանակներում քաղաքն ուներ մոտ 4000 տուն բնակիչ։ Այստեղի հայերը զանգվածորեն գաղ-

թեցին Արևելյան Հայաստան 1828—29 թվականներին։ XIX դարի վերջերին և XX դարի սկզբներին այստեղի հայ բնակչությունը մոտ 115 տուն էր, որոնք ապրում էին քաղաքի բերդից դուրս։

Հայերը հիմնականում զբաղվում էին արհեստներով՝ ոսկերչությամբ, զինագործությամբ, հյուսնությամբ, փականագործությամբ և այլն։ Քաղաքն ուներ իր շուկան՝ տասնյակ կրպակներով ու խանութներով։ Կապված էր Վանի և Թավրիզի հետ։ Ընդարձակ տարածություն էին գրավում այգիները։ Գրեթե չկար որևէ քաղաքացի՝ արհեստավոր կամ առևտրական, որ չունենար իր այգին, պարտեզը, բանջարանոցը։

Ենթադրվում է, որ Խոյը համապատասխանում է Պետինգերյան քարտեզի հին Գորդի ճանապարհային կայանին։ Նրա մասին հիշատակություններ ունեն Թովմա Արծրունին, Վարդան Արևելցին, Ստեփանոս Օրբելյանը, Աբրահամ Երևանցին, վրաց աղբյուրները և այլ հեղինակներ։ Միջին դարերում որոշ ժամանակ Խոյը Արծրունյաց իշխանների մի ճյուղի ոստանն էր, բարգավաճ քաղաք և ամուր բերդ։

Փոված քաղաք է Խոյը։ XIX դարի վերջերին այն արևմուտքից արևելք տարածվում էր 5—6 կմ երկարությամբ։ Ունի ամուր բերդ, որ գտնվում է քաղաքի արևելյան մասում։ Բերդն իր շրջակայքով համարվում է բուն քաղաք՝ կոչվելով Ղալա, իսկ արևմտյան մասը կոչվում է Փոքր մահլա (թաղ)։ Այս վերջինը համարվում էր նրա արվարձանը և բաղկացած է երեք թաղից՝ Վերին կամ Աղայի, Փոս և Ցածր կամ Քոչարաղ։ Արվարձանի այդ երեք թաղերում էլ ապրում են հայերը։

Քաղաքը շրջապատված է երկկարգ հողե բարձր պարիսպներով, որոնց զուգահեռ ներսի և դրսի կողմում ձգվում են խրամներ։ Բուն քաղաքում բնակվում են թուրքեր և պարսիկներ։

Խոյի բերդը կառուցվել է XVII դարում և ամրացվել XIX դարի առաջին քառորդում։ Այստեղ պարսկական թագաժառանգ Աբաս Միրզան դարի սկզբներին մի շարք ամրություններ էր կառուցել տվել ֆրանսիացի ինժեներների ղեկավարությամբ։ 1827 թ. ռուսական զորքը գրավել էր այդ բերդը, բայց Թուրքմենչայի հաշտությամբ (1828թ.) նորից վերադարձվել է Իրանին։

Խոյում բերդի ամրություններից բացի ուշադրության ար-

ժանի են վարչական շենքերը, մզկիթները և եկեղեցիները։ Այստեղ հայերն ունեին երկու եկեղեցի՝ ս. Սարգիսը, որ կառուցվել էր XVIII դարում և հաջորդ դարի վերջերին գտնվում էր խարխուլ վիճակում, և նոր եկեղեցին՝ ս. Աստվածածինը։

Քաղաքից 2—3 կմ հեռավորությամբ, բլրի վրա, կա մի մատուռ։ Հայկական ժողովրդական ավանդության համաձայն փրր հենց այստեղ էլ թաղված է Ավարայրի մեծ հերոսը՝ Վարդան Մամիկոնյանը։

Խոյում ս. Սարգիս եկեղեցուն կից գործում էր մի փոքր, ցածր տիպի ուսումնարան, որ գրագիտություն էր սովորեցնում հայ մանուկներին։ Քաղաքում առաջին համաշխարհային պատերազմի տարիներին կար երկու որբանոց, որտեղ հանգանակությունների միջոցով պահվում էին ծնողներից զրկված հարյուրավոր հայ մանուկներ։

## ԿԱՂԶՎԱՆ

Կաղզվանը երբեմն հիշատակվել և քարտեզների վրա նըշանակվել է Կաղըզվան ու Կաղզման ձևերով։ Վրացական աղբյուրներում սովորաբար կոչված է Աղզևանի։ Հայտնի է նաև Երասխաձորի բերդ անունով։ Ենթադրվում է, որ այն սկզբում հավանաբար կոչվել է Կաղզովան։

Կաղզվանը մերթ հիշատակվում է իբրև գյուղ, ավան, մերթ՝ իբրև բերդ, բերդավան, մերթ էլ՝ գյուղաքաղաք կամ քաղաք։ Գտնվում է Անիի ավերակներից մոտ 22 կմ հարավ-արևմուտք, Արաքսի աջ ափին, Շատակն (կամ Կաղզվան) գետի վրա, որ երբեմն կոչվել է նաև Կապույտ գետ՝ իր այդ անունը հավանաբար ստանալով համանուն բերդի անունից։ Քաղաքը փռված է Բարդող (Թաքալթու) լեռան արևմտյան ստորոտին, հյուսիսից հարավ 4—5 կմ ձգվող բավական բարձրադիր սարավանդի վրա, որի երկու կողմերում ձգվող լեռները կազմում են գեղատեսիլ ամֆիթատրոն։ Բուն քաղաքի բարձրությունը ծովի մակերևույթից մոտ 1500 մ է, իսկ Արաքսի հունից՝ 125 մ։ Գտնվում է երկրաշարժերի գոտում։ Քաղաքն առանձնապես մեծ վնասներ է կրել 1840 թվականի երկրաշարժից, որը, սկսվելով հունիսի 20-ին, ընդհատումներով շա-

րունակվել է մինչև նույն թվականի սեպտեմբերի 28-ը։ Շրջապատված է մրգատու այգիներով։ Բուսականությունը փարթամ է։ Ամբողջ Հայաստանում հայտնի են եղել Արաքսի ափերով արևմուտքից արևելք մի քանի տասնյակ կիլոմետր ձգվող Կաղզվանի ձորի տանձենու այգիները։

Կաղզվանի դիրքը նպաստավոր է ոչ միայն ռազմական, այլև տնտեսական առումով. այն գտնվում է Կարսից Վան տանող ճանապարհի վրա, որը գրեթե մշտապես բանուկ է եղել։ Քաղաքի շրջակայքում կան օգտակար հանածոների և բնական շինանյութերի հանքավայրեր։ Այստեղ կան քարածխի, նավթի, արծաթի, ոսկու, ծծմբի, կերակրի աղի, մարմարի, երկանքաքարի երևակումներ։ Առանձնապես հայտնի են կերակրի աղի հանքերը, որոնք շահագործման են ենթարկվել հնագույն ժամանակներից ի վեր։ Դրանց պարունակած կերակրի աղը շատ մաքուր է և համարվում է Կովկասի հայտնի աղահանքերի շարունակությունը։ Տնայնագործական եղանակով շահագործման են ենթարկվել նաև արծաթի ու ոսկու բովերը, բայց քանի որ ստացված օգուտները նույնիսկ չեն ծածկել հանույթի ու նախնական մշակման ծախսերը, ապա դադարեցրել են դրանց շահագործումը։

Հնում Կաղզվանը մտնում էր Գաբեղյանք (ըստ ոմանց՝ Արշարունիք կամ Երասխաձոր) գավառի մեջ։ Թուրքիայի տիրապետության շրջանում այն Կարսի փաշայության Կաղզվանի սանջակի կենտրոնն էր։ Կարսի մարզը Ռուսաստանին միանալուց հետո (1878—1921)՝ մինչև այն նորից Թուրքիային անցնելը, Կարսի մարզի Կաղզվանի օկրուգի վարչական կենտրոնն էր։

Կաղզվանի տեղում բնակավայր է եղել դեռևս հնագույն ժամանակներից։ Այդ են ապացուցում նրա աղահանքերում հայտնաբերված քարի ու պղնձի գործիքները։ Հայ մատենագիրներից Կաղզվանի մասին կարևոր հիշատակություն է կատարել Ստեփանոս Ասողիկը՝ կապված IX դարի 60-ական թվականների դեպքերի հետ։ Ըստ նրա վկայության, 863 թվականին այստեղ տեղի է ունեցել ճակատամարտ Բագրատունի Աբաս սպարապետի և կայսիկ ցեղի առաջնորդ Սևադայի որդի Շահապի զորքերի միջև։ Ճակատամարտն ավարտվել է Աբասի հաղթանակով. այդ պահից սկսած Բագրատունիները ավելի են ընդլայնել ու ամրացրել Արշարունիքի ու Շիրակի

իրենց տիրույթները։ Կաղզվանի մասին հիշատակություններ ունեն նաև Հովհաննես Դրասխանակերտցի կաթողիկոսը, Մատթեոս Ուռհայեցին, Վարդան Արևելցին, Սմբատ Գունդստաբլը, վրաց հեղինակ Վախուշտին և ուրիշներ։ Թուրք հեղինակներից Կաղզվանի բերդի վերաբերյալ վկայություններ ունեն Էվլիա և Քյաթիբ Չելեբիները, նրա անունը, հիմք ընդունելով ավանդությունը, կապելով պարսից Նուշիրվան արքայի աղջիկներից մեկի անվան հետ, որ չունի պատմական որևէ հիմք։

Ինչպես ասվեց, Կաղզվանի տեղում բնակավայր էր առաջացել հնագույն ժամանակներից։ IX—X դարերում Կաղզվանն արդեն ամրոց էր և բավական մարդաշատ հայկական կայազորի կայան։ Այն իր շրջակայքով մտնում էր Բագրատունիների թագավորության մեջ։ Վերը նշված 863 թվականի ճակատամարտից հետո, այստեղ 1099 թվականին նույնպես տեղի են ունենում մարտեր՝ Գրիգոր կյուրապաղատի և սելջուկյան զորքերի միջև։ Գրիգոր կյուրապաղատը այդ մարտերում ջարդում և Կաղզվանի շրջանից դուրս է շպրտում ավարառու սելջուկներին։ XII դարի վերջերին Կաղզվանը վերջնականապես ազատագրվում է սելջուկյան լծից և միացվում Զաքարյանների իշխանությանը։ Եթե մինչև այդ Կաղզվանը սովորական ամրոց էր իր ավանով, ապա XIII դարի սկզբներին արդեն վերածվել էր գյուղաքաղաքի։ Մոնղոլների և թուրքմենական ցեղերի տիրապետության շրջանում (XIII—XV դդ.) չնայած այն գոյություն ուներ, բայց մեր մատենագրության մեջ չի հիշատակվել։ Կաղզվանը հայ և թուրք հեղինակների մոտ նորից է հիշատակվում XVII դարից։ XVI դարից մինչև 1878 թվականը այն ընդհանուր առմամբ գտնվում էր թուրքական տիրապետության տակ, իսկ դրանից հետո՝ Կարսի մարզի հետ միասին միացված էր ռուսական պետությանը և նորից Թուրքիային է անցել 1921 թվականին։

Կաղզվանի բնակչության, նրա զբաղմունքների, մշակույթի և ներքին կյանքի մասին շատ թե քիչ արժանահավատ տվյալները վերաբերում են նոր ժամանակներին։ Նրա բնակչության մեծագույն մասը կազմում էին հայերը, իսկ մնացածը թուրքեր ու հույներ էին։ XIX դարի սկզբին ուներ շուրջ 500 տուն բնակիչ, 1877-ին՝ 8000 բնակիչ, 1906-ին՝ շուրջ 9400, իսկ առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին՝ ավելի քան 10 հազար բնակիչ, որից 7652-ը՝ հայեր, իսկ 1920-ը՝ թուրքեր

Կաղզվանն առաջին հերթին այգեգործական խոշոր բնակավայր էր։ Նրա բնակիչները գրեթե բոլորն ունեին իրենց պտղատու այգիները, որոնց բերքի զգալի մասը վաճառքի էին հանում տեղի շուկայում։ Գյուղաքաղաքում կար բավական ընդարձակ վաճառանոց և ստեղծված էր վաճառականական հատուկ ակումբ։ Զգալի տեղ ուներ բամբակի ու խաղողի մշակությունը, գինեգործությունը։ Իր նշանակությամբ հաջորդ տեղը գրավում էր արհեստագործությունը՝ ոսկերչությունը, դարբնությունը, կտավագործությունը, ներկարարությունը. դերձակությունը, զինագործությունը, որմնադրությունը։ Այստեղ կերակրի աղի հանույթ է կատարվել հնագույն ժամանակներից։ Նոր ժամանակներում այդ բնագավառում առանձին առաջադիմություն չէր կատարվել։ XIX դարի 80-ական թվականներին յուրաքանչյուր տարվա հանույթը հազիվ էր հասնում 30—31 հազար փթի, չնչին մի քանակություն, որի նշանակությունը դուրս չէր գալիս գավառի սահմաններից։

Միջին դարերում Կաղզվանի համար մշակութային առումով կարևոր նշանակություն ուներ Կամրջաձորի դպրոցը, որ հիմնադրված էր X դարում։ Այդ դպրոցում մեծ հռչակ էին ձեռք բերել Սամվել Կամրջաձորեցին և Ստեփանոս Ասողիկ պատմագիրը։ Նոր ժամանակներում՝ XIX դարում և XX-ի սկզբներին Կաղզվանում գործում էին հայկական երկսեռ երկու դպրոցներ ու մեկ ռուսական տարրական դպրոց։

Կաղզվանն իր կառուցվածքով հար ու նման էր Արևմտյան Հայաստանի մյուս գյուղաքաղաքներին. Նրա փողոցները ծուռումուռ էին, նեղ ու փոշոտ, շենքերը՝ գաճաճ ու զանգվածորեն հողե կտուրներով։ Ուներ մեկ նորաշեն եկեղեցի ս. Աստվածածին անունով, որ գտնվում էր գյուղաքաղաքի արևելյան մասում, այգիների մեջ։ Այստեղ պահվում էին հայկական ձեռագրեր՝ Ավետարան, Աստվածաշունչ և այլն։ Հետագայում այդ եկեղեցին դարձել էր ուխտավայր, որի մնացորդները գոյություն ունեն մինչև մեր օրերը։

Կաղզվանի հնություններից հիշատակության արժանի է նրա միջնադարյան բերդը, որը գտնվում էր Արաքսի ափին, բլրի վրա։ Դա քարաշեն քառակուսի շենք էր, շրջափակված բուրգավոր պարիսպներով։ XX դարի սկզբներին երբեմնի հայտնի այդ բերդը, որ որոշ հեղինակներ նույնիսկ նույնացրել են միջին դարերում հռչակված Կապույտ բերդի հետ, ավերված էր

ու վերածված փլատակների։ Կաղզվանի շրջակայքում նշմարվում էին նաև երկու եկեղեցու, վանքի, այլ շինությունների մնացորդներ։

Կաղզվանում են ծնվել հայ սովետական գրականագետ բանասեր Արշալույս Արշարունին (1896—1985), սովետական պետական-կուսակցական ականավոր գործիչ Վաղարշ Ալեքսանդրի Ավանեսովը (1884—1930)։

## ԿԱՄԱԽ

Արևմտյան Հայաստանի այս փոքրիկ գյուղաքաղաքը հնում ամրոց էր՝ Անի անունով, հիշատակվում է նաև իբրև բերդ, բերդաքաղաք, ավան։ Անի ամրոցն ավելի ճիշտ գտնվում էր նրա մոտակայքում։ Անի անունը կապում են հնագույն մի ցեղի հետ, որը դեռ վաղ ժամանակներից Ատրպատականից անցել է Հայաստան և բնակություն հաստատել նրա տարբեր մասերում։ Ոմանք էլ այդ անունը ծագած են համարում Անահիտ աստվածուհու անունից, որի պաշտամունքն այնքան լայն տարածում ուներ հեթանոսական շրջանի Հայաստանում, իսկ ոմանք էլ, վկայակոչելով հին եբրայերենը գրում են, որ Անի նշանակում է լույս, արև։

XII—XIII դարերից այլևս Անի ամրոցը չի հիշատակվում։ Նրա մոտ աստիճանաբար առաջանում է Կամախը, որ կոչվել է նաև Անի-Կամախ՝ մայրաքաղաք Անիից տարբերելու համար։ Կամախ անվան ծագման և իմաստավորման մասին նույնպես գոյություն ունեն տարբեր վարկածներ և ժողովրդական ավանդություններ։ Է. Ֆոռիերը և Գր. Ղափանցյանն այստեղ են տեղադրում խեթական արձանագրություններում հաճախ հիշատակվող Հայասայի մայրաքաղաք Կումմախան և Կամախի անունն էլ դրանից ծագած համարում։ Մյուսները կարծում են, որ այն կապ ունի կմախք բառի հետ, նկատի ունենալով, որ հնում այդտեղ էր գտնվում Արշակունի թագավորների գերեզմանոցը, իսկ ոմանք էլ գրում են, թե իբր շրջակայքում կաղամախի շատ ծառեր լինելու պատճառով է գյուղաքաղաքը Կամախ կոչվել։ Թուրքերն այդ անունը պահպանել են Քեմախ ձևով։

Կամախը գտնվում է Արևմտյան Եփրատի (Ֆրատ, Կարա-

սու) ձախ ափին, հին Անի ամրոցի ավերակների մոտ, Երզնկա քաղաքից 42—44 կմ հարավ-արևմուտք, սև գույնի լեռան վրա, որի շուրջը տարածվում է ծառազարդ և ճոխ բուսականությամբ ընդարձակ հարթավայր։ Ջրառատ է։ Գյուղաքաղաքի միջով է հոսում Արևմտյան Եփրատի Թանաձոր վտակը։ Խմելու համար բնակչությունը խողովակներով ջուր է բերել դրսից, ոչ հեռու գտնվող լեռնային սառնորակ աղբյուրներից։

IV—I դարերում (մ. թ. ա.) Անի-Կամախը հիմնականում Եփրատից արևմուտք տարածվող՝ Փոքր Հայքի կենտրոնն էր և Մեծ Հայքին էր միացվել Տիգրան Բ-ի օրոք, 66 թվականին (մ. թ. ա.)։ Հետագայում այն Մեծ Հայքի Բարձր Հայք աշխարհի Դարանաղի գավառի գլխավոր բերդն ու կենտրոնն էր։ Նոր ժամանակներում նույնպես Անի-Կամախը վարչական կենտրոն էր՝ Էրզրումի նահանգի (վիլայեթի) Երզնկայի գավառի (սանջակի) Կամախի գավառակի (կազայի) կենտրոնը։

Անի-Կամախը մեր ժողովրդի պատմության մեջ նախ և առաջ հայտնի էր իբրև Արտաշեսյան ու Արշակունի թագավորների հայտնի ամրոցներից մեկը։ Այստեղ էր պահվում նրանց արքունական գանձերի մի մասը։ Ինչպես ասվեց, Անի-Կամախում էր գտնվում նաև Արշակունի թագավորների գերեզմանոցը։ Անի-Կամախի գանձարանը կողոպտվել է 369 թվականին, Շապուհ 2-րդի գլխավորությամբ Հայաստան արշաված պարսկական զորքերի կողմից։ Այդ արշավանքի ընթացքում ավերվեց նաև Արշակունի թագավորների պանթեոնը։ Հետագայում դարեր շարունակ այն մնում էր խղճուկ վիճակում և թուրքերին է անցել 1515 թվականին։

XIX—XX դարերում Կամախը սովորական գավառական բնակավայր էր, միայն մի փոքր ավելի խոշոր՝ և գավառակի կենտրոն։ 1872—1873 թթ. ուներ 2000 հայ և թուրք բնակիչ, XX դարի սկզբին նրա բնակչության թիվը հասնում էր 15000 մարդու, որի մոտավորապես կեսը կազմում էին հայերը[15]։ Այլ աղբյուրների համաձայն, 1914 թվականի դրությամբ գյուղաքաղաքն ունեցել է 7000 բնակիչ, որից 3000-ը՝ հայեր։ Կամախում հայ բնակչության տեղահանությունն ու կոտորածը սկսվել էր 1915 թ. մայիսին։ Նրա բնակիչներից շատ քչերին է հաջողվել ազատվել և իրենց կյանքը փրկել՝ ապաստան գըտ-

15 «Բազմավէպ» ամսագիր, Վենետիկ, 1919, էջ 294։

նելով Դերսիմի քրդերի մոտ։ Նրանք հետագայում վերաբընակվել են Երզնկայում, իսկ Կամախում 1915 թ. մեծ եղեռնից հետո այլևս հայեր չէին մնացել, միայն 2—3 տարի անց ընդամենը 100 հոգի կամախցի տարագիրներ նորից են վերահաստատվել իրենց հայրենի քաղաքում։

Անի-Կամախը սովորական գյուղաքաղաք էր նաև իր զբաղմունքներով, որոնցից կարևորագույնը երկրագործությունն էր, առաջին հերթին՝ այգեգործությունը։ Քաղաքում գործում էին 15-ից ավելի արհեստներ, որոնք ունեին տեղական նշանակություն։ Քաղաքն առևտրական ճանապարհով կապված էր Երզընկայի և Ակնի հետ։ Այն ուներ իր փոքրիկ շուկան, որի շուրջը կային 100-ի հասնող կրպակներ և արհեստանոցներ։ Առևտուրը հիմնականում մանրածախ էր։ Նրա շուկայում վաճառվում էին գյուղատնտեսական մթերքներ, արհեստավորական շինվածքներ և մասամբ Երզնկայից ու Ակնից ստացվող զանազան ապրանքներ։ Քաղաքի առևտուրն ու արհեստագործությունը հիմնականում գտնվում էին հայերի ձեռքին։ Նրանք գյուղատնտեսությամբ համեմատաբար քիչ էին զբաղվում։

Անի-Կամախի պատմական հուշարձաններից և հնություններից ամենահայտնին բերդն է, որի հիմնադրման ժամանակն անհայտ է, բայց հաստատ կարելի է պնդել, որ II դարում այն արդեն գոյություն ուներ։ Բերդը պատած է եղել աշտարակավոր հզոր պարիսպներով, որոնց առանձին հատվածները կիսավեր վիճակում պահպանվել են մինչև մեր օրերը։ Ունեցել է 3 դուռ։ Բերդի տարածքում մնացել են բազմաթիվ շինությունների, այդ թվում նաև եկեղեցիների հետքեր։ Բերդի հյուսիսային կողմում, լեռան մեջ փորված է դեպի բարձր աշտարակը տանող աստիճանավոր ոլորապտույտ ժայռափոր ճանապարհ։ Ականատեսների վկայությամբ, բերդում կարող էր տեղավորվել մեծ ու փոքր 400 տուն։ Այստեղ նկատված միայն եկեղեցիների թիվը հասնում էր 6-ի, որոնք քարաշեն, հոյակապ կառույցներ են եղել։ XX դ. սկզբներին դրանց միայն հետքերն էին մնացել։ Քաղաքի մոտ կա մի ստորգետնյա անցք, որը անցնում է Եփրատի տակով, իրար միացնելով ստորերկրյա երկու թաղերը։ Դրանցից առաջինում՝ Եփրատի ձախ կողմում, եղել են զորանոցներ, պալատներ դահլիճներով, սրահներով, ննջասենյակներով, որոնք բոլորն էլ ժայռափոր էին։ Իսկ մյուս

*Թաղը, որ գտնվում էր Եփրատի աջ ափին, պարզապես մի ժայռափոր եկեղեցի էր։*

*Անի-Կամախում հնագույն ժամանակներում գտնվում էր Հայաստանի հեթանոսական աստվածների հայր Արամազդի գլխավոր տաճարը, որը կործանվել էր քրիստոնեությունը երկրում պետական կրոն հռչակվելու ժամանակ՝ IV դարի սկզբին։ Վաղեմի այս տաճարից նոր ժամանակները ոչ մի մասունք չի հասել։ Քաղաքի շրջակայքում նշմարվում էին պատմական շատ հնություններ, որոնց մասին դժվար է որոշակի որևէ բան ասել։*

*XIX դարում և XX դարի սկզբներին Կամախն ունեցել է չորս եկեղեցի, որոնցից 2-ը շեն էր մնացել մինչև առաջին համաշխարհային պատերազմը, իսկ երկուսն ավերվել էին հավանաբար XVIII դարում։ Քաղաքի մոտ էր գտնվում Թադեոս Առաքյալի վանքը, որը կոչվել է նաև Լուսավորիչի անապատ։*

*Հեթանոսական շրջանում Անի-Կամախը մշակույթի նշանակալի կենտրոն է եղել։ Պատմագիրների վկայություններից կարելի է կռահել, որ քրիստոնեությունն ընդունելու ժամանակ ոչ միայն կործանել են նրա տաճարները, կավվածքները տվել եկեղեցուն. այլև ոչնչացրել են բազմաթիվ ձեռագրեր՝ «հեթանոսական մատյաններ», որոնց գաղափարախոսությունն անընդունելի էր քրիստոնեական եկեղեցու համար։*

*XV դարում Կամախը նորից դարձել էր գրչության կենտրոն։ Այստեղ այդ հարյուրամյակում ընդօրինակվել են մի շարք ձեռագրեր, որոնցից երկուսը՝ մի Ճաշոց, որ գրվել է 1439 թ. Քրման խաթունի պատվերով, և մի Մաշտոց՝ գրված 50—80-ական թվականներին, մեզ հայտնի են։ Տակավին II—III դդ. (մոտ 154—222թթ.) Անիում աշխատել է Բարդածան Եդեսացի մատենագիրը։*

*1870-ական թվականներից Կամախում գործում էր հայկական մեկ երկսեռ վարժարան ս. Աստվածածին եկեղեցուն կից։ Առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին վարժարանն ունեցել է 75 աշակերտ և 3 ուսուցիչ։*

*Անի-Կամախում են ծնվել Գրիգոր Դարանաղցի (կամ՝ Կամախեցի) մատենագիրը և հայ ազատագրական շարժման հայտնի հերոս Սողոմոն Թեյլերյանը։*

# ԿԱՊԱՆ—ՄԱԴԵՆ

Կապան-Մադեն բառացի նշանակում է՝ հայերեն «լեռնանցք» (կապան), թուրքերեն՝ «հանքավայր» (մադեն)։ Հիշատակվում է նաև ուղղակի Կապան, Քեպան-Մադեն տարբերակներով։ Սովորաբար նույնացնում են հին Լուսաթառիչ քաղաքի հետ, որ կոչվել է նաև Լուստառիչ կամ Լուսավորիչ։ Հնում գյուղաքաղաք կամ բերդաքաղաք էր, իսկ նոր ժամանակներում՝ սոսկ ավան կամ գյուղ։

Գտնվում է Խարբերդի շրջանում, Խարբերդ քաղաքից 35—40 կմ արևմուտք, Արևմտյան և Արևելյան Եփրատ գետերի միախառնման վայրից ոչ հեռու, Արևմտյան Եփրատի ձախ ափին, լեռնային անձուկ վայրում, որը շրջակայքի հետ կապվում էր միայն կածաններով։ Եփրատն այստեղ հոսում է խոր ձորով և նրա վրայով անցնում էին նավակներով։ Շրջակայքում կային բազմաթիվ այգիներ ու բանջարանոցներ, իսկ հացը ստանում էին Խարբերդից։ Ուներ կապարի, արծաթի, պղնձի, ոսկու, ածխի հանքեր ու երևակումներ։ Վարչականորեն հնում մտնում էր Մեծ Հայքի Չորրորդ Հայք աշխարհի Հանձիթ կամ Գորեք գավառի, իսկ նոր ժամանակներում՝ Խարբերդի նահանգի Չարսանջակ գավառի մեջ։

1872—1873թթ. ուներ ընդամենը 20 տուն հայ և 2 տուն թուրք բնակիչ, իսկ XX դարի սկզբներին նրա բնակչության թիվը հասնում էր 2500 մարդու, որի մոտ կեսը կազմում էին հայերը, իսկ մյուս կեսը թուրքեր ու հրեաներ էին[16]: Բնակչության (հատկապես հայ բնակչության) հիմնական զբաղմունքը արծաթի հանույթը և նախնական մշակումն էր։ Հանքային գործն այստեղ մեծապես ծավալվել էր XIX դարի 30—40-ական թվականներին, բայց հետագայում՝ 60-ական թվականներից ի վեր, հանքավայրերի մեծ մասը լքված ու ավերված վիճակում էր։ Բնակչության մի զգալի մասն էլ զբաղվում էր պղնձի հանույթով։ Արդյունահանված արծաթն ու պղինձն առաքվում էին տարբեր քաղաքներ, հատկապես՝ Տրապիզոն։ Արհեստներն ու

16 Ս. Մ. Ծոցիկյան, *Արևմտահայ աշխարհ*, էջ 251—277։

առևտուրը ունեին զուտ տեղական նշանակություն։ Գրեթե բոլոր տներն ունեին պարտեզներ կամ այգիներ։

Արտաքնապես Կապան-Մադենը սովորական գյուղից ոչնչով չի տարբերվում։ Սակայն այստեղ դեռևս նշմարվում են անցյալի կառույցվածքների ավերակները՝ բավական լայն տարածքի վրա, որոնք իրեղեն վկայություններ են նրա երբեմնի բարեկարգ ու խոշոր բնակավայր լինելու մասին։ Պահպանված հուշարձաններից էին հայկական երկու եկեղեցիները, որոնցից մեկը՝ ս. Աստվածածինը, ականատեսները համարում են ակնահաճո և «փառավոր»։ Կանգուն վիճակում XX դարն էր հասել նաև հունական մի եկեղեցի, այսպես կոչված, «ոսկեզօծ եկեղեցին», որը նույնպես ճարտարապետական նշանավոր կերտվածք էր։ Ավանում, եկեղեցուն կից, XIX դարի երկրորդ կեսում և XX դ. սկզբներին գործում էր մի փոքրիկ վարժարան, որը 1872—73 թթ. ուներ 18, իսկ XX դ. սկզբին՝ 30 սաներ։

## ԿԱՐԱՔԻԼԻՍԵ

Կարաքիլիսե թուրքերեն նշանակում է «սև եկեղեցի»։ Իր այդպես է կոչվել թաթար-մոնղոլների տիրապետության ժամանակներից (XIII դ.) այստեղ սև քարից կառուցված եկեղեցու (որը XIX դարի վերջերին արդեն ավերակ էր) պատճառով։ Թուրքերն այժմ կոչում են Կարաքյոսե (Ղարաքյոսե)։ Սովորաբար համարվել է գյուղ, ավան, գյուղաքաղաք, քաղաք։

Գտնվում է Արածանիի վերին հոսանքի աջ ափին, Ալաշկերտի բարեբեր դաշտում, Տրապիզոն—Թավրիզ ճանապարհի վրա։ Ջրառատ է. Արածանիից բացի, այստեղով են հոսում նաև նրա բազմաթիվ վտակները։ Գյուղաքաղաքի շրջակայքի հողերը արգավանդ են և ջրարբի։

Նախկինում համարվում էր Էրզրումի նահանգի Բայազետի գավառի Կարաքիլիսեի գավառակի (կազա) կենտրոնը, իսկ այժմ Աղրի նահանգի կենտրոնն է։

XIX դարի առաջին կեսում Կարաքիլիսեում հայերը կազմում էին գյուղաքաղաքի բնակչության բացարձակ մեծամասնությունը։ 1877—1878թթ. ռուս-թուրքական պատերազմից առաջ այստեղ կար 200 տուն հայ բնակիչ, որից 120 տունը

պատերազմի ժամանակ գաղթել է Արևելյան Հայաստան, իսկ 80 ընտանիք մնացել էր տեղում։ Հետագայում հայ բնակչության թիվը բավական ավելանում է։ Ըստ աղբյուրների, 1909թ. Կարաքիլիսեի 600 տնից 350-ը հայկական էր 2450 բնակիչներով։ Այդ նույն թվականին նրա բնակչության ընդհանուր թիվը հասնում էր մոտ 4500 մարդու։ Մինչև XIX դարի 90-ական թվականները գյուղաքաղաքը կարելի է ասել զուտ հայաբնակ էր. 1877—1878թթ. պատերազմից հետո այստեղ հայերից բացի կար միայն քրդական 3 ընտանիք 19 բնակիչներով։ Տեղում հենարան ստեղծելու և հայկական ըմբոստացումները պատժելու ու ճնշելու նպատակով Աբդուլ Համիդի օրոք, 1895—96թթ. հայկական ջարդերից հետո, Կարաքիլիսեում հաստատում են բավական բազմամարդ կայազոր՝ նրա համար կառուցելով համապատասխան զորանոցներ։ Բացի դրանից, այդ նույն ժամանակներում, քաղաքի բնակչության հայկական միատարրությունը վերացնելու նպատակով թուրքական իշխանություններն այստեղ բնակեցնում են թուրքական և քրդական 100 ընտանիք։

Արևմտյան Հայաստանի մյուս տասնյակ գյուղաքաղաքների նման Կարաքիլիսեի բնակչության զբաղմունքը նույնպես արհեստները, առևտուրը և երկրագործությունն էին։ Նրա արհեստների թիվը ավելի քան 20-ի էր հասնում, որոնց մեծ մասի նշանակությունը սահմանափակվում էր գավառի շրջանակներով։ Արհեստների նման, առևտուրը ևս հիմնականում գտնվում էր հայերի ձեռքին։ XX դարի սկզբին Կարաքիլիսեն ուներ իր շուկա-հրապարակը մոտ 200 խանութներով ու կրպակներով։ Այստեղի հայկական եկեղեցին ևս ուներ իր կրպակները՝ թվով 25, որոնց հասույթներով պահվում էր եկեղեցուն կից գործող վարժարանը։ Կարաքիլիսեն տարանցիկ կետ էր Տրապիզոնի և Թավրիզի միջև, այստեղով բազմատեսակ ապրանքներ էին տարվում Թուրքիայից դեպի Իրան և Իրանից դեպի Թուրքիա։ Մանրածախ, բայց աշխույժ բնույթ ուներ ներքին առևտուրը, մանավանդ բանջարաբոստանային մթերքներով կատարվող առևտուրը, որով այնքան համբավավոր էր գյուղաքաղաքը։ Հայերը երկրագործությամբ ու բանջարաբուծությամբ քիչ էին զբաղվում, իսկ անասնապահությունն ընդհանրապես գտնվում էր թուրքերի և քրդերի ձեռքին։

Առաջին համաշխարհային պատերազմը և թուրքերի կազ-

մակերպած ցեղասպանությունը ճակատագրական եղան նաև Կարաքիլիսեի հայության համար։ Նրանց մի մասը ոչնչացվեց 1915 թ. եղեռնի հետևանքով, իսկ մյուս, ավելի փոքր մասը տեղահանվեց զանազան կողմեր։

Կարաքիլիսեն նոր ժամանակներում սերտորեն առնչվել է Արևմտյան Հայաստանում տեղի ունեցած քաղաքական իրադարձությունների հետ։ Նրա մոտ 1877—78թթ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ տեղի է ունեցել ռուսական և թուրքական զորքերի ընդհարումներից մեկը։ Ռուսական զորքը երեք անգամ՝ 1828, 1877 և 1916 թթ. գրավել է Կարաքիլիսեն, բայց այն նորից է անցել թուրքական տիրապետության տակ։

Գյուղաքաղաքը ընդհանուր հատակագծման չի ենթարկվել, կառուցումները կատարվել են կամայականորեն՝ ով որտեղ ցանկացել է։ Փողոցները նեղլիկ են և ծուռումուռ։ Հիշատակության արժանի կառույցները սահմանափակվում են ս. Աստվածածնի եկեղեցով, վարչական շենքերով ու զորանոցներով, իսկ հնությունները՝ հայկական ընդարձակ գերեզմանոցով, որտեղ կան տապանագիր ունեցող շատ քարեր և խաչքարեր։

Կարաքիլիսեի ս. Աստվածածին եկեղեցուն կից XIX դարից գործում էր Հայկազյան վարժարան, որի աշակերտների թիվը 1872—73թթ. հասնում էր միայն 20-ի, իսկ դարեվերջին՝ 35—40-ի։

## ԿԱՐԿԱԹԻՈԿԵՐՏ

Հին Հայաստանի այս քաղաքը Սորաբոնի մոտ կոչված է Կառթասիոկերտ, այլ հեղինակներ հիշատակում են նաև Արկաթիոկերտ անունով։ Կոչվել է նաև Եպիփանիա։

Աշխարհագրական դիրքը վերջնականապես չի ճշտված։ Ոմանք այն նույնացնում են հետագայի Անգղ բերդի հետ (Չորրորդ Հայքի Անգեղտուն գավառի գլխավոր բերդը), ոմանք՝ Չինթա ամրոցի, ոմանք՝ Խարբերդի, ոմանք՝ Ամիդ-Դիարբեքիրի, իսկ ոմանք էլ՝ Տիգրանակերտ-Մարտիրոսապոլսի հետ։ Դրանցից ամենահավանականն այն վարկածն է, ըստ որի Կարկաթիոկերտը գտնվում էր Անգեղտուն գավառի Անգղ բերդի տեղում կամ նրա շրջակայքում։ Իսկ վերջինիս ավերակներն ընկած են

Արևմտյան Տիգրիս գետի վերին հոսանքից ոչ հեռու, Ծովք լճից մոտ 4 կմ հեռավորությամբ, ստորին Արածանիի ձախ կողմում։

Կարկաթիոկերտի հիմնադրման մասին գրավոր հիշատակություններ չկան։ Սակայն անուղղակի աղբյուրներից հայտնի է դարձել, որ այն գոյություն է ունեցել հնագույն ժամանակներից՝ VIII—VII դարերից (մ. թ. ա.), և մեծ վերելք է ապրել հելլենիզմի դարաշրջանում, հատկապես՝ II—I դդ. (մ. թ. ա.)։ Ծոփաց թագավորության ամենահին մայրաքաղաքն էր և գտնվում էր հարավային առևտրական մեծ ճանապարհի վրա, որը բանուկ էր դեռևս VII—VI դարերից (մ. թ. ա.)։ Հայաստանի հելլենիստական բազմամարդ ու ծաղկած քաղաքներից էր։ Մ. թ. ա. III դարի վերջերին և II դարի սկզբներին դարձել էր ներքին, արտաքին ու տարանցիկ առևտրի և արհեստագործության խոշոր կենտրոն։ Հայ-ասորական պատերազմի ժամանակ, մ. թ. ա. 165 թ. սելևկյան Անտիոքոս 4-րդը, որ կրում էր Եպիփանես մականունը, գրավել է Կարկաթիոկերտը և վերանվանել իր մականվամբ՝ Եպիփանիա։

Կարկաթիոկերտի մասին, իբր Ծոփաց թագավորության արքայանիստ քաղաքի, առաջին վկայությունը պատկանում է Ստրաբոնին։ Հայ պատմագիրները այս քաղաքի վերաբերյալ հիշատակություններ ամենևին չունեն և դժվար է ուրվագծել նրա հետագա շրջանի պատմությունը։ Սակայն, նկատի ունենալով Հայաստանի հելլենիստական մյուս քաղաքների՝ Արմավիրի, Արտաշատի, Երվանդաշատի, Զարիշատի, Զարեհավանի և մյուսների պատմության ընթացքը, կարելի է չկասկածել, որ Կարկաթիոկերտը նույնպես նրանց նման IV—V դարերում կորցրել էր իր նախկին փառքը՝ առաջնության դափնին զիջելով նոր առաջացած ֆեոդալական քաղաքներին։ Հնարավոր է նաև, որ Կարկաթիոկերտը դրանից մի քանի հարյուր տարի առաջ էր կորցրել իր նշանակությունը, վերածվելով ֆեոդալական դղյակի։

## ԿԱՐԻՆ

Կարին քաղաքը, համանուն գավառով, կարևոր դեր է խաղացել մեր ժողովրդի պատմության մեջ։ Այն Հայաստանի հին քաղաքներից է և տարբեր ժամանակներում կրել է տարբեր

անուններ՝ Թեոդոսուպոլիս, Անաստասուպոլիս, որոնք տարածում չեն գտել, Արզրում, Էրզրում և այլն։

Գտնվում է Կարին-Էրզրումի սարահարթի հարավային մասում, Եփրատ գետի ձախ կողմում, Այծպտկունք (Փալանթյոքան) լեռների հյուսիսարևմտյան լանջերին, ծովի մակերևույթից մոտ 2000 մ բարձրության վրա։ Քաղաքի տեղադրավայրը ջրառատ է։ Այստեղ բխում են բազմաթիվ սառնորակ և հանքային տաք աղբյուրներ։

Կարինի մասին տեղեկություններ են հաղորդել Ստրաբոնը, Պլինիուս Ավագը (I դ.), Մովսես Խորենացին, Սեբեոսը, Արիստակես Լաստիվերտցին, Կիրակոս Գանձակեցին, Ստեփանոս Օրբելյանը և ուրիշ բազմաթիվ մատենագիրներ։ Սակայն այդ նշանավոր քաղաքի միջին դարերի ամբողջական պատմությունը չի ուսումնասիրված և շատ հարցեր տակավին անծանոթ են։ Այնուամենայնիվ, եղած տեղեկությունների հիման վրա կարելի է ուրվագծել Կարինի պատմության հիմնական պահերը։ Քաղաքի հայտնի միջնաբերդը կառուցվել է Անատոլ զորավարի կողմից բյուզանդական Թեոդոսիոս Կրտսեր կայսեր հրամանով, 421 թվականին։ 500 թվականին այն նվաճել են պարսիկները, 502 թ. նորից վերագրավել են բյուզանդացիները, 647 թ. ընկել է արաբների լծի տակ և մի քանի դար դարձել է կռվածաղիկ վերջիններիս և բյուզանդացիների միջև։ Արծնի վրա հարձակման ժամանակ՝ 1049 թվականին, սելջուկները համառորեն փորձեր են կատարել գրավել նաև այդ ամուր բերդաքաղաքը, բայց անհաջողության են մատնվել։ XIII դարի սկզբներին Կարին-Թեոդոսուպոլիսը ենթարկվում է Զաքարյաններին, սակայն նույն դարի 40-ական թվականներին գրավվում ու ավերվում է մոնղոլների, իսկ XIV դարի վերջերին՝ Լենկթեմուրի հրոսակների կողմից։ Հետագայում՝ XVI—XVIII դարերում այն հիմնականում գտնվում էր թուրքական տիրապետության տակ, թեպետև մի քանի անգամ, կարճատև ժամանակով, անցել է պարսիկների ձեռքը։ 1828—1829 և 1877—1878թթ. ռուս-թուրքական պատերազմների ժամանակ Կարին-Էրզրումը անցնում է Ռուսաստանին, բայց նորից է վերադարձվում Թուրքիային, որի տիրապետության տակ է մնում նաև առաջին համաշխարհային պատերազմից հետո։

Կարին-Թեոդոսուպոլիս-Էրզրումը գրեթե մշտապես եղել է վարչաքաղաքական կարևոր կենտրոն։ Այն համանուն Կարնո

«աշխարհի» գլխավոր քաղաքն էր, Հուստինիանոսի (527—565) վարչական վերափոխությամբ կազմված Առաջին Հայք պրովինցիայի, հետագայում Էրզրումի էմիրության, իսկ թուրքական տիրապետության ամբողջ ժամանակաշրջանում՝ Արևմտյան Հայաստանի զգալի մասն ընդգրկող Էրզրումի վիլայեթի (նահանգի) կենտրոնը։

Կարինը առաջին հերթին հայտնի է եղել իբրև բերդաքաղաք։ Ճիշտ է, հին հայկական և հռոմեական-բյուզանդական շրջանի պաշտպանական կառույցների ավերակներ այստեղ քիչ են պահպանվել, սակայն որոշակի նկատվում են պարսկական և արաբական բերդերի հետքեր, ինչպես նաև ավելի ուշ շրջանի թուրքական բերդի համեմատաբար լավ պահպանված ավերակները։ Նրա միջնաբերդը, որ բուն քաղաքի նկատմամբ 500—1000մ բարձր է, ունի 180 քայլ երկարություն և 80 քայլ լայնություն։ Այն պատած է եղել կրկնակի պարիսպներով։ Ունի գաղտնուղիներ, զինանոցներ, զորանոցներ։ Քաղաքի պաշտպանական պարիսպներն ունեցել են 72 աշտարակ և չորս դուռ՝ Թավրիզի, Երզնկայի, Վրաց և Նոր։ Կային հայերեն բազմաթիվ արձանագրություններ։ Կարին-Էրզրումի և Կարսի բերդերը Արևելքում հռչակված էին իրենց ամրությամբ։ Դրանց ստրատեգիական մեծ նշանակության մասին խոսել են շատ զորավարներ ու քաղաքական գործիչներ։

Հին և միջին դարերի Կարինի բնակչության թվի մասին տեղեկություններ չկան։ Սակայն հավանական է, որ այդ ժամանակներում առնվազն ունեցել է մինչև 50 հազար բնակիչ։ Ավելի արժանահավատ են նոր ժամանակների տվյալները։ Ադրիանապոլսի 1829թ. պայմանագրից և դրա հիման վրա կատարված գաղթից առաջ Կարին-Էրզրումն ունեցել է 130 հազարից ոչ պակաս բնակչություն, որից ավելի քան 30 հազարը հայեր էին։ Այդ պայմանագրով 1829—1830 թվականներին կազմակերպված գաղթի հետևանքով Կարին-Էրզրումից նույնպես հազարավոր հայեր տեղափոխվում են Արևելյան Հայաստան և հարևան շրջաններ և զանգվածորեն բնակություն հաստատում Գյումրի-Ալեքսանդրապոլում (Լենինական) ու դրա շրջակայքում, Ախալցխայում, Ծալկայում, Լոռի-Փամբակում, Ախալքալաքում, Թիֆլիսում և այլուր։ Մոտ 2000 հայ ընտանիք ռուս զինվորների ուղեկցությամբ գաղթել է 1878 թվականին։ 1909 թվականին քաղաքի բնակչությունը 60 հազարից մի փոքր ավելի

էր։ Հայերի թիվը հասնում էր 15 հազարի, իսկ 1914-ին՝ 20 հազարի։

Կարին-Էրզրումով էր անցնում Արևելքն Արևմուտքի հետ կապող մայրուղիներից մեկը։ Քաղաքն առևտրական սերտ կապեր ուներ Կ. Պոլսի, Տրապիզոնի, Թիֆլիսի, Երևանի, Թավրիզի հետ։ Այն Հնդկաստանից և Պարսկաստանից ներմուծվող ապրանքների (մետաքս, գործվածքներ, դեղորայք և այլն) պահեստարանն էր։ Արտահանման ապրանքների մեջ կարևոր տեղ էին գրավում կապարն ու պղինձը, իսկ ներմուծվողներից՝ բամբակը, բրինձը, մետաքսը, շաքարը։ Նրա առևտրական դերն ավելի է բարձրացել էրզրում—Սարիղամիշ երկաթուղու (1915թ.) և ժամանակակից խճուղիների կառուցման հետևանքով։ XIX դարում և XX դարի սկզբներին քաղաքն ուներ մի քանի շուկաներ և 20 իջևանատուն, ինչպես նաև տասնյակների հասնող արհեստներ՝ դարբնություն, զինագործություն, պղնձագործություն, ոսկերչություն, դերձակություն, ոսկերչություն, գորգագործություն և այլն, որոնցից շատերը միջին դարերում արդեն կազմում էին «եղբայրություններ»։ Դրանցից յուրաքանչյուրը զբաղեցնում էր առանձին փողոց, որը կոչվում էր տվյալ արհեստի անունով։ Արհեստավորությամբ գրեթե բացառապես զբաղվում էին հայերը, և արհեստավորների թիվը XX դարի սկզբներին հասնում էր մի քանի հազարի։ Այդ ժամանակ էրզրումում կար 3000 խանութ և կրպակ, որոնց մի մասը արհեստանոցներ էին։ Արհեստներից բացի, Կարին-Էրզրումում XIX դարի երկրորդ կեսին և XX-ի սկզբներին գործում էին մի քանի ոչ խոշոր և չըկատարելագործված սննդի ու թեթև արդյունաբերական ձեռնարկություններ, որոնց մեջ հատկապես նշելի են ապուխտի ու սուճուխի արտադրության թվով չորս ձեռնարկությունները, նույնքան սպանդանոցներով։ Այդ ձեռնարկությունների համար տարեկան մորթում էին շուրջ 5000 գլուխ խոշոր եղջերավոր անասուն։

XIX դարում և XX-ի սկզբներին Կարին-Էրզրումը սովորական ասիական քաղաք էր, մի մեծ երկրամասի կենտրոն։ Փողոցները լայն էին, մի մասը սալարկված, տները՝ կավաշեն։ Սառազուրկ էր, չուներ նվազագույն կոմունալ պայմաններ։ Խմելու ջուրը բերվում էր մոտակա լեռներից։ Ճարտարապետական առումով ուշադրության արժանի էին հայկական եկեղե-

ցիները, մզկիթները, վարչական զանազան շենքերը, առևտրի տները, պաշտպանական կառույցները և այլն։

XIX դարի վերջերին և XX-ի սկզբներին Կարին-Էրզրումում կային հայկական տարբեր կարգի մի ամբողջ շարք վարժարաններ (չհաշված մասնավոր կրթարանները)։ Դրանցից էին կենտրոնական մայր վարժարանը, որ հիմնադրել էր Կարապետ արքեպիսկոպոս Բագրատունին 1811թ. և հետագայում կոչվել էր Արծնյաց (Արծն քաղաքի անունով)։ 1909 թ. միայն այդ վարժարանն ուներ 334 աշակերտ։ Մյուս կրթարաններից նշանավոր էին Սանասարյան դպրոցը բացված 1881թ., Մարյան, Տեր-Ազարյան, Թարգմանչաց կրթարանները։ 1909թ. հայկական վարժարանների աշակերտների թիվը հասնում էր 2630-ի։ XIX դ. վերջերին և XX դ սկզբներին այստեղ գործում էին մի քանի մանկապարտեզներ։

Կարինի հետ է կապված հայ մշակույթի և միջնադարյան մի քանի հեղինակների ( Հակոբ Կարնեցի, Եղիա Կարնեցի և ուրիշներ) գործունեությունը։ Այստեղ է ծնվել սովետահայ նկարիչ Ս. Թ. Ալեքսանյանը (1910—1942)։ XX դարի սկզբներին քաղաքում հրատարակվել են հայկական թերթեր («Փարոս», «Հառաջ»)։

Կարին-Էրզրումը միջնադարյան Հայաստանի գրչության կենտրոններից է։ Նրա շրջակայքում էին գտնվում Դավիթ Անհաղթի և Մովսես Քերթողի, ս. Աստվածածին, Մատուրկա գյուղի Լուսավորիչ, Հինձքի Կարմիր վանքերը, Խաչկա վանքը, որոնք իրենց ազդեցությունն էին թողնում քաղաքի մշակութային կյանքի վրա։

Արևմտյան Հայաստանի մյուս քաղաքների ու հազարավոր գյուղերի հայ բնակչության նման Կարին-Էրզրումի հայերը նույնպես ենթարկվեցին ջարդերի։ Թուրք ցեղասպաններն այստեղի հայերի մի մասին ոչնչացրեցին դեռևս Աբդուլ Համիդի ժամանակ, 1895—1896 թվականներին, իսկ մյուս մասը զանգվածային կոտորածի ենթարկվեց առաջին համաշխարհային պատերազմի տարիներին՝ 1915 թվականին, մեծ եղեռնի ժամանակ։ Կենդանի մնացածները 1915 թվականի մայիս-հունիս ամիսների ընթացքում տարագրվեցին տարբեր երկրներ։ Եղեռնի նախօրեին Էրզրումում կային մոտ 25 հազար հայեր։ Հաջորդ տարում՝ 1916 թվականին, այդտեղ այլևս հայախոս հայ չէր մնացել։

## ԿԱՐՍ

Կարս բերդաքաղաքը մեր մատենագրության մեջ հիշատակվում է համեմատաբար ուշ, սակայն այն իբրև բերդ կամ սովորական բնակավայր գոյություն ուներ հնագույն ժամանակներից։ Նույնիսկ ենթադրում են, որ Կարսի տեղում բերդ էր հիմնադրված տակավին ուրարտական ժամանակաշրջանում։ Ականավոր շատ հայագետներ Կարս և Կարին քաղաքների անունները կապում են այդ կողմերում հնագույն ժամանակներում բնակվող կարենիտներ ցեղանվան հետ, որը հիշատակված է Քսենոփոնի մոտ։ Ժողովուրդը «Կարսը» աղավաղելով դարձրել է «Ղարս»։ Կարսի վերաբերյալ շատ տեղեկություններ են հաղորդել հայկական, վրացական, բյուզանդական և թուրքական աղբյուրները։

Կարսը միջնադարյան Հայաստանի մինչև օրս պահպանված մայրաքաղաքներից է։ Այն գտնվում է Ախուրյանի աջակողմյան վտակ Կարս գետի ափին, շրջապատված բլրապատ բարձրեր դաշտերով, ծովի մակերևույթից մոտ 1850 մ բարձրության վրա։

Կարսը գտնվում էր Այրարատ աշխարհի Վանանդ գավառում։ Նրա առաջին տերերը Վանանդի իշխաններն (նախարարներ) էին, որոնք հիշատակվում են IV դարից։ Ամենայն հավանականությամբ սկզբից ի վեր Կարսը Վանանդի կենտրոնն էր, նրա գլխավոր բերդը, Վանանդի նախարարների աթոռանիստը։

Քաղաքի պատմության վաղ շրջանը թաղված է մթության մեջ։ Չկան ո՛չ արժանահավատ գրավոր աղբյուրներ, և ո՛չ էլ հին քաղաքի տեղում կատարվել են հնագիտական ուսումնասիրություններ։ Միայն ստույգ գիտենք, որ այն հայոց պատմության մեջ հայտնի դարձավ ավելի ուշ՝ IX դարից, երբ Հայաստանը թևակոխեց զարգացած ֆեոդալիզմի դարաշրջանը և երբ երկրում առաջացան ֆեոդալական տասնյակ նոր քաղաքներ, ինչպես և քաղաքների վերածվեցին նախորդ ժամանակներից գոյություն ունեցող շատ բերդեր ու ամրոցներ։ Վերջիններիս թվին է պատկանում։ Կարսը IX դարի սկզբին հիշատակվում է իբրև բերդաքաղաք, իսկ 928 թ. դառնում է Հայաստանի մայրաքաղաք։

Սակայն Բագրատունյաց նախորդ երկու մայրաքաղաքների՝

*Բագարանի և Երազգավորսի նման Կարսը ևս երկարատև չի մնում կենտրոնական թագավորության մայրաքաղաք՝ Տ61թ. Աշոտ 3-րդը Բագրատունյաց թագավորության մայրաքաղաք է հռչակում Անին, իսկ Կարսը մնում է որպես Բագրատունիների կրտսեր ճյուղի Կարսի կամ Վանանդի ֆեոդալական փոքր թագավորության մայրաքաղաք։*

*Մոտ մեկ դար տևած խաղաղությունը XI դարի կեսերին ընդհատվում է սելջուկյան արշավանքների հետևանքով։ 1053թ. սելջուկ թուրքերը հարձակվում են Կարսի վրա։ Դրան հաջորդում են ասպատակությունները։ Կարսի վերջին թագավոր Գագիկը, սելջուկյան շարունակվող հարձակումների վտանգը նկատի ունենալով, հարկադրված է լինում 1064թ., սելջուկյան սուլթան Ալփ-Արսլանի արշավանքի նախօրեին, Կարսն ու համանուն թագավորությունը զիջել բյուզանդացիներին և դրա փոխարեն ստանալ Կապադովկիայի Ծամնդավ քաղաքը։ Դրանից հետո Կարսը գրավում են սելջուկ թուրքերը, որոնց տիրապետությունն այստեղ, XI դ. վերջերին մի քանի տարով ընդհատվելուց հետո, շարունակվում է մինչև XII դ. վերջերը։ 1198—1236թթ. Կարսը հայազգի զորավարներ Զաքարե և Իվանե Զաքարյանները միացրել էին վրացական թագավորությանը։*

*IX դարից մինչև մոնղոլական արշավանքներն ու նրանց ծանր լծի հաստատումը Կարսը ընդհանուր առմամբ շարունակում էր զարգանալ։ X դարում, հատկապես մայրաքաղաք եղած տասնամյակներում, Կարսն արագ թափով առաջադիմում և բարեկարգվում է։ Այս ժամանակներում են կառուցում Կարսի մինչև օրս կանգուն՝ հռչակավոր Կաթողիկե եկեղեցին, իր անառիկությամբ Արևելքում այնքան հայտնի բերդը։ Կարսը X—XIII դդ. համարվում էր Հայաստանի մարդաշատ քաղաքներից։ Այն դարձել էր արհեստագործության և առևտրի խոշոր կենտրոն։ XI դարի պատմագիր Արիստակես Լաստիվերտցու վկայություններից երևում է, որ Կարսը եղել է բարեկարգ ու հարուստ քաղաք, որը քարավանային ճանապարհներով առևտրական սերտ կապեր է ունեցել Սև ծովի նավահանգիստների, ինչպես և Հայաստանի ու հարևան երկրների առևտրական խոշոր քաղաքների հետ։ Անուղղակի տվյալներից երևում է, որ XI—XIII դդ. Կարսի բնակչության թիվը հավանաբար անցնում էր 50.000 մարդուց։ Իսկ սա այդ դարերի քաղաքների բնակչության համար շատ մեծ թիվ էր։*

Մոնղոլները 1236թ. Հյուսիսային Հայաստանի մյուս քաղաքների հետ միասին գրավում և ավերում են նաև Կարսը։ Դրանով սկսվում է Կարսի պատմության մռայլ ժամանակաշրջանը։ Գնալով նա աստիճանաբար կորցնում է իր նշանակությունը։ 1394թ. քաղաքը նոր, ահավոր չափերով ավերվում է Լենկթեմուրի հորդաների կողմից, իսկ հետագայում բազմիցս ձեռքից ձեռք է անցնում կարա-կոյունլու ու ակ-կոյունլու թուրքմենական ցեղերի, ապա թուրքերի ու պարսիկների տիրապետության շրջանում։ Քաղաքի համար առանձնապես ծանր հետևանքներ ունեցան թուրք-պարսկական երկարատև պատերազմները (XVI—XVII դդ.), որոնց ընթացքում ավերվելուց բացի, քաղաքի տնտեսական կյանքը գրեթե ընդհատվում էր։ Այդ դարերում Կարսը ընդհանուր առմամբ գտնվում էր թուրքական տիրապետության տակ։ XVII—XIX դարերում Կարսը համանուն փաշայության կենտրոնն էր և փաստորեն մտնում էր Էրզրումի (Կարինի) սերասքյարության (կուսակալության) մեջ։ 1876թ. Էրզրումի վիլայեթը բաժանվեց մի քանի վիլայեթների։ Դրանցից մեկն էլ Կարսի վիլայեթն էր Կարս կենտրոնով։

Թուրքական տիրապետության ամբողջ ժամանակաշրջանում Կարսը որևէ չափով չի առաջադիմել։ Այն վերածվել էր սովորական բերդաքաղաքի և տնտեսական էական նշանակություն չուներ։ Նրա արհեստագործությունն ու առևտուրը հետամնաց էին, սոսկ տեղական մասշտաբի։ Քաղաքը փոքրիկ հյուղերի մի կատարյալ քաոս էր։ Թուրքական բռնակալները պարբերաբար հոգ էին տանում միայն նրա բերդի ամրացման համար և այստեղ զետեղել էին մարդաշատ կայազոր։

XIX դարում նպաստավոր պայմաններ են ստեղծվում Արևելյան Հայաստանի հետ միասին Կարսի փաշայությունը ևս Ռուսաստանին միացնելու համար։ Ռուսական զորքերն առաջին անգամ Կարսը գրավում են ռուս-թուրքական 1828—1829թթ. պատերազմի ժամանակ՝ 1828 թ. հունիսի 23-ին։ Կարսի 11 հազարանոց կայազորը, որի տրամադրության տակ կար 151 թնդանոթ, անզոր է լինում երկարատև դիմադրություն ցույց տալ ռուսական բանակին։ Թուրքական կայազորին չի փրկում նաև անմատչելի համարվող Կարսի բերդը։ Սակայն 1829 թ. սեպտեմբերի 14-ին կնքված Ադրիանապոլսի պայմանագրով Կարս քաղաքն ու համանուն փաշայությունը նորից

վերադարձվում են Թուրքիային։ Երկրորդ անգամ ռուսական զորքերի կողմից գրավվում է Ղրիմի կամ Արևելյան պատերազմի ժամանակ՝ 1855թ. նոյեմբերին։ Կովկասյան գործող կորպուսի հրամանատարը գեներալ Ն. Մուրավյովն էր, որը նշանակված էր նաև Կովկասի փոխարքա։ Թուրքերն այդ ժամանակ Կարսում կենտրոնացրել էին 33 հազարանոց բավական լավ զինված բանակ։ Ռուսական զորքերը հաջողությամբ շրջապատում են թուրքական բանակին և վերջինս հարկադրված է լինում անձնատուր լինել։ Սակայն այդ պատերազմը Ռուսաստանի համար ունեցավ անհաջող վախճան և այս անգամ էլ Կարսը մնաց թուրքերի տիրապետության տակ։

Կարս քաղաքի և նրա շրջակայքի միացումը Ռուսաստանին կատարվեց 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ։ Բերդն ու քաղաքը ռուսական զորքերը գրավեցին Լորիս-Մելիքովի հրամանատարությամբ։ Իսկ 1878 թ. հուլիսի 13-ին Բեռլինի պայմանագրով անցան Ռուսաստանին։ Ռուսական կայսրությանը նոր միացրած տարածքից կազմվեց Կարսի մարզը՝ Կարս, Օլթի, Արդահան և Կաղզվան օկրուգներով։ Մարզի կենտրոնը Կարսն էր։ Այստեղ էին կենտրոնացած մարզային վարչական օրգանները։

Կարսի մարզի տարածքը 19 հազ. քառ. կմ-ի էր հասնում։ Ըստ 1891թ. վիճակագրական տվյալների, մարզն ուներ 44.280 հայ, 30.259 քուրդ, 27.567 հույն, 46.954 թուրք, 11.813 ռուս, 27. 247 կարափափախ, 10. 174 թուրքմեն և 2. 574 այլ ժողովուրդների պատկանող բնակիչներ, ընդամենը 200.868 մարդ, իսկ ըստ 1897 թ. ռուսական առաջին մարդահամարի՝ 292.498 բնակիչ։

Կարս քաղաքի և համանուն մարզի միացումը Ռուսաստանին առաջադիմական մեծ նշանակություն ունեցավ։ Արևելյան Հայաստանի նման երկրի այդ հատվածում ևս տնտեսական ու մշակութային կյանքում զգալի տեղաշարժեր կատարվեցին, նախկին կամայականությունների ու բռնությունների փոխարեն հաստատվեցին կարգ ու կանոն, օրենքներ, բնակչությունը հաղորդակից դարձավ ռուսական անհամեմատ ավելի բարձր զարգացած մշակույթին։ Բարեփոխություններն ավելի զգալի էին Կարս քաղաքի ներքին կյանքում։

Առաջին համաշխարհային պատերազմի վերջում Կարս քաղաքն ու մարզը, Բրեստի 1918 թ. մարտի 3-ի պայմանա-

*զրով, նորից անցան Թուրքիային։ Այստեղի հայ բնակչության զգալի մասը զոհ գնաց կոտորածներին։ Հայ և մասամբ հույն բնակչության զգալի զանգվածներ գաղթեցին ու բնակություն հաստատեցին Արևելյան Հայաստանում և հարևան երկրներում։*

*Կարսը չի ենթարկված մի ընդհանուր հատակագծի։ Փողոցները ծուռումուռ են ու նեղ։ Կառուցումները կատարել են կամայականորեն՝ ով որտեղ և ինչպես ցանկացել է։ Քաղաքը չունի կոմունալ տարրական պայմաններ և կանաչապատում։ XIX դարի քաղաքի տներից շատերը չարաշեն էին ու երկհարկանի, փայտյա պատշգամբներով։ Այժմ էլ պահպանվում է ավանդույթի ուժ ստացած շինարարական այդ սովորությունը։ Քաղաքի գրաված տարածությունը քառանկյունու տեսք ունի և պարսպապատ է։ Տների մի մասը դարավանդաձև դասավորված է քաղաքում վեր խոյացող լեռան լանջերին՝ ստորոտից սկսած մինչև կատարը։*

*1878 թ. հետո ռուսները քաղաքի դաշտային մասի հարավային կողմի արվարձանը վերափոխել էին նոր քաղաքի, որը շրջապատված էր աշտարակներ ունեցող պարիսպներով։ Այստեղ Կարսի մուգ գույնի քարից կառուցել էին ռուսական նոր եկեղեցի, միահարկ, բայց ընդարձակ խանութներ, թիթեղյա տանիքով, պատերը սպիտակ ներկած տներ։*

*Քաղաքի տնտեսական կյանքը բավական աշխուժացավ XX դարի սկզբներից՝ կապված Ալեքսանդրապոլ—Կարս երկաթուղու կառուցման հետ։ Կարսի հայ բնակչությունը զբաղվում էր արհեստներով, առևտրով, տնայնագործությամբ և արդյունաբերությամբ։ Նրա տնտեսական կյանքի վրա էական ազդեցություն էին թողնում Ալեքսանդրապոլ—Կարս, Կարս—Սարիղամիշ երկաթուղիները, որոնցից առաջինը շարք էր մտել 1899-ին, իսկ երկրորդը՝ 1915-ին, ինչպես նաև խճուղիները։ Քաղաքը XIX դարի վերջերին և XX-ի սկզբներին ուներ սննդի և թեթև արդյունաբերության մի քանի ձեռնարկություններ, մի բավական մեծ սպանդանոց, որտեղ տարեկան մորթում էին մինչև 1000 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, որոնց մսից պատրաստում էին ապուխտ և սուճուխ։ Այդ նույն ժամանակներում քաղաքն ուներ 700—800 խանութ ու կրպակ և այստեղ ամեն տարի կազմակերպում էին տոնավաճառ։ Կարսի տնտեսական կյանքում զգալի տեղ էր գրավում նաև գյուղատնտեսությունը՝*

ղաշտավարությունն ու անասնապահությունը։ 1910 թ. քաղաքապատկան վարելահողերի տարածքը հասնում էր 4900 դեսյատինի։ Ներկայումս էլ Կարսը շատ թե քիչ հայտնի է ավանդույթով եկած արդյունաբերության ճյուղերով՝ կաթի, յուղի, պանրի գործարաններով և գորգերի ու կոշտ գործվածքների ձեռնարկություններով, որոնք վերակենդանացել են առաջին համաշխարհային պատերազմի հետևանքով անկման դուռը հասնելուց հետո։

Թուրքական լծից ազատագրվելուց հետո Կարսում բավական աշխուժանում է դպրոցական գործը։ Այստեղ բացվում են պետական մի քանի դպրոցներ՝ քաղաքային արական ուսումնարանը (1880 թ.), քաղաքային իգական ուսումնարանը (1880 թ.), Կարսի իգական գիմնազիան (1909թ.) և այլն։ Դրանք բոլորը ռուսական դպրոցներ էին և ենթակա էին պետական կրթական մարմիններին։ Դրանցից բացի հայկական մի քանի եկեղեցիներին կից կային տարրական ուսումնարաններ։ Երկու այդպիսի նախակրթական ուսումնարաններ ( կամ վարժարան) կային ս. Մարիամ եկեղեցուն կից՝ մեկը տղաների, իսկ մյուսը՝ աղջիկների։ 1910 թվականին նրա 12 տարբեր կարգի ուսումնարաններում (որոնցից 3-ը միջնակարգ էին) սովորողների թիվը հասնում էր 1376-ի։ Քաղաքում գոյություն ունեին նաև մասնավոր՝ խալֆայական տիպի ուսումնարաններ։

Կարսում են ծնվել հայ մշակույթի ու գիտության մի շարք երախտավորներ։ Այն մեծ Չարենցի ծննդավայրն է։ Այստեղ են ծնվել նաև ՀՍՍՀ ժողովրդական նկարիչ, ՍՍՀՄ գեղարվեստի ակադեմիայի թղթակից անդամ Հ. Մ. Զարդարյանը (1918թ.), ՀՍՍՀ ժողովրդական նկարիչ Խ. Հ. Եսայանը (1909թ.), լեռնային ինժեներ, սոցիալիստական աշխատանքի հերոս Ռ. Ս. Գրիգորյանը, կենսաբանական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր, ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ Է. Հ. Դավթյանը (1903 թ.), իրանահայ գրող Լևոն Բզնունին (1901թ.) և ուրիշներ։ Նոր ժամանակներում քաղաքում հրատարակված պարբերականներից են «Կարս» (1883թ.) ու «Բանվոր» (1917թ.) շաբաթաթերթերը և «Աշխատավորի ձայն» ու «Դիրքերում» օրաթերթերը (1920 թ.)։ Կարսը միջին դարերում եղել է հայ գրչության կենտրոններից։

Կարս քաղաքի բնակչության թիվը XIX դարում և XX-ի սկզբներում էական տատանումներ է տալիս՝ կապված նրա քաղաքական պատմության հետ։ Աղբյուրների հաղորդած տեղե-

կությունների և պաշտոնական մարմինների տվյալներից երևում է, որ 1829թ. Ադրիանապոլսի պայմանագրից և Ղրիմի պատերազմից հետո Կարսի հայ (և մասամբ հույն) բնակչության զգալի մասը ռուսական զորքի հետ միասին թողել է քաղաքը և տեղափոխվել Արևելյան Հայաստանի զանազան շրջաններ։ Սակայն Կարսի մարզը Ռուսաստանին միացվելուց հետո, ընդհուպ մինչև առաջին համաշխարհային պատերազմը, նրա բնակչության թիվը, ճիշտ է դանդաղ, բայց անշեղորեն ավելանում է։ Այսպես, եթե 1800—1830 թթ. քաղաքն ուներ 15 հազար բնակիչ (որից 10 հազարը հայեր), 1830—1850թթ. 14 հազար (որից 6 հազարը հայեր), ապա 1897թ. նրա բնակչությունը հասնում էր 20805 մարդու (որից 10332-ը՝ հայեր), իսկ 1914-ին՝ 30086, որից 25252-ը (83,9 %) կազմում էին հայերը։

XIX դարի սկզբներին Կարսն ունեցել է տարբեր կարգի 3.000 տուն, որի մի մասը ավերված վիճակում էր և չէր օգտագործվում։ Այդ նույն ժամանակներում քաղաքում եղել են տարբեր ժամանակներում կառուցված 18 եկեղեցի և 47 մզկիթ, որոնց մեծ մասը նույնպես ամայի է եղել և չի գործել։ Շինարարական-ճարտարապետական տեսակետից առանձնահատուկ նշանակություն ունեն Բագրատունի Աբաս 1-ինի 930—942 թթ. կառուցած Մայր եկեղեցին, ինչպես և քաղաքի բերդը։ Հայկական այդ եկեղեցին կենտրոնագմբեթ, շքեղ տաճար է, որը մինչև օրս կանգուն է, քաղաքի ընդհանուր համայնապատկերի մեջ առանձնանում է իբրև մոնումենտալ կառույց և մի առանձին գեղեցկություն տալիս նրան։ Հայկական մյուս եկեղեցիներից էին՝ ս. Նշանը, ս. Աստվածածինը, ս. Գրիգորը, ս. Մարիամը, ռուսական 2 եկեղեցի (ս. Առաքելոց և ս. Միքայել Հրեշտակապետ), հունական մեկ եկեղեցի (ս. Գևորգ), որին կից կար ուսումնարան։

Կարսը, ինչպես և Հայաստանի միջնադարյան մյուս շատ քաղաքներ, եղել է սովորական բերդ և մեր պատմագիրները վաղ ժամանակներում այն հիշատակում են որպես այդպիսին («բերդը Կարուց»)։ Հետագայում, IX—XIII դարերում, հենց այդ բերդի շուրջն էլ ծավալվել է քաղաքը, իսկ բերդը մնացել է իբրև միջնաբերդ։ Հետագա դարերում, թուրք-պարսկական տիրապետության մռայլ ժամանակաշրջանում, Կարսի հայկական հին բերդը, որ գտնվում էր քաղաքի արևելյան մասում,

շարքից դուրս էր եկել։ Սակայն թուրքական բռնակալները, նկատի ունենալով Կարսի սահմանամերձ դիրքը և բնականից անմատույց լինելը, այն պարբերաբար ամրացրել են պաշտպանական նոր կառույցներով։ Թուրք պատմիչ Փեչևին գրում է, որ Կարսի բերդը կառուցվել է 1578 թվականին։ Այդ բերդն ուներ կրկնակի պարիսպներ 26 աշտարակներով, որոնցից 17-ը գտնվում էին հարավային կողմում, իսկ 9-ը՝ արևմտյան։ Քաղաքի չորս անկյունների մեկական աշտարակները մյուսներից ավելի մեծ ու բարձր էին։ Պարիսպների բարձրությունը 10—12մ էր հասնում, լայնությունը՝ 1,5 մետրի, երկարությունը 1000 մ Բուն միջնաբերդը տեղադրված է Կարս գետի աջակողմյան ժայռի վրա։ Ամենայն հավանականությամբ, միջնաբերդը, որ պատած էր կրկնակի պարիսպներով, համապատասխանում է հին հայկական բերդին, իսկ բերդը կառուցվել է ավելի ուշ՝ թուրքական տիրապետության շրջանում և կցվել առաջինին։ Մինչև թուրքական լծից ազատագրվելը, Կարսի բերդը բացառապես բնակեցված էր թուրքերով և բաժանված էր 17 թաղերի (մահլաներ)։ Ռուս-թուրքական 1877—78թթ. պատերազմի ժամանակ ավերվեցին քաղաքի ու բերդի պարիսպները։ Սակայն դրանց ավերակները պահպանվում են առ այսօր։ Բերդի պարիսպներն ու մյուս կառույցները շարված են անմշակ քարից, բայց բավական բարձր արվեստով։

Կարսի մյուս հիշարժան կառույցներից կարելի է նշել Կարս գետի վրա գտնվող քարակերտ կամուրջները, որոնք թվով երեքն են և կառուցվել են տարբեր ժամանակներում։

Ներկայումս Կարսը ունի 54 հազ. բնակիչ։ Նա մնացել է գավառական հետամնաց քաղաք՝ և՛ իր տնտեսությամբ ու մշակույթով, և՛ արտաքին տեսքով։

## ՀԱՋՐՈՒ

Կոչվում է նաև Հաղրո, Խաղրո։ Ոմանք նույնացնում են հին Արզնի (Աղձնյաց գավառի կենտրոնի, որը IV—V դարերում երկար ժամանակով կռվախնձոր էր Բյուզանդիայի և Պարսկաստանի միջև) հետ, իսկ ոմանք վերջինիս տեղադրությունը համարում են անհայտ։

Հիշատակվում է իբրև գյուղ, ավան, գյուղաքաղաք, քա-

ղաք։ Գտնվում է Դիարբեքիր քաղաքից մոտ 53 կմ հյուսիս-արևելք, իսկ Ֆարկինից՝ մոտ 23—24 կմ հյուսիս-արևմուտք, մի փոքրիկ գետակի ոչ շատ ընդարձակ հովտում, որը շրջապատված է լեռներով։ Վարչականորեն մտնում է Դիարբեքիրի նահանգի (վիլայեթ) մեջ՝ լինելով համանուն Հազրո գավառի կենտրոնը, իսկ այս վերջինս համապատասխանում է հին Ծոփաց աշխարհի Մեծ Ծոփք գավառին։ Գտնըվում է Սասունի հարավային սահմանին մոտ, մեծ շփումներ ուներ այդ ընդարձակ լեռնագավառի հետ և իզուր չէ, որ սասունցիները այն համարում էին իրենց քաղաքը։

Միջին դարերում զուտ հայաբնակ բնակավայր էր։ Նոր ժամանակներում այստեղ հայերի հետ միասին բնակվում էին նաև քրդեր։ Երբեք բազմամարդ ու բարգավաճ քաղաք չի եղել։ Այդ է պատճառը, որ հաճախ համարվում է նաև ավան և գյուղ։ 1880-ական թվականներին քաղաքում կար 180 հայկական տուն, 1894-ին՝ ընդամենը 800 տուն, որից հայկական էին 320 տուն, իսկ մնացածը քրդական էին[17]: 1895 թվականի կոտորածից ու բռնի մահմեդականացումից հետո քաղաքում հայ բնակչության թիվը բավական նվազել էր։ Այստեղ 1913 թվականին կար 200 հայկական տուն, որոնք ենթարկվեցին 1915 թ. եղեռնի արհավիրքներին. նրանց մի մասը բնաջնջվեց թուրքերի կողմից, իսկ մյուս մասը տեղահանվեց։ Ինչպես երևում է, հետագայում որոշ թվով հայեր նորից էին վերադարձել իրենց հայրենի քաղաքը։

Հազրոյի բնակչության զբաղմունքներն էին մանրածախ առևտուրը, արհեստները, երկրագործությունը և անասնապահությունը։ Քաղաքը բավական բարեկարգ ճանապարհներով կապված էր Դիարբեքիրի ու Ֆարկինի հետ, որոնք իրենց ազդեցությունն էին թողնում նրա վրա։ Նրա առևտրի ապրանքները բաղկացած էին անասնապահական մթերքներից և երկրագործական ու արհեստավորական արտադրանքներից։ Քաղաքի խանութների, կրպակների և արհեստանոցների թիվը XIX դարի վերջերին 65-ից անցնում էր։ Ուներ մի շուկա-հրապարակ։ Առևտրով և արհեստներով գրեթե բացառապես զբաղվում էին հայերը։ Առանձնապես մեծ տարածում ունեին մանածագործությունն ու ջուլհակությունը։ Հազրոյի հայ ջուլհակների

---

17 «Արձագանք», 1894, № 121։

*գործած կտավը, տեղում սպառվելուց բացի, առաքվում էր նաև գավառի տարբեր բնակավայրեր։*

*Հազրոյի հուշարձաններից նշելի են հայկական երկու եկեղեցիները, որոնք կառուցվել էին XIII դարում, մեկը՝ 1266 թվականին, իսկ մյուսը՝ 1268-ին։ Երկուսն էլ կառուցված էին այդ դարի հայկական եկեղեցական ճարտարապետության ոճով։ Կենտրոնագմբեթ էին, խաչաձև հատակագծով, պատերը շարված սրբատաշ քարերով։ Պատերի վրա կային շինարարական արձանագրություններ։ Որոշ աղբյուրների համաձայն, առաջին համաշխարհային պատերազմից հետո վերածվել էին ավերակների։ Հայերն ունեին մի վարժարան, որ գործում էր եկեղեցիներից մեկին կից։*

*Հազրոն տիպիկ ասիական հետամնաց քաղաք է, ծուռումուռ, նեղլիկ փողոցներով, անկանոն ցրված գաճաճ տներով, սանիտարական վատթարագույն պայմաններով, մի փոքրիկ քաղաք, որն այժմ ևս ոչնչով չի տարբերվում XIX դարում ունեցած իր ողորմելի վիճակից։*

## ՀԱՍԱՆԿԱԼԱ

*Հնում հայտնի էր Բոլորապահակ անունով։ Շատերը նույնացնում են պատմական Բասենի բերդի («Բերդ Բասենոյ») հետ, որոշ ուսումնասիրողներ էլ համարում են հին Վաղարշավանը։ Հասանկալա է կոչվել XIV—XV դարերից։ Ենթադրվում է, թե այդ անունը կապված է հայանուն Հասանի հին կամ Ակկոյունլու տիրակալ Ուզուն-Հասանի անվան հետ։ Ոմանք էլ Հասանկալա անունը կապում են Էրզրումի թուրքական փաշա ոմն Հասանի անվան հետ, նրան վերագրելով նաև քաղաքի բերդի հիմնական վերանորոգումը։ Դժվար է այդ կարծիքներից որևէ մեկին առաջնություն տալը, միայն հաստատապես կարելի է պնդել, որ Հասանկալան իր բերդը ժառանգել էր շատ հնուց և նրա կառուցումը թուրքական տիրապետության ժամանակներին վերագրելը զուրկ է պատմական հիմքից։*

*Արաբական աղբյուրները կոչել են Գալիկալա, բացառությամբ Բալաձորիի, որը Գալիկալա է անվանել Կարինը (Էրզրում)։*

Գտնվում է էրզրումից մոտ 30—35 կմ արևելք, Տրապիզոն—Թավրիզ ճանապարհի վրա, Ծիրանաց (Հասանկալա) լեռների խոտավետ ստորոտին և լեռան վրա, որտեղ տեղադրվում է քաղաքի բերդը։ Քաղաքն ու նրա բերդը իշխող դիրք ունեն շրջակայքի նկատմամբ։ Հասանկալայից ոչ հեռու սկսվում է Արաքսի ձախակողմյան վտակ Մուրցը (Հասանկալա), որը հոսում է նրա միջով։ Քաղաքից ոչ հեռու բխում են երկաթային և ծծմբային հանքային ջրեր՝ 35—45° ջերմությամբ։ Այդ աղբյուրներից 3-ը բավական վաղ ժամանակներից տեղացիներն օգտագործել են բուժման նպատակներով։ Քաղաքի մոտակայքում կան նաև բորակի և քարածխի հանքավայրեր։

Հասանկալան հնում մտնում էր Մեծ Հայքի Այրարատյան աշխարհի Բասեն (Վերին Բասեն) գավառի մեջ, իսկ թուրքական տիրապետության շրջանում՝ էրզրումի նահանգի (վիլայեթ) էրզրումի գավառի Բասենի գավառակի կենտրոնն էր։

Հասանկալայի բնակչության քանակի վերաբերյալ արժանահավատ տվյալներ չկան։ Ըստ որոշ աղբյուրների, XIX դարի սկզբներին ունեցել է 1700, 1880-ական թվականներին՝ 1500, 1909—1913 թ.՝ 2500 տուն բնակիչ, որի մեծ մասը մինչև 1828—29թթ. ռուս-թուրքական պատերազմը կազմում էին հայերը, իսկ մնացածը՝ թուրքերը և քրդերը։ Ընդ որում այդ պատերազմից հետո կարգավորված գաղթի հետևանքով այստեղի հայ բնակչության մեծ մասը արտագաղթում է Արևելյան Հայաստանի զանազան մասեր, իսկ 1877—78թթ. պատերազմի ժամանակ նրա թուրք բնակչությունը փախել էր էրզրում։ Սակայն XIX դարի վերջերին և XX-ի սկզբներին Հասանկալայի բնակչությունը նորից է ավելանում, հասնելով մոտ 2500 ընտանիքի։

Հասանկալայի բնակչությունը զբաղվում էր գյուղատնտեսությամբ, առևտրով և արհեստներով։ Նրա հայ բնակչության զբաղմունքը հիմնականում առևտուրն ու արհեստագործությունն էին։ Քաղաքը իր ժամանակի համար առաջնակարգ նշանակություն ունեցող ճանապարհով կապված էր Կարինի (էրզրումի) հետ։ Այդ ճանապարհը սալյային էր և խճապատվել էր տակավին անցյալ դարի կեսերին։ Քաղաքն ուներ իր ընդարձակ շուկան, տասնյակներով կրպակներ ու արհեստանոցներ։

Ռուսական զորքը XIX դարում երեք անգամ՝ 1829, 1855 և

1877 թվականներին ազատագրել է Հասանկալան, բայց հաշտության պայմանագրեր կնքելուց հետո այն նորից է անցել Թուրքիայի տիրապետության տակ։

Հասանկալայի տները քարակերտ են, կամ աղյուսաշեն, հիմնականում երկհարկանի։ Դրանք շարքերով տեղադրված են բերդակիր լեռան լանջերին ու ստորոտում, կազմելով մի հրաշալի գեղատեսիլ ամֆիթատրոն։ Քաղաքը հատուկ հատակագծում չի ունեցել, նրա կառույցները կատարվել են խառնիխուռն և չունի ուղիղ ձգվող կանոնավոր փողոցներ։ Հին ժամանակներից ի վեր քաղաքում եղել են բնական տաք ջրերով գործող բաղնիքներ։ Նոր ժամանակներում քաղաքից մոտ 2 կմ հեռավորությամբ կային այդպիսի երկու քարաշեն բաղնիքներ, որոնցից մեկը գտնվում էր Հասանկալա (Մուրց) գետի աջ կողմում, իսկ մյուսը՝ ձախ։

Հավանական կարելի է համարել, որ Հասանկալայի բերդը գոյություն է ունեցել ուրարտական ժամանակներից (IX—VI դդ. մ. թ. ա.) և հետագայում վերակառուցվել ու վերանորոգվել է մի քանի անգամ։ Եվ բերդը, և՛ քաղաքը պարսպապատ էին։ Պարսպի բարձրությունը տեղ-տեղ հասնում էր 5 մետրի, իսկ լայնությունը մոտ 1,4 մ էր։ Բերդը շրջանաձև էր և ուներ կրկնակի պարիսպներ ու աշտարակներ։ Այն գտնվում էր քաղաքի հյուսիսարևմտյան կողմում, 2650 մ բարձրությամբ բոլորաձև լեռան վրա։ Պաշտպանական պարիսպների արտաքին և ներքին շարքերին զուգահեռ փորված էր մոտ 5 մ լայնություն և 2,1 մ բարձրություն ունեցող խրամ, որը վտանգավոր պահերին լցնում էին ջրով։ Բերդն ունեցել է երկու դուռ՝ Արևելյան կամ Բասենի դուռ և Արևմտյան՝ կամ Էրզրումի։ Երկու դռների դիմաց, գետի վրա կառուցել էին կամուրջներ։ Բերդի կենտրոնում, լեռան կատարին պատրաստել էին ջրամբարներ, որոնց մոտից ստորերկրյա ճանապարհով իջնում էին գետի եզրը պաշարումների ժամանակ ջուր բերելու համար։ Հասանկալայի բերդը վերականգնվել էր XVI դարում և լքվել 1877 թվականին, ռուսական զորքի կողմից գրավվելուց հետո։

Քաղաքի լավագույն կառույցները մզկիթներն էին, որոնցից 3-ը նախկին հայկական եկեղեցիներն էին, և հայկական փոքրիկ, բայց գեղատեսիլ միակ եկեղեցին։ Մզկիթի վերածված հայկական մի հին եկեղեցի գտնվում էր բերդում։

Հասանկալայում պահպանվում է ուրարտական Մենուա 1-ին թագավորի մի ընդարձակ սեպագիր արձանագրությունը, որտեղ խոսվում է ինչ-որ դղյակի կառուցման մասին։

Հայերը Հասանկալայում ունեին իրենց վարժարանը։ Այստեղ XVI—XVII դարերում ընդօրինակվել են ձեռագրեր, որոնցից մեզ է հասել 1629թ. Բարսեղ քահանա գրչի գրած Սաղմոսարանը։

## ԾԱՊԱՂՋՈՒՐ

Այս բնակավայրը հայտնի է նաև իր անվան մի քանի այլ տարբերակներով՝ Ծապղջուր, Ծարալջուր, Ծապաղ, Ծապաղաջուր և այլն։ Հնում կոչվում էր Կթառիճ, որն ամրոց էր։ Անվանել է նաև Խուլփ, իսկ այժմ թուրքերը վերանվանել են Բինգյոլ։ Ծապաղջուր է կոչվել գետակների բազում ճյուղերի առկայության պատճառով։

Ծապաղջուրը, Հայաստանի հարյուրավոր այլ բնակավայրերի նման, տարբեր ժամանակներում համարվել է տարբեր՝ գյուղ, ավան, ամրոց կամ բերդ, բերդաքաղաք։

Գտնվում է Արածանիի հովտում, նրա աջ կողմում, Ծապաղջուր (Գյունեք) գետակի ափին, Բալու գյուղաքաղաքից արևելք, իսկ Քղիից հարավ, ջրառատ վայրում։ Երբեմն Արածանիի՝ Ծապաղջրով հոսող հատվածը կոչել են վերջինիս անունով։

Հնում Ծապաղջրի շրջանը, Գենջը և Ջիտկեն միասին վերցրած կազմում էին Մեծ Հայքի Չորրորդ Հայք աշխարհի Հաշտյանք գավառը։ Իսկ այս վերջինս իր բերդերով, որոնց թվում էր և Կթառիճ-Ծապաղջուրը, համարվում էր Արշակունիների արքայական կալվածք ու տրված էր թագավորական տան կրտսեր զավակներին իբրև սեփականություն։ Ոմանք Ծապաղջուրը համարում են ոչ թե Հաշտյանքի, այլ Հանձիտի մեջ մտնող բնակավայր։ XI դարում հիշատակվում է իբրև եպիսկոպոսանիստ ավան և մտնում էր Թոռնիկ Մամիկոնյանի իշխանության մեջ։ Թուրքական տիրապետության շրջանում համանուն գավառակի կենտրոնն էր, որը մինչև 1829 թվականը մտնում էր Դիարբեքիրի նահանգի (վիլայեթ), դրանից հետո՝ Բիթլիսի նա-

*հանգի մեջ։ Իսկ այժմ, ինչպես ասվեց, կոչվում է Բինգյոլ և համարվում նույնանուն նահանգի կենտրոնը։*

*Ճապաղջրի մասին մեզ հասած պատմական տեղեկություններ սակավ են։ Սակայն հայտնի է, որ Կթառիճ-Ճապաղջուրը Հայաստանի առաջին բաժանումից հետո (387թ.) անցել էր Հռոմին և ամուր բերդ էր պարսկա-հռոմեական սահմանամերձ շրջանում։ Նկատի ունենալով դրա ստրատեգիական կարևոր նշանակությունը բյուզանդական կայսր Հուստինիանոսը (527—565) ավելի էր ամրացրել պաշտպանական զանազան կառույցներով։ Ստեփանոս Ասողիկի մի վկայությունից երևում է, որ Ճապաղջուրը X դարում դարձյալ համարվում էր կարևոր բերդ, չնայած պատմիչը բառացիորեն այն բերդ չի կոչել։ Այսպես, խոսելով 995 թվականին տեղի ունեցած երկրաշարժի մասին, ժամանակակից պատմիչը գրում է. «Խարխլեալ Ճապաղաջուր, բերդին Դկլաթայ, Աթթախայ և Ամթայ...»։ Դրանից հետո Ճապաղջուրը նախ մտնում էր Փիլարտոս Վարաժնունու, ապա Թոռնիկ Մամիկոնյանի իշխանության մեջ։ XIII դ. 40-ական թվականներին այն գրավում են մոնղոլները, իսկ XVI դարի սկզբներին՝ օսմանյան թուրքերը։ Մինչև առաջին համաշխարհային պատերազմը Ճապաղջրի բնակչության մեծ մասը կազմում էին հայերը, որոնք հիմնականում զբաղվում էին արհեստներով ու առևտրով։ Նրանք ունեին վարժարան և եկեղեցի։*

## ՄԱԼԱԹԻԱ

*Հայ ժողովուրդն իր պատմության վաղ ժամանակներում կենտրոնացած է եղել երեք պետական միավորման մեջ։ Դրանցից երկուսը՝ Մեծ Հայքն ու Ծոփքը շատ շուտով կազմել են մի ամբողջություն, որ պատմության մեջ հայտնի է Հայաստան, Պատմական Հայաստան անունով, իսկ երրորդ պետական միավորումը՝ Փոքր Հայքը վարչական քաղաքական առումով Պատմական Հայաստանին երբեք միացած չի եղել, բայց հնագույն ժամանակներից ի վեր հայաբնակ երկիր էր և մինչև առաջին համաշխարհային պատերազմը՝ Եփրատից արևմուտք փռված այդ երկրամասի բնակչության հիմնական զանգվածները կազ-*

մում էին հայերը։ Փոքր Հայքը և՛ ռազմական, և՛ քաղաքական ու մշակութային առումներով կարևոր դեր է խաղացել մեր ժողովրդի երկարաձիգ պատմության ընթացքում։ Այն ունեցել է տասնյակ քաղաքներ։ Դրանցից հայտնի են հատկապես երկուսը՝ Մալաթիան և Սեբաստիան, որ տնտեսական, մշակութային և վարչաքաղաքական առումով զգալի դեր են խաղացել մեր ժողովրդի կյանքում։

Մալաթիան, որ օտար աղբյուրներում ավելի հայտնի էր Մելիտինե անունով, գտնվում է Եփրատի աջ կողմում, գետից մոտ 10 կմ հեռավորության վրա, լեռներով շրջապատված հարթավայրում, ծովի մակերևույթից մոտ 940 մ բարձրության վրա, Խարբերդ քաղաքից հարավ-արևմուտք։ Պատմական Մալաթիան ժամանակակից Մալաթիայից 7—8 կմ հարավ-արևմուտք էր գտնվում։ Այն այժմ շատ քիչ թվով բնակիչներ ունի, ավերված ու ամայի է, և թուրքերի կողմից ստացել է էսկի-Շեհիր կամ էսկի Մալաթիա անունը։ Ջրառատ քաղաք է. նրա տարբեր թաղերում բխում են աղբյուրներ, իսկ ավերված պարսպի տակով հոսում է Թուխմա կոչված գետակը։ Նոր և Հին Մալաթիաները բավական տուժել են 1893թ. տեղի ունեցած աղետաբեր երկրաշարժից։

Մալաթիան Փոքր Հայքի հնագույն քաղաքներից է։ Այն Մելիտա անունով հիշատակվում է խեթական Մելիդ, Միլիդա, Մելիդի անուններով, ասորեստանյան և Մելիտեիա անունով՝ ուրարտական սեպագիր արձանագրություններում։ Մալաթիայի մասին վկայություններ ունեն անտիկ հեղինակները (Ստրաբոն, Տակիտոս), հայկական, վրացական, արաբական, բյուզանդական, թուրքական աղբյուրները (Մովսես Խորենացի, Սեբեոս, Հովհաննես Դրասխանակերտցի, Վախուշտի, Յակուտ, Բալաձորի, Հովհ. Ակիլիցես, Քյաթիբ Չելեբի և այլք)։ Արաբական հեղինակ Յակուտի ասելով Մալաթիան «Ալեքսանդր Մակեդոնացու կառուցած քաղաքներից է»։ Մինչդեռ այն գոյություն ուներ անհամեմատ ավելի վաղ ժամանակներից և Ալեքսանդրի ժամանակներում (IV դ. մ. թ. ա.) ապրում էր զարգացման նոր շրջան։

Մալաթիայի զարգացմանը նպաստել են նրա աշխարհագրական հարմար դիրքն ու պատմական տարբեր ժամանակներում դրեթե միշտ վարչական կենտրոն լինելը։ Այն գտնվում էր Պարսկաստանի մայրաքաղաք Սուզան Միջերկրական ծովի

հետ միացնող հնագույն ճանապարհի՝ «արքայական պողոտայի» վրա։ Հետագա ժամանակներում նույնպես քաղաքով անցնում էին քարավանային ուղիներ։ XIX դ. 70-ական թվականներին խճապատվել է Խարբերդ—Մալաթիա ճանպարհը։

Մինչև Փոքր Հայքի անկախ պետություն հռչակվելը (մ. թ. ա. III դ. վերջերը), Մալաթիան նրա երկրամասերից մեկի կենտրոնն էր, որպիսին մնաց նաև հետագայում՝ մինչև Թեոդոսիոս կայսեր ժամանակները (IV դ. վերջեր), երբ Փոքր Հայքը մասնատվեց երկու պրովինցիայի՝ Առաջին Հայքի՝ Սեբաստիա կենտրոնով, և Երկրորդ Հայքի՝ Մալաթիա (Մելիտինե) կենտրոնով։ Հուստինիանոս կայսեր օրոք (527—565թթ.), երբ Արևմտյան Հայաստանն ու Փոքր Հայքը ենթարկվեցին վարչական նոր բաժանման, նրա նախկին Երկրորդ Հայքը (որի տարածքը բավական ընդարձակվեց պատմական Կապադովկիայի հաշվին) կոչվեց Երրորդ Հայք, դարձյալ կենտրոն ունենալով Մալաթիան։

Թուրքական տիրապետության շրջանում Մալաթիան իր շրջակայքով նախ մտնում էր պատմական Փոքր Հայքն ու Չորրորդ Հայքն ընդգրկող Սեբաստիայի նահանգի (վիլայեթ) մեջ, իսկ երբ վերջինս մասնատվեց երկու նահանգի, այն դարձավ համանուն Մալաթիա նահանգի կենտրոնը, որ ընդգրկում էր նախկին Սեբաստիա նահանգի հարավարևելյան մասը։ XIX դարում Մալաթիան սոսկ գավառի (սանջակ) կենտրոն էր և մտնում էր նախ Մարաշի, իսկ նույն դարի 70-ական թվականներից՝ Խարբերդի նահանգի մեջ։ Նրա վարչական վիճակը փոփոխության է ենթարկվել նաև վերջին տարիներին տեղի ունեցած վերափոխությունների հետևանքով։

Ելևէջներով հարուստ քաղաքական պատմություն է ունեցել Մալաթիան։ Հնագույն շրջանում գտնվելով Ուրարտուի և Ասորեստանի, հետագայում՝ Հռոմի ու Պարսկաստանի, ապա՝ Բյուզանդիայի և Արաբական խալիֆայության սահմանագլխին, Մալաթիան բազմիցս դարձել է ռազմական բախումների օրրան՝ ենթարկվելով ավերումների և զրկվելով խոշոր քաղաքի վերածվելու հնարավորությունից։ Հիշատակության արժանի է մասնավանդ այստեղ 577 թ. տեղի ունեցած ճակատամարտը, երբ պարսից Խոսրով թագավորը պարտություն կրեց բյուզանդական զորքերից։ Մալաթիան սելջուկ թուրքերի կողմից գրավվել է Մանազկերտի ճակատամարտից հետո (1071թ.), Մելիքշահի

*օրոք (1072—1092)։ XV դ. վերջերին Մալաթիան ընկնում է օսմանյան թուրքերի տիրապետության տակ։*

*Ըստ որոշ, ոչ լրիվ արժանահավատ աղբյուրների Մալաթիան X դարում ունեցել է շուրջ 60 հազար բնակիչ։ 1915 թվականի սկզբներին նրա բնակչության թիվը հասնում էր շուրջ 40 հազար մարդու, որից մոտավորապես 20 հազարը կազմում էին հայերը։ Ընդ որում, մինչև XII—XIII դարերը Մալաթիայի բնակչության հիմնական զանգվածները կազմում էին հայերը, այն գրեթե միատարր հայկական քաղաք էր, որտեղ որոշ թիվ էին կազմում նաև հույները։ Հետագայում այստեղ աստիճանաբար բնակություն են հաստատում թուրքերը։ Մալաթիայում հայերի զանգվածային կոտորածները տեղի են ունեցել 1895-ին։ Զինված հայերը թուրքական ավազակաբարո զորքին ցույց են տվել հերոսական դիմադրություն, սակայն այդ հարձակման ժամանակ քաղաքում թուրքական յաթաղանին զոհ է գնացել մոտավորապես 7500 մարդ, մեծամասամբ կանայք, երեխաներ և ծերունիներ։ Նրա հայ բնակչությունն ավելի զանգվածային բնաջնջման է ենթարկվել երիտթուրքերի կողմից մեծ եղեռնի ժամանակ, 1915 թվականին։ Իսկ կենդանի մնացածները տեղահանվել են և տարագրվել զանազան կողմեր։ Մալաթիայի տարագրվածների մի բավական մեծ խումբ էլ եկել ու բնակություն է հաստատել Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երևանի ծայրամասում, այստեղ հանրապետության ղեկավար մարմինների հոգացողությամբ ստեղծելով իր նոր ավանը՝ Նոր Մալաթիան, որը տասնամյակներ առաջ ձուլվել է բուն քաղաքի հետ՝ կազմելով նրա բարետես ու ակնահաճո թաղամասերից մեկը։*

*Մալաթիան ունեցել է տնտեսական բավական աշխույժ կյանք։ Նրա բնակչությունն զբաղվել է զանազան արհեստներով, առանձնապես մանածագործությամբ ու ջուլհակությամբ։*

*Մալաթիան առևտրի կարևոր կենտրոն էր։ Նրա առևտրական գործարքների շրջանակները բավական լայն էին. քաղաքը կապված էր Խարբերդի, Արաբկիրի և այլ մեծ ու փոքր կենտրոնների հետ։ Նրա վաճառականներն ու առևտրականները առևտուր էին կատարում հատկապես Հաշիշով։ Բնակչության մյուս զբաղմունքների մեջ կարևոր էին շերամապահությունը, երկրագործությունը, այգեգործությունը և, մասամբ, անասնապահությունը։*

Մալաթիան իր բնույթով գավառական տիպի քաղաք է եղել և խիստ հատակագծման չի ենթարկվել։ Սակայն իր ընդհանուր համայնապատկերով գեղատեսիլ էր և ամբողջապես թաղված էր այգիների մեջ, իսկ շրջակայքում փռված են ընդարձակ ծառաստաններ ու փարթամ պարտեզներ։ Քաղաքն ուներ գեղակերտ տաճարներ, վարչական խոշոր շենքեր, կենտրական լայն հրապարակ, որի շուրջը շարքերով զետեղված էին տասնյակ խանութներ, կրպակներ ու արհեստանոցներ։ Եկեղեցիների թիվը XX դ. սկզբներին հասնում էր 5-ի, որոնցից 3-ը՝ հայկական։ Դրանցից զատ կային փայտաշեն մի քանի ժամատներ, իսկ քաղաքից դուրս, այգիների մեջ էր գտնվում Մալաթիայի գավառի եպիսկոպոսանիստ ս. Լուսավորիչ վանքը։ Քաղաքի մզկիթներից շատ թե քիչ հայտնի էին երկուսը, որոնցից մեկի կառուցումը ավանդաբար վերագրում են VIII դարին, իսկ մյուսը կերտվել է IX դարի երկրորդ կեսում։

Մինչև առաջին համաշխարհային պատերազմը Մալաթիայում գործում էին հայկական երեք ուսումնարան։ Նրա հին կառույցներից պահպանվել են պաշտպանական պարսպի ու դրա բուրգերի միայն չնչին մնացորդները, հոգևոր ու աշխարհիկ մի քանի շենքերի ու բնակելի տների ավերակներ, որոնց միջև ցրված են տակավին վաղեմի քաղաքի տարածքում ապրող սակավաթիվ բնակիչների անշուք տները։ Մինչև 1915-ի մեծ եղեռնը Մալաթիայի շրջակայքում կային մինչև 10-ի հասնող հայկական գյուղեր՝ Ջրմխտի, Կերկեր, Մշովկա և այլն, որոնք նույնպես հիմնահատակ ավերվեցին առաջին համաշխարհային պատերազմի տարիներին։ Նույն բախտին են արժանացել նաև այդ մասերում գտնվող ուխտավայրերը՝ ս. Վարդանը, ս. Ստեփանոսը, ս. Գրիգոր Լուսավորիչը, ս. Հովհաննեսը և մյուսները, որոնց միայն հետքերն են նշմարվում։

## ՄԱԿՈՒ

Հնագույն ժամանակներում կոչվել է Շավարշան կամ Շավարշական՝ ինչպես կոչվել է նաև գավառը, իսկ հետագայում, Մովսես Խորենացու վկայությամբ, և՛ գավառը, և՛ քաղաքը կոչվել են Արտազ՝ Աղվանքի համանուն գավառի անունից, որ-

տեղից բավական թվով բնակիչներ էին եկել ու հաստատվել Վասպուրականի այդ գավառում, վերջինս էլ կոչել իրենց հին գավառի անունով՝ Արտազ (երբեմն գործածվել է նաև Արտաժ ձևով)։ Ենթադրվում է, որ Մակուն մանքու բառի աղավաղված ձևն է, իսկ վերջինս պարսկերեն նշանակում է երկու ժայռի արանք։ Կոչվել է նաև Մանքու կամ Կապան-կալեսի։

Տարբեր ժամանակներում եղել է տարբեր կարգի բնակավայր՝ գյուղ, բերդավան, բերդաքաղաք, գյուղաքաղաք։

Գտնվում է Պարսկահայաստանում, Փոքր Մասիս լեռնազագաթի հարավային ստորոտում, երկու լեռնաշղթայի արանքում, զառիթափ լեռնալանջի վրա։ Բարձրությունը ծովի մակարդակից 1298 մ է։ Կլիման խիստ ցամաքային է, հողերը ոռոգվում են քաղաքով հոսող Մակու կամ Զանգիմար գետով, որի մի ճյուղը կամ ուղղակի դրա վերին հոսանքը հնում կոչվել է Տըղմուտ, և բացառված չէ, որ դրանից է առաջացել նաև նրա Զանգիմար (Դեղին) անունը։ Քաղաքից 2—2,5 կմ արևելք բարձրանում է մի ժայռ, որի խոռոչներում կուտակված ջուրը գրեթե շուրջտարին սառցակալած է լինում. ամռանը մակվեցիները այստեղից տանում էին մեծ քանակությամբ սառույց, ինչպես և այդ բնական սառցարան խոռոչներում ամռան կեսին պահում էին զանազան մթերքներ։ Մակուն շատ է տուժել 1840թ. Մեծ ու Փոքր Մասիսների շրջանում տեղի ունեցած ավերիչ երկրաշարժից, որը, սկսվելով հունիսի վերջերին, ընդհատումներով կրկնվել է մինչև սեպտեմբերի վերջերը։

Մակուն միշտ վարչական կենտրոն է եղել։ Հնում այն Մեծ Հայքի Վասպուրական աշխարհի Արտազ գավառի կենտրոնն էր, իսկ XVI դարից համանուն խանության կենտրոնը։ Ենթադրվում է, որ հնում Ամատունի նախարարների ոստանն էր և դժվար է ասել, թե երբ է դադարել այդպիսին լինելուց։ Ավելի վաղ ժամանակներում (VIII—VII դդ. մ. թ. ա.) Մակուի շըրջակայքում տարածվում էր Ռուսայի քաղաքի երկրամասը և բացառված չէ, որ ուրարտական այդ քաղաքն էլ համապատասխանում է հետագայի Մակուին։

Մակուի բերդը հիշատակում են Սեբեոսը, Ղևոնդ Երեցը, Թովմա Արծրունին, Թովմա Մեծոփեցին, Գրիգոր Դարանաղցին և այլ մատենագիրներ։ Ենթադրվում է, որ այդ բերդը հիմնադրվել է VII—VIII դարերում։ Առաքել Դավրիժեցին (XVII դ.)

*վկայում է, որ Մակուի բերդը գրավել ու ավերել է Շահ-Աբաս 1-ինը XVII դ. սկզբին։*

*Միջին դարերում, ընդհուպ մինչև XVII դարը ներառյալ, Մակուն ուներ միատարր հայ բնակչություն։ 1829—30թթ. նրա հայ բնակչության մի մասը 1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմից հետո կազմակերպված ընդհանուր գաղթի ժամանակ ապաստան է գտել Ռուսաստանին միացված Արևելյան Հայաստանում։ Նոր ժամանակներում Մակուն ընդհանրապես սակավամարդ բնակավայր է։ XIX դարի վերջերին քաղաքն ուներ 400 տուն, իսկ XX դարի սկզբին ընդամենը 300 տուն բնակիչ, որոնց մեծ մասը կազմում էին պարսիկներն ու թուրքերը։ Հայերը, որ մոտավորապես 80 տուն էին, բնակվում էին էրմենիստան կոչված առանձին թաղամասում։*

*Մակուի հայ բնակչությունը հիմնականում զբաղվում էր արհեստագործությամբ։ Առանձնապես տարածված արհեստ էր գինեգործությունը, [illegible]-բով։ Քաղաքը գտնվում է Կարին—Խոյ—Թավրիզ ճանապարհի վրա և համարվում էր տարանցիկ կետ այդ ճանապարհով կատարվող միջազգային առևտրի համար։ Մակուի բնակչության զգալի մասի հիմնական զբաղմունքը գյուղատնտեսությունն էր՝ երկրագործությունը, այգեգործությունը և անասնապահությունը։*

*Քաղաքի տների մեծ մասը կառուցված է ժայռերի վրա, առանց որոշակի հատակագծի։ Մակուն ընդհանրապես անշուք է, ճարտարապետական կոթողներից զուրկ։ Ուշադրության արժանի միակ կառույցը կարելի է համարել բերդը, որը գտնվում է լեռան գագաթին՝ լանջին, շրջապատված պաշտպանական պարսպով և աշտարակներով։ Դեպի բերդը տանող միայն մի ճանապարհ կա, այն էլ ժայռափոր նեղ կածան է։ Մակու գետի վրայով դեպի բերդն էր ձգվում մի շարժական կամուրջ։ Բերդի ավերակներն առ այսօր գոյություն ունեն։*

*Մակուում վիմագիր կոթողի վրա հայտնաբերված է ուրարտական Ռուսա 2-րդի մի սեպագիր արձանագրությունը։*

*Քաղաքի շատ թե քիչ նշանակալի կառույցներից էր հայկական միակ եկեղեցին, որին կից գործում էր մի փոքրիկ վարժարան։ Մակուն միջին դարերում հայ գրչության նշանակալի կենտրոններից էր։ Մեզ են հասել այստեղ գրված մի քանի ձեռագրեր։ Մշակութային առումով քաղաքի վրա իր բարե-*

*բար աղդեցությունն ունեը նրանից ոչ հեռու (Հարավարևելյան կողմում) գտնվող Հռչակավոր ս. Թադեոս Առաքյալի վանքը, որը կանգուն է ցայսօր։ Մակուում է ծնվել պատմաբան, բանասեր, թարգմանիչ ու բառարանագիր Թ. Հ. Ավդալբեկյանը (1885—1937)։*

**ՄԱՄԱԽԱԹՈՒՆ**

*Մամախաթուն անունը սովորաբար կապում են Մանանաղի գավառ անվան կամ Մանավազ անվան հետ։ Թուրք պատմաոփը, Քյումիր, Գեւեջին, Հասարդում է, ըստ, Մամախաթունը հոգացելու մելիք Իչեդդինի աղջկա անունն է։ Հնարավոր է, որ թուրքմենական մելիքի աղջիկն այդ անունը կրեր, բայց Մամախաթուն բնակավայրի անվան ծագումը նրա հետ կապելը զուրկ է որևէ հիմքից։ Անհավանական է նաև այդ մասին պահպանված ավանդությունը, ըստ որի ինչ-որ փաշայի մոր՝ Մամա-խաթունի հետ է կապված քաղաքի անվան ծագումը։*

*Սկզբնաղբյուրներում և ուղեգրություններում Մամախաթունը երբեմն համարված է գյուղ, երբեմն՝ ավան, երբեմն էլ՝ գյուղաքաղաք։ Ըստ էության, նա ավելի շուտ մեծ գյուղ էր, քան գյուղաքաղաք, եթե իհարկե վարչական կենտրոն չլիներ։ Հայագետների մի մասը Մամախաթունը նույնացնում է Դերջան (Տերջան) ավանի հետ, որ հավանական չէ։ Դերջանը գտնվում էր Բարձր Հայք աշխարհի համանուն Դերջան գավառում, մինչդեռ Մամախաթունը նույն աշխարհի Մանանաղի գավառում էր, թեպետ իրենց տեղադրությամբ դրանք իրարից շատ հեռու չեն գտնվում։*

*Մամախաթունը գտնվում է Արևմտյան Եփրատ (Կարա-սու) գետի ձախակողմյան վտակ Դերջան (Մամախաթուն, Թուզլա) գետի վրա, նրա աջ ափին, Էրզրում—Երզնկա ճանապարհին, վերջինից մոտ 70 կմ արևելք, Դերջանի կամ Մամախաթունի դաշտում։ Բարձրությունը ծովի մակարդակից մոտ 1416 մ է։ Դիրքն ամուր է. գրեթե բոլոր կողմերից պաշտպանված է լեռներով։*

*Մամախաթունը Դերջանի գավառակի (կազայի) կենտրոնն է, որ մտնում է Էրզրումի նահանգի (վիլայեթ) Էրզրումի գա-*

վառի մեջ։ Այստեղ էր նստում Դերջանի գավառակի թուրք կառավարիչը՝ կայմակամը։ Գյուղաքաղաքում գրեթե միշտ զետեղված էր թուրքական կայազոր, որը պատերազմների ժամանակ ավելի բազմամարդ էր լինում։

Դժվար է ասել, թե երբ է հիմնադրվել Մամախաթունը։ Բայց այստեղ եղած արաբական կառույցների ավերակներից պետք է ենթադրել, որ այն վաղ միջնադարում արդեն գոյություն ուներ։

Արևմտյան Հայաստանի հետ միասին Մամախաթունը ևս թուրքական տիրապետության տակ է անցել XVI դարում։ Ռուսական զորքի կողմից երկու անգամ այն ազատագրվել է թուրքական լծից, մեկը 1877—1878 թվականների ռուս-թուրքական պատերազմի ժամանակ, բայց Բեռլինի 1878թ. պայմանագրով նորից էր անցել Թուրքիային, մեկ էլ կարճ ժամանակով 1916 թվականին, երբ այստեղ այլևս գրեթե ոչ մի հայ չկար, 1915թ. եղեռնի ժամանակ բոլորը տեղահան էին արվել։ Հետագա երկու տարում տեղահանված հայերից 20 ընտանիք՝ 124 բնակիչներով նորից էին վերադարձել իրենց հայրենի քաղաքը։

Ընդհանրապես Մամախաթունը շատ սակավամարդ էր։ 1876—1878 թվականներին ուներ ընդամենը 430 տուն բնակիչ՝ մեծագույն մասը թուրքեր, իսկ 1890-ական թվականներին՝ 150 տուն. 1877—78թթ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ նրա հայ բնակչության մեծ մասը գաղթել էր Արևելյան Հայաստան և նրա հարևան շրջանները։ Այնպես որ, եթե վարչական կենտրոն չլիներ, ապա հազիվ թե Մամախաթունը նույնիսկ գյուղաքաղաք համարվեր։

Բնակչության հիմնական զբաղմունքը գյուղատնտեսությունն էր։ Քաղաքի շրջակայքում փռված է համանուն (կամ Դերջանի) դաշտը, որը համարվում է Հայկական լեռնաշխարհի արգավանդ հարթավայրերից մեկը։ Այստեղ գործում էին տեղական նշանակություն ունեցող մի շարք արհեստներ, որոնց արտադրանքը սահմանափակվում են գյուղատնտեսական գործիքներով, տնային գործածության զանազան իրերով. ինչպես և գործվածքներով։ 1890-ական թվականներին գյուղաքաղաքում կային 40—50 կրպակներ ու արհեստանոցներ։ Մամախաթունը ճանապարհով կապված էր Էրզրումի և Երզնկայի հետ։ Այստեղ կար մի բավական բարեկարգ, խոշոր ու քարակերտ

իջևան-հյուրանոց, որի կառուցումը ավանդաբար վերագրում էին թուրքական ինչ-որ փաշայի մորը։

Հնագիտական և պատմաճարտարապետական առումով Մամախաթունն ուշադրության արժանի հուշարձաններ գրեթե չունի։ Իբրև վարչական կենտրոն և թուրքական կայազորի տեղադրավայր այստեղ կառուցվել էին զինվորական մի քանի կացարաններ։ Գյուղաքաղաքի շուրջը կային բնակավայրի և առանձին կառույցների ավերակներ, ինչպես և բազմաթիվ հին գերեզմանոցներ։ Այստեղ, ինչպես ասվեց, կային նաև արաբական շրջանի կառույցների մնացորդներ։

Մամախաթունի հայերն ունեին իրենց եկեղեցին, որը մինչև առաջին համաշխարհային պատերազմը կանգուն էր և գործում էր։

XIX դարում և XX-ի սկզբներին Մամախաթունում կար հայկական մեկ դպրոց մի քանի տասնյակ աշակերտներով և 2—3 ուսուցիչներով։ Այստեղ է ծնվել (1909թ.) գրականագետ Գառնիկ Ստեփանյանը։

## ՄԱՆԱԶԿԵՐՏ

Մանազկերտ քաղաքը գտնվում էր այժմյան նույնանուն գյուղի տեղում, Մանազկերտի ընդարձակ հարթության գրեթե կենտրոնում, Արածանի (Արևելյան Եփրատ) գետի միջին հոսանքում, դրա ձախ ափին։ Քաղաքից լավ երևում են Սիփանն ու Ծաղկանց լեռնահամակարգին պատկանող՝ Կոտեվան լեռնազանգվածը։ Քաղաքի գրաված տարածքում ու դրա շրջակայքում բխում են սառնորակ աղբյուրներ և առաջացնում դեպի Արածանի հոսող առվակներ։ Քաղաքի մոտով է հոսում Արածանիի ձախակողմյան Պատնոց կամ Մանազկերտի գետը։ Մանազկերտի շրջակայքում փռված դաշտը պատած է հարթ, մի քանի շերտ կազմող սև գույնի հսկայական քարերով։ Կիսաավանդական պատմության համաձայն, հնագույն ժամանակներում այստեղից են տարել (Վանա լճի վրայով) Վանի և լճափնյա մի քանի ուրիշ քաղաքների շինարարության համար օգտագործված սև քարերը, որոնց երկարությունը երբեմն հասնում է մինչև վեց մետրի։

Մատենագրության մեջ Մանազկերտ քաղաքը կոչված է գյուղ կամ գյուղաքաղաք, իսկ երբեմն էլ՝ բերդաքաղաք։ Գոյություն ունի հայ ժողովրդի պատմության հնագույն ժամանակներից։ Ուսումնասիրողներից ոմանք ենթադրում են, որ Մանազկերտը ուրարտական առաջին թագավոր Արամեի նույն Արզաշկուն մայրաքաղաքն էր, որ հիմնադրվել էր IX դարի առաջին կեսին (մ. թ. ա.)։ Անառարկելի է այն տեսակետը, ըստ որի Մանազկերտ անունը կապված է ուրարտական Մենուա թագավորի (մոտ 810—778թթ. մ. թ. ա.) անվան հետ և հենց այդ թագավորն էլ հիմնել է այս քաղաքը։ Այստեղ պահպանվել են Մենուա թագավորի սեպագիր մի քանի արձանագրությունները, որոնք զետեղված են ուրարտական արձանագրությունների ժողովածուներում։

Հայկական հնագույն ավանդության համաձայն, Մանազկերտը [illegible] (մ. թ. ա.) հիմնադրել է Հայկ[illegible] որդի Մանավազը և իր անունով կոչել Մանավազակերտ, որը հետագայում ավելի կրճատ ձևով կոչվել է Մանազկերտ։ Ավանդության պատմական հիմքն այն է, որ հնագույն ժամանակների պատմության այդ պահը դիտվում է իբրև հայ ժողովրդի ավանդական պատմության դրվագներից մեկը։

Հայ մատենագրության սկզբնավորումից ի վեր Մանազկերտը հիշատակվում է մեր պատմագիրների երկերում (Փավստոս Բուզանդ, Մովսես Խորենացի, Ստեփանոս Ասողիկ, Լաստիվերտցի, Ուռհայեցի և ուրիշներ) և օտար հեղինակների մոտ (Հովհաննես Սկիլիցես և ուրիշներ)։

Մանազկերտը մտնում էր Տուրուբերան «աշխարհի» Ապահունյաց (ըստ ոմանց՝ Հարք) գավառի մեջ և համարվում էր [illegible]։ Այստեղ էր գտնվում Մանավազյան նա-խարարների աթոռանիստը։ Նոր ժամանակներում Մանազ[կերտը] Բիթլիսի նահանգի Բիթլիսի գավառի Մանազկերտի գա[վառ]ակի (կազա) կենտրոնն էր։

Բյուզանդական Հովհաննես Սկիլիցես պատմագիրը (XI [դ.]) հաղորդում է, որ Մանազկերտը ամենաամուր և անառիկ [քա]ղաքն էր ամբողջ Հայաստանում, որ իր ապրած ժամանա[կնե]րում քաղաքն ունեցել է սև քարից կառուցված եռաշարք [աշ]տարակավոր պաշտպանական ամրակուռ պարիսպներ, ո[րոնք] ունեցել են հինգ դուռ։ Մանազկերտը XI—XII դարերում Շ[ահ]արմենների սուլթանության երկրորդ կենտրոնն էր և իր [նշա-]

նակությամբ միայն զիջում էր դրա աթոռանիստ Խլաթին։ Քաղաքն ուներ տասնյակների հասնող արհեստներ և բավական ծավալուն առևտուր։ Արածանիի հովտով ու Մանազկերտի դաշտով ձգվող ճանապարհներով նա կապված էր Հայաստանի մի շարք այլ քաղաքների հետ։ Նրա բնակչության թիվը XI դարի երկրորդ կեսում հավանաբար հասել էր մի քանի տասնյակ հազարի, բայց այն այնուամենայնիվ Հայաստանի մարդաշատ, խոշոր քաղաքների թվին չէր պատկանում։

Ուշադրության արժանի են Մանազկերտի քաղաքական պատմության հետևյալ պահերը։ Տարոնի ընդարձակ իշխանությունը գրավելուց երկու տարի անց, 968 թվականին, բյուզանդական զորքը նվաճում է Մանազկերտը։ 1000 թվականին Վասիլ 2-րդ կայսրը այն շնորհում է Արծրունի իշխաններին։ Քաղաքը սելջուկների կողմից առաջին անգամ հարձակման է ենթարկվում 1054 թվականին։ Սելջուկյան սուլթան Տուղրիլը մեծ բանակի գլուխ անցած ամեն կերպ փորձում է գրավել Մանազկերտը, սակայն նրա գրոհներն անցնում են ապարդյուն։ Քաղաքի կայազորն ու բնակիչները ոմն Վասակ իշխանի գլխավորությամբ համառորեն պաշտպանվում են և, մեծ զոհեր պատճառելով սելջուկյան զորքին, նրան հարկադրում նահանջել։

Սակայն սելջուկների այդ նահանջը մասնակի բնույթ ուներ։ Նրանք շարունակում էին իրենց նվաճումները և աստիճանաբար շարժվում դեպի արևմուտք։ Հյուսիսային Հայաստանը գրավելուց հետո, սելջուկյան սուլթան Ալփ-Արսլանը, Տուղրիլ սուլթանի որդին, մի նոր արշավանք է կազմակերպում դեպի երկրի խորքերը։ Լսելով այդ մասին, բյուզանդական կայսր Ռոմանոս Դիոգենեսը հարյուրհազարանոց մեծ բանակի գլուխ անցած շտապում է Ալփ-Արսլանի դեմ։ 1071 թվականի օգոստոսի 10-ին Մանազկերտի մոտ տեղի է ունենում արյունահեղ ճակատամարտ, որում բյուզանդական ահռելի բանակը կրում է ճակատագրական խայտառակ պարտություն, ինքը կայսրն էլ գերի է ընկնում սելջուկների ձեռքը և ազատ է արձակվում միայն մեծ փրկագին վճարելուց հետո։ Ճակատամարտի ընթացքում ավերվում, սրի է մատնվում և կողոպտվում է բարգավաճ Մանազկերտ քաղաքը։ Դրանից հետո սելջուկները շուտով կայսրությունից գրավում են նաև Կարինը, Երզնկան, Փոքր Հայքը։

Մանազկերտի 1071 թվականի ճակատամարտից ի վեր փաս-

*տորեն քաղաքը սկսում է շարունակ անկում ապրել և հետագայի որոշ կարճատև վերելքները գրեթե էական նշանակություն չեն ունենում նրա համար, նա այլևս չի հասնում իր նախկին փառքին։ Ավելին, XVI—XVIII դարերում երբեմնի մեծահարուստ քաղաքը վերածվում է սովորական գյուղաքաղաքի, իսկ առաջին համաշխարհային պատերազմից հետո՝ անշուք գյուղի։*

*Խլաթի բնակչության քանակի նման, Մանազկերտի բնակչության թվի մասին նույնպես արժանահավատ տեղեկություններ չկան։ Ոմանց կարծիքով, նա նախկինում ունեցել է 6000 տուն (այսինքն մոտավորապես 30—35 հազար բնակիչ)։ Իսկ ըստ որոշ աղբյուրների, 1915 թվականին գյուղաքաղաքն ունեցել է 5000 բնակիչ, որի մեծ մասը՝ հայեր։*

*Նոր ժամանակների Մանազկերտի բնակիչների զբաղմունքները կազմում էին երկրագործությունը՝ հատկապես հացահատիկների մշակությունը, և մասամբ առևտուրն ու արհեստագործությունը։ Այստեղ կային մանրածախ առևտրի մի շարք կրպակներ։*

*Մանազկերտում տեղի է ունեցել եկեղեցական երկու ժողով։ Դրանցից մեկը, որը բնույթով հայ-ասորական համագումար-ժողով էր, կայացել է 726 թվականին, իսկ մյուսը՝ սովորական հայկական եկեղեցական ժողով և կայացել էր դրանից 7 տարի առաջ՝ 719 թվականին Հովհան Օձնեցու ղեկավարությամբ։*

*Քաղաքի հին հուշարձանները համեմատաբար լավ են պահպանված։ Պահպանված են արևելյան ծայրամասում գտնվող վաղեմի միջնաբերդի պաշտպանական պարիսպները, աշտարակները, ինչպես և մյուս կոթողների ավերակները։ Հին Մանազկերտն ամբողջապես կառուցվել էր տեղական սև քարից։ Առանձնապես լավ է պահպանվել միջնաբերդի ամենամեծ աշտարակը, որը կառուցվել է XI դարում։*

*Քաղաքն ուներ երկու եկեղեցի, որոնցից մեկը երեք խորանանի ս. Աստվածածինն էր, իսկ մյուսը ս. Սարգիսը։ Մինչև առաջին համաշխարհային պատերազմը քաղաքում գործում էր հայկական մեկ դպրոց։*

*Մանազկերտում է ծնվել IV դարի հայոց կաթողիկոսներից մեկը՝ Ներսես Մեծին փոխարինած Շահակ Մանազկերտցի կաթողիկոսը (373—377)։*

## ՄԵԾԿԵՐՏ

Պատմական Հայաստանի այս գյուղաքաղաքը, որ տարբեր հեղինակների մոտ համարվում է նաև գյուղ, ամրոց, բերդ, ավան, բերդաքաղաք, հնում սովորաբար կոչվել է Մանծկերտ։ Այն հիշատակվում է նաև Մաղզկերտ տարբերակով, և այդ պատճառով որոշ հեղինակներ շփոթել են Մանազկերտի հետ, որը ակնհայտ սխալ է։ Թուրքերը կոչել են Կարաչոր։

Գտնվում է Դերսիմում, Բալու քաղաքից ոչ հեռու, Փերի ավանից մոտ 30 կմ հյուսիս-արևմուտք, իսկ Խոզաթից՝ 40 կմ հարավ-արևելք, ապառաժներիստորոտում։ Բնականից դիրքն ամուր է, բոլոր կողմերից շրջապատված բարձրադիր լեռներով։

Հնում մտնում էր Մեծ Հայքի Չորրորդ Հայք աշխարհի Բալահովիտ գավառի մեջ։ Ոմանք այն տեղադրում են նույն աշխարհի Խորձյան գավառում, իսկ Վարդան Արևելցին համարում է դարձյալ նույն աշխարհի Շահունյաց Ծոփք գավառի բերդերից, որ անընդունելի է։ Ներկայումս Խարբերդի նահանգի (վիլայեթ) Դերսիմի գավառի (սանջակ) Մազկերտի գավառակի կենտրոնն է։

Դժվար է ասել, թե երբ է հիմնադրվել Մեծկերտը։ Սակայն Վարդան Արևելցու, Սամվել Անեցու և մյուս պատմագիրների վկայություններից հայտնի է դառնում, որ այն միջին դարերում ավելի բարեկարգ ու մարդաշատ էր, քան նոր ժամանակներում։ Մեծկերտը բավական բարեկարգ քաղաք էր մանավանդ XII—XIV դարերում, երբ այն և՛ ամուր բերդ էր, և՛ առևտրի ու արհեստագործության նշանակալի կենտրոն։

XIX դարի առաջին կեսում Մեծկերտը զուտ հայաբնակ էր, այդ հարյուրամյակի սկզբում նա ուներ 800 բնակիչ, 1872—73թթ. 80 տուն հայ և 60 տուն քուրդ ու թուրք բնակիչ, իսկ XX դարի սկզբներին նրա բնակչության թիվը հասնում էր ավելի քան 4100 մարդու, որից շուրջ 3890-ը՝ հայեր[18]։ Նրա բնակիչները, հողագործությունից և անասնապահությունից բացի, զբաղվում էին նաև արհեստներով (կտավագործություն, երկաթագործություն և այլն) և տեղական մանրածախ առևտրով։ Գյուղաքաղաքն ուներ իր շուկա-հրապարակը, որի շուրջը գտ-

18 «Համառոտութիւն ազգային կենտրոնական վարչության 1872—1873 ամի», Գ. Հալաջյան, Դերսիմի հայերի ազգագրությունը, Երևան, 1973, էջ 85—86։

նըվում էին առևտրական ու արհեստավորական առանձյակ կըր-պակներ և արհեստանոցներ։

Մեծկերտը միջնադարում հայտնի է եղել իր բերդով, որի ավերակները պահպանված են մինչև օրս։ Այն գտնվում էր գյուղաքաղաքի հարավարևմտյան կողմում, քարաժայռի վրա, շրջափակված սրբատաշ քարերով շարված պաշտպանական պարսպով, որը խարխուլ վիճակում հասել է մեզ։ Պարսպապատի քարերը միացած են կրաշաղախով և երկաթե գամերով, որոնց միացման անցքերը լցված են հալած կապարով։ Բերդն ունեցել է մի քանի գաղտնի ստորերկրյա անցքեր, որոնցից մեկը տանում էր դեպի մոտակա գետակը՝ պաշարումների ժամանակ ջուր վերցնելու համար։ Կառուցվել էր միջին դարերում հայերի ձեռքով և կոչվում էր նաև սուրբ Սարգսի բերդ։ XIX դարի երկրորդ կեսում բերդն արդեն կորցրել էր իր ռազմական նշանակությունը։

XIX դարում և XX-ի սկզբներին Մեծկերտն ունեցել է հայկական երկու կանգուն եկեղեցի՝ ս. Աստվածածին (կամ ս. Աստվածամայր) և ս. Հակոբ անուններով։ Ուներ նաև մի գեղեցկաշեն մզկիթ։ Բացի դրանցից, կային 7—8 ավերակ եկեղեցիներ, որոնք գտնվում էին գյուղաքաղաքի հարավարևելյան կողմում։ Այդ կողմում էր գտնվում նաև ավերակների կույտի վերածված՝ Ծերմակա վանքը։ Այստեղ, ժայռակերտ մի սենյակի պատի վրա, պահպանված է ուրարտական Ռուսա Զ-րդի արձանագրությունից մի փոքրիկ հատված։ Մեծկերտի մոտ է գտնվում Քառասուն Մանկունք ժայռափոր եկեղեցին, որը հավանաբար նույնն է Մեծկերտ վանքի հետ։ Այդ եկեղեցին հիշատակվում է ձեռագրաց ցուցակում և եղել է գրչության կենտրոն։

XIX դարում և XX-ի սկզբներին Մեծկերտում գործում էր հայկական վարժարան, որը 1872—73թթ. ուներ 40 աշակերտ և 3 ուսուցիչ։

Ներկայումս Մեծկերտ գյուղաքաղաքն իր վաղեմի բերդով, եկեղեցիներով ու ճարտարապետական նշանակալի այլ կառույցներով վերածվել է ավերակների կույտի։

## ՄՈԿՍ

Այժմ թուրքերը կոչում են Մոկուս և սովորական գյուղ է։ Հիշատակվում է իբրև ավան, գյուղաքաղաք, բերդաքաղաք, քաղաքավան։ Այստեղ Ամենափրկիչ վանքում պահպանվել է Գասպար անունով ոմն մոգի գերեզմանը, որի հետ էլ ոմանք կապում են Մոգս-Մոկս անվան ծագումը։ Դա պարզապես ժողովրդական-ավանդական ստուգաբանություն է և չի կարող համարվել գիտական։ Այդ անվան առաջացումը սովորաբար կապում են հնագույն նույնանուն ցեղի, ժողովրդի անվան հետ, որ ընդունելի է։

Մոկսը գտնվում է Վանա լճից հարավ, Ոստանից մոտ 38կմ հեռավորությամբ, Արևելյան Տիգրիսի աջակողմյան վտակ Մոկս գետի եզերքին, սարավանդի վրա, որը բոլոր կողմերից պատած է խիստ զառիվեր լեռներով։ Գյուղաքաղաքը թաղված էր այգիների կանաչ ծովի մեջ։ Կլիման մեղմ է, առողջարար, ձմեռը տևում է շուրջ 5 ամիս։ Փարթամորեն աճում են ընկուզենին, տանձենին, խնձորենին, սալորենին։ Ջրառատ է. կան բազմաթիվ սառնորակ աղբյուրներ և առվակներ, որոնք թափվում են քաղաքավանի միջով հոսող Մոկս գետի մեջ։

Հնում կոչվել է Մոկք և եղել է Մոկաց աշխարհի Մոկք Առանձնակ գավառի կենտրոնը։ Այն համարվում էր Մոկաց աշխարհի տերերի՝ Մոկաց նախարարների ոստանը։ IX—XI դարերում համանուն գավառի և աշխարհի հետ միասին ենթարկվում էր Արծրունի իշխաններին-թագավորներին, իսկ դրանից հետո նախ անցնում է Բյուզանդիային, ապա այստեղ հաջորդաբար իրենց տիրապետությունն են հաստատում սելջուկները, մոնղոլները, թուրքմենական ցեղերը, իսկ XVI դարից՝ օսմանյան թուրքերը և այդ ժամանակներից ի վեր այն Վանի նահանգի Մոկս կամ Մոկուս գավառի (սանջակի) կենտրոնն է։ Մոկսում դարեր շարունակ պահպանվել էին հայկական մի քանի մանր իշխանությունների մնացորդներ։ Նրա մասին հիշատակություններ ունեն հայ և օտարազգի բազմաթիվ մատենագիրներ, ճանապարհորդներ և այլ հեղինակներ։ Մոկսն էլ Պատմական Հայաստանի այն բնակավայրերից է, որ միջին դարերում, մանավանդ զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանում՝ IX—XI դարերում, ավելի բարգավաճ ու մարդաշատ

է եղել քան Հետագայում, իսկ XIX դարի վերջերից և Հաջորդ Հարյուրամյակի սկզբներից, ինչպես ասվեց, անշքանալով, վերածվել է սովորական գյուղի, թեպետ դարձյալ մնում է իբրև գավառի կենտրոն։

Միջին դարերում Մոկսը միատարր Հայաբնակ բերդաքաղաք էր, նոր ժամանակներում այստեղ Հայերից բացի բնակվում էին նաև քրդեր։

XIX դարի սկզբներին ուներ 2700 բնակիչ, նույն դարի 70-ական թվականներին՝ 2000 բնակիչ, իսկ XX դարի սկզբներին՝ 200 տուն մոտ 1600 բնակիչներով։ Այստեղի Հայերը նույնպես երկու անգամ ենթարկվել են թուրքերի կազմակերպած ջարդերին՝ 1895—96թթ և 1915թ. մեծ եղեռնին։ Սակայն Մոկսի և նրա շրջակայքի գյուղերի Հայ բնակչության զգալի մասը, որ եռանդուն մասնակցություն է ունեցել Վանի Հերոսական ինքնապաշտպանական կռիվներին, փրկվել է թուրքական յաթաղանից և այդ կողմերի տասնյակ Հազարավոր Հայերի Հետ միասին ռուսական զորքի ու Հայ կամավորական ջոկատների ուղեկցությամբ գաղթել Արևելյան Հայաստան։

Մոկսի բնակչության զգալի մասը զբաղվում էր գյուղատնտեսությամբ, Հատկապես՝ այգեգործությամբ ու մեղվաբուծությամբ։ Այստեղ կային տոՀմիկ շատ մեղվաբույծներ, իսկ ծաղկաշատ, թավշապատ բնությունը, խաղաղ մթնոլորտը մեծապես նպաստում էին մեծ բերք ստանալուն։ Պետք է նկատել, որ Սովետական Հայաստանում բնակված շատ մոկսեցիներ շարունակում են զբաղվել իրենց սիրած մեղվաբուծությամբ։

Մոկսի Հայության մեծագույն մասն զբաղվում էր արՀեստագործությամբ ու առևտրով։ Այստեղ առանձնապես տարածված էին մանածագործությունը, ջուլՀակությունը, ներկարարությունը։ XX դարի սկզբին ուներ մի քանի տասնյակ խանութ ու կրպակ և մի շուկա-Հրապարակ։ Առևտրական կապեր ուներ Շատախի, Ոստանի, Բիթլիսի և այլ քաղաքների Հետ։

Մինչև XIX դարի վերջերը Մոկսն ունեցել է չորս թաղ, որոնցից երկուսը գտնվում էին գետի աջ ափին, իսկ երկուսը՝ ձախ։ XX դարի սկզբին առաջանում է ևս մի նոր թաղ և քաղաքն արդեն ուներ 5 թաղ՝ Քաղաքի թաղ, որտեղ գտնվում են վարչական շենքերը, 10 խանութ ու կրպակ և մի Հրապարակ, Մանգիկնոց (կամ Մանգկանց) թաղ, որը քրդաբնակ էր, ԱբրաՀամանց, որը Համարվում էր գյուղաքաղաքի արվարձանը, Աղ-

ձունց թաղ և Դաշտ թաղ։ Դրանք բոլորը, բացառյալ Մանդիկոնց թաղի, հայաբնակ էին և յուրաքանչյուրն ուներ իր թաղային եկեղեցին։

Բուն քաղաքից հյուսիս, բարձր լեռան գագաթին, պահպանված են մի հին բերդի ավերակներ։ Կասկած չկա, որ այն գոյություն է ունեցել Մոկաց իշխանության ժամանակներից և բացառված չէ, որ հենց այդ բերդն է եղել նրանց ոստանը։ Բերդն անմատչելի է եղել բոլոր կողմերից։ Դեպի բերդը տանող միայն մի ճանապարհ է եղել, այն էլ նեղ, ժայռակերտ ու ոլորապտույտ կածան էր։

Գյուղաքաղաքում գտնվում էր Ամենափրկիչ մենաստանը, իսկ շրջակայքում Ականդաշտ հայտնի վանքն էր, որ XX դարի սկզբներին արդեն ամայի ու ավերակ էր։ Մոկսում գրվել կամ ընդօրինակվել են ձեռագրեր։ Մեզ հայտնի է դրանցից մեկը՝ մի Ավետարան, որ գրվել է Հաթուշի քույր Զարմանդուխտի պատվերով գրիչ Հովհաննեսի կողմից 1490 թվականին և նվիրվել քաղաքի ս. Աստվածածին (կամ Անջողաց) եկեղեցուն։

## ՄՈՒՇ

Մուշը կարևոր դեր է խաղացել հատկապես Արևմտյան Հայաստանի տնտեսական, քաղաքական ու մշակութային կյանքում։

Այն գտնվում է համանուն արգավանդ Մշո դաշտի հարավային մասում, Հայկական Տավրոս լեռնաշղթայի հյուսիսային ստորոտին, Կորդուք և Ծիրանակատար ոչ բարձր լեռների փեշերին, թեք սարալանջի վրա։ Նրա հեռավորությունը Արածանիից (Արևելյան Եփրատ) մոտ 20—25 կմ է։ Քաղաքի հարավային կողմում ձգվող լեռնապարը և հեռու արևելքում բարձրացող Նեմրութ լեռնագագաթը մի առանձին գեղեցկություն են տալիս նրա համայնապատկերին։ Մուշից առանձնապես հմայիչ է երևում Մշո դաշտի «փարոսը»՝ Նեմրութը, Հայկական լեռնաշխարհի գեղեցկագույն լեռնագագաթներից մեկը։ Մուշի միջով հոսում է Արածանիի ձախակողմյան վտակ Մեղրագետի օժանդակներից մեկը՝ քաղաքը բաժանելով երկու մասի։ Այդ գետակը աշխատեցնում

էր 10—12 ջրաղաց և ոռոգում շրջակայքի ցանքատարածությունները։ Ընդհանուր առմամբ քաղաքը ջրառատ էր։ Եվ մասամբ այդ է պատճառը, որ նրա շրջակայքի լեռնալանջերն ու քաղաքին հարող դաշտերը ամբողջապես թաղված են եղել ծառաստանների, մրգատու և խաղողի այգիների մեջ, որոնցից այն կողմ բերրի դաշտերի ցանքատարածություններն էին ու ծխախոտի պլանտացիաները, որոնցով այնքան հայտնի էր Մշո դաշտը։ Գրեթե առանց բացառության բոլոր այգիներում տեղադրված էին մեղվափեթակներ և ունեին իրենց հնձանները։ Ամռանը Մշո դաշտում զգալի է ցողում, որ անհիշելի ժամանակներից ի վեր տեղացիները հավաքել ու պահել են իբրև ձմռան «մեղրի» պաշար։ Մշո դաշտում ամռանը, առավոտյան վաղ սառը օդի շերտերը հեռվից կապույտ երկնքի նման են՝ թողնելով պարզկա ջրերով լճի տպավորություն։

Մուշ անունը մենք ժառանգություն ենք ստացել հնագույն ժամանակներից ի վեր, և հազիվ թե հնարավոր է հայտնի լեզուներով դրա ծագումն ու իմաստը վերջնականապես ստուգաբանել։ Սակայն ժողովուրդը, առանձին պատմագիրներ ու ուսումնասիրողներ յուրաքանչյուրն իր ձևով փորձել է իմաստավորել, բացատրել Մուշ անվան առաջացումը, այն կապելով բնական որոշ երևույթների, քաղաքական դեպքերի, կամ հնագույն արձանագրություններում հիշատակվող ցեղերի ու աշխարհագրական անունների հետ։ Ժողովրդական ամենահին ավանդություններից մեկի համաձայն Մուշ անունը համարվում է «մշուշ»-ից առաջացած՝ նկատի ունենալով այն, որ տարին բոլոր առավոտները Մշո դաշտը սովորաբար մշուշապատ է լինում։ Ժողովուրդը նույնիսկ փորձել է բացատրել նաև այդ մշուշի առաջացումը։ Ըստ ավանդության, երբ մշուշը արարում էր սիրո աստվածուհին՝ Աստղիկը, Արածանիում լողանալու ժամանակ՝ երկրի տարբեր մասերից նրա մոտ սեր հայցելու եկած երիտասարդներից իր մերկությունը շղարշապատելու համար։ Հեթանոսական ժամանակներից մեզ հասած այդ (կարելի է ասել՝ բանաստեղծական) ավանդությունը տարբեր ժամանակներում և տարբեր ձևով մտել է ժողովրդական այլևայլ զրույցների ու նոր ավանդությունների մեջ՝ հիմք դառնալով մի շարք տարբերակների։ Թվում է, թե հենց այդ ավանդության ճնշման տակ է, որ թուրք հեղինակ Քյաթիբ Չելեբին Մուշը թարգմանել է «բուք» իմաստով, իսկ ոմանք էլ «մուշը» հայե-

*րեն համարել են «խոնավ թաց գետին, ժամուռ»։ Այդ նույն ավանդության արձագանքը կարելի է տեսնել նաև՝*

*«Մշո դաշտ մշուշ է,*

*Իր հողն ու ջուրն անուշ է» հայրենասիրական երգի մեջ։*

*Ոմանք, նկատի ունենալով, որ Մուշում քաղաքական շատ դեպքեր են տեղի ունեցել, որոնց ընթացքում բնակիչները տվել են մեծ թվով զոհեր, հակված են կարծելու, թե այդ անունը կապված է «մաշվել» (սակավամարդ դառնալ) բայի հետ։ Իսկ թուրքերը Մուշը հաճախ համարում են «մեշե»-անտառ բառից ծագած, մատնացույց անելով այն հանգամանքը, որ քաղաքի շուրջը կաղնիների ծառերը անտառ-պուրակ են կազմում։ Դրանք, անշուշտ, անտրամաբանական են և իրենց հիմքում չունեն արժանահավատ որևէ փրղություն։ Առանձնապես հիմքից ու պատմականությունից զուրկ է թուրքական ավանդությունը. չէ որ XI—XII դդ. առաջ թուրք-սելջուկները այստեղ ամենևին գոյություն չունեին, իսկ Մուշը հայտնի է դեռևս Արշակունիների թագավորության շրջանից։ Կարծիք է հայտնվել նաև այն մասին, որ իբր Մուշը կապված է Մուշեղ անձնանվան (նկատի ունենալով Տարոնի վեպի հերոս Մուշեղ Մամիկոնյանին) կամ ուղղակի հայերեն «մաշվել» բայի հետ, որոնք նույնպես գիտական առումով հետաքրքրություն չեն ներկայացնում։*

*Հնագույն ժամանակների պատմությամբ զբաղվող մասնագետներից շատերը հակված են կարծելու, որ Մուշ տեղանունը ամենայն հավանականությամբ մեզ է հասել խեթական և ասուրական ժամանակներից։ Նրանք գտնում են, որ այդ տեղանունը անմիջական կապի մեջ է գտնվում ասուրական Մուշկի երկրանվան և խեթական Մուշունի աշխարհագրական անվան հետ։ Ոմանք նույնիսկ այն նույնացնում են ասորեստանյան մի այլ, ավելի հայտնի, տեղանվան՝ Մուսասիրի հետ, որն անընդունելի է։ Մեզ թվում է, որ ամենից հավանականն այն ենթադրությունն է, ըստ որի Մուշ քաղաքի (և Մշո դաշտի ու գետի) անունը առաջացած պետք է լինի հնագույն ժամանակներում Հայաստանի սահմաններում բնակություն հաստատած ցեղերից մեկի՝ մուշկ, մոսոխ կամ մոսխերի անունից, որոնց հետ է կապված նաև Մեծ Հայքի «աշխարհներից» մեկի՝ Մոկքի և համանուն նախարարական տան անունները։*

*Մուշն իր երկարաձիգ պատմության ընթացքում հիշատակ-*

վում է իբրև տարբեր կարգի բնակավայր՝ երբեմն բերդ, երբեմն՝ ավան, գյուղաքաղաք, քաղաքագյուղ։ Սակայն IX—X դարերից այն արդեն մեր մատենագիրների մոտ ամենուրեք հիշատակվում է իբրև քաղաք։

Մուշն ականատես է եղել քաղաքական շատ դեպքերի, ազատագրական բուռն շարժումների, երբեմն լինելով ուղղակի նրանց կիզակետում։ Ըստ մեզ հասած աղբյուրների, Մուշ քաղաքը Տարոն գավառի արևելյան մեծ մասի հետ միասին նախ պատկանում էր Սլկունիներին, ապա անցել է Մամիկոնյանների այն ճյուղին, որը կատարում էր սպարապետության պաշտոնը՝ աթոռանիստ ունենալով նույն գավառում գտնվող Ողական ամրոցը։ Սակայն Մուշի պատմությունը սկսվում է խոր հնությունից։ Այստեղ հայտնաբերված է ուրարտական Մենուա թագավորի (810—778 թթ. մ. թ. ա.) սեպագիր արձանագրությունը։ Քաղաքի շրջակայքում նկատվում են կիկլոպյան ամրոցների հետքեր։

VIII դ. վերջին քառորդում, արաբական խալիֆայության դեմ ուղղված ժողովրդական ապստամբությունից հետո, Մուշ քաղաքը Տարոն գավառի հետ միասին անցնում է Բագրատունիների ձեռքը, որոնք այստեղ հիմք են դնում մի իշխանության, որը հետագայում՝ XI դ. հավանաբար նորից էր անցել Մամիկոնյաններին և իր մեջ Տարոնից բացի ընդգրկում էր նաև Սասունի մեծ մասն ու Խութը։ Հավանական է համարվում, որ Մուշը այդ ընդարձակ իշխանության կենտրոնն է եղել։

Միջնադարյան Հայաստանի պատմության մեջ Մուշն առանձնապես կարևոր դեր է խաղացել 849—854 թթ. ժողովրդական-ազատագրական պատերազմի ժամանակ։ Հայաստանում բռնկված ապստամբությունն արյան մեջ խեղդելու համար՝ արաբական մի ստվարաթիվ բանակ Յուսուփ ոստիկանի հրամանատարությամբ, Հարավային Հայաստանն ավերելուց հետո, 851—852թթ. ձմռանը դադար է առնում Մուշում, որպեսզի վաղ գարնանը շարունակի իր ասպատակությունները։ Արաբական ոստիկանը խաբեությամբ իր մոտ է կանչում Տարոնի տեր Բագարատ Բագրատունուն և փաստորեն կալանավորում նրան։ Թվում է, թե ճակատագրից անհնար էր խուսափել, երկիրը պետք է ենթարկվեր Յուսուփի նոր ավերումներին։ Սակայն դեպքերն այլ ընթացք են ստանում։ 852 թ. վաղ գարնանը Սասունի և Խութի ազատասեր ապստամբ բնակչությունը Դավթի ու Խութեցի Հովնա-

նի գլխավորությամբ իջնում է դաշտ և հանկարծակի հարձակվելով արաբական բանակի վրա՝ ջախջախում է այն։ Սպանվում է նաև Յուսուֆը և Հայաստանը մի պահ ազատ շունչ է քաշում մինչև Բուղայի ավելի արյունալի ասպատակությունները։ Հայտնի է, որ սասունցիների ու խութեցիների այդ դյուցազնական կռիվը դարձել է «Սասնա ծռեր» հերոսավեպի կենտրոնական ճյուղի՝ «Սասունցի Դավթի» հիմնական սյուժեն։

Թուրքական ծանր տիրապետության շրջանում (XVI—XIXդդ.) Մուշը ոչ մի հնարավորություն չուներ մեծ ու մարդաշատ քաղաք դառնալու։ Նա այդ ժամանակներում մնացել էր այնպիսին, ինչպիսին էր Յակուտի ժամանակներում։ Իսկ վերջինս Մուշի մասին հաղորդել է, որ «փոքր քաղաք է Խլաթի մարզերում, Հայաստանի հողի վրա»։ Այդ մռայլ ժամանակներում Արևմտյան Հայաստանի քաղաքները, որոնց թվում և Մուշը, մի կերպ իրենց խղճուկ գոյությունը պահպանում էին XVI—XVII դդ. պատերազմների ժամանակ ռազմական մատակարարումների շնորհիվ։

Մուշը Արևմտյան Հայաստանի կյանքում զգալի դեր է խաղացել նաև նոր ժամանակներում։ Այստեղ, Զեյթունի հայտնի ապստամբության ազդեցության տակ, XIX դ. 60-ական թվականներին տեղի են ունեցել զինված ելույթներ։

Հին և միջին դարերի Մուշի բնակչության թվի վերաբերյալ շատ թե քիչ արժանահավատ տեղեկություններ չեն պահպանվել։ Միայն ենթադրվում է, որ X—XIII դարերում, երբ Հայաստանի քաղաքներն ապրում էին բուռն զարգացման շրջան, Մուշի բնակչության թիվը հավանաբար հասել է 20—25 հազար մարդու։

XIX դ. սկզբներին Մուշը ունեցել է ընդամենը 800—1000 տուն։ 1880—1914 թթ. քաղաքն ունեցել է մոտ 20000 բնակիչ, որից 11000-ը՝ թուրքեր ու քրդեր, իսկ 9000-ը՝ հայեր[19]։ Տեղում աշխատանքի սակավության պատճառով իրենց օրվա հացը վաստակելու համար Մուշից պանդխտության են գնացել հազարավոր մարդիկ։ Աղբյուրները հաղորդում են, որ Մուշի գավառից միայն 1877 թ. պանդխտության են գնացել 17000 մարդ։ Նրանք գնում էին Կ. Պոլիս, Ռուսաստանի զանազան քաղաքներ, եվրոպական և ամերիկյան երկրներ։

---

19 Ս. և Մ. Բդեյաններ, Հարազատ պատմութիւն Տարօնոյ, Գահիրե, 1962, էջ 90, «Բազմավէպ», 1919, էջ 325։

Մշեցիները զբաղվում էին արհեստագործությամբ, առևտրով, մասամբ երկրագործությամբ, անասնապահությամբ, այգեգործությամբ և բանջարաբուծությամբ։ Արհեստների մեջ առանձնապես կարևոր էին կոշկակարությունը, դերձակությունը, ոսկերչությունը, դարբնությունը, փականագործությունը, պայտարությունը, ներկարարությունը, կավագործությունը և այլն։ Վերջինս հասել էր բարձր վարպետության և դրա արտադրած ամանեղենը, անոթները և տնային գործածության իրերը մեծ համբավ ունեին ամբողջ գավառում։ Հայ արհեստավորների թիվը առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին հասնում էր ավելի քան 300 մարդու։ Քաղաքի տնտեսական կյանքում արհեստագործությունից հետո իր նշանակությամբ երկրորդ տեղը գրավում էր առևտուրը։ Մուշը տեղական ճանապարհներով կապված էր գավառի մի շարք գյուղերի հետ։ XIX դ. երկրորդ կեսից առանձնապես կարևոր նշանակություն է ստանում դեպի նահանգի կենտրոն՝ Բիթլիս ձգվող սայլուղին, որը խճապատված էր։ Քաղաքի կենտրոնում գտնվում էր շուկան, որտեղ XIX դ. վերջերին հաշվվում էին մինչև 800 մանր ու մեծ զանազան կրպակներ։ Դրանցից 500-ը գտնվում էր հայերի ձեռքին։ Առևտրի ապրանքներից էին ծխախոտը, չոր մրգերը, գինին, մեղրը, գազպեն, արհեստավորական շինվածքները և այլն։

Մուշը համանուն գավառի կենտրոնն էր, իսկ վերջինս մտնում էր Բիթլիսի նահանգի մեջ։ Այստեղ էր նստում գավառի թուրքական կառավարիչը՝ մութասարիֆը, որի տրամադրության տակ կար բավական մարդաշատ կայազոր։ Նրա աթոռանիստը՝ սարայը, մի անճոռնի շինություն էր և գտնվում էր շուկայում։ Մուշը միաժամանակ հայոց թեմակալի աթոռանիստն էր։

Նոր շրջանում Մուշը բաժանված էր երկու քաղաքամասի՝ հայկական և թուրքական։ Ուներ 12 մեծ ու փոքր թաղեր։ Քաղաքն ուներ քարաշեն բաղնիք, երկու իջևանատուն։ Կենտրոնում գտնվում էր շուկան իր հարյուրավոր կրպակներով ու խանութներով։ Փողոցները ծուռումուռ էին, նեղ, կեղտոտ, տները զուրկ էին բակերից և ցանկապատից, դրանք ցեխաշեն էին, իրար վրա կուտակված։ Տարածքի սղության պատճառով փողոցում կերակուր եփելը, լվացք անելը և, նույնիսկ, երեխաներին լողացնելը սովորական էր։

Բուն քաղաքի շատ թե քիչ ուշադրության արժանի կառույց-

ները սահմանափակվում էին եկեղեցիներով ու մզկիթներով։ Տարբեր ժամանակներում այստեղ հիշատակվում են 7 եկեղեցիներ՝ ս. Կիրակոս, ս. Սարգիս, ս. Փրկիչ, ս. Ավետարանոց, ս. Ստեփանոս, ս. Մարինե, ս. Հարություն, որոնցից 5-ը կանգուն էին և գործում էին XIX դարում և XX-ի սկզբներին։ Դրանցից քաղաքի մայր եկեղեցին համարվում էր ս. Մարինեն, որը միաժամանակ ամենաշքեղն էր, իսկ ամենահինը՝ ս. Փրկիչը, որ հիշատակվում է 851—852 թթ. դեպքերի առնչությամբ։ Մուշն ուներ բավական բարձր մինարեներով երկու մզկիթ, որոնցից մեկը հնում եղել է եկեղեցի։

Քաղաքն օղակված էր հնություններով ու պատմական կարևոր հուշարձաններով։ Նրա արևմտյան մասում տեղադրված էր բերդը՝ միջնաբերդը, որը հիշատակվել է Ջենոբ Գլակի, Թովմա Արծրունու, Ասողիկի մոտ։ Այն քարաշեն էր, շրջափակված աշտարակավոր պարսպով։ Մինչև XX դ. սկիզբը այդ բերդը կանգուն էր և այդտեղ էր զետեղված թուրքական կայազորը։ Բերդն իր շրջակայքով կազմում էր հատուկ թաղ՝ բերդի թաղը, որ թուրքերը կոչել են Ղուրթ Մահլեսի («Գայլի թաղ»)։ Ավանդության համաձայն առաջին անգամ այստեղ բերդ է կառուցվել Գայլ Վահան Մամիկոնյանի ժամանակ։

Մուշի մյուս հնություններից ուշադրության արժանի են նրա արևմտյան կողմում գտնվող Մուշեղյան բերդի («ձմեռանոց»), հարավային կողմում եղած՝ նույնանուն բերդի («ամառանոց»), արևելյան կողմում տեղադրված Աստղաբերդի և հարավում գտնվող Հողեբերդիկի ավերակները։ Կիսաավանդական պատմության համաձայն, վերջինիս մոտ, Արնգուբ կոչված վայրում է նահատակվել Գայլ Վահանը։

Մուշն ունեցել է հիշատակության արժանի մշակութային կյանք։ XIX դ. վերջերին և XX-ի սկզբներին այստեղ գործում էին հայկական 7 դպրոց, որոնցից 5-ը թաղային եկեղեցիներին կից էին, իսկ մյուս երկուսից մեկը օրիորդաց դպրոցն էր, որ հիմնադրվել էր Հովսեփ Իզմիրյանցի կտակով 1884 թ., իսկ մյուսը՝ Միացյալ ընկերության վարժարանը, որը թաղային դպրոցների համեմատությամբ ավելի բարձր տիպի էր։ Դպրոցներից բացի քաղաքում գործում էին նաև երկու որբանոց, որոնք պահվում էին պատրիարքարանի միջոցներով։

Մուշը եղել է գրչության կենտրոններից։ Այստեղ XIII—XV դարերում գրվել կամ ընդօրինակվել են մի շարք ձեռագրեր՝

ավետարաններ, Ճաշոց, Տոնական, Նոր կտակարան և այլն։ Հայ մշակույթի պատմության մեջ առանձնապես նշվում է 1204 թվականին գրիչ Վարդան քահանա Կարնեցու ձեռքով գրված նկարազարդ Տոնականը, որը հայ գրչության ու մանրանկարչության առաջնակարգ գործերից է և նախկինում պահվում էր Մշո Առաքելոց (կամ ս. Ղազար) վանքում, իսկ այժմ գտնվում է Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանում։ Առիթից օգտվելով պիտի ասել, որ Մուշի մշակութային կյանքում Առաքելոց վանքը (որ ավելի հաճախ կոչվել է ուղղակի Մշո Առաքելոց վանք) խաղացել է կարևոր դեր։

Մուշի մշակութային կյանքի համար էական նշանակություն է ունեցել նաև այստեղ Գ. Սրվանձտյանցի խմբագրությամբ 1863—1865թթ. լույս տեսած «Արտասար արծվիկ Տարոնոյ» լրագիրը։

Բավական մեծ թիվ են կազմում Մուշում ծնված հայ հասարակական գործիչները, գիտության և արվեստի աշխարհի երախտավորները։ Այստեղ է ծնվել նաև հայ երգարվեստի ամենանշանավոր ներկայացուցիչներից մեկը՝ Արմենակ Շահմուրադյանը (1878—1939), որին սովորաբար կոչել են «Տարոնի սոխակ»։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին երիտթուրքերի կազմակերպած հայկական ջարդերի հետևանքով հարյուրավոր գյուղերի և տասնյակ քաղաքների հետ միասին Մուշը նույնպես զրկվեց հայ բնակչությունից։ Նրա հայ բնակչությունը զանգվածորեն զոհ գնաց թուրքական յաթաղանին, իսկ մի կերպ փրկվածները ապաստան գտան գլխավորապես Արևելյան Հայաստանում։

## ՇԱՊԻՆ ԳԱՐԱՀԻՍԱՐ

Այս քաղաքը հայտնի է եղել նաև Կոլոնիա (Կողոնիա) և Նիկոպոլիս անուններով։ Հնում և միջին դարերում սովորաբար հիշատակվում է իբրև բերդաքաղաք, նոր ժամանակներում՝ գյուղաքաղաք, իսկ երբեմն էլ՝ իբրև սովորական գյուղ։

Գտնվում է Սև ծովի ավազանին պատկանող Գայլ (Կելկիթ) գետի Սկչեհր վտակի ափին, ծովի մակարդակից 1482 մ բարձրություն ունեցող ժայռոտ լեռան ստորոտին, շրջապատ-

ված բավական արգավանդ հողատարածություններով։ Այստեղ ձմեռը լինում է առատ ձյուն և ձյունածածկը պահպանվում է հոկտեմբերից մինչև մարտի վերջերը։ Քաղաքի շրջակայքում կան արծաթախառն կապարի հանքեր, որոնք շահագործվել են հին ժամանակներից։

Հնում Նիկոպոլիս-Շապին Գարահիսարը սահմանային բերդաքաղաք էր Փոքր Հայքի և Պոնտոսի միջև, բայց սկզբում վարչականորեն մտնում էր Փոքր Հայքի Առաջին Հայք պրովինցիայի, իսկ Հուստինիանոս կայսեր (527—565թթ.) կատարած վարչական վերափոխություններից հետո՝ Երկրորդ Հայքի մեջ։ Նոր ժամանակներում միշտ եղել է համանուն գավառի կենտրոնը, որը մերթ մտել է Տրապիզոնի նահանգի (վիլայեթ), մերթ էլ՝ Սեբաստիայի մեջ։

Հիմնադրվել է մ.թ.ա. 60-ական թվականներին, հռոմեական զորավար Պոմպեոսի կողմից և սկզբում կոչվել Կոլոնիա (Կողոնիա)։ Փոքր Հայքի մյուս ավելի քան 40 քաղաքների հետ միասին Կոլոնիան նույնպես հիմնովին վերակառուցվել և ամրացվել է Հուստինիանոս կայսեր ժամանակներում։ Հավանական կարելի է համարել, որ Կոլոնիա-Նիկոպոլիսը բյուզանդական տիրապետության շրջանում ունեցել է 25—30 հազար բնակիչ՝ գլխավորապես հայեր և հույներ։ Օսմանյան թուրքերն այն նվաճել են 1473թ.։

XIX դարի սկզբներին նրա հայ բնակչությունը մոտ 400 տուն էր։ Գրեթե նույնքան էին հույներն ու թուրքերը միասին վերցրած։ 1872—1873 թթ. այստեղ կային հայկական 502, հունական 150 և թուրքական 2000 տուն բնակիչ։ Ըստ վկայությունների, XX դարի սկզբներին քաղաքն ունեցել է մոտ 20000 հայ, հույն, թուրք և այլ ազգի բնակչություն[20]։ Բնակչության զբաղմունքները կազմում էին մոտ երկու տասնյակի հասնող արհեստները, ներքին ու արտաքին առևտուրը. քաղաքի շուկայի խանութների ու կրպակների թիվը 60-ից անցնում էր։ Նրա բնակչության զգալի մասը՝ գլխավորապես թուրքերը, զբաղվում էին հողագործությամբ, որի համար այստեղ կային նպաստավոր պայմաններ՝ արգավանդ հողեր, ոռոգելու ջրի բավարար պաշարներ, կլիմայական նպաստավոր պայմաններ։

---

[20] «Ժամանակագրութ. ազգային կենտրոնական վարչ. 1872—1873 ամի», Ս. Ծոցիկյան, Արևմտահայ աշխարհ, էջ 489—496, «Հուշամատյան մեծ եղեռնի», Բեյրութ, 1965, էջ 367։

Շապին Գարահիսարի համար առանձնահատուկ նշանակություն ուներ արծաթի և կապարի հանույթը։ Վիճակագրական տվյալների համաձայն, կապարաարծաթի հանքը XIX դ. երկրորդ կեսին տարեկան 4.5 միլիոն ռուբլու հասույթ էր տալիս։ Սակայն այդ պատկառելի քանակությամբ եկամուտներն ամբողջությամբ դուրս էին տարվում, որովհետև հանքավայրի շահագործումը հանձնված էր անգլիական մի առևտրական ընկերության։ Հանքավայրում հիմնականում աշխատում էին հույներն ու հայերը։

Արևմտյան Հայաստանի ողջ հայության հետ միասին Շապին Գարահիսարի հայ բնակչությունը ևս ենթարկվել է զանգվածային բնաջնջման և բռնի տեղահանման։ 1895թ. օսմանյան ցեղասպանների կազմակերպած ջարդերին զոհ գնացին 5000 գարահիսարցիներ, իսկ 1915 թ. մեծ եղեռնի ժամանակ Շապին Գարահիսարն ընդհանրապես հայաթափ է լինում, նրա 7800 հայ բնակիչների մի մասը զոհ է գնում թուրքական յաթաղանին, իսկ մյուս մասը տարագրվում զանազան երկրներ։ Հետագայում միայն չնչին թվով հայեր նորից են վերահաստատվել իրենց հայրենի քաղաքում։ Այստեղի հայերի տարագրությունն սկսվել էր 1915 թ. հունիսի 24-ին, որին ուղեկցեց քաղաքի հայկական թաղամասերի հիմնահատակ ավերումը։

Ճարտարապետական առումով Շապին Գարահիսարի հիշատակության արժանի կառույցներից են հնագարյան բերդը, եկեղեցիներն ու մատուռները, մզկիթները և, մասամբ, վարչական շենքերը։ Նրա բերդը, որ մեր ժամանակներն է հասել կիսավեր վիճակում, հիմնադրվել է Պոմպեոսի ժամանակ (մ. թ. ա. 60-ական թվականներին)։ Կառուցված է սև ապառաժի վրա («գարահիսար» նշանակում է սև բերդ), անմատույց վայրում։ Դարեր շարունակ այս բերդը հայտնի է եղել իր անառիկությամբ և իզուր չէ, որ բյուզանդացիներն այն համարել են իրենց կայսրության ամենաամուր բերդերից մեկը։ Նրա նշանակությունն ավելի մեծ էր Հուստինիանոս կայսեր ժամանակ։ Վերջինս, հռոմեական շրջանից ժառանգված այդ բերդը վերանորոգել տալով ու ավելի ամրացնելով, դարձրել էր Փոքր Հայքի Երկրորդ Հայք պրովինցիայի ամենակարևոր բերդաքաղաքը։ Բերդի դռան մուտքի վրա դրված է քարակերտ երկգլխանի առյուծ։ Արևմտյան ծայրում գտնվում է բերդի ութանկյուն մեծ աշտարակը։ Բերդի ներսում մինչև XX դարի սկզբ-

ները պահպանվում էին բյուզանդական մատուռի մնացորդները։ Բերդում էր գտնվում նաև Հուստինիանոսի ժամանակ կառուցված 45 ձգնավորց անունով տաճարը, որի հետքերն անգամ չեն նշմարվում։

XIX դարում և XX-ի սկզբներին Շապին Գարահիսարն ուներ հայկական երկու եկեղեցի, որոնցից մեկը՝ Մայր եկեղեցին կոչվում էր Նախավկա, ս. Ստեփանոս կամ ս. Աստվածածին՝ կառուցված 1274 թվականին, իսկ մյուսը, որ համեմատաբար նոր էր, կրում էր ս. Փրկիչ անունը։ Մայր եկեղեցին վառվել է 1885 թվականին Թևեքելյանների փողից ծագած հրդեհի հետևանքով։ Սակայն հայերը շատ շուտով, հրդեհից 7 տարի անց, նրա տեղում ավարտում են քարաշեն, երկհարկանի նոր եկեղեցու շինարարությունը։ Իսկ այս վերջինը համարվում է հայկական ճարտարապետության կարևորագույն կերտվածքներից։ Հոյակապ արտաքինը, լայնածիր գմբեթը, 18-ի հասնող քանդակազարդ շրջանակներով լուսամուտները, միանգամայն ինքնատիպ աշտարակաձև զանգակատունը, արծաթե մեծ խաչը, ընդարձակությունը, այդ բոլորը եկեղեցուն տալիս էին անհահաճո տեսք։ Ականատեսները վկայում են, որ այդ եկեղեցին իր մեծությամբ հավասար էր Սեբաստիայի ու Կարինի մեծ տաճարներին և կարող էր տեղավորել մինչև 3000 մարդ։

XIX դարում և XX-ի սկզբներին Շապին Գարահիսարն ուներ հայկական դպրոցական բավական աշխույժ կյանք։ Այստեղ գործում էին հայկական չորս վարժարաններ, որոնցից 3-ը բացվել էին XIX դարի առաջին կեսում, իսկ մեկը՝ նույն հարյուրամյակի վերջերին։ Ըստ տվյալների, 1872—73թթ. նրա երեք դպրոցները՝ Մուշեղյան, Փրկչյան, Աշխենյան վարժարանները միասին ունեին 400 աշակերտ և 150 աշակերտուհի։ Մուշեղյան վարժարանի սաներից է նաև զորավար Անդրանիկը։

Շապին Գարահիսարը հայ գրչության կենտրոններից է։ Այստեղ XV—XVII դդ. գրվել են տարբեր բովանդակությամբ ձեռագրեր։ Առանձնապես նշելի է գրիչ Գրիգոր երեցի 1633 թ. ընդօրինակած Տոնացույցը։

Շապին Գարահիսարը տվել է հայ մշակույթի և ազատագրական շարժման ականավոր մի շարք ներկայացուցիչներ։ Այստեղ են ծնվել մեծ ճարտարապետ, հայկական ճարտարապետության պատմության գիտական ուսումնասիրության հիմնադիր

Թ. Հ. Թորամանյանը (1864—1934), զորավար Անդրանիկը (Ա. Թ. Օզանյանը, 1865—1927), բանաստեղծ և մշակութային գործիչ Լ. Ս. Խաչանյանը և ուրիշներ։

## ՇԱՏԱԽ

Երբեմն հիշատակվում է նաև Շատաղ, Շախ, Տաք տարբերակներով։ Տարբեր ժամանակներում համարվել է գյուղ, ավան, գյուղաքաղաք և քաղաք։ Նույն անունը կրող մի ավան էլ գտնվում է Սասունում, որի հետ այս Շատախը չպետք է շփոթել։ Վերջինս գտնվում է Վանա լճից հարավ, լճափից մոտ 40 կմ հեռավորությամբ, Մոկսից 30—31 կմ հարավ-արևմուտք, Արևելյան Տիգրիսի (Բոհտան-սու) աջ ափին, սարավանդի վրա, թաղված այգեստանների մեջ։ Գյուղաքաղաքի երեք կողմերում վեր են խոյանում Շատախի լեռների Մարուլ, Գլուլական և Կայնեկլ լեռնագագաթները, իսկ նրա վրա ուղղակի կախված է Քյուրեկ լեռը, որից վաղ գարնանը հաճախ պոկվում են ձյան հսկայական զանգվածներ և գլորվելով դեպի վար՝ մեծ վնաս են պատճառում գյուղաքաղաքին։ Առանձնապես աղետաբեր հետևանքներ է ունեցել 1883թ. փետրվարի 18-ին տեղի ունեցած ձյունահյուսը, որի հետևանքով զոհվել են 57 մարդ։ Շատախի մոտ իրար են միանում երեք անդնդախոր ձորեր, որոնցով ահռելի շառաչյունով հոսում են փրփրադեզ գետակներ։ Ջրառատ գյուղաքաղաք է Շատախը, գեղատեսիլ համայնապատկերով։

Շատախի շրջանը համապատասխանում է հին Ջերմաձոր գավառին։ Նոր ժամանակներում գյուղաքաղաքն իր համանուն գավառակով, որի կենտրոնն էր այն, մտնում էր Վանի նահանգի Ջուլամերկի գավառի մեջ։

Շատախի բնակչության թիվը մի քանի հազար մարդուց երբեք ավելին չի եղել։ Այն զուտ հայաբնակ գյուղաքաղաք էր և XIX դարի սկզբներին ուներ 3500—4000 բնակիչ, իսկ առաջին համաշխարհային պատերազմի նախորդած տարիներին՝ 1200—1300 բնակիչ[21]։ Ներկայումս Շատախը սովորական գյուղ է մի քանի հարյուր բնակիչներով, որոնց մեջ բավական թիվ են կազմում հայերը։

---

21 Դ. Խաչիկյան, Նոր Հայաստան, էջ 164, Ա—Դո, Վանի, Բիթլիսի և Էրզրումի վիլայեթները, էջ 62։

Բնակիչները զբաղվում էին առևտրով, արհեստներով ու տնայնագործությամբ, մեղվաբուծությամբ, այգեգործությամբ։ Շատախն առանձնապես հայտնի էր շալագործությամբ։ Շալի ամենաընտիր տեսակը, որ հայտնի էր Վանի անունով, գործում էին Շատախում անգորական այծի բրդից։ Շալագործության մեջ ներգրավված էին մեծ թվով կանայք, կային շալագործական մանուֆակտուրային և տնայնագործական մի քանի ձեռնարկություններ։

Շատախն ուներ հայկական երկու եկեղեցի՝ ս. Ստեփանոս և ս. Կարապետ անուններով։ Եղել է գրչության կենտրոն։ Մեզ հայտնի են XV—XVII դարերում այստեղ գրված մի քանի ձեռագրեր՝ գլխավորապես ավետարաններ, որոնց վերջում զետեղված են գրիչների հիշատակարանները։ Շատախում գործած գրիչներից են Իսրայել քահանան և Օհանես երեցը։ XIX դարի երկրորդ կեսում և հաջորդ դարի սկզբներին Շատախում կար տղաների ու աղջիկների վարժարան։ Մի խումբ երիտասարդների ջանքերով այստեղ հրատարակվում էր մի փոքրիկ թերթ, որի էջերում տեղեկություններ էին հաղորդվում հիմնականում տեղական կյանքից։

Միջին դարերում Շատախը իբրև գավառի կենտրոն ունեցել է իր բերդը, որը կիսավեր վիճակում հասել էր մինչև նոր ժամանակները։ XIX դարի սկզբներին այդ բերդը, որտեղ տակավին նշմարվում էին զնդանների ու եկեղեցու ավերակները, վերածվել էր զորանոցի։ Այն վերջնականապես ավերվել է 1850—1855 թթ. Օսման փաշայի զորքերի կողմից։

Շատախ գյուղաքաղաքի և համանուն գավառի հայ բնակչությունը եռանդագին մասնակցություն է ունեցել Վանի 1915—16 թթ. ինքնապաշտպանական կռիվներին և նրա մի մասը, այդ եղանակով փրկվելով թուրքական յաթաղանից, դաղթել ու վերաբնակություն է հաստատել ներկայիս Սովետական Հայաստանի տարածքում։

## ՌՍՏԱՆ

Վաղագույն ժամանակներից ի վեր Վանա լճի ավազանը դարձել էր հասարակական կյանքի աշխույժ կենտրոն, Հայկական լեռնաշխարհի ամենախիտ բնակեցված երկրամասերից

մեկը։ Միայն Վանա լճի ափերին առաջացել էին 10-ից ավելի քաղաքներ ու գյուղաքաղաքներ՝ Վան, Բերկրի, Արճեշ, Արծկե, Խլաթ և այլն։ Դրանց թվում էր նաև Ոստանը։

Ոստան նշանակում է «արքունի կալված», «իշխանանիստ», «մայրաքաղաք»։ Այն տարբեր ժամանակներում և տարբեր պատմագիրների կողմից հիշատակվում է իբրև բերդ, գյուղ, ավան, քաղաքավան, քաղաք։

Պատմական Ոստան քաղաքը, որի ավերակների վայրը նոր ժամանակներում տեղացիները կոչում են Հերիշատ, գտնվում էր Վանա լճի հարավային ափի մոտ, լճափից մոտ 1 կմ հարավ, Աղթամար կղզու դիմաց, Արտոս լեռան հյուսիսարևմտյան լանջերին ու ստորոտին։ Քաղաքը բոլոր կողմերից շրջապատված էր պտղատու այգիներով։ Ուներ անուշահամ աղբյուրներ և գեղեցիկ պարտեզներ։ Նրա գեղատեսիլ բնությունը և անզուգական համայնապատկերը վարպետությամբ է նկարագրել Րաֆֆին, նրա անցյալ ժամանակների մասին ընդարձակ վկայություններ ունի Թովմա Արծրունի պատմագիրը, որին լրացնում են հետագա ժամանակների հեղինակները՝ Մատթեոս Ուռհայեցին, Յակուտը և ուրիշներ։

Ոստանն իբրև բնակավայր գոյություն ուներ անհիշելի ժամանակներից։ IX դարից նրա մասին հիշատակություններ կան մեր մատենագրության մեջ։ IV—V դարերից Ոստանը Ռշտունյաց նախարարների աթոռանիստն էր, Վասպուրական աշխարհի Ռշտունիք գավառի կենտրոնը։ Հետագայում, X դարի երկրորդ կեսում և XI դարի սկզբներին Ոստանը Աղթամար քաղաք-կղզու հետ միասին Վասպուրականի Արծրունյաց թագավորության մայրաքաղաքն էր, իսկ նոր ժամանակներում՝ Վանի նահանգի (վիլայեթ) Գավաշի գավառի կենտրոնը։ Վերջինս մինչև առաջին համաշխարհային պատերազմը հիմնականում հայաբնակ էր և ուներ 35 հայկական գյուղեր, որոնց բնակիչները եռանդագին մասնակցություն են ունեցել Վանի 1915—1916 թվականների ինքնապաշտպանական կռիվներին և 1916 թ. նահանջող ռուսական զորքի հետ միասին գաղթել ու բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում։

Ոստանի ծաղկած ժամանակների՝ XI—XIII դարերի, բնակչության թվի վերաբերյալ տեղեկություններ չկան։ Բացառված չէ, որ այդ դարերում ունեցել է մինչև 15 հազար հայ բնակիչ, այսինքն այնքան, որքան ունեցել են Հայաստանի մյուս ոչ

խոշոր տասնյակ քաղաքները՝ Կապանը, Լոռին, Արծկեն, Երազգավորսը և այլն։ Ըստ առանձին հեղինակների վկայությունների, Ոստանը XIX դարի սկզբներին ունեցել է 600 տուն՝ ավելի քան 3000 բնակիչներով, իսկ XX դարի սկզբներին նրա տների թիվը նույնիսկ չէր հասնում 305-ի։ Ոստանի հայ բնակչությունը հարձակման է ենթարկվել 1895—1896 թվականներին համիդյան ցեղասպանների կողմից։ 1909 թվականին նրա հայ բնակչությունը հասել էր նվազագույնի, իսկ մեծ եղեռնից հետո այստեղ այլևս հայեր չէին մնացել։

Ոստանը քաղաքի էր վերածվել Արծրունի Գագիկ 1-ինի օրոք (908—940)։ Արծրունյաց տան պատմագիր Թովմա Արծրունին վկայում է, որ նա ջրանցքներ է կառուցել իր աթոռանիստի շրջակայքում և այդ վայրերը զարդարել պտղատու ծառերով ու սաղարթախիտ այգիներով։ Պատմիչը մեծ ոգևորությամբ նկարագրում է Ոստանի ձկնորսական հարստությունները, որոնք դարձել էին թագավորական գանձարանը հարըստացնող մշտական աղբյուրը։ Սակայն միջնադարյան Ոստանի բնակչության զբաղմունքները այգեգործությամբ ու տառեխի որսով չէին սահմանափակվում։ Գյուղաքաղաքի տնտեսական կյանքում կարևոր դեր էին խաղում նաև արհեստներն ու առևտուրը։ Ոստանը Վանա լճով և ցամաքային ճանապարհներով կապված էր լճի առափնյա շրջանների հետ, որը և նպաստում էր նրա առևտրի զարգացմանը։ Ոստանի բնակչության զբաղմունքները նոր ժամանակներում ևս նույնն էին։ Նրանք զբաղվում էին այգեգործությամբ, ձկնորսությամբ, տեղական նշանակություն ունեցող մի քանի արհեստներով ու մանրածախ առևտրով։

Ոստանը միջնադարյան Հայաստանի գրչության հայտնի կենտրոններից է։ Մեզ հասած տեղեկությունների համաձայն այստեղ ընդօրինակվել են բազմաթիվ ձեռագրեր՝ ավետարաններ, գանձարաններ, ճառընտիրներ, ժամագրքեր, ճաշոցներ։ Ոստանի հայտնի գրիչներից են՝ Ծերուն քահանան, որ 1401 թ. գրել է մի ճառընտիր, Թումա քահանան, որ 1414 թ. գրել է մի ավետարան, Հովհաննեսը, Կարապետը և ուրիշներ։ Նրա գրչության դպրոցի ամենաեռուն ժամանակաշրջանը XV դարն է, թեպետ հիշատակություններ կան նաև XII և XIV դարերում մի քանի ձեռագրեր ընդօրինակելու մասին։ Ըստ մեզ հասած տեղեկությունների, Ոստանում միայն XV դարի առաջին կեսում

գրվել են 1 տոնական, 5 ավետարան, 1 ճաշոց, 2 գանձարան, 1 ժամագիրք, իսկ նույն դարի 50—80-ական թվականներին՝ 3 ավետարան, 1 ճաշոց, 1 գանձարան։ Միանգամայն հավանական է, որ դրանք Ոստանում գրված կամ ընդօրինակված բոլոր ձեռագրերը չեն։ Նրա գրչության դպրոցի ձեռագրերի մեծ մասը միջնադարյան Հայաստանի բազում ձեռագրերի նման թշնամիների կողմից ոչնչացվել կամ «գերեվարվել» է, իսկ մյուս մասը «զոհ գնացել» երկրաշարժերի, հրդեհների և այլ աղետների ժամանակ։

Ոստանի հայ բնակչությունը XIX դարում և XX-ի սկզբներին ուներ իր կրթարանը և խալֆայական մասնավոր դպրոցները, որոնցում գրագիտություն էին ձեռք բերում փոքրավորները։

Ոստանի ճարտարապետական հուշարձանները, որ կերտվել էին միջնադարում, նոր ժամանակներ էին հասել միանգամայն ավերված վիճակում։ Գյուղաքաղաքի ամրացումն ու հիշատակության արժանի շենքերով գեղեցկացումը կատարվել էին Գագիկ Ա Արծրունու ժամանակ (X դարի առաջին կես) նշանավոր Մանվել ճարտարապետի ձեռքով։ Այդ ժամանակներում են կառուցվել նրա տաճարը, որին XIV—XV դարերում նվիրվել էին մի քանի ձեռագրեր, բերդը, գեղաքանդակ զանազան շենքեր, որոնց մասին վկայություններ կան պատմագիրների գրքերում և ձեռագրերի հիշատակարաններում։ Գագիկի ժամանակ Ոստանը փաստորեն Վասպուրականի բավական ընդարձակ թագավորության մայրաքաղաքն էր, որին փոխարինեց նրանից մի քանի տարի ավելի ուշ (բայց նույնպես Գագիկի օրոք) գեղատեսիլ քաղաքի վերածված Աղթամարը։

Ոստանի՝ Գագիկի և Գուրգենի կառուցած բերդը գտնվում էր քաղաքի ծայրին, լեռան վրա։ Նրա ավերակները՝ կիսավեր պարիսպները, աշտարակները և մյուս կերտվածքների մնացորդները XX դարի առաջին քառորդում պահպանվում էին։ Բերդը, չնայած մի քանի անգամ գրավվել ու ավերվել էր թշնամիների կողմից, բայց նորից վերականգնվել ու վերանորոգվել էր։ Այն վերջնականապես ավերվել էր XV դարում Սկանդարի հրոսակների կողմից։ Նկարագրություններից հայտնի է դառնում, որ Ոստանի բերդը, գտնվելով ժայռի վրա, դժվարամատույց է եղել։ Բերդ կարելի էր մտնել միայն երկու ճանապարհով, մեկը հյուսիսից՝ Վանա լճի կողմից, որը խիստ դժվա-

բանցանելի էր, իսկ մյուսը՝ Հարավից, որը համեմատաբար հեշտ անցանելի էր և բնակչությունն այս վերջինը կոչում էր Վերին ճանապարհ։ Վաղեմի բերդի ավերակներում նշմարվել են եկեղեցիների մնացորդներ, զանազան շենքերի հետքեր, վիմագիր արձանագրություններ։ Իսկ քաղաքի նոր շրջանի եկեղեցին կանգուն է եղել մինչև առաջին համաշխարհային պատերազմը։

Ոստանի շրջակայքը նույնպես հարուստ է զանազան հնություններով՝ եկեղեցիների ավերակներով, գերեզմանոցներով, ավերակ բնակատեղիներով։ Քաղաքի մոտ, նրա հյուսիսարևելյան կողմում է գտնվում ս. Նշան հայտնի վանքը, որտեղ, ըստ ավանդության, թաղված է Վարդանանց պատերազմի մասնակից ու պատմագիր Եղիշեն։

Պատմական Ոստան քաղաքի ավերակներից ոչ շատ հեռու այժմ գոյություն ունի մի քանի թաղերի բաժանված նույնանուն անշուք գյուղը։

## ՉՄՇԿԱԾԱԳ

Չմշկածագ քաղաքի անունը կապված է բյուզանդական Հովհաննես Չմշկիկ կայսեր անվան հետ։ Ավելի հնում հայտնի էր Հերապոլիս (= «սուրբ քաղաք») անունով։ Տարբեր ժամանակներում եղել է ավան, բերդ, գյուղաքաղաք, քաղաք։

Գտնվում է Խարբերդ քաղաքից մոտ 50 կմ հյուսիս-արևմուտք, Արածանիի աջակողմյան վտակ Չմշկածագի ձախ կողմում, լեռնային, անտառապատ վայրում, ծովի մակարդակից 1300 մ բարձրության վրա։ Քաղաքը կառուցված է մի հսկայական ամֆիթատրոն ներկայացնող գոգավորությունում։ Վարչական առումով հնում մտնում էր Ծոփքի (հետագա Չորրորդ Հայքի), իսկ նոր ժամանակներում Խարբերդի նահանգի Դերսիմի գավառի մեջ, լինելով վերջինիս Չմշկածագ գավառակի կենտրոնը։

Չմշկածագի մասին հիշատակություններ ունեն Մատթեոս Ուռհայեցին, Սմբատ Գունդստաբլը, Յակուտը և ուրիշ հեղինակներ։ Մինչև XV դարը բավական մարդաշատ էր և բարեկարգ։ Սակայն 1474 թվականին մամլուք թուրքերի կողմից գրավվելուց հետո, որին ուղեկցվել է բնակիչների զանգվածային գերեվարումը, դարեր շարունակ այն վերածվել էր մի փոքրիկ գյու-

ղաքաղաքի։ 1800—1830-ական թվականներին գյուղաքաղաքն ուներ մոտ 6000 բնակիչ, որից 4000-ը հայ, իսկ մնացածը՝ քրդեր, թուրքեր և այլք։ 1830—1850թթ. նրա բնակչության քանակն արդեն հասնում էր 8000 մարդու, որից մոտ 6300-ը հայ։ Քաղաքը գրեթե նույնքան բնակիչ ուներ նաև մեծ եղեռնի նախօրեին՝ 1915 թ. սկզբներին։ Այստեղի հայությունը նույնպես ենթարկվեց 1915 թ. արհավիրքներին։ Նրա մի մասը զոհ գնաց թուրքական յաթաղանին, իսկ փրկվածները տարագրվեցին զանազան կողմեր։ 1930-ական թվականներին նրա բնակչության թիվը հազիվ էր հասնում 5—6 հազար մարդու, որոնց մեջ կային նաև չնչին թվով հայեր։

Չմշկածագի հայ բնակչությունը սասունցիների նման քաջ էր և երկար ժամանակ մղել է ինքնապաշտպանական հերոսական կռիվներ։ Իսկ ինքը՝ Չմշկածագը, պաշտպանական տեսակետից հարմար դիրք ունենալու շնորհիվ ստացել էր «Քաջերի բույն» մականունը։

Քաղաքի տնտեսության ճյուղերը կազմում էին արհեստագործությունը, առևտուրը և գյուղատնտեսական զբաղմունքները։ Արհեստների թիվը հասնում էր ավելի քան երկու տասնյակի։ Քաղաքը բավական բանուկ ճանապարհներով կապված էր Արածանիի և Արևմտյան Եփրատի հովիտների հետ։ Նրա համար առանձնապես կարևոր նշանակություն ուներ Խարբերդ—Բերդակ—Չմշկածագ ճանապարհը, որը սայլուղի էր և XIX դարի երկրորդ կեսին խճապատվել էր։ Չմշկածագի շուկան բավական ընդարձակ էր և, 1877 թվականին հրդեհվելուց հետո, վերականգնվել էր իր տասնյակ խանութներով ու արհեստանոցներով։ Քաղաքի բնակչության եկամուտների մի պատկառելի մասը ստացվում էր գյուղատնտեսությունից, հատկապես՝ այգեգործությունից. շրջակայքում մեծ տարածություններ էին գրավում քաղաքացիների փարթամ այգեստանները։

Բնակչության թվի համեմատությամբ Չմշկածագը բավական փռված գյուղաքաղաք է։ XX դարի սկզբներին նրա արտաքին շրջագիծը 8 կմ-ից ավելի էր։ Քաղաքը բաժանված էր բազմաթիվ մանր թաղերի։ Հայերը բնակվում էին հիմնականում կենտրոնի 10 թաղերում և դրանց կից գտնվող սարավանդում, որը կոչվում էր Յուչ-բեկ։ Կենտրոնում էր գտնվում նաև հայոց առաջնորդարանը։ Քաղաքի դիմաց բարձրանում են խիստ զառիթափ կողերով ժայռաբլուրներ, որոնց մեջ կան բազմա-

թիվ «քարտուններ»՝ մասամբ փորված մարդկանց ձեռքով, մասամբ էլ՝ բնական քարայրներ, որոնք ծառայել են պաշտպանական նպատակների համար. Թուրքական ջարդարարներից պաշտպանվող հերոսները ծանր պահերին դրանք օգտագործել են իբրև ապաստարաններ։

Հայերն ունեին երկու եկեղեցի, որոնցից մեկը, ավելի հինը, որ գյուղաքաղաքի մայր եկեղեցին էր, կրում էր ս. Աստվածածին անունը, իսկ նորը կոչվում էր ս. Թորոս և կառուցվել էր 1825 թ. նախկին սրբավայրի տեղում։ Գյուղաքաղաքի շատ թե քիչ նշանակալի շենքերից էին նաև վարչական շենքը՝ կառուցված 1881 թվականին և փոստ-հեռագրատան (1895թ.) ու բանկի (1914թ.) շենքերը։

Չմշկածագում պահպանված էին զանազան հնություններ ու պատմական հուշարձաններ՝ քաղաքը երբեմնի շրջափակող պաշտպանական պարսպի մնացորդները, բերդի հետքերը, հայկական ամրոցների, եկեղեցիների ու մատուռների և այլ շենքերի ավերակներ։ Բավական լավ էին պահպանվել քաղաքի արևմտյան մասում գտնվող XIII դարին վերագրվող մի քանի տների ավերակներ, որոնց տեղի բնակիչները կոչում են «Ճինվիզ»՝ դրանց ավերումը ավանդաբար կապելով Չինգիզխանի անվան հետ։ Հետաքրքիր է նկատել, որ Չմշկածագում ընդհանրապես հռոմեական-բյուզանդական որևէ հուշարձանի հետքեր չեն նկատվել։ Տարբեր վիճակում մինչև մեր ապրած դարը հասած հնություններն ու հուշարձանները գրեթե բացառապես հայկական են, եթե նկատի չունենանք մզկիթները և տարբեր նպատակներով կառուցված պետական վարչական շենքերը։

Չմշկածագում, համանուն գետակի վրա, կային երկու քարակերտ կամուրջներ, որոնք XX դարի սկզբներին կանգուն էին և գտնվում էին միանգամայն բարվոք վիճակում։

XIX դարում և XX-ի սկզբներին այստեղ գործում էին հայկական երկու վարժարան, որոնցից մեկը կոչվում էր Մամիկոնյան, իսկ մյուսը՝ Պարթևյան, երկուսը միասին ունեին 170—200 աշակերտ։

Ըստ կիսաավանդական պատմության, Չմշկածագում է ծնվել բյուզանդական հայազգի կայսր Հովհաննես Չմշկիկը (X դ.)։ Հավանաբար այստեղ է ծնվել նաև հիշատակագրությունների Ստեփանոս Չմշկածագեցին (XV դ.)։ Չմշկածագը ծննդավայրն է հայ հանճարեղ դերասան Պետրոս Ադամյանի։

## ՋԵՐՄՈՒԿ

Պատմական Հայաստանում բազում ջերմուկներ կան, որոնցից ոմանց մոտ առաջացել են մեծ ու փոքր բնակավայրեր։ Գրականության մեջ այս Ջերմուկը հիշատակվում է Ջերմեկ, Ջերմիկ աղավաղված ձևերով։ Հնում կոչվում էր Աբառնե կամ Ամմիանոս։ Ենթադրաբար նույնացնում են ասորեստանյան արձանագրություններում հիշատակվող Արանա կամ Արանիա երկրանվան հետ։ Տարբեր ժամանակներում և տարբեր հեղինակների մոտ համարվել է գյուղ, ավան, գյուղաքաղաք, քաղաք։

Գտնվում է Պատմական Հայաստանի հարավարևմտյան մասում, Արևմտյան Տիգրիսի ակունքում գտնվող Ծովք (Գյոլջիկ) լճից հարավ, Դիարբեքիր քաղաքից հյուսիս-արևմուտք, Ձնքուշի և Արղնիի միջև, լեռանստորոտում։ Ջրառատ է. գյուղաքաղաքի միջով է անցնում Եփրատի ձախակողմյան մի փոքրիկ, քաղցրաջուր և ձկնառատ վտակ։ Կլիման մեղմ է։ Սքանչելի ամառանոցավայր է։ Ունի բարեբեր հողեր, պտղատու շատ այգիներ։ Հատկապես հայտնի է տանձով («ջերմուկի տանձ»), նռով և խաղողով։ Գյուղաքաղաքից 1—2 կմ հեռավորությամբ բխում են ծծմբային տաք աղբյուրներ՝ ջերմուկներ, որոնք խմելու համար պիտանի չեն, սակայն ունեն բուժիչ հատկություններ։ Դրանց մասին հիշատակություն ունի Մատթեոս Ուռհայեցին (XII դ.)։ Տեղացիները դեռևս միջնադարում պարզունակ եղանակով այդ աղբյուրներում բուժել են իրենց հոդացավերը։ Հնում Ջերմուկի շրջանը Ձնքուշի հետ միասին կազմում էր Մեծ Հայքի Չորրորդ Հայք աշխարհի Դորեք (կամ Գորեք) գավառը, իսկ նոր ժամանակներում առանձին վարչական միավոր էր՝ գավառակ (երբեմն՝ գավառ) Դիարբեքիրի նահանգում, կենտրոն ունենալով Ջերմուկ գյուղաքաղաքը։

Ջերմուկը XIX դարի սկզբներին ուներ մոտ 1000 տուն բնակիչ, իսկ 1872—73 թթ. շուրջ 350 տուն, որի մոտ կեսը կազմում էին հայերը, իսկ մյուս կեսը՝ թուրքերն ու քրդերը[22]։ Առաջին համաշխարհային պատերազմին նախորդած տարիներին նրա տների թիվը ավելի քան 400 էր։ Ջերմուկի և համանուն գավառակի հայ բնակչությունը ևս Արևմտյան Հայաստանի մյուս

---

22 Մ. Հովհաննիսյան, Հայաստանի բերդերը, Վենետիկ, 1970, էջ 113։

ճառերի հայերի հետ միասին 1915 թվականին մասամբ ոչնչացվել և մասամբ էլ տեղահանվել է թուրքերի կողմից։ Ըստ թուրքական աղբյուրների, մեծ եղեռնի ժամանակ Ջերմուկի գավառակից տեղահանված հայերի թիվը հասնում էր մոտ 3100 մարդու։

Ջերմուկի բնակչությունը զբաղվում էր բամբակի, ցորենի, գարու, բրնձի, խաղողի մշակությամբ։ Նրա խաղողը ընտիր էր և մասամբ վաճառվում էր այլ գավառների գյուղերում։ Սակայն գյուղաքաղաքի հայ բնակչությունը հիմնականում զբաղվում էր առևտրով ու արհեստագործությամբ՝ կաշեգործությամբ ու կոշկակարությամբ, դարբնությամբ, մանածագործությամբ ու կտավագործությամբ, ջրաղացպանությամբ և այլ արհեստներով։

Ջերմուկի մոտ, լեռան վրա գտնվում է համանուն բերդը, որը կառուցվել է հայերի ձեռքով տակավին IX դարում։ Այժմ էլ միջնադարյան այդ բերդը, որ թուրքերը աղավաղված ձևով կոչում են Ջերմիկ, կանգուն է և իբրև տեսարժան վայր նշված է թուրքական տուրիստական քարտեզում։ Բերդի մոտ, լեռան ստորոտին կան հայկական երկու եկեղեցու ավերակներ։ Գյուղաքաղաքի մայր եկեղեցին, որ կառուցվել է 1300 թվականին, կոչվում էր ս. Աբդըլմսեհ։

Հայերն ունեին երկու վարժարան, որոնցից մեկը տղաների, մյուսը՝ աղջիկների։ 1872—73 թթ. երկու վարժարանի աշակերտաշակերտուհիների թիվը հասնում էր 71-ի, իսկ հետագայում՝ XX դարի սկզբներին՝ ավելի քան 100-ի։

## ՍԱԼՄԱՍՏ

Հնում սովորաբար կոչվել է Սաղամաս, Սաղամաստ, հետագայում նաև Սալմաս։ Գ. Խալաթյանի կարծիքով առաջացել է Ասորեստանի Սալմանասար թագավորներից մեկի անունից։ Հիշատակվում է նաև իբրև գյուղ։

Պարսկահայաստանի քաղաքներից է։ Գտնվում է Ուրմիա լճի հյուսիսարևմտյան ափի մոտ, Խոյ քաղաքից հարավ, հարթավայրում, Ուրմիա լիճը թափվող համանուն (Սալմաստ) ձրկնառատ գետակի ափին։ Կանաչազարդ քաղաք էր, ուներ ընդարձակ փարթամ այգիներ։

Հնում Մեծ Հայքի Պարսկահայք աշխարհի նշանավոր բնակավայրերից էր, ֆեոդալական փոքրիկ բերդաքաղաք, որը IX—XI դարերում ենթակա էր Վասպուրականի Արծրունիներին։ Հիշատակում են Փավստոս Բուզանդը, Թովմա Արծրունին, Հովհաննես Դրասխանակերտցին, Մատթեոս Ուռհայեցին, Սմբատ Գունդստաբլը, Յակուտը և ուրիշներ։ Դժվար է ասել, թե երբ է այն հիմնադրվել։ Համապատասխանում է ուրարտական սեպագիր արձանագրություններում հիշատակվող Սագամանում վայրին։ Յակուտին իր «Աշխարհագրական բառարանում» համարել է «հռչակավոր քաղաք»։

Սալմաստը շատ է տուժել 1791 թ. դեկտեմբերի 27-ին տեղի ունեցած սաստիկ երկրաշարժից։ Հետագայում քաղաքն ավելի է կորցրել իր նշանակությունը և եթե մի ժամանակ այն համանուն խանության, իսկ հետո՝ Սալմաստի գավառի կենտրոնն էր, ապա այժմ սովորական գյուղ է։ XX դ. սկզբներից դադարել է գավառի կենտրոն լինելուց։ Գավառը շարունակվում է կոչվել Սալմաստ, բայց կենտրոնը արդեն Դիլման գյուղաքաղաքն է։ Սալմաստի գավառից 1829—1830 թթ. մեծ թվով հայեր են գաղթել Արևելյան Հայաստան, սակայն հետագայում էլ նրա բնակչության հիմնական զանգվածները շարունակում էին կազմել հայերը։ 1906 թ. դրությամբ Սալմաստի գավառը (մահալ) ուներ հայկական 75 գյուղ՝ Հավթվան, Մահլամ, Ղալասար, Փայաջուկ (Րաֆֆու ծննդավայրը), Սավրա և այլն։

XIX դարի սկզբում Սալմաստն ուներ մոտ 1200 տուն հայ, քուրդ և ասորի բնակչություն, իսկ առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին միայն հայկական տների թիվը հասնում էր 700-ի։

1923 թվականին Սալմաստի հայ բնակիչներից շատերը գաղթել են Սովետական Հայաստան և բնակություն հաստատել Գետազատ (մինչև 1948 թ.՝ Աղջաղալա) գյուղում։

Սալմաստը ունի ցորենի և գարու ընդարձակ դաշտեր։ Նրա հայ բնակիչներից շատերը տոհմիկ այգեգործներ էին և քաղաքը հայտնի էր իր ընտիր խաղողով ու գինով։ Ուներ տեղական աշխույժ առևտուր, քաղաքում գործում էին տասնյակ արհեստանոցներ, որոնց արտադրանքը հիմնականում սպառվել է գավառի շրջանակներում։

Ինչպես ասվեց, քաղաքն այժմ ավեր վիճակում է։ Նշմարվում են նրա միջնադարյան բերդի մնացորդները, առանձին

կառույցների ավերակներ։ Այժմյան դրությամբ այն ոչընչով չի տարբերվում սովորական գյուղից։ Հայերն ունեին 3 եկեղեցի՝ ս. Հովհաննես, ս. Թովմաս և ս. Գևորգ, որոնց կից կային կրթարաններ։ XV դ. 50—80-ական թվականներին այստեղ գրվել է մի ավետարան, որին կից կա ընդօրինակող գրչի հիշատակարանը։

## ՍԱՐԻՂԱՄԻՇ

Սարիղամիշը երբեմն հիշատակվում է իբրև սովորական գյուղ, երբեմն էլ՝ քաղաքավան։ Բայց իր բնույթով ու մեծությամբ իսկական գյուղաքաղաք էր և պատահական չէ, որ ավելի գիտակ հեղինակների մոտ, ինչպես և պաշտոնական փաստաթղթերում, այն այդպես էլ կոչված է։

Սարիղամիշը գտնվում է Կարսի սարահարթում, նախկին Կարսի մարզի Կարսի օկրուգում, Կարս քաղաքից մոտ 30 կմ հարավ-արևմուտք, Կարս գետի վերին հոսանքի վրա։ Ճրջակայքում, ընդարձակ տարածության վրա, փռված են Սարիղամիշի մայրիի հայտնի անտառները, որոնց փայտանյութը հին ժամանակներում Արաքսով տարել են մինչև Արտաշատ և Դվին մայրաքաղաքները։ Խեժատու ծառերով այդ անտառները, որ դարերով հիմք էին դարձել փայտամշակման արհեստների զարգացման համար, իրենց տեսակով եզակի էին ընդհանուր առմամբ անտառներով աղքատ ամբողջ Պատմական Հայաստանի համար։ Բարձրադիր, մաքուր ու առողջարար օդով և գեղատեսիլ բնությամբ Սարիղամիշը հռչակված ամառանոցավայր էր։

Սարիղամիշի տեղում բնակավայր է եղել դեռևս ուրարտական պետության ժամանակներում։ Այստեղ 1878 թվականին Ալեքսանդր Երիցյանը հայտնաբերել է ուրարտական թագավոր Արգիշտի 1-ինի (VIII դ. մ. թ. ա.) սեպագիր արձանագրություններից մեկը, որը տարվել է Թբիլիսի և ներկայումս գտնվում է Վրացական ՍՍՀ պատմական թանգարանում։ Արձանագրության մեջ ասված է այն մասին, որ ուրարտական թագավորը գրավել է Ախուրիանի քաղաքը։ Դժվար է կռահել, թե հնագույն Ախուրիանի քաղաքի հետագայի որ բնակավայրին է համա-

պատասխանում՝ Սարիղամիշին, թե մի այլ բերդաքաղաքի կամ ավանի, բայց անժխտելի է, որ նրա տեղում բնակավայր, այնուամենայնիվ, գոյություն ուներ և գտնվում էր Արգիշտի 1-ինի նվաճած Ախուրիանի երկրի (որի անվան հետ կապված է նաև Արաքսի ձախակողմյան վտակ Ախուրյան գետի անունը) կենտրոնական մասում։ Հետագա դարերում Սարիղամիշի վերաբերյալ վկայություններ չկան։ Այն համեմատաբար հայտնի է դառնում նոր ժամանակներում։ Սարիղամիշի վերաբերյալ բավական հարուստ նյութեր են հաղորդվում կապված ռուս-թուրքական 1877—1878թթ. պատերազմի, երբ այն Կարսի մարզի հետ միասին անցավ Ռուսաստանին, և առաջին համաշխարհային պատերազմի իրադարձությունների հետ։ 1914 թվականի դեկտեմբերի վերջերից մինչև հաջորդ տարվա հունվարի 18-ը թուրքական 3-րդ բանակի և ռուսական կովկասյան բանակի միջև այստեղ շարունակվող մարտերը առաջին համաշխարհային պատերազմի պատմության մեջ հայտնի են Սարիղամիշի օպերացիա անվան տակ։ Այդ մարտերը սկսվել էին 1914 թ. դեկտեմբերի 26-ին, երեկոյան։ Թուրքական բանակի հրամանատարը ցեղասպան Էնվեր փաշան էր, իսկ ռուսական բանակը գործում էր Միշլաևսկու գլխավորությամբ։ Սարիղամիշի օպերացիան ավարտվում է 1915 թ. հունվարի 18-ին ռուսական բանակի հաղթանակով։ Եվ այդ մարտերից առաջ, և՛ դրանց ավարտից հետո, Սարիղամիշը Կարսի մարզի ամրացված կարևորագույն կետերից մեկն էր, որտեղ գտնվել էին ուժեղացված կայազոր և մեծ թվով զորանոցներ զինանոցներ ու պարենի պահեստներ։

Սարիղամիշի բնակչության թվաքանակը 3000 մարդուց երբեք չի անցել։ Մինչև առաջին համաշխարհային պատերազմի վերջը նրա ճնշող մասը կազմում էին հայերը, որոնք թուրքական ջարդարարների բռնություններից մի կերպ փրկվեցին տեղափոխվելով Սովետական Հայաստան։

Ցնայած իր փոքրությանը՝ Սարիղամիշը տնտեսական առումով ուներ կարևոր նշանակություն։ Այն ճանապարհային կայան է Էրզրում—Կարս ճանապարհի և կայարան է Ալեքսանդրապոլ (Լենինական)— Կարս—Էրզրում երկաթուղու վրա։ Այստեղ նախասովետական շրջանում արհեստների հետ միասին գործում էին փայտամշակման մի քանի մանր ձեռնարկություններ, որոնց բանվորները 1920 թվականին կազմակերպված

ռազմահեղափոխական կոմիտեի ղեկավարությամբ գործադուլային պայքար էին մղում ձեռնարկատերերի և տիրող կարգերի դեմ։

Սարիղամիշը բաղկացած էր երկու թաղից, որոնք փաստորեն երկու գյուղ էին՝ միացած իրար և կոչվում էին Վերին ու Ներքին Սարիղամիշ։ Դրանցից Վերին Սարիղամիշը բուն Սարիղամիշ գյուղաքաղաքից՝ Ներքին Սարիղամիշից գտնվում էր 3—3,5 կմ արևմուտք, Կարս գետի ձախ ափին և 1907 թվականին ուներ ընդամենը 152 բնակիչ։ Ներքին Սարիղամիշն ուներ իր եկեղեցին ու վարժարանը։ Այն այժմ էլ գոյություն ունի և իր մեծությամբ ու համայնապատկերով ոչնչով չի տարբերվում XX դարի առաջին քառորդի անշուք գյուղաքաղաքից։

## ՍԵԲԱՍՏԻԱ

Իր մարդաշատությամբ և խաղացած դերով Սեբաստիան Մալաթիայից ավելի հայտնի է։ Այն գտնվում է Կզըլ-իրմաք (հնում՝ Ալյուս, Ալիս կամ Հալիս) գետի վերին հոսանքի աջ կողմում, ընդարձակ դաշտում, Մայրագոմ կոչված լեռան փեշերին։ Այժմյան Սեբաստիան Միհրդատի ժամանակվա քաղաքից (I դ. մ. թ. ա.) գտնվում է 8 կմ դեպի արևելք, Ալյուս գետից 2 կմ հեռավորությամբ։ Քաղաքի բարձրությունը ծովի մակերևույթից 1348 մ է, դիրքը գեղեցիկ է, կլիման ցամաքային՝ խիստ ցուրտ ձմեռներով և շոգ ամառներով։ Այստեղ անպակաս էին տենդն ու թոքախտը։ Ջրառատ քաղաք է Սեբաստիան. Նրա մոտով է հոսում Ալյուս գետը և նրան ուղղակի կից է Սեբաստիայի լիճը։ Հողերը բերրի են, հին ժամանակներից ի վեր համարվել են հացի շտեմարան, սակայն անտառներ չունի և բուսականությամբ ընդհանրապես աղքատ է։ Շրջակայքում կան հանքային ջրեր, մարմարի և գիպսի հանքավայրեր։

Սեբաստիայի մասին տեղեկություններ են հաղորդում հունա-հռոմեական, հայկական, բյուզանդական, վրացական, արաբական, թուրքական տասնյակ պատմագիրներ, ժամանակագիրներ և գրիչներ։

Սեբաստիան Փոքր Ասիայի հնագույն քաղաքներից է։ Հնագույն ժամանակներում այն սովորական ամրոց է եղել և կոչվել է Կաբիրա։ Այստեղ հռոմեացիները 64 թ. (մ. թ. ա.) մեծ

հաղթանակ են տարել Միհրդատ Եվպատորի նկատմամբ և այդ ճակատամարտից հետո հռոմեական զորավար Պոմպեոսը ընդարձակելով քաղաքը այն կոչել էր Դիոսպոլիս (Տրիսուպոլիս)։ Իսկ հետագայում Պոնտոսի Պյութոդորիս թագուհին ավելի է ընդարձակել ու բարեկարգել Պոմպեոսի անվանած Դիոսպոլիսը՝ այն ի պատիվ Օգոստոս («սրբազան») կայսեր կոչելով Սևաստ-Սեբաստիա։ Հին շրջանում Սեբաստիան կոչվել է նաև Մեգալոպոլիս (=«մեծ քաղաք»), իսկ XIII—XV դարերից թուրքական աղավաղմամբ դարձել է Սվազ, ինչպես նշանակված է ժամանակակից բոլոր քարտեզներում։

Սեբաստիան հիմնադրվել է II դարում (մ. թ. ա.), բայց քաղաքի է վերածվել 60-ական թվականներին (մ. թ. ա.) և դրանից հետո մերթ առաջադիմել, մերթ էլ հետադիմել է, բայց միշտ հիշատակվում է իբրև քաղաք։ Քաղաք հռչակվելուց հետո այն գրեթե միշտ եղել է տարբեր կարգի վարչական կենտրոն. IV—VI դարերում Սեբաստիան Փոքր Հայքի Առաջին Հայք պրովինցիայի կենտրոնն էր, իսկ VI դարից, Հուստինիանոս կայսեր վարչական վերափոխությունից հետո՝ Երկրորդ Հայքի, որն իր մեջ ընդգրկում էր նախկին Փոքր Հայքի հյուսիսարևմտյան գավառներն ու շրջակայքի տարածքները։ XI դարի 20-ական թվականներից Սեբաստիան դարձել էր Վասպուրականի վերջին թագավոր Սենեքերիմի աթոռանիստը։ Նույն դարի կեսերին մի քանի տարի Սեբաստիան համարվում էր նաև Հայոց կաթողիկոսի նստավայրը։ Իսկ թուրքական տիրապետության շրջանում Սեբաստիա-Սվազը համանուն նահանգի, գավառի և գավառակի կենտրոնն է։

Հռոմեական նվաճումների ժամանակներից ի վեր Սեբաստիան մշտապես այս կամ այն չափով առնչվել է Փոքր Ասիայում և Մեծ Հայքում տեղի ունեցող քաղաքական իրադարձությունների հետ։ Սակայն այն բուն իմաստով բերդաքաղաք չէր և ընդհուպ մինչև Լենկթեմուրի նվաճումները ավերածությունների համեմատաբար քիչ է ենթարկվել։ Քաղաքի համար կարևոր նշանակություն են ունեցել հատկապես այնտեղ հաստատված Արծրունյաց իշխանության գոյության տասնամյակները։ Պատմությունից հայտնի է, որ Վասպուրականի վերջին թագավոր Սենեքերիմը 1021 (կամ 1022) թվականին հարկադրված է եղել իր թագավորությունը 10 քաղաքներով, 4000 գյուղերով ու 72 բերդերով հանձնել Բյուզանդիային, իսկ ինքը իրեն

շրջապատող ազնվականների, զորքի ու բազմահազար բնակիչների հետ միասին տեղափոխվել իբրև փոխհատուցում կայսրության հատկացրած տարածքները՝ Սեբաստիա, Լարիսա և Ծամընդավ քաղաքներն ու դրանց գավառները։ Սեբաստիան դարձել էր կայսրությանը ենթակա այդ նորաստեղծ իշխանության կենտրոնը և թևակոխել բավական արագ զարգացման ուղի։ Սակայն նրա առաջադիմությունը երկար չի տևում։ 1060 թվականին նախ ավերվում, իսկ Մանազկերտի ճակատամարտից հետո (1071 թ.) գրավվում է սելջուկների կողմից։ Այդ ժամանակներից ի վեր Սեբաստիան առանձին զարգացում չի ունենում, իսկ XV դարի հենց սկզբին՝ 1405 թվականին, սոսկալի ավերվում է Լենկթեմուրի հրոսակների կողմից։ Պատմագիրների վկայության համաձայն արևելյան դաժան բռնապետի հրամանով քաղաքում ողջ-ողջ թաղել են 2000 (իսկ ըստ այլ աղբյուրների՝ 4000) հայ հեծյալների և պատանիների, իսկ մնացած բնակչության մեծ մասը ցաքուցրիվ է եղել զանազան կողմեր։ XV դարի վերջերին Սեբաստիան ընկնում է օսմանյան թուրքերի տիրապետության տակ։

Սեբաստիան իր համանուն գավառով հիմնականում հայաբնակ էր։ Այն XVI դարում առանձնապես կարևոր դեր էր խաղում հայ ազատագրական շարժման մեջ։ Այստեղ 1562 թվականին Միքայել կաթողիկոսի գլխավորությամբ տեղի է ունեցել ժողով, որի որոշման հիման վրա հատուկ պատվիրակություն է ուղարկվել Հռոմի պապի մոտ Հայաստանի քաղաքական ազատագրության համար։

Հայաստանի մյուս բազմաթիվ քաղաքների նման հայտնի չէ նաև միջնադարյան Սեբաստիայի բնակչության թիվը։ Ըստ բյուզանդական աղբյուրների, քաղաքն իր ծաղկման շրջանում ունեցել է մինչև 120 հազար բնակիչ։ Ստույգ հայտնի չէ նաև նոր ժամանակներում ունեցած նրա բնակչության թիվը։ Որոշ աղբյուրների համաձայն, այն 1860-ական թվականների վերջերին ունեցել է 16 հազար բնակիչ, որի ավելի քան 1/3-ը հայեր, 1800—1830-ական թվականներին՝ 35000—40000, որից 15000-ը հայեր, 1830—1850 թթ.՝ 30000, որից 13000-ը հայեր, իսկ մեծ եղեռնի նախօրյակին մոտ 60000 բնակիչ, որի մոտավորապես կեսը կազմում էին հայերը[23]: Նրա հայ բնակչությունը

[23] «Երկրագունդ», Կ. Պոլիս, 1870, էջ 109—110, Ս. Ցոլիկյան, Արևմտահայ աշխարհ, էջ 625—652։

*Թուրքերի կողմից առաջին անգամ զանգվածորեն ջարդվել է 1895-ին, երբ միայն սպանվածների թիվը հասել է 1500 հոգու։ Քաղաքի հայ բնակչությունը ավելի ահռելի արհավիրքի է ենթարկվել 1915 թ. մեծ եղեռնի ժամանակ։ Թուրքական յաթաղանից մի կերպ փրկվածները տարագրվել են տարբեր երկրներ և Սեբաստիան փաստորեն հայաթափ է եղել 1915—1916 թվականների ընթացքում։*

*Հին ժամանակներից Սեբաստիան գտնվում էր քարավանային բանուկ ճանապարհի վրա։ Նա կապված էր Երզնկա, Ամասիա և Տրապիզոն քաղաքների հետ։ XIX դարի երկրորդ կեսին առևտրի խոշոր կենտրոն էր, որն ուներ բազմաթիվ խանութներ ու կրպակներ։ Նրա վաճառականությունը լայն կապեր ուներ Միջնավոր արևելքի քաղաքների և Սև ծովի հարավային առափնյա շրջանների հետ։ Քաղաքում արհեստներից առանձնապես կարևոր նշանակություն ունեին ջուլհակությունը, մանածագործությունը (հայտնի էին կտավն ու աստառացու կտորեղենը), պղնձագործությունը, դարբնությունը, զինագործությունը, գորգագործությունը։ Մեծ թվով քաղաքացիներ զբաղվում էին նաև գյուղատնտեսությամբ, հատկապես՝ հացահատիկների մշակությամբ։*

*Նոր ժամանակներում Սեբաստիան ուներ մշակութային աշխույժ կյանք։ Այստեղ գործում էին հայկական մի ամբողջ շարք դպրոցներ՝ Մխիթարյան, Մինասյան, Սահակյան, Արամյան, Հռիփսիմյան, Լուսինյան և այլն, Սանասարյանի նշանավոր ուսումնարանը, երկսեռ վարժարանը։ Քաղաքի նշանավոր վանքերն էին՝ ս. Նշանը (XI դ.), ս. Հրեշտակապետը, ս. Վլասիոսը, Անապատը, Խունարկոտը, ս. Հակոբը, Քառասուն Մանկունք, որի տաճարն ուներ 40 գմբեթ, եկեղեցիներից էին՝ ս. Գևորգը, ս. Աստվածածինը, ս. Սարգիսը, ս. Մինասը, ս. Փրկիչը։ Սեբաստիայում են ծնվել XVII դարի հայտնի բժիշկ և տաղասաց Բունիաթ (Ասար) Սեբաստացին, որի գրչին է պատկանում 140 գլխից բաղկացած մի բժշկարան, Մխիթար Սեբաստացի աբբահայրը (ծնված 1676թ.), Վենետիկի հայտնի միաբանության նշանավոր հիմնադիրը։*

*Սեբաստիան միջնադարյան հայկական գրչության ամենանշանավոր կենտրոններից է։ Այստեղ XII—XVII դարերում ընդօրինակվել են ավետարաններ, ժողովածուներ, Աստվածա-*

ջունչ, ճաշոցներ, Հայսմավուրք, Տաթևացու «Գիրք հարցմանց» և այլն։ Այստեղի հայտնի գրիչներից են՝ Գրիգոր քահանան (XIV դ.), Մելիքսեթը (XVII դ.) և ուրիշներ։

Քաղաքի հնությունների ու պատմաճարտարապետական հուշարձանները շատ վատ են պահպանված։ Անցյալում ունեցած երկու բերդերից մեկի ավերակները գտնվում են բլրի վրա, կառուցվել է թուրքական տիրապետության շրջանում, պարսպապատ է և բավական լավ է պահպանվել։ Նրա պաշտպանական պարսպի վրա կան թուրքերեն վիմագիր արձանագրություններ։ Երկրորդ բերդը, որ գտնվում է նույն բլրի ստորոտին, ավելի հին է՝ կառուցվել է XI դարում Սենեքերիմ թագավորի կողմից։ Վերջինս նույնպես պարսպապատ է։ Գեղեցիկ է մանավանդ դրա պաշտպանական պարսպի ճակատը, որը քանդակազարդ է ու բարձրարվեստ։ Այդ բերդում էլ գտնվում էր Վասպուրականի տարագիր թագավոր Սենեքերիմի արքունիքն ու գերեզմանը։ Քաղաքի մոտ են գտնվում Ալյուս գետի վրա նույն Սենեքերիմ թագավորի Շուշանիկ դստեր կառուցած 19 կամարանի կամրջի ավերակները։ Քաղաքի հնությունների ու հուշարձանների մեջ լավ է պահպանվել նրա հյուսիսային կողմում գտնվող վիմափոր դամբարանների շարքը։

## ՍՊԵՐ

Թուրքերն այժմ կոչում են Իսպիր։ Սպերը սովորաբար նույնացնում են Ցակուտի հիշատակած Ասբիրան կամ Ասպիրան բնակավայրի (գյուղի) հետ։ Անտիկ պատմագիրների մոտ կոչված է Սիսպիրատիս (հունական աղբյուրներում) կամ Սիսպիրա (լատինական աղբյուրներում)։ Սպեր անվան ծագումը գիտականորեն վերջնականապես լուսաբանված կարելի է համարել։ Այդ անունը կապում են Հերոդոտի (V դ. մ. թ. ա.) հիշատակված ժողովուրդներից մեկի՝ սասպեյրների անվան հետ։

Հիշատակվում է իբրև ավան, բերդաքաղաք, քաղաք։ Գտնվում է Ճորոխի և նրա վտակ Սպերի գետախառնուրդի մոտ, Ճորոխի աջ ափին, բլրի վրա։ Ունի մեղմ կլիմայական պայմաններ, ջրառատ է և ամբողջովին շրջապատված է փարթամ այգիներով։ Հնից ի վեր հայտնի է իր ոսկու հանքավայրերով, որոնց պաշարները տակավին չեն սպառվել։ Ստրաբոնն (I դ.

մ. թ. ա. —I դ. մ. թ.) այստեղ հիշատակում է նաև այլ հանածոներ, որոնց թվում և պղնձի երևակումներ։

Հնում Մեծ Հայքի Բարձր Հայք աշխարհի Սպեր գավառի կենտրոնն էր և գավառի հետ միասին համարվում էր Բագրատունիների սեփականությունը։ Թուրքական վարչական բաժանմամբ մտնում է Էրզրումի նահանգի Էրզրումի գավառի մեջ իբրև Սպեր գավառակի կենտրոն։

Անհայտ է, որ եթե Սպեր անունը կապված է հնագույն սասպեյրներ ժողովրդի անվան հետ, ապա իբրև բնակավայր գոյություն ունի վաղագույն ժամանակներից։ Այդ ժամանակներում առանձնապես հայտնի են եղել նրա ոսկու հանքավայրերը, որոնք շահագործման են ենթարկվել մեր թվականությունից հարյուրամյակներ առաջ։ Նա այնքան է հայտնի եղել, որ Ալեքսանդր Մակեդոնացին (356—323 թթ. մ. թ. ա.) դեպի Արևելք կատարած իր արշավանքի ժամանակ Մենոն զորավարի հրամանատարությամբ մի հատուկ ջոկատ է ուղարկում այդտեղ արդյունահանված ոսկին ավարի ենթարկելու համար։ Աղբյուրները հաղորդում են, որ տեղացիները քաջաբար պաշտպանել են իրենց արդյունահանած ոսկին և մեծ զորավարի ուղարկած ջոկատն անհաջողության է մատնվել. դրանց մեծ մասին տեղական ջոկատները ջրասույզ են արել Ճորոխ գետում, իսկ մնացորդները վերադարձել են ձեռնունայն։ Ոսկու հանքավայրում աշխատում էին հույները, որոնք առանձին գաղութներով Սև ծովի հարավային ափերին հաստատվել էին դրանից դարեր առաջ։ Ոսկու հանքերի հնագույն շահագործման հետքերը՝ հանքախորշերի, լվացման ավազանների, ավազի մնացորդները XIX—XX դարերում դեռևս նշմարվում էին։

Սպերի երբեմնի գրաված ընդարձակ տարածությունը, ամբրակ բերդերը, դարավոր այգեստանները ցույց են տալիս, որ նա մի ժամանակ եղել է մարդաշատ ու ավելի հայտնի բնակավայր։ Նրա մասին հիշատակություններ ունեն հույն ու հռոմեացի պատմագիրները, Փավստոս Բուզանդը, Մովսես Խորենացին, Սեբեոսը, Թովմա Արծրունին, Արիստակես Լաստիվերտցին, ավելի ուշ շրջանի պատմագիրները, վրաց հեղինակ Վախուշտին և ուրիշներ։ I դարում նրա տեղում գտնվում էր Սմբատավան բերդավանը՝ Բագրատունիների մի ճյուղի աթոռանիստը, որի տեղում հետագայում բարձրացել էր Սպեր քաղաքը։ Թուրք-պարսկական պատերազմների ընթացքում շնա-

յած մեծապես ավերվել էր պարսիկների կողմից (1548 թվականին), սակայն նոր ժամանակների համեմատությամբ այն բավական մարդաշատ էր՝ նրա տների թիվը հասնում էր 4000—5000-ի։ Մինչդեռ XIX դ. սկզբին ուներ 900 տուն բնակիչ, իսկ մեր հարյուրամյակի սկզբին՝ շուրջ 350 տուն։ Այստեղի հայ բնակչությունը բնաջնջվեց 1915թ. եղեռնի հետևանքով, իսկ մի կերպ փրկվածները տարագրվեցին զանազան կողմեր։

Բնակչության զբաղմունքների մեջ կարևոր տեղ էին գրավում հողագործությունը և այգեգործությունը։ Զբաղվում էին նաև արհեստներով ու առևտրով։ Սպերը (Իսպիր) այժմ նույնպես փոքրիկ գյուղաքաղաք է, որի շուրջը փռված են նրա այգիներն ու պարտեզները։

Քաղաքի մոտ, անմատչելի ժայռի վրա պահպանվել են պատմական Սմբատավան բերդի ավերակները՝ պաշտպանական պարիսպների, դարպասների, աշտարակների, առանձին շենքերի մնացորդները։ Ճորոխ գետի վրա պահպանվել են նաև մի հին կամուրջի ավերակներ։

## ՍՂԵՐԴ

Այս քաղաքն այլ անուններ չունի։ Սակայն հիշատակվում են նույն անվան մի շարք տարբերակներ՝ Սղերտ, Սերդ, Սիրթ, Սիերդ և այլն։ Թուրքերն այժմ կոչում են Սիիրդ։ Սովորաբար միշտ համարվել է քաղաք, թեպետ իրականում տակ գյուղաքաղաք է։

Գտնվում է Արևմտյան և Արևելյան Տիգրիսների միախառնվելու տեղից ոչ հեռու, Արևելյան Տիգրիսի աջակողմյան վտակ Բիթլիսի (Բաղեշ) գետի ստորին հոսանքի շրջանում, Սղերդ գետակից 5—6 կմ հեռավորությամբ, սարավանդի վրա։ Բարձրությունը ծովի մակարդակից 1100 մ է և Արևմտյան Տիգրիսից գտնվում է ընդամենը 2—3 կմ հեռավորության վրա։ Կլիման շոգ է, ցամաքային։ Հողերը ոռոգվում են Տիգրիսի և նրա վտակների ջրերով։ Հայտնի է իր մրգատանեներով, հատկապես՝ խաղողով։ Շրջակայքում կան կրաքարեր, մետաղական երևակումներ, ջերմուկներ։

Հնում Աղձնիք աշխարհի Խերհեթ կամ Սերխեթք գավառի կենտրոնն էր և դրանից էլ ծագել է նրա անունը։ XVI—XVIII

դարերում մտնում էր Դիարբեքիրի նահանգի (վիլայեթ), իսկ դրանից հետո՝ Բիթլիսի նահանգի մեջ, դարձյալ լինելով Սղերդ համանուն գավառի կենտրոնը։ Այն գավառի միակ քաղաքն է։

Սղերդը գոյություն ունի շատ հնուց։ Նրա հիմնադրումը ոմանք կապում են Տիգրան Մեծի, ոմանք էլ՝ Սկայորդու անվան հետ։ Նույնիսկ մի ժամանակ ենթադրում էին, որ Սղերդը կառուցվել է հին Տիգրանակերտ քաղաքի տեղում։ Աղբյուրների հիշատակություններից երևում է, որ Սղերդը բավական բարգավաճ քաղաք է եղել նաև միջին դարերում։ Ցակուտին իր «Աշխարհագրական բառարանում» այն համարել է «համբավավոր փոքր քաղաք»։

Սղերդը XVIII դարում ունեցել է 5600 տուն հայ բնակիչ։ XIX դարի սկզբներին նրա ունեցած 2500 տուն բնակիչների մոտավորապես կեսը դարձյալ կազմում էին հայերը։ 1800—1830 թթ. ուներ մոտ 17 հազար բնակիչ, որից 10000-ը հայեր, 1830—1850թթ.՝ 15 հազար բնակիչ, որից հայեր 6000[24]։ Առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին այստեղ կար 13000 բնակիչ, որից հայերը դարձյալ 6000 էին, մնացածները թուրքեր, արաբներ, քրդեր և ասորիներ։ 1895-ի կոտորածի ժամանակ թուրքերը կողոպտել են այստեղի եկեղեցին, առաջնորդարանը և դպրոցը, հայ բնակչության մեծ մասին բռնությամբ մահմեդականացրել, հոգևորականներին՝ կոտորել, կանանց՝ անարգել։ Իսկ 1915-ի մեծ եղեռնի ժամանակ երիտթուրքերը բնաջնջեցին այստեղի հայությանը, խնայելով միայն 100 արհեստավորների, որպեսզի աշխատեն թուրքերի համար։

Սղերդում հավասար չափով զբաղվում էին արհեստագործությամբ, առևտրով, երկրագործությամբ և այգեգործությամբ։ Արհեստներով ու առևտրով գերազանցապես զբաղվում էին հայերը։ Տարածված արհեստներից էին պղնձագործությունը, դարբնությունն ու զինագործությունը, մանածագործությունն ու ջուլհակությունը, կոշկակարությունն ու դերձակությունը։ Առանձնապես մեծ համբավ ունեին այստեղ պատրաստված պղնձի ամանները, որոնց մի մասը վաճառվում էր գավառի և, նույնիսկ, նահանգի սահմաններից դուրս։ XIX դարի երկրորդ կեսից այստեղ աստիճանաբար առաջացել են նաև ավելի խոշոր

[24] «Հանդես ամսօրյա», Վիեննա, 1890, էջ 204—205, Մ. Միրախորյան, Նկարագրական ուղևորություն ի հայաբնակ գավառս Արևելյան Տաճկաստանի, Կ. Պոլիս, 1884—1895, էջ 64։

տիպի ձեռնարկություններ՝ կաշվի, տեքստիլ, շալի «գործարաններ», որոնք սակայն քիչ են տարբերվել տնայնագործական և մանուֆակտուրային ձեռնարկություններից։ Կրաքարով հարուստ Սղերդում գործում են կրի մի քանի գործարաններ, որոնց արտադրանքի մի մասը տարվում է այլ վայրեր։

Արտաքին և տարանցիկ առևտրի առումով Սղերդի դիրքը դրեթե միշտ նպաստավոր է եղել։ Հնում նրա մոտով էր անցնում VI դարից (մ.թ.ա.) բանուկ Պարսից «արքայական ճանապարհը», հետագայում այն միշտ հարմար դիրք է ունեցել Հայաստանից Միջագետք և Արևելքն Արևմուտքի հետ միացնող քարավանային ճանապարհների նկատմամբ՝ գտնվելով դրանց հանգուցակետերից մեկում։ Նոր ժամանակներում քաղաքից դուրս էին գալիս մի քանի խճուղային և գյուղամիջյան ճանապարհներ։ Այնպես որ, Սղերդը արտաքին առևտրի համար և՛ տարանցիկ կետ էր, և՛ իր արհեստավորական արտադրանքներով ու գյուղատնտեսական մթերքներով մասնակցում էր այդ առևտրին։ Քաղաքն ուներ իր շուկան, որտեղ XIX դարի վերջերին կային մինչև 100 խանութ ու կրպակ։

Յուրահատուկ գյուղատնտեսական բնակավայր է Սղերդը։ Նրա գյուղատնտեսական որոշ մթերքները՝ սեխը, վարունգը, թուզը, նուռը բարի համբավ ունեին ամբողջ նահանգում։ Նա հայտնի էր նաև խաղողով։ Այստեղ մշակվում էր տեղական Շաֆի կոչված խաղողատեսակը, որի մասին այնքան մեծ գովեստով են խոսում տեղացիներն ու օտարերկրացի ճանապարհորդները։

Ներկայումս Սղերդը անշուք գավառական քաղաք է, չունենալով տարրական կոմունալ պայմաններ։ Թեպետ շրջակայքում կան խմելու ջրի պաշարներ, բայց ջրմուղ չի կառուցված և բնակչությունը խմում է գետի ջուրը առանց մաքրելու։ Քաղաքի տները հիմնականում երկհարկանի են, քարաշեն։ Ունի և կամարաձև կառուցված տներ։

Այստեղ կարելի է տեսնել պատմական տարբեր ժամանակներում կառուցված հուշարձանների և հնությունների ավերակներ ու հետքեր։ Քաղաքի շրջակայքում կան հին հայկական բերդերի ավերակներ։ Նրա տարբեր կողմերում կան հղկված ժայռեր, որոնց վրա քանդակված են հայերեն վիմագիր արձանագրություններ։ Սղերդում գործել է ս. Հակոբ անունով հայկական վանքը, որը XX դարի երկրորդ տասնամյակում ար-

ղեն ավերակի էր վերածվել։ Քաղաքն ունեցել է 3 եկեղեցի, որոնք մինչև առաջին համաշխարհային պատերազմը կանգուն էին և գործում էին։

Սղերդը հայկական գրչության կենտրոններից է։ XV դարի երկրորդ կեսում այստեղ գրված մի ճառընտիր հայտնի է մեր մատենագրությանը։ XIX—XX դարերում քաղաքում կային հայկական երկու կրթարան՝ մեկը տղաների, մյուսը՝ աղջիկների։

## ՎԱՂԱՐՇԱՎԱՆ

Անունը ստացել է Վաղարշ Բ (196—215) թագավորի անունից, որին Մովսես Խորենացին, Ստեփանոս Ասողիկը և այլ պատմիչներ վերագրում են դրա հիմնադրումը։ Կիսավանդական պատմության համաձայն, Վաղարշը ծնվել է հենց այստեղ և իբր ի հիշատակ իր ծննդի էլ հիմնադրել է այդ քաղաքը։ Ոմանք նույնացրել են այժմյան Հասանկալայի հետ, որ անընդունելի է։

Հիշատակվում է իբրև ավան, բերդաքաղաք և քաղաք։ Գտնըվում էր Արաքսի և նրա ձախակողմյան վտակ Մուրցի (Հասանկալա) գետախառնուրդում, այժմյան Կյոփրիքյոյ գյուղի տեղում, ջրառատ ու գեղատեսիլ վայրում։ Թուրքերն Արևմտյան Հայաստանի հնագույն մի քանի բերդերի նման (Վանի բերդ, Ալաշկերտի բերդ և այլն) Վաղարշավանը նույնպես կոչում են Թոփրախկալա («հողե բերդ»). վարչական առումով հնում մտնում էր Մեծ Հայքի Այրարատյան աշխարհի Բասեն գավառի, իսկ թուրքական տիրապետության շրջանում Էրզրումի նահանգի Էրզրումի գավառի մեջ։

Վաղարշավանը մարդաշատ քաղաք չի եղել։ Արշակունիների թագավորության ժամանակներում հիմնադրված այդ քաղաքը երկար ժամանակ հիշատակվում է իբրև սովորական ավան և վարչական առումով գավառական քաղաք էր։ Այն սովորաբար նույնացնում են Մովսես Խորենացու հիշատակած «մեծ աւան Բասենոյի» հետ։ Իսկ պատմահայրը Վաղարշավան մեծ ավանի հիմնադրման մասին հաղորդում է. «Սա [Վաղարշակը] շինէ աւան մեծ զտեղի ծննդեան իւրոյ ի վերայ ճանապարհին,... ի գաւառին Բասենոյ, ի տեղւոջն, ուր խառնին Մուրց ու Երասխ.

զոր չէնեաց յիւր անուն և կոչեաց Վաղարշաւան» (Խորենացի, էջ 199)։ Անկասկած է, որ «Մեծ աւան Բասենոյն» և Վաղարշավանը նույնն են։ Բասեն գավառում այդ պատմաշրջանում նշանավոր այլ բնակավայր՝ մեծ ավան կամ քաղաք չի հիշատակվում։ Այդ ավանն ուղղակի գտնվում էր Հասանկալայի արևելյան շարունակության վրա, վերջինից 3—4 կմ հեռավորությամբ և դրանց իրար հետ նույնացնելը, որ ենթադրաբար արել են որոշ ուսումնասիրողներ, ունի իր աշխարհագրական ու պատմական ելակետերը։

Վաղարշավանի ծաղկուն շրջանը Բագրատունիների թագավորության ժամանակներն էին։ Գտնվելով Արևելքն Արևմուտքի հետ միացնող Հայաստանի հյուսիսային քարավանային մեծ ճանապարհի վրա՝ Վաղարշավանը X—XI դարերում դարձել էր տնտեսական կյանքի աշխույժ կենտրոն, «մեծ դաստակերտ», ինչպես այն կոչել է Արիստակես Լաստիվերտցին։ Նրա հնավայրում պահպանված են մի ընդարձակ քարավանատան ավերակներ, իսկ մոտակայքում գտնվում է Հովվի հայտնի կամուրջը, որի վրայով անցնում էր նշված ճանապարհը։

XI դարում՝ 1048—49թթ. սելջուկ թուրքերն իրենց ավարառուական առաջին արշավանքների ժամանակ, ի թիվս Հայաստանի մյուս բազմաթիվ բնակավայրերի ու գավառների, գրավել և ավերել են նաև Վաղարշավանը։ Դեպքերին ժամանակակից Արիստակես Լաստիվերտցի պատմագիրը գրում է. «...և եկեալ [սելջուկները] մինչև ի գաւառն Բասեան, և մինչև ի դաստակերտն մեծ՝ որ կոչի Վաղարշաւան, քանդեալ ապականեցին գաւառս քան և չորս սրով, և հրով, և գերութեամբ» (Լաստիվերտցի, էջ 65)։

Դրանից հետո Վաղարշավանն առանձին զարգացում չի ունենում, իսկ թուրքական տիրապետության մռայլ ժամանակներում հետադիմելով՝ վերածվել է անշուք գյուղի՝ Քյոփրիքյոյ անունով։ Այդ գյուղում, նրա կենտրոնում, պահպանվել են տաշած քարից կառուցված զանազան շենքերի ավերակներ, որոնց վրա արձանագրություններ չեն հայտնաբերված։ Բնակիչները դրանք անվանում են քարվանսարա կամ խան։ Եվրոպական ճանապարհորդները դրանք համարում են ճենովական կառուցվածքի ավերակներ, որ անընդունելի է։ Վաղեմի Վաղարշավանի հուշարձանների պսակը կազմում է Հովվի կամուրջը, որին թուրքերը թարգմանաբար կոչում են Չոբանքյոփրի։

Այն գտնվում է պատմական Վաղարշավանի մոտ, Մուրց և Արաքս գետերի խառնարանի շրջանում, Արաքսի վրա։ Հավանաբար կառուցվել է IV դարում և կանգուն ու բանուկ է մինչև օրս։ Քարակերտ է, ունի 7 կամար և համարվում է Արաքսի պատմական ամենակարևոր կամուրջներից մեկը։ Ավանդությունը կամուրջի կառուցումը վերագրում է հովիվներին և դրանց անվան հետ էլ կապում նրա անունը։

## ՎԱՆ

Հին ու նոր ոչ մի երկիր չի ունեցել այնքան մեծ թվով մայրաքաղաքներ, որքան ունեցել է Հայաստանը։ Գտնվելով Արևելքի ու Արևմուտքի սահմանագլխին, Հայաստանը դարեր շարունակ դարձել էր ռազմական բախումների ոլորտ, երկարատև պատերազմների ասպարեզ։ Արտաքին թշնամիների պարբերաբար կրկնվող հարձակումները հարկադրել են երկրի մայրաքաղաքը հաճախակի մի տեղից տեղափոխել մի այլ, ավելի ապահով տեղ։ Չհաշված մայրաքաղաքի նշանակություն ստացած ժամանակավոր թագավորանիստերը, ֆեոդալական մանր թագավորությունների և Փոքր Հայքի, Ծոփքի ու Կիլիկիայի հայկական թագավորությունների մայրաքաղաքները (Անտիոք, Լոռի, Աղթամար, Կապան, Սիս և այլն), Հայաստանն ունեցել է 13 մայրաքաղաք։ Ահա հայոց մայրաքաղաքների երկար շարքը՝ Վան, Արմավիր, Երվանդաշատ, Արտաշատ, Տիգրանակերտ, Վաղարշապատ, Արշակավան, Դվին, Բագարան, Երազգավորս, Կարս, Անի, Երևան։ Ահա թե ինչու են օտար հեղինակները Հայաստանը կոչել «թափառող մայրաքաղաքների երկիր»։

Բագարանից և Երազգավորսից բացի, մեր մյուս մայրաքաղաքները խոշոր քաղաքներ են եղել և մեծ դեր են խաղացել մեր ժողովրդի քաղաքական, տնտեսական և մշակութային կյանքում։

Վանը հայկական շրջանում կենտրոնական պետության մայրաքաղաք չի եղել։ Այն միայն որոշ ժամանակ դարձել էր Վասպուրականի Արծրունյաց ֆեոդալական թագավորության մայրաքաղաքը։ Բայց այդ ամենևին էլ չի բացառում Վանը հա-

յոց մյուս մայրաքաղաքների շարքում դասելը։ Նախահայկական շրջանում Վանը հայկական լեռնաշխարհում (Պատմական Հայաստան) կազմավորված հայկական (Նաիրյան) ցեղերի առաջին պետության՝ Ուրարտուի մայրաքաղաքն էր և, իբրև այդպիսին, չի կարող իր տեղը չգրավել հայոց մայրաքաղաքների համաստեղության մեջ։

Վան քաղաքը հիմնադրվել է մեր թվականությունից առաջ՝ IX դարի առաջին կեսում։ Հնագույն այդ շրջանում այն կոչվում էր Տուշպա։ Հետագայում Տուշպա անունը Տոսպ ձևով անցել է Վանի շրջակայքի գավառին և Վանա լճին, որը Տոսպից բացի ունեցել է բազմաթիվ ուրիշ անուններ՝ Բզնունյաց ծով, Աղթամարի լիճ, Խլաթի լիճ և այլն։ Իսկ քաղաքը Ուրարտական պետության կենտրոնական շրջանի՝ Բիայնա երկրի անունով հայերը կոչել են Վան։ Վան անունը ուղղակի համարում են Բիայնայի հայկական տառադարձությունը և նշանակում է «ապրելու տեղ», «բնակավայր», «բնակվելու տեղ»։ Այդ պատճառով էլ «վան» բառի զուգորդությամբ Հայաստանում առաջացել են բազմաթիվ բնակավայրերի անուններ (Երվանդ-ավան, Արշակ-ա-վան, Զարեհ-ա-վան, Նախճ-ա-վան, Վանեվան և այլն)։

Վանը կոչվել է նաև Շամիրամակերտ կամ Շամիրամաշեն՝ Ասորեստանի կիսավանդական Շամիրամ թագուհու անունով։

Վան քաղաքը գտնվում է Վանա լճի արևելյան կողմում, լճափից մի քանի կիլոմետր հեռավորության վրա։ Նա լճի հետ կապվում է Ավանց գյուղի միջոցով, որը քաղաքի նավահանգիստն է և գտնվում է անմիջապես լճափին։ Քաղաքը տեղադրված է հարթավայրում, կլիման չոր ու շոգ է։ Ունի արգավանդ հողեր և փարթամ այգիներ։ Քաղաքի թաղամասերում բխում են տասնյակ աղբյուրներ։ Քաղաքի կեսը թաղված է այգիների մեջ, այդ թաղամասը մինչև օրս հայտնի է Այգեստան անունով։ Կենտրոնական մասում վեր է խոյանում մի լեռնաճյուղ-ժայռ, որի վրա զետեղված է եղել ուրարտական միջնաբերդը։ Քաղաքից դեպի արևելք, ոչ հեռու բարձրանում է Վարագա լեռն իր համանուն երկու վանքերով, որոնք իրենց դպրոցներով ու մատենադարաններով այնքան հայտնի էին դարեր շարունակ և որոնք կոչվում էին Հին ու Նոր Վարագա վանքեր։ Դրանց ավերակները գոյություն ունեն մինչև այժմ։

Վանը աշխարհի հնագույն քաղաքներից մեկն է և գոյու-

թյուն ունի մինչև օրս։ Ուրարտական թագավորներն իրենց հռչակավոր մայրաքաղաքը կառուցել են հաշվի առնելով նրա նպաստավոր դիրքը՝ քաղաքական, ռազմական, տնտեսական առումներով։ Այն գտնվում էր Ուրարտական ընդարձակ պետության գրեթե երկրաչափական կենտրոնում և կարող էր այն ժամանակվա պայմաններին համապատասխան կապ պահպանել պետության բոլոր շրջանների հետ։ Քաղաքը արևմտյան կողմից պաշտպանվում էր Վանա լճով, հարավային կողմից՝ Հայկական Տավրոս լեռնաշղթայի արևելյան հատվածով, իսկ նրա ախոյանների՝ ասորեստանցիների. հարձակման գլխավոր վտանգը սպասվում էր հենց այդ կողմերից։ Բացի դրանից, քաղաքի կենտրոնական մասում բարձրացող լեռը, որ իշխող դիրք ունի շրջապատի նկատմամբ, բնական մեծ ամրություն էր և անառիկ էր այն ժամանակվա բանակների համար։ Ուրարտացիները հենց այդտեղ կառուցել էին իրենց հռչակավոր մայրաքաղաքի ժայռափոր միջնաբերդը՝ Ամարտանը, որն ուներ վիմափոր դարանոցներ ու զինանոցներ, պահեստներ, ախոռներ, դիտակետեր, բավական ընդարձակ հրապարակներ։ Բերդի ստորոտով ձգվում էր ոչ պակաս ամուր պարիսպն իր պաշտպանական մյուս կառույցներով։ Վանը, այսպիսով, հին աշխարհի անառիկ քաղաքներից մեկն էր։

Ոչ պակաս նպաստավոր էր Վանի աշխարհագրական դիրքը նաև տնտեսական առումով։ Վանը IX—VII դարերում (մ. թ. ա.) գտնվում էր Ուրմիա լճի ավազանից դեպի Արածանիի ավազանը և Արևելյան Տիգրիսի ավազանից դեպի հյուսիս տանող կարևոր ճանապարհների խաչմերուկում։ Բացի դրանից, նա կարող էր առափնյա նավարկության միջոցով կապվել Վանա լճի շուրջն ընկած շրջանների ու քաղաքների հետ։ Իբրև պետության մայրաքաղաք, երկրի բոլոր շրջանների տնտեսական կյանքի թելերը ձգվում էին դեպի այնտեղ։ Նա միաժամանակ տնտեսական աշխույժ կապեր ուներ ժամանակի հայտնի պետությունների՝ հատկապես Ասորեստանի և Խեթերի պետության հետ։

Վանը արհեստագործության խոշոր կենտրոն էր դարձել տակավին ուրարտական ժամանակաշրջանում։ Քաղաքում հայտնի էին մետաղամշակությունը, զինագործությունը, կավագործությունը, քարտաշությունը, մանածագործությունն ու ջուլհակությունը և այլ արհեստներ։ Վանի մետաղագործության

զարգացմանը մեծապես նպաստում էր բնական հումքերի՝ անագի (քաղաքից հարավ), երկաթի ու կապարի (Վանա լճի հարավային ափին), պղնձի ու գունավոր այլ մետաղների առատությունը պետության զանազան շրջաններում։

Առևտուրն ու արհեստները ուրարտական մայրաքաղաքի տնտեսության հիմնական ճյուղերն էին։ Բայց դրանցով չէր սահմանափակվում նրա տնտեսական կյանքը։ Քաղաքի բնակչության զգալի մասը զբաղվում էր այգեգործությամբ, բանջարաբուծությամբ և ձկնորսությամբ։

Այստեղ առանց արհեստական ոռոգման հնարավոր չէ գրեթե որևէ մշակույթի գծով բավարար բերք ստանալ։ Բայց Վանի շրջակայքում չկա խմելու և ոռոգման համար անհրաժեշտ քանակությամբ ջուր։ Մայրաքաղաքի բնակչությանը խմելու ջրով ապահովելու և այգիները ոռոգելու համար ուրարտացիները VIII դարի առաջին քառորդում (մ. թ. ա.) կառուցում են 80 կիլոմետր երկարությամբ մի ջրանցք, որը սկիզբ է առնում Հայկական Տավրոսի հյուսիսային լանջերից (դրա ակունքը գտնվում է Վանա լճը Թափվող Խոշաբ գետից մոտ 5 կիլոմետր հարավ) և ձգվում մինչև քաղաքի ուրարտական պարիսպների մոտ, որտեղից այն ուղղվում է դեպի լիճ, ավելորդ ջրերի կուտակումներից ու ճահճակալումներից քաղաքը զերծ պահելու նպատակով։ Ուրարտական թագավոր Մենուայի կառուցած այդ ջրանցքը ոռոգում էր ավելի քան 10 զանազան բնակավայրերի և Տուշպա մայրաքաղաքի դաշտերն ու այգիները, այն խմելու ջուր էր տալիս տուշպացիներին։

Մենուայի ջրանցքը հին աշխարհի նշանավոր մեծ կառույցներից մեկն է և գոյություն ունի ու գործում է մինչև օրս։ Հայ մատենագրության մեջ Վան քաղաքի ու Մենուայի ջրանցքի կառուցումը վերագրել են Ասորեստանի ավանդական թագուհի Շամիրամին։ Հայերը մինչև օրս էլ այդ առոմ կոչում են Շամիրամի ջրանցք, իսկ թուրքերը՝ Շամիրամ-սու։

Մենուայի ջրանցքից բացի, Տուշպայի բնդարձակ այգիներն ու դաշտերը ոռոգելու համար՝ ուրարտացիները քաղաքից արևելք պատրաստել էին մի արհեստական լիճ, որն այժմ էլ գոյություն ունի և թուրքերն այն կոչում են Քեշիշ-գյոլ («տերտերի լիճ»)։

Հայաստանի մյուս խոշոր քաղաքների նման Վանի քաղաքական պատմությունը ևս ունեցել է շատ ելևէջներ։ Առաջին

մեծ հարվածը Վան-Տուշպան ստացել է ասորեստանցիների կողմից, Ուրարտական պետության անկման շրջանում՝ VII—VI դարերում (մ.թ.ա.)։ Ուրարտական պետության անկումից հետո (585թ. մ.թ.ա.) մի քանի դար Վանը կորցրել էր իր նախկին փառքը և դարձել երկրորդական քաղաք։ Վանը զարգացման նոր ժամանակաշրջան է ապրում Հայ Արտաշեսյան թագավորության շրջանում, մանավանդ Տիգրան Բ-ի օրոք (95—55 թթ. մ.թ.ա.)։ Վերջինս հելլենիստական քաղաքներից բերած հրեա, հույն ու ասորի հազարավոր գերի արհեստավորներ ու առևտրականներ է բնակեցնում Վանում, մեծապես նպաստելով նրա տնտեսական կյանքի՝ հատկապես առևտրի ու արհեստագործության առաջադիմությանը։

I—VII դարերում, ընդհանուր առմամբ, Վանը շարունակում է մնալ որպես Հայաստանի խոշոր քաղաքներից մեկը։ Այստեղ շարունակում են գոյություն ունենալ հնից եկող արհեստները, առաջանում են և նոր արհեստներ (հատկապես մետաղամշակման զարգացման հետ կապված), զարգանում է առևտուրը։ Արաբական տիրապետության շրջանում (VIII—IX դարեր) Հայաստանի մյուս քաղաքների հետ, զգալի չափով հետադիմում է և Վանը, վերածվելով սովորական ֆեոդալական քաղաքի, որի բնակչության զբաղմունքի մեծ մասը կազմում էին ոչ թե քաղաքային, այլ առաջին հերթին գյուղատնտեսական զբաղմունքները։

Վանը բուռն զարգացման ժամանակաշրջան է ապրում IX—XIII դարերում, Հայաստանում ֆեոդալիզմի զարգացման ժամանակաշրջանում։ Արհեստների, առևտրի, մշակութային կյանքի զարգացման և X—XI դարերում մի բավական ընդարձակ պետության (Վասպուրականի թագավորության) մայրաքաղաք լինելու շնորհիվ, Վանը դառնում է Հայաստանի խոշորագույն քաղաքներից մեկը։ Այդ դարերում նրա բնակչության թիվը տասնյակ հազարների է հասնում, իսկ նրա առևտուրը ստացել էր համապետական և նույնիսկ, միջազգային նշանակություն։

XIII դարով վերջանում է Վանի զարգացման ժամանակաշրջանը։ Դրանից հետո այն դարեր շարունակ դառնում է կռվախնձոր թուրքական զանազան ցեղերի ու օսմանյան Թուրքիայի և Պարսկաստանի միջև։ Քաղաքական անկայուն պայմանները խիստ բացասաբար են ազդում հնագույն քաղաքի տնտեսական ու մշակութային կյանքի վրա։

Վանը զգալի չափով տուժում էր նաև պարբերաբար կրկնվող երկրաշարժերից։ Աղբյուրները հաղորդում են քաղաքում և նրա շրջակայքում 1276, 1441, 1646, 1648, 1701, 1715 թվականներին տեղի ունեցած երկրաշարժերի ու դրանց պատճառած վնասների մասին։ Առանձնապես կործանիչ է եղել 1648 թվականի երկրաշարժը, որի հետևանքով ավերվել են ամբողջական թաղամասեր, բազմաթիվ եկեղեցիներ ու մզկիթներ, խոր հնությունից եկող հուշարձաններ։ Քաղաքի առևտրական շարքերն ու փայտաշեն խանութները, որոնք լեփլեցուն էին ներմուծովի ու տեղական ապրանքներով, ճարակ են դարձել 1876 թվականին բռնկված զարհուրելի հրդեհին։

Բայց և այնպես, Վանը նոր ժամանակներում դարձյալ արհեստագործության ու առևտրի նշանակալի կենտրոն էր, բավական մարդաշատ, սրբագործված հին ավանդույթների մի քաղաք, որն իր մշակույթով, հուշարձաններով ու հնություններով, վարչական նշանակությամբ (այն համանուն մեծ նահանգի՝ վիլայեթի կենտրոնն է) մնում էր իբրև Արևմտյան Հայաստանի կարևոր քաղաքներից մեկը։

Ըստ համեմատաբար արժանահավատ աղբյուրների, Վանը 1805—1806 թվականներին ունեցել է 15—20 հազար բնակիչ, մեծ մասը՝ հայեր, 1890-ական թվականներին նրա բնակչության թիվը հասնում էր 40 հազար մարդու, որից 25 հազարը հայեր էին։ Գրեթե նույնքան բնակիչ ուներ նաև 1915թ մեծ եղեռնի նախօրյակին։

Վանի հայ բնակչությունը հիմնականում զբաղվում էր արհեստագործությամբ ու առևտրով։ Այստեղ գործում էին տասնյակ արհեստներ։ Առանձնապես կատարելության էին հասել երկաթագործությունը, զինագործությունը, դերձակությունը, կոշկակարությունը, իսկ ոսկերիչների ու արծաթագործների պատրաստած իրերն ու առարկաները իսկական արվեստի գործեր էին, որոնք այնքան մեծ համբավ ունեին ոչ միայն երկրի ներսում, այլև նրա սահմաններից դուրս։ Արհեստների զարգացման հետ միասին XIX դարի երկրորդ կեսում երևան են գալիս նաև մի քանի համեմատաբար խոշոր ձեռնարկություններ։ 1870-ական թվականներին քաղաքում գործում էր կաշեգործական մի ձեռնարկություն, նույն այդ թվականներին շարք էր մտել Թոխմախյան եղբայրների կտավագործական ձեռնարկությունը, որին հաջորդեցին նաև ուրիշ ձեռնարկություններ։

*Այս վերջինների թվում էր 1896-ին հիմնադրված՝ համեմատաբար ավելի կատարելագործված ձեռնարկությունը։ 1890-ական թթ. վարպետ Ալեքսանը հիմնել է մեխանիկական գործարան, որն արտադրում էր ջրհան պոմպեր, գյուղատնտեսական գործիքներ և երկաթյա այլ իրեր։ Այդ բոլոր «գործարաններն» ու «ֆաբրիկաները» դեռևս կապիտալիստական մեքենայացված ձեռնարկություններ չէին, այլ սովորական մանուֆակտուրային։ Վանի արդյունաբերության հետագա զարգացումն իսպառ ընդհատվեց երիտթուրքերի կազմակերպած ցեղասպանության հետևանքով։*

*Վանն առևտրի աշխույժ կենտրոն էր և կապված էր Թավրիզի, Բիթլիսի, Վանա լճի շրջակայքի քաղաքների հետ։ Քաղաքի հայ վաճառականները ներմուծում էին գորգեր, բամբակ, չիթ, քաշմիրի շալ, մանրավաճառի ապրանքներ։ Իսկ Պոլիս և այլուր արտահանում էին՝ հացահատիկ, անասուններ, բուրդ, կաշի, ընկուզենու փայտ, շատախի շալեր, տառեխ ձուկ. բորակ, ոսկերչական և արծաթագործական ընտիր շինվածքներ։ Քաղաքում կային շուկա-հրապարակներ՝ հարյուրավոր խանութներով, կրպակներով և արհեստանոցներով։*

*XIX դարում և XX-ի սկզբներին Վանը հայկական մշակույթի նշանակալի կենտրոն էր։ Այստեղ գործում էին տարբեր կարգի 10 վարժարաններ մոտ 1700 աշակերտներով։ Դրանցից համեմատաբար խոշոր և հայտնի էին Փորթուգալյան կենտրոնական վարժարանը և ս. Ղուկասյան ու Երեմյան կրթարանները, որոնցից վերջինը բացվել էր 1878 թվականին։ Քաղաքում կազմակերպվել էին թատերական ինքնագործ մի քանի խմբեր, որոնցից մեր դարի սկզբներին (1905—1914 թթ.) ամենաեռանդուն գործունեություն ունեցողն ու առաջատարը Արտաշես Աղախյանի ղեկավարածն էր։*

*Վանը հայկական գրչության մեծ կենտրոն էր։ Մեզ են հասել այստեղ գրված կամ օրինակված տասնյակ ձեռագրեր՝ ավետարաններ, ճաշոցներ, մաշտոցներ, գանձարաններ, ժամագրքեր, տոնացույցներ և այլն։ Մշակութային առումով Վանի հետ էր կապված հայտնի Վարագավանքը, որն ուներ իր վարժարանը, պարբերականը («Արծվի Վասպուրական»), հարուստ մատենադարանը։ Քաղաքում պահպանվել են ուրարտական թագավորների սեպագիր բազմաթիվ արձանագրություններ, որոնք նույնքան բազում հայկական վիմագիր արձանագրություն-*

ների հետ միասին կարևոր աղբյուրներ են մեր ժողովրդի պատմության համար։

XX դարի սկզբին Վանն ունեցել է 5500 տուն, որից 3000-ը՝ հայկական։ Քաղաքը բաժանված էր երկու մասի, որոնցից մեկը պարսպապատ բուն քաղաքն էր և կոչվում էր Քաղաքամեջ, իսկ մյուսը դրանից արևելք գտնվող Այգեստանն էր՝ փռված ընդարձակ տարածության վրա։ Տների մեծ մասն աղյուսաշեն էր, միհարկանի, երկհարկանի և քիչ թվով՝ եռահարկ։ Փողոցները նեղ ու ծուռումուռ էին։ Քաղաքի հայաբնակ մասը բաժանվում էր 34 մեծ ու փոքր թաղերի, որոնցից 31-ը խիստ ավերվել էին 1895թ. համիդյան ջարդերի ժամանակ։ Հայկական եկեղեցիների թիվը հասնում էր 12-ի։ Դրանցից էին՝ ս. Տիրամայրը, ս. Պողոսը, ս. Պետրոսը, ս. Վարդանը, ս. Սահակը և այլն։

Վանում են ծնվել կամ գործել մեր ժողովրդի բազում երախտավորներ՝ գրողներ, գիտնականներ, արվեստագետներ, քաղաքական ու զինվորական գործիչներ։ Այստեղ են ծնվել գրողներ Վրթանես Փափազյանը, Վ. Մ. Ալազանը, Ա. Վշտունին, Գ. Մահարին, նկարիչ Հ. Ալխազյանը, ամերիկյան հայազգի քանդակագործ Հ. Ս. Բաղիկյանը (1876—1950), ռեժիսոր, ՍՍՀՄ ժողովրդական դերասան Վ. Մ. Աճեմյանը, քաղաքական-կուսակցական ականավոր գործիչ Ա. Գ. Խանջյանը, պրոֆ. Տ. Ա. Ջրբաշյանը, Մ. Մ. Մկրյանը և ուրիշներ։

Այսպիսով, Վանը հայաբնակ քաղաք էր ընդհուպ մինչև առաջին համաշխարհային պատերազմը։ Նրա հայ բնակչությունը դաժան բռնությունների ենթարկվեց սուլթան Աբդուլ Համիդի ջարդարարների կողմից՝ 1895—1896 թվականներին։ Բայց Վանի պատմական կյանքում ճակատագրական դարձան առաջին համաշխարհային պատերազմի տարիները։ Ջնայած հերոսական պաշտպանությանը, Վանի հայ բնակչությունը ևս ենթարկվեց (1915թ.) երիտթուրքերի ցեղասպան քաղաքականության արհավիրքներին։ Նրա զգալի մասն, այնուամենայնիվ, փրկվեց և ապաստան գտավ Արևելյան Հայաստանում ու աշխարհի զանազան անկյուններում։

Այժմ Վանը գավառական տիպի հետամնաց քաղաք է, ծուռումուռ, կեղտոտ փողոցներով և ծայրահեղ հետամնաց անտեսությամբ։

Վանն իր պատմական հուշարձաններով գրավում է հնա-

*գետների, պատմաբանների, ճարտարապետների ու հետաքրքրասեր զբոսաշրջիկների։ Այն իր ուրարտական-հայկական հուշարձաններով մի մեծ թանգարան է, առանց որի ուսումնասիրության անհնար է համակողմանիորեն վերականգնել հին աշխարհի հնագույն պետություններից մեկի՝ Ուրարտուի պատմությունը, որն ստեղծել էին հայկական ցեղերը և որն անմիջականորեն նախորդել է բուն հայկական պետությանը։*

## ՏԵՎՐԻԿ

*Փոքր Հայքի այս քաղաքը հին հռոմեական քարտեզներում նշանակված է Տևկիլա (Տևկիրայի փոխարեն) ձևով, արաբները կոչել են Աբրիգ, բյուզանդացիները՝ Տեֆրիկա, թուրքերը՝ Դիվրիգ։ Այն գրականության մեջ հայտնի է նաև անվան մի շարք ուրիշ տարբերակներով՝ Տիվրիկ, Տևրիկա և այլն։ Ենթադրվում է, որ անունը կարող է առաջացած լինել հայերեն «տափարակ» կամ «տավրիկ» (փոքր Տավրոս) բառերից։ Երբեմն հիմնադրի՝ Կարբեասի անունով կոչվել է Կարբեասի քաղաք։*

*Հիշատակվում է իբրև ճանապարհային կայան, գյուղաքաղաք, բերդաքաղաք և քաղաք։ Գտնվում էր Զիմարայից Մալաթիա տանող ճանապարհին, պատմական Փոքր Հայքում, նրա և Մեծ Հայքի Բարձր Հայք աշխարհի սահմանագլխին, Եփրատի աջակողմյան վտակ Տևրիկ (Մելաս, Չայթ-սու) գետի ստորին հոսանքում, Սեբաստիայի և Կարինի միջև, Ակն քաղաքից մոտ 50 կմ հյուսիս-արևմուտք։ Քաղաքը փռված է հարթ ձորահովտում, որը շրջապատված է արևելքից արևմուտք ձգվող երկու շարք լեռներով։ Նրա բերդը գտնվում էր բարձրավանդակի վրա, մեր ժամանակների Ուլումիա քարավանատան տեղում։ Տևրիկի 10—12 կմ երկարություն ունեցող հովիտը ամբողջովին ծածկված էր այգեստաններով և պարտեզներով։ Ուներ ընտիր խաղող և գինի։ Շրջակայքում կան երկաթի (այդ թվում և մագնիսական երկաթի) հանքավայրեր։ Պարտեզներով ու այգիներով շրջապատված լինելու պատճառով կոչվել է նաև Կանաչ Տևրիկ։*

*Հնում մտնում էր Փոքր Հայքի Առաջին Հայքի, իսկ Հուստինիանոս կայսեր վարչական վերափոխությունից հետո (VI դ.)՝*

Երկրորդ Հայքի մեջ։ Նոր ժամանակներում Սեբաստիայի նահանգի Սեբաստիայի գավառի Տևրիկի գավառակի կենտրոնն էւ

Հիմնադրվել է 855 թվականին՝ պավլիկյան շարժման հայտնի առաջնորդ Կարբեասի կողմից։ Հնում ունեցել է մոտ 1200 տուն, որի կեսից ավելին հայկական։ Պավլիկյանների հայտնի զորակայանն էր, այդ հուժկու շարժման հիմնական կենտրոնը, որտեղ զետեղված էին Բյուզանդական կայսրության և տեղական ֆեոդալների դեմ կռվող պավլիկյանների տասնյակ հազարների հասնող զինված ջոկատները։ Բյուզանդական Բարսեղ կայսրը 873 թ. գրավել և քարուքանդ է արել պավլիկյան շարժման այդ հզոր կենտրոնը։ XI դարի վերջերին Տևրիկին տիրել են սելջուկները, 1242թ.՝ թաթար-մոնղոլները, իսկ XVI դարի սկզբին՝ օսմանյան թուրքերը։

Տևրիկը XIX դ. սկզբին ուներ 2000 տուն, որից միայն 100-ն էր հայկական, նախկինում ունեցած 2000 տան (մոտ 20 հազարը բնակչությամբ) փոխարեն[25]։ XIX դ. վերջերին նրա բնակչությունը հասնում էր 10 հազար մարդու, իսկ 1915-ին՝ մեծ եղեռնից առաջ, 12 հազարի, որից 4000-ը հայեր։

Բնակչությունը զբաղվում էր արհեստներով, առևտրով, այգեգործությամբ և երկրագործությամբ։ Ուներ 2—3 շուկա, տասնյակներով վաճառանոցներ ու արհեստանոցներ։

Տևրիկի հայ բնակչությունը նույնպես ենթարկվել է թուրքական ցեղասպանների արհավիրքներին։ Նրա մի մասը բնաջնջվել է, իսկ մյուս մասը տեղահանվել առաջին համաշխարհային պատերազմի տարիներին։ 1955 թվականի տվյալներով այդտեղ բնակվում էր 5 հայ ընտանիք։ Իսկ 1951 թ. նրա ամբողջ բնակչության քանակը հասնում էր ընդամենը 6000 մարդու։

Ինչպես ասվեց, քաղաքն ունեցել է իր միջնաբերդը, որ գտնվում էր սարավանդի վրա։ XX դարի սկզբներին դեռևս պահպանվում էին նրա մնացորդները՝ պաշտպանական պարսպի ու բուրգերի հետքերը, առանձին կառույցվածքների ավերակներ։ Նոր ժամանակների տևրիկցիները հին քաղաքի միջնաբերդի այդ ավերակները կոչում էին Բերդաթաղ։

Տևրիկն ուներ հայկական 3 եկեղեցի՝ ս. Աստվածածին, ս. Երրորդություն և ս. Առաքյալ։ Դրանցից առաջինը կառուցվել

---

25 Գ. Ինճիճյան, Նոր Հայաստան, էջ 298—299։

*էր 1259 թվականին, իսկ երկրորդը՝ 1268-ին։ Երկուսն էլ կենտրոնագմբեթի շենքեր էին և կառուցված էին այդ ժամանակների Մեծ Հայքի եկեղեցիների ոճով։ Նրա եկեղեցիներից մեկը պատկանում էր բողոքական հայերին։*

*Տերիկում գործում էին հայկական երկու վարժարան, որոնցից մեկը, ավելի մեծը, կոչվում էր Ներսիսյան կամ Ազգային վարժարան և XIX դարի 70-ական թվականներին ուներ երկսեռ 500 աշակերտ ու 14 ուսուցիչ, իսկ մյուսն անհամեմատ փոքր էր և պատկանում էր բողոքական հայերին։ Այստեղից գաղթած հայերը Կ. Պոլսում հիմնել էին Ուսումնասիրաց ընկերություն, որն իր օգնությունն էր ցույց տալիս հայրենի քաղաքի վարժարաններին։*

*Մոտակայքում էր գտնվում Աբարա ամրոցը՝ պավլիկյանների հայտնի հենակետը մինչև Տերիկի հիմնադրումը։ Քաղաքում հայտնաբերվել են խեցեղեն արձանագրություններ։*

## ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ

*Տիգրանակերտը, որ կառուցվել էր Տիգրան Բ-ի օրոք՝ 70-ական թթ. (մ. թ. ա) և նրա անունով էլ կոչվել, տարբեր ժամանակներում կրել է տարբեր անուններ՝ Մարտիրոսուպոլիս, Մարտիրոպոլիս, Մուաֆարկին, Ֆարկին, Նփրկերտ և այլն։ Այն Հուստինիանոսի (527—565) կազմած Չորրորդ Հայքի կենտրոնն էր։ Իսկ Մորիկի կազմած (VI դ. վերջեր) մյուս Չորրորդ Հայքի կենտրոնը Ամիդն էր, հետագայի և այսօրվա Դիարբեքիրը։ Եվ ահա որոշ պատմագիրներ ու աշխարհագրագետներ, հնում և այժմ չկռահելով միևնույն անունը կրող, բայց տարբեր տերիտորիա և տարբեր կենտրոններ ունեցող հարևան նահանգների միաժամանակյա գոյությունը՝ Տիգրանակերտ-Մարտիրոսուպոլիսը շփոթել են Ամիդ-Դիարբեքիրի հետ, ենթադրելով, որ դրանք միևնույն քաղաքն են, նույն նահանգի՝ Չորրորդ Հայքի կենտրոնը։ Մինչդեռ Ամիդ-Դիարբեքիրը ու Տիգրանակերտ-Մարտիրոսուպոլիսը տարբեր քաղաքներ են, առաջինը գտնվում էր Արևմըտյան Տիգրիսի ափին, իսկ երկրորդը՝ դրանից մոտ 60 կիլոմետր հյուսիս-արևելք, Սասունի լեռների հարավային ստորոտում։*

*Ֆարկինի ափին մինչև օրս էլ պահպանված են Հայաստանի վաղեմի հռչակավոր մայրաքաղաքի ավերակները, նրա խառ-*

խըլված համատահեղույս պարիսպներն ու աշտարակները, առանձին խոշոր կառույցների մնացորդներ։

Տիգրան Մեծի ժամանակ, հատկապես մինչև Պոմպեոսի հետ կնքած հաշտությունը (65թ. մ.թ.ա.), իրոք որ նորաշեն Տիգրանակերտը տնտեսական, քաղաքական և ռազմաստրատեգիական առումներով ուներ նպաստավոր դիրք։ Նրանից ոչ հեռու հարավով ձգվում էր պարսից հին ճանապարհը՝ Դարեհ Առաջինի կառուցած «արքայական պողոտան», որի միջոցով Տիգրանակերտը հեշտությամբ կարող էր կապվել Միջագետքի, Արևելքի և Արևմուտքի երկրների հետ։ Այդպիսի սերտ կապերն ու հարաբերությունները իրոք որ բարերար ազդեցություն թողեցին Տիգրանակերտի զարգացման վրա։ Նպաստավոր էր նրա դիրքը նաև քաղաքական առումով։ Տիգրան Մեծի ժամանակ Տիգրանակերտը գտնվում էր հայկական պետության կենտրոնական մասում։ Նա կարող էր հավասարապես կապեր պահպանել երկրի բոլոր շրջանների հետ։ Իսկ Միջագետքի նկատմամբ ունեցած բարձր ու իշխող դիրքը և հյուսիս-արևելքից, հյուսիսից ու հյուսիս-արևմուտքից Իլիջայի լեռներով պաշտպանված լինելը Տիգրանակերտը ռազմաստրատեգիական տեսակետից դարձնում էր դժվարամատույց քաղաք։

Տիգրանակերտը գտնվում էր երեք կարևոր ճանապարհների խաչմերուկում։ Դրանցից մեկը քաղաքը միացնում էր պարսից «արքայական ճանապարհի» հետ, որի մասին խոսք եղավ քիչ առաջ, երկրորդը՝ Տիգրանակերտից Արտաշատ տանող ոչ պակաս բանուկ ուղին էր, որը սովորաբար կոչվում էր հայկական «արքայական ճանապարհ» կամ «պողոտա», իսկ երրորդը՝ Ներջիկի ու Շենիկի լեռնային շրջաններով գնում էր դեպի Արածանիի (Արևելյան Եփրատի) հովիտը։ Վերջինս առավելապես ռազմական ճանապարհ էր, ուներ ստրատեգիական կարևոր նշանակություն։

Տիգրանակերտը բավական արագ է զարգացել։ Ընդամենը 2—3 տասնամյակների ընթացքում այն դարձել էր հին Արևելքի մեծահռչակ քաղաքներից մեկը։ Քաղաքի զարգացումն ու բարգավաճումը շարունակվել է Տիգրանի թագավորության բոլոր տարիներին։ Լուկուլլոսի (69թ. մ.թ.ա.) և Պոմպեոսի (66—65 թթ. մ.թ.ա.) արշավանքները, այնուամենայնիվ, չկանգնեցրին մայրաքաղաքի առաջընթացը։ Ճիշտ է, Լուկուլլոսի կողմից գրավվելու ժամանակ այն մասնակիորեն ավեր-

վեց, բայց այդ անցողիկ երևույթ էր և էական ազդեցություն չթողեց քաղաքի ընդհանուր կյանքի վրա։

Տիգրանակերտը հելլենիստական տիպի քաղաք էր։ Նրա հիմնական բնակչության մեծագույն մասը զբաղվել է արհեստագործությամբ և առևտրով։ Երկրագործությամբ հավանաբար այստեղ քչերն են զբաղվել։ Այդ պատճառով էլ բնակչության թվի համեմատ Տիգրանակերտը փոքր տարածություն է գրավել։ Նա նման չի եղել հին Արևելքի ստրկատիրական այն քաղաքներին (Բաբելոն, Նինվե և այլն), որոնք ունեցել են լայնատարած ցանքեր ու այգիներ և փռված են եղել մեծ տարածությունների վրա։ Դա պարզ կերպով երևում է այն բանից, որ Լուկուլլոսը համեմատաբար քիչ զորքերով կարողացել է շրջապատել բազմամարդ քաղաքը։

Հին աշխարհի մյուս քաղաքների նման Տիգրանակերտի բնակչության թվի վերաբերյալ նույնպես չկան ուղղակի վկայություններ։ Անուղղակի մի շարք փաստերի հիման վրա, այնուամենայնիվ, ենթադրվում է, որ քաղաքն իր ծաղկման շրջանում ունեցել է ավելի քան 100 հազար բնակիչ։

Ազգային տեսակետից Տիգրանակերտի բնակչությունը միատարր չէր։ Բնակչության ճնշող մասը կազմում էին հայերը։ Այստեղ բնակվում էին նաև մեծ թվով հրեաներ, հույներ, ասորիներ, կապադովկացիներ և այլք։ Եկվոր բնակչության մեծագույն մասը պատկանում էր այն գերիների թվին, որոնց 80—70-ական թվականներին (մ. թ. ա.) Կապադովկիայում, Արևելյան Կիլիկիայում, Ասորիքում (Սիրիա), Միջագետքում, Պաղեստինում և Փյունիկիայում վարած պատերազմների ընթացքում Տիգրան Մեծը գերել ու տեղափոխել էր Հայաստան՝ բնակեցնելով նրա տարբեր մասերում։ Դրանք հիմնականում արհեստավորներ ու առևտրականներ էին, որոնց մի մասը Լուկուլլոսի (69 թ. մ. թ. ա.) արշավանքից հետո վերադարձավ հայրենիք, իսկ մյուս մեծ մասը ընդմիշտ մնաց Հայաստանում։

Տիգրանակերտում տեղի ունեցած քաղաքական անցքերի առնչությամբ նրա մասին շատ տեղեկություններ են տալիս հունական ու հռոմեական հեղինակները։ Մեր մատենագիրներից Տիգրանակերտի հիմնադրման մասին վկայություններ ունի միայն պատմահայր Մովսես Խորենացին, իսկ հետագա դարերի վերաբերյալ հիշատակություններ ունեն նաև ուրիշ շատ պատմագիրներ։

Հին հունական ու հռոմեական պատմագիրների նկարագրությունների համաձայն, Տիգրանակերտը շրջապատված է եղել 50 կանգուն բարձրություն ունեցող պարսպով։ Հզոր պարսպի ներսում կառուցել էին պահեստներ, զինանոցներ, ձիերի համար ախոռներ։ Անմատույց միջնաբերդը գտնվում էր քաղաքի ներսում, իսկ Տիգրանի կառուցած փառահեղ պալատն իր օժանդակ հարմարություններով տեղադրված էր քաղաքից դուրս։

Քաղաքի զարգացած արհեստներից էին զինագործությունը, դարբնությունը, բրուտագործությունը, ոսկերչությունը, շինարարական արհեստները (քարտաշություն, որմնադրություն, ծեփագործություն և այլն)։ Լինելով տարանցիկ առևտրի հանգրվաններից մեկը, Տիգրանակերտը ևս իր արհեստավորական արտադրանքներով ակտիվ մասնակցություն է ունեցել այդ առևտրին։

Տիգրանակերտը ոչ միայն երկրի մայրաքաղաքը, արհեստագործության և առևտրի խոշոր կենտրոն էր, այլև անտիկ շրջանի հայկական մշակույթի հայտնի օջախներից մեկը։ Տիգրանակերտում կար մշտական գործող թատրոն, որտեղ, հայերից բացի, հանդես էին գալիս նաև զանազան քաղաքներից հրավիրված օտարազգի (գլխավորապես հույն) դերասաններ։ Տիգրանակերտն ուներ դեռևս առաջին դարում (մ. թ. ա.) կառուցված թատրոնի շքեղ շենք, որի հետքերը նշմարվում են մինչև օրս։

Տիգրան Մեծից հետո Տիգրանակերտն այլևս բուռն զարգացում չի ունենում։ Դա նախ և առաջ բացատրվում է նրանով, որ Տիգրանից հետո Տիգրանակերտն ընդմիշտ դադարում է մայրաքաղաք լինելուց։ Տիգրանից հետո երկրի քաղաքական կենտրոններն էին դառնում բացառապես այն քաղաքները, որոնք գտնվում էին Այրարատյան աշխարհում (Վաղարշապատ, Դվին, Կարս, Անի և այլն)։ Սակայն Տիգրանակերտի տնտեսական ու մշակութային կյանքի վրա առանձնապես բացասաբար էին անդրադառնում Հռոմի ու Պարսկաստանի միջև պարբերաբար մղվող պատերազմները, պատերազմներ, որոնց համար թատերաբեմ էին դարձել ոչ միայն Հյուսիսային Միջագետքը, այլ նաև Հայաստանի հարավարևմտյան շրջանները։ Տիգրանակերտն ավելի աննպաստ պայմանների մեջ ընկավ հատկապես Հայաստանը Հռոմի և Պարսկաստանի միջև բաժանվելուց

հետո (387թ.)։ Նա գտնվում էր այս բաժանման գծի վրա, հռոմեական սահմանում։ Լինելով սահմանային, ժամանակի ընթացքում հռոմեացիները այն դարձնում են սովորական բերդաքաղաք։ Հետագա դարերում Տիգրանակերտն ավելի է կորցնում իր տնտեսական նշանակությունը։

Տիգրանակերտի պատմական ճակատագիրը հար ու նման է Հայաստանի հելլենիստական մյուս քաղաքների ճակատագրին։ II—III դարերից Հայաստանը վերջնականապես թևակոխում է ավատատիրության դարաշրջանը, երկրում զարգանում է ավատական ինքնաբավ տնտեսությունը։ Նախկին հելլենիստական տիպի քաղաքները՝ Արտաշատը, Երվանդաշատը, Զարիշատը, Զարեհավանը, Արշամաշատը, Արկաթիոկերտը և մյուսները, իբրև արհեստագործության, առևտրի ու հելլենիստական մշակույթի կենտրոններ, աստիճանաբար կորցնում են իրենց նախկին նշանակությունը և վերածվում ավատական քաղաքների։ Նույնպիսի ճակատագիր ունեցավ և Տիգրանակերտը։ Առաջանում են ավատական նոր քաղաքներ (Վաղարշապատ, Դվին և այլն), որոնք առաջ են անցնում այդ հին քաղաքներից։

Տիգրանակերտը դարեր շարունակ եղել է վարչաքաղաքական կենտրոն։ Տիգրան Մեծի օրոք նա Մեծ Հայքի մայրաքաղաքն էր, նրանից հետո՝ առաջին դարից (մ. թ. ա.) մինչև V դարը հայկական պետության հարավային կողմի սահմանակալ իշխանության՝ Աղձնիքի բդեշխության կենտրոնը, V—VII դարերում՝ պարսկական պետության Արևմտյան քուստակի մեջ մտնող Աղձնիքի շահարի կենտրոնը։ Նա մեծ վարչատերիտորիալ միավորների կենտրոն էր նաև արաբական և սելջուկյան տիրապետությունների ժամանակներում։

Արաբական տիրապետության շրջանում (VII—IX դարեր) Տիգրանակերտը, որն այդ ժամանակ արդեն կոչվում էր Մուաֆարկին (կամ Ֆարկին) մասնակի աշխուժացում է ապրում, որովհետև նա մի մեծ մարզի վարչական կենտրոն էր։ Սակայն գտնվելով Բյուզանդական կայսրության և արաբական խալիֆայության սահմանային շրջանում՝ Տիգրանակերտը դառնում է սոսկ բերդաքաղաք, բազմամարդ կայազորի տեղադրավայր և պարբերաբար ավերվում էր այդ երկու աշխարհակալ պետությունների միջև մղվող երկարամյա պատերազմների հետևանքով։ XII դարից սկսած աստիճանաբար կորցնելով իր նշանակությունը, այն վերածվեց անշուք մի բնակավայրի։

Վաղեմի Տիգրանակերտի ավերակներում մշտական պեղումներ չեն կատարվել։ Նրա պատմությունը դեռևս անբավարար է ուսումնասիրված։

## ՓԵՐԻ

Արևմտահայ գրականության մեջ ավելի հայտնի է Բերրի ձևով։ Հիշատակվում է իբրև ավան և գյուղաքաղաք։

Գտնվում է Դերսիմում, Խարբերդ քաղաքից մոտ 38 կմ հյուսիս-արևելք, Փերի գետի ստորին հոսանքի հովտում, պարփակված երկու լեռնաճյուղերի միջև, այգիներով և բանջարանոցներով պատած գեղատեսիլ սարավանդի վրա։ Բարձրությունը ծովի մակերևույթից 1040 մ է։ Կլիման մեղմ է, անտառային՝ ձյունառատ ձմեռներով և համեմատաբար տաք ամառներով։ Այն Չարսանջուկի գավառի և Փերի գավառակի կենտրոնն է։

Փերին երբեք բազմամարդ չի եղել։ Այն փոքրիկ գյուղաքաղաք է։ 1872—73 թթ. ուներ 300 տուն հայ և 80 տուն քուրդ ու թուրք բնակիչ[26], իսկ 1893—1900 թթ. ուներ 753 տուն հայ և 100 տուն քուրդ ու թուրք բնակիչ։ Նրա բնակիչների քանակը առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին հազիվ 4500 մարդու էր հասնում։ Այնուհանդերձ, Փերին համարվում էր Չարսանջակ գավառի առևտրական, արհեստավորական և մշակութային կենտրոնը։ Տեղական ճանապարհներով կապված էր գավառի շատ գյուղերի հետ։ Հայտնի էր իր այգիներով. բնակչության զբաղմունքների մեջ հիմնական տեղը գրավում էր այգեգործությունը, որի հիմնական մշակույթներից էին խաղողը և թութը։ Առևտուրը հիմնականում մանրածախ էր և սահմանափակված էր գավառի շրջանակներով։ Արհեստներից աչքի էին ընկնում հատկապես ոսկերչությունը, կտավագործությունը, ինչպես և մանագործությունը։

Գյուղաքաղաքի տների մեծագույն մասը երկհարկանի էր, հողե տափակ կտուրներով։ Տների երկրորդ հարկը ծառայել է իբրև բնակարան, իսկ առաջինը՝ գոմ, մարագ, փայտանոց, թոնրատուն։ Ուներ վեց գլխավոր թաղ՝ Կալերի, Շուկայի, Եկեղեցու, Կարմիր-աղբյուրի, Խորշակի և Տոն-աղբյուրի։ Դրանք

---

26 «Համառոտագրութ. ազգային կենտրոնական վարչ.», 1872—1873, էջ 65, Գ. Նարտեճյան, Արտօսր Հայաստանի կամ տեղեկագիր Բալուի, Խարբերդի, Չարսանջակի, Ճապաղջուրի և Երզնկայի, Կ. Պոլիս, 1883, էջ 138։

*բոլորը հայաբնակ էին, բացի Շուկայի թաղից, որտեղ ապրում էին 100 ընտանիք թուրք ու քուրդ բնակիչներ։*

*Հայերն ունեին իրենց եկեղեցին, որ կրում էր ս. Աստվածածին անունը։ Այստեղ XIX դարի երկրորդ կեսում և XX-ի սկզբներին գործում էր հայկական մի վարժարան 80—100 սաներով և մեկ նախակրթարան։*

*Արևմտյան Հայաստանի մյուս հարյուրավոր բնակավայրերի նման Փերին ևս առաջին համաշխարհային պատերազմի տարիներին ենթարկվեց թուրքական ցեղասպանների կազմակերպած ջարդերին ու ավերումներին։ Նրա հայ բնակչության մեծ մասը զոհ դարձավ թուրքական յաթաղանին, իսկ մի կարգ փրկվածները տարագրվեցին զանազան կողմեր։ Որոշ աղբյուրների համաձայն այստեղ ներկայումս կա մի քանի հայ ընտանիք։*

## ՈՒՐՄԻԱ

*Հնում սովորաբար կոչվել է Որմիա, իսկ հետագայում Ուրմիա՝ լճի անունով։ Ժողովուրդը անվանել է Ումի։ Հիշատակվում է դեռևս ասորեստանյան սեպագիր արձանագրություններում։ Տարբեր հեղինակների մոտ մերթ համարված է ավան, մերթ՝ բերդ ու բերդաքաղաք, մերթ էլ՝ քաղաք կամ գյուղաքաղաք։*

*Գտնվում է Ուրմիա լճի արևմտյան կողմում, նույն լճեր թափվող մի գետակի գետաբերանի մոտ, շրջակայքի նկատմամբ բարձրադիր վայրում, շրջապատված այգիներով ու պարտեզներով, բրնձի ընդարձակ ցանքերով։ Քաղաքը բավական տուժել է 1791 թվականին տեղի ունեցած երկրաշարժից։*

*Հնում մտնում էր Մեծ Հայքի Պարսկահայք աշխարհի Թրաբի գավառի մեջ և համարվում էր վերջինիս կենտրոնը, իսկ նոր ժամանակներում՝ Ուրմիայի խանության և գավառի կենտրոնը։*

*Ուրմիայի հայ բնակչությունը նոր ժամանակներում համեմատաբար սակավաթիվ էր, այստեղ XIX դ. սկզբին կար 1500 տուն բնակիչ, որի մեծագույն մասը կազմում էին ասորիները, պարսիկները և թաթարները։ Փոքրաթիվ էին նաև հրեաները։ 1906 թվականին այստեղ ապրում էին 60 տուն հայեր, իսկ առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին՝ 70 տուն։ Ուրմիայի հայերը հիմնականում զբաղվում էին արհեստագոր-*

ծությամբ ու առևտրով։ Քաղաքն ուներ մի քանի շուկա ու քարավանատուն։ Այն Բաշկալեի (Աղբակ) վրայով կապված էր Վանի և դեպի հյուսիս ձգվող ճանապարհով՝ Դիլմանի ու Խոյի հետ։ Ուրմիան հայտնի էր մանավանդ իր գյուղատնտեսական մթերքներով՝ խաղողով, տանձով, բրնձով, որոնց զգալի մասն առաքվում էր զանազան կողմեր։ Ականատես հեղինակների վկայությամբ, այլ քաղաքների համեմատությամբ Ուրմիայի շուկայում գյուղատնտեսական մթերքները շատ առատ էին ու էժան։ Արհեստների հետ միասին Ուրմիայում XIX դարի վերջերից գործում էին թեթև և սննդի արդյունաբերության մի քանի մանր-մունր ձեռնարկություններ, որոնց մի մասը տնայնագործական բնույթի էր։

Ուրմիայի շրջակայքում կան զուտ հայաբնակ հետևյալ գյուղերը՝ Գյարդուբադ, Բաբարի, Նախչվան-Թաթա, Իսալու։ Իսկ Թահվա գյուղի XX դ. սկզբներին ունեցած 130 տնից 100-ը հայկական էր, 30-ը՝ ասորական։

Ուրմիան բավական լայն փռված քաղաք է, որի մեծ մասը զբաղեցնում են այգիները, բանջարանոցները և, նույնիսկ, հացահատիկային ցանքսերը։ Մինչև օրս պահպանվել է նրա հողե կրկնակի բարձր պարիսպներով պատած բերդն իր հոյակապ դռներով և ներսի մի քանի կառույցներով։ Քաղաքի հայությունն ունի մի գեղեցիկ եկեղեցի, որը կառուցվել է 1889—1891 թվականներին։ Եկեղեցու բակում էլ գտնվում էր հայկական գիշերօթիկ դպրոցը, որը ոչ մեծ, բայց երկհարկանի գեղեցիկ շենք էր։ Քաղաքում գործում էին նաև ասորական կրթարաններ. ուներ ասորական 6 եկեղեցի։ Այստեղ հրատարակել են ասորական մի լրագիր՝ «Զարիըդ-բարա» (=«Արևի ճառագայթ») անունով, որը տպագրվում էր քաղաքի բողոքականների տպարանում։ Ամերիկյան միսիոներները Ուրմիայում բացել էին դպրոց, որը գործում էր XIX դ. վերջերին և XX-ի սկզբներին։

Ներկայումս Ուրմիան սովորական գավառական տիպի քաղաք է, համանուն շրջանի կենտրոնը։

## ՔՂԻ

Հնում ավելի շատ հայտնի էր Կեղի, Կողոբերդ, Քեղի տարբերակներով։ Հիշատակվում է իբրև գյուղ, ավան, գյուղաքաղաք, քաղաք։

Գտնվում է Արածանիի (Արևելյան Եփրատ) աջակողմյան վտակ Քղի գետի աջ ափին, վերջինիս մի փոքրիկ վտակի վրա։ Արևելքից, արևմուտքից և հյուսիսից շրջապատված է ոչ բարձր լեռներով, իսկ հարավով հոսում է Քղի գետը։ Քաղաքը տեղադրված է գեղատեսիլ լեռնալանջի վրա դարավանդաձև։ Ոչ հեռու գտնվող Սևտեխառում լեռան ստորոտից բխում է ս. Աստվածածին՝ սրբավայրի վերածված աղբյուրը։ Քաղաքի մոտ գտնվող մյուս լեռնագագաթը Քարագլուխն է, որը լերկ է ու ապառաժոտ. սրա ստորոտի քարի ու կավի հանքերը օգտագործվել են քղեցիների կողմից։ Նշված այդ երկու լեռների միջև ձգվում է Քարկաձոր կամ Քարական աղբյուրաշատ ձորը։ Քաղաքի մոտ եղած առանձին ժայռաբեկորներից նշելի է բլրաչափ Պոլոզքարը։ Ըստ ավանդության, վերջինիս տակ իբր մեծ քանակությամբ ոսկի է եղել կուտակված և իբր այդ ոսկին ձեռք կարող է բերել նա, ով մենակ կկարողանա գլորել այդ ժայռաբեկորը։ Քղին համանուն գետով բաժանված է երկու մասի, ունենալով գեղեցիկ համայնապատկեր։ Շրջակայքում կան անտառներ ու թավուտներ։ Երկու անգամ Քղին ուժգին երկրաշարժի հետևանքով խիստ ավերվել է։ Դրանցից մեկը տեղի է ունեցել 1415 թվականին, որի հետևանքներն աստիճանաբար վերացվել են, բայց քաղաքի բնակչության մի մասը ցրվել է այլևայլ տեղեր։ Երկրորդ երկրաշարժը, ինչպես երևում է, ավելի կործանիչ է եղել։ Այն տեղի է ունեցել 1616 թվականին։ Հին Քղին, որ գտնվում էր Հանգստուն գյուղի մոտ, այդ երկրաշարժից ամբողջովին ավերվել է և նրա բնակիչների մի մասը հիմնել է մեր նկարագրած ներկայիս Քղին։ Ջրառատ է Քղին ու նրա վտակը, Քարական ձորում բխող պաղ ու վճիտ աղբյուրները կարող են բավականացնել Քղիի պես մի քանի քաղաքների։

Քղիի շրջանը (գավառը) իր տարածքով հիմնականում համապատասխանում է Մեծ Հայքի Չորրորդ Հայք աշխարհի Խորձյան գավառին։ Այդ ժամանակներում գավառը կազմում էր Արշակունիների տան սեպուհների ամառանոցավայրը։ XVI—XX դարերում այդ գավառը կազմում էր Էրզրումի նահանգի Էրզրումի գավառի Քղիի գավառակը, որի կենտրոնը Քղին էր։

Ըստ երևույթին Քղին մինչև նշված երկրաշարժերը բավական բազմամարդ է եղել և նրա բնակչությունն այդ ժամանակներում միատարր էր՝ բաղկացած էր զուտ հայերից։ Ինչպես

տասցինք, 1415 և 1616 թթ. երկրաշարժերի հետևանքով նրա բնակիչներից շատերը տեղափոխվել են այլ վայրեր։ Գյուղաքաղաքում XVI—XIX դարերում բնակություն են հաստատել նաև քրդեր ու թուրքեր, բայց մինչև առաջին համաշխարհային պատերազմը, այնուամենայնիվ, նրա բնակչության մեծ մասը հայեր էին։ 1800—1830թթ. ուներ մոտ 14 հազար բնակիչ, որից 8 հազարը հայեր, 1830—1850թթ.՝ 13,3 հազար բնակիչ, որից ավելի քան 7 հազարը հայեր։ Ըստ որոշ աղբյուրների, մինչև 1915թ.՝ եղեռնը նրա բնակչության թիվը հասնում էր 15 հազար մարդու, որից 10 հազարը հայեր։ 1860—70-ական թվականներին պանդխտության գնացող բնակիչները բավական մեծ թիվ էին կազմում։

Քղիի հայ բնակչության ճակատագիրը հար ու նման է ողջ Արևմտյան Հայաստանի հայության ճակատագրին։ Թուրքական ջարդարարները երկու անգամ զանգվածային բնաջնջման ենթարկեցին նրա հայ բնակչությանը, մեկ արյունախում Աբդուլ Համիդի ժամանակ՝ 1895 թվականին (միայն սպանվածների թիվը հասնում էր 1000 հոգու), իսկ մյուսը նույնքան մարդակեր երիտթուրքերի՝ 1915 թվականի ցեղասպանության ժամանակ։ 1929 թվականի տվյալներով Քղիում հավաքվել էին 500 տարագիր քղեցի հայեր, որոնց հետագա ճակատագիրը մեզ համար մնում է անորոշ։

Քղին մեկուսացած գյուղաքաղաք է։ Նրա միջով անցնող Ճապաղջրից դեպի Երզնկա ձգվող շատ թե քիչ բարեկարգ միակ ճանապարհը երկրորդական նշանակություն ուներ և նրա ներքին տնտեսական կյանքի վրա շատ քիչ էր ազդում։ Այնուամենայնիվ, Քղին ուներ ներքին բավական աշխույժ առևտուր։ Այստեղ ձևավորվել էր նաև բավական հարուստ վաճառականության մի խումբ, որն առևտրական գործարքներ ուներ նահանգի և հարևան քաղաքների հետ։ Քաղաքն ուներ շուկա, տասնյակ խանութներ ու կրպակներ։ Քաղաքային հասարակության կարևոր զբաղմունքներից էր արհեստագործությունը։ Առանձնապես տարածում էին ստացել և բավական զարգացած էին կաշեգործությունն ու կոշկակարությունը։ Քաղաքի բնակչության մի մասի համար կարևոր զբաղմունք էին երկրագործությունը, այգեգործությունը, մեղվաբուծությունը և այլն։

Քղիի տները քարաշեն են, հին տները գրեթե առանց բացառության մի հարկանի, երդիկով ու թոնիրով, իսկ ներքը՝

երկհարկ-եռահարկ։ Տները դասավորված են շարքերով, ամֆիթատրոնի ձևով։ Փողոցները նեղ են ու ծուռումուռ։ Քաղաքի հայ բնակչությունը բնակվում էր չորս թաղերում՝ ս. Հակոբ, ս. Սարգիս, ս. Լուսավորիչ և Վարի թաղ, որոնցից յուրաքանչյուրն ուներ իր եկեղեցին։ Եկեղեցիներից երկուսը՝ ս. Հակոբն ու ս. Սարգիսը քարաշեն էին։ Դրանցից առաջինն ուներ թանկարժեք սպասք և սուրբ մասունքներ, իսկ երկրորդը ավելի շքեղ էր՝ սյունազարդ, գմբեթակիր, զանգակատնով հոյակապ մի կառույց էր։ Նրա երրորդ եկեղեցին, ս. Աստվածածինը, ավելի խոշոր էր՝ 40 կանգուն բարձրությամբ և 40 կանգուն լայնությամբ, բայց անզարդ ու անպաճույճ կառուցվածք էր։ Քղին ուներ նաև 3 մատուռ, որոնք նույնպես երբեմն հիշատակվում են իբրև եկեղեցիներ։

Քաղաքից 1—1,5 կմ հեռավորությամբ, ժայռոտ լեռան բարձր գագաթին կառուցված է եղել մի հին բերդ։ Ենթադրվում է, որ այն եղել է Արշակունի սեպուհների նստավայրը և կառուցված է եղել նրանց կողմից IV դարում։ Բերդի ավերակներում վիմագիր արձանագրություններ ամենևին չեն հայտնաբերվել։

Քղին հայ գրչության կենտրոններից է։ Այստեղ ընդօրինակվել են զանազան ձեռագրեր, որոնցից մեզ հայտնի է 1464 թ. Երեմիա Սարկավագի օրինակած մի Մաշտոց և մի Գանձարան։ XIX դարի երկրորդ կեսին և XX-ի սկզբներին հայերն ունեին մեկ արական և մեկ օրիորդաց նախակրթարան, որ բացվել էր արական նախակրթարանից մի փոքր ուշ՝ 1880 թ. Պոլսի Ազգանվեր հայուհյաց ընկերության ջանքերով (այդ ընկերությունը լուծարքի է ենթարկվել 1915 թ.)։ Առաջնորդարանը և աղջիկների նախակրթարանը գտնվում էին ս. Հակոբի թաղում, իսկ տղաների նախակրթարանը, որ ուներ գեղեցիկ ու հարմարավետ շենք, ս. Սարգսի թաղում։ Քղին ուներ նաև մեկ երկսեռ մանկապարտեզ։

Քղի ավանից էր Ղուկաս Կարնեցի կաթողիկոսը (1770—1779), որը հայտնի Նաղաշ Հովնաթանի ձեռքով նկարազարդել էր տվել Էջմիածնի տաճարը և Աղա Մահմեդ խանին մեծ կաշառք տալով (100000 ռուբլու չափով) Էջմիածինն ազատել հարկից։

Օլթի քաղաքը հաճախ հիշատակվում է նաև իբրև սովորական ավան, բերդաքաղաք, գյուղաքաղաք։ Հնում հայտնի էր Ողթիք, Ուխթիք, Ուխտյաց քաղաք անուններով, որ հետագայում ձևափոխվելով դարձել է Օլթի։

Գտնվում է Ճորոխի աջակողմյան վտակ Օլթի գետի ափին, ռուս-թուրքական 1914 թ. սահմանի մոտ, շրջապատված կանաչապատ լեռներով ու բլուրներով։ Կլիման համեմատաբար մեղմ է, խոնավ, հարուստ է ջրերով։ Շրջակայքում տարածված էին ընդարձակ այգիներ։ Քաղաքի մոտակայքում կան բնական շինանյութեր, զանազան հանքային հարստություններ ու ջերմուկներ։

Օլթիի հիմնադրման ժամանակը հայտնի չէ։ Նրա մասին առաջին անգամ հիշատակում են Դրասխանակերտցին, Ասողիկը, Լաստիվերտցին։ Սակայն անկասկած է, որ այն գոյություն ունի հին ժամանակներից։ Արշակունիների (III—V դդ.), մարզպանների (V—VII դդ.) և արաբական խալիֆայության տիրապետության սկզբնական շրջանում (VII—VIII դարերում) Ուխթիք-Օլթին Ոքաղե (ըստ ոմանց՝ Պարտիզացփոր) գավառի (որի կենտրոնն էր այն) և Տայք աշխարհի մյուս գավառների հետ միասին պատկանում էր Մամիկոնյան նախարարական տանը, իսկ դրանից հետո, երբ Մամիկոնյան տունը Հայաստանի նախարարական մի շարք այլ տների հետ միասին 772—775 թվականների ապստամբությունից հետո մեծ հարված ստացավ խալիֆայության կողմից և կորցրեց իր նախկին նշանակությունը, նրա Տայքի տիրույթներն ամբողջությամբ անցան Բագրատունիներին։ Վերջիններս և նրանց տոհմակից վրաց Բագրատունիները Տայքում հիմնադրել են մի ընդարձակ իշխանություն՝ կյուրապաղատություն, որը սկզբնական շրջանում գտնվում էր Բյուզանդիայի «հովանավորության» տակ, իսկ հետագայում՝ 1000 թվականին, ուղղակի կցվում է կայսրությանը իբրև նրա բաղկացուցիչ մասը։

Սելջուկ-թուրքերի (XI—XII դդ.), մոնղոլների (XIII—XIV դդ.), թուրքմենական ցեղերի (XV դ.) և XVI դարից այստեղ հաստատված թուրքական տիրապետության օրոք Օլթին մի քանի անգամ ավերվել և անցել է ձեռքից ձեռք։ Նա զարգացման համար չուներ նպաստավոր նախապայման և շարունա-

կում էր մնալ որպես հետամնաց գավառական տիպի փոքր քաղաք։

Օլթիում տնտեսական ու մշակութային կյանքը որոշակի աշխուժացում է ապրում 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմից հետո, երբ այն Կարսի մարզի մյուս գավառների հետ միասին միացվում է Ռուսաստանին։ 1878—1915 թվականներին այն Կարսի մարզի Օլթիի օկրուգի կենտրոնն էր և բավական մեծ նշանակություն էր ստացել ոչ միայն ստրատեգիական, այլև տնտեսական առումով։ Սակայն առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ Օլթին նորից է անցնում Թուրքիային, մնալով թուրքական տիրապետության տակ։

Մինչև XIX դարը Օլթիի բնակչության քանակի վերաբերյալ հիշատակություններ ընդհանրապես չկան, իսկ այդ և հաջորդ՝ XX դարի առաջին քառորդի վիճակագրական և այլ կար- [illegible] տարբերվում են։ Համեմատաբար ավելի արժանահավատ աղբյուրներն ու վիճակագրական տվյալները թույլ են տալիս, այնուամենայնիվ, նշել, որ XIX դարի 40-ական թվականներին Օլթին ունեցել է 142 տուն, 60-ական թվականներին՝ 350 տուն, 1873-ին՝ 550, 1878-ին՝ 1095, որից 1000 տունը հայկական էր (իսկ սրանից մոտ 200-ը բնիկ էին, 800-ը՝ վերաբնակիչներ, որոնք այստեղ էին եկել 1877—78 թթ. պատերազմի ժամանակ)։ 1878 թ. քաղաքի տեղացի բնակչության թիվը հասնում էր 1400 մարդու, 1897-ին՝ 2373, իսկ 1914 թվականին՝ 3258 մարդու, որից հայեր՝ 2188, կազմելով քաղաքի ամբողջ բնակչության 67,2%-ը։ Նրա բնակչության մյուս հատվածը կազմում էին թուրքերը։ Օլթիի հայ բնակչությունը նյութական հսկայական կորուստներ է ունեցել առաջին համաշխարհային պատերազմի տարիներին. մոտավոր հաշիվներով նրանք կրել են 1500000 ռուբլու վնաս[27]։ Սակայն այդ ոչինչ, մի կերպ կարելի էր տանել, եթե դրան չհաջորդեին զանգվածային կոտորածները և բռնի տեղահանությունները։ Օլթիի հայ բնակչության մեծ մասը 1918 թ. կոտորվեց... 

27 «Մշակ» լրագիր, 1915, № 54։

արհեստագործությունը։ Քաղաքի շրջակայքում փռված են ընդարձակ և բերրի հողատարածություններ, որոնք ոռոգվում են Օլթի գետով և նրա վտակներով։ Սակայն Օլթի գավառի կլիման բավական խոնավ է և գյուղատնտեսական որոշ կուլտուրաներ կարելի է մշակել ու բավարար բերք ստանալ նույնիսկ առանց արհեստական ոռոգման։ Օլթեցիների մոտ գյուղատնտեսության ճյուղերից հիմնականը հողագործությունն էր՝ հացահատիկային կուլտուրաների մշակությունը, որի հետ կապված զբաղվում էին նաև անասնապահությամբ։

Հին ժամանակներից Օլթին կապված էր Կարինի, Արդահանի և Սև ծովի առափնյա շրջանների հետ։ Սակայն հին և միջին դարերում այն չէր վերածվել առևտրի նշանակալի կենտրոնի, նրա առևտուրը ուներ գերազանցապես տեղական նշանակություն։ XIX դարի երկրորդ կեսին՝ Կարսի մարզը Ռուսաստանին միացնելուց հետո, Օլթիի առևտուրը բավական աշխուժանում է։ XX դարի առաջին քառորդում քաղաքը խճուղիներով և երկաթուղով կապվում է Կարսի, Բարդուսի, Սարիղամիշի հետ և այդ հանգամանքը խթանում է նրա առևտրի զարգացմանը։ Քաղաքն ուներ իր շուկան, բազմաթիվ կրպակներ ու խանութներ, քարավանատներ, մթերանոցներ։ Այստեղ առևտուր էին կատարում և՛ տեղական ապրանքներով՝ հիմնականում գյուղատնտեսական մթերքներով, և՛ այլ վայրերից ստացվող արտադրանքներով։ Քաղաքում գործում էին տասնյակներով արհեստներ՝ դարբնություն, մանածագործություն ու ջուլհակություն, պղնձագործություն ու արծաթագործություն և այլն։

Օլթիի հիշատակության արժանի հուշարձաններն ու հնությունները մեծ թիվ չէին կազմում։ Դրանք սահմանափակվում էին հին բերդով, մի քանի եկեղեցիներով ու մզկիթներով, մի ավերված վանքով, քաղաքի շրջակայքի զանազան հնություններով և Օլթի գետի վրայի մեծ կամուրջով։

Օլթիի բերդն իր բնական ամրությամբ ու կառուցվածքով նման է Կարսի հռչակավոր բերդին։ Այն գտնվում է քաղաքի արևմտյան մասում, Ճորոխի ափին, դժվարամատույց լեռան վրա։ Կառուցվել է Բագրատունիների օրոք, X—XI դարերում։ Դրա մնացորդները՝ պաշտպանական պարսպի առանձին հատվածներ, բուրգերի ու մյուս կառուցվածքների ավերակներ, պահպանվել են մինչև մեր օրերը։ Այդ հին բերդում էր գտնվում

Հայկական Տիրամոր եկեղեցին, որ նախ վերածվել էր վանքի, իսկ հետագայում՝ ուխտավայրի։

Քաղաքն ուներ հայկական երկու եկեղեցի՝ ս. Գևորգ և ս. Հովհաննես անուններով, կառուցված տարբեր ժամանակներում։ Դրանցից մեկը գտնվում էր քաղաքի արևմտյան ծայրին, իսկ մյուսը՝ քաղաքից դուրս։ Ականատեսները վկայում են, որ եկեղեցիների վրա կային եղծված ու անհասկանալի վիմագրեր։ Եկեղեցիներից մեկում պահպանվում էր մի ձեռագիր ավետարան։ Օլթիի մզկիթները նույնպես թվով երկուսն էին, որոնցից մեկը նախկինում եղել է եկեղեցի և մզկիթի էր վերածվել հավանաբար XVII—XVIII դարերում։ Քաղաքի համար կարևոր նշանակություն ուներ Օլթի գետի վրա ձգված մեծ կամուրջը, որը մեր օրերն է հասել կանգուն վիճակում։ Օլթիի շրջակայքում նշմարվում են մի քանի ամրոցներ և խղճուկ բնակավայրերի մնացորդներ։

Օլթիի մյուս կառույցները ճարտարապետական ու պատմական առումով հատուկ հետաքրքրություն չեն ներկայացնում։ Նրա զորանոցները, վարչական շենքերը և մյուս կառույցները պարզունակ կերտվածքներ էին և, բացի իրենց մեծությունից, ոչնչով աչքի չէին ընկնում։ Քաղաքը չուներ իր հեռանկարային գործող հատակագիծը և նրա կառուցապատումը կատարվում էր գրեթե միանգամայն կամայականորեն։ Խղճուկ տպավորություն էին թողնում մանավանդ աղքատ քաղաքացիների տները, որոնք խառնիխուռն ցրված էին մեծ տարածության վրա։

Արևմտյան Հայաստանի նույն մեծությունն ունեցող տասնյակ քաղաքների (և նույնիսկ հարյուրավոր մեծ գյուղերի) համեմատությամբ աննախանձելի էր Օլթիի մշակութային կյանքը։ Այն փաստորեն սահմանափակվում էր հայկական տարրական մի դպրոցով, որը XIX դ. երկրորդ կեսին և XX-ի սկզբներին ունեցել է 40—50 տղա աշակերտ, և մի քանի խալֆայական վարժարաններով, որոնք գրաճանաչություն էին սովորեցնում մանուկներին։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Թադևոս Խաչատուրի Հակոբյան

ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔՆԵՐԸ

**Тадевос Хачатурович Акопян**

**ГОРОДА ИСТОРИЧЕСКОЙ АРМЕНИИ**

(На армянском языке)

Ереван «Айастан» 1987

Հրատ. խմբագիր՝ Ռ. Հ. Մուրադյան
Նկարիչ՝ Լ. Հ. Մանասերյան
Գեղ. խմբագիր՝ Ս. Ս. Մկրտչյան
Տեխն. խմբագիր՝ Ա. Մ. Բլբուլյան
Վերստուգող սրբագրիչ՝ Ռ. Բ. Մարգարյան

ИБ № 14470

Հանձնված է շարվածքի 4. 01. 1987 թ.: Ստորագրված է տպագրության 16. 04. 1987 թ.: ՎՖ 00613: Ֆորմատ 84×108 1/32: Թուղթ տպագրական № 1: Տառատեսակ՝ «Գրքի սովորական»: Տպագրությունը՝ բարձր: 13,44 պայմ. տպագր.: 12,81 հրատ. մամուլ: Տպաքանակ՝ 20000: Պատվեր՝ 2673: Գինը՝ 1 ռ. 20 կոպ.:

«Հայաստան» հրատարակչություն, Երևան—9, Իսահակյան 28:

Издательство «Айастан», Ереван-9, ул. Исаакяна, 28.

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի № 1 տպարան, Երևան—10, Ալավերդյան 65:

Типография № 1 Госкомитета Арм. ССР по делам издательств, полиграфии и книжной торговли, Ереван-10, ул. Алавердяна, 65.

# ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԽԵՄԱՏԻԿ ՔԱՐՏԵԶ

ԿԱԶՄԵՑ Թ. Խ. ՀԱԿՈԲՅԱՆ
ՔԱՐՏԵԶԱԳԻՐ Ս. Օ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

